ՍՏ. ՔՈՉԱՐՅԱՆ

# ՊԱՏԵՐԱԶՄԻ ՈՒ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԴԻԱԼԵԿՏԻԿԱՆ ԵՎ ԱՐԴԻԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ



ՀԱՅԱՍՏԱՆ

Ս. Ա. ՔՈՉԱՐՅԱՆ

# ՊԱՏԵՐԱԶՄԻ
ՈՒ
# ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԴԻԱԼԵԿՏԻԿԱՆ
ԵՎ
# ԱՐԴԻԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

«Հայաստան» հրատարակչություն
Երևան 1969

1 ФБ
Ք 82

Նվիրում եմ Հայրենական մեծ պատերազմում զոհված եղբորս՝ ՀՐԱՉԻԿ ԱՇՈՏԻ ՔՈՉԱՐՅԱՆԻ պայծառ հիշատակին:

**Степан Ашотович Кочарян**

ДИАЛЕКТИКА ВОЙНЫ И МИРА
И
СОВРЕМЕННОСТЬ

(на армянском языке)

Издательство «Айастан»

Ереван, 1969.

1—5—3
50—69

# ԱՌԱՋԱԲԱՆ

*Արդի դարաշրջանում հասարակական համակարգման առաջընթացը միահյուսվում է գիտատեխնիկական աննախընթաց նվաճումների հետ։ Մարդկությունը հասել է այն բնագծերին, երբ անցումը կապիտալիզմից սոցիալիզմին պատմական փաստ է դարձել։ Մոնոպոլիստական բուրժուազիան անզուսպ ռազմամոլության մեջ է տեսնում իր փրկության խարիսխը։ Նրա ռազմատենչ քաղաքականությունը նոր համաշխարհային պատերազմի վտանգ է ծնել։ Այդ վտանգի գիտակցումը պայմանավորեց պատերազմը կանխելու նպատակով ծայր առած համաշխարհային շարժումը։ Ներկայումս խաղաղության պահպանումն ամենաառաջնահերթ խնդիրն է։ Այս իմաստով, կարևոր նշանակություն է ձեռք բերել պատերազմի և խաղաղության պրոբլեմների տեսական հետազոտությունը, որը բովանդակում է կոնկրետ տեսանկյուններ։ Առաջին, անհրաժեշտ է մերկացնել իմպերիալիզմի ջատագովների մանվածապատ գաղափարները պատերազմների անխուսափելիության վերաբերյալ։ Պատերազմի դրդապատճառների մասին հրապարակ դուրս բերված տեսությունները նպատակ ունեն վարագուրել իմպերիալիստական բուրժուազիայի սանձազերծած պատերազմների արմատները և դասակարգային էությունը։ Այն խզումը, որ դրսևորվում է ֆեոդալիզմի դեմ մարտնչած և ժամանակակից բուրժուազիայի գաղափարների միջև պատերազմի և խաղաղության ըմբռնման հարցում, վկայում է իմպերիալիզմի բարոյա-քաղաքական դեգրադացիան, նրա գաղափարախոսության խոր ճգնաժամը։*

*16—18-րդ դարերի մտածողների հակամիլիտարիստական, հումանիստական դատողությունները լրացուցիչ գործոն են իմպերիալիստական բուրժուազիայի ռազմաշունչ տեսությունների դեմ մղվող գաղափարական պայքարում։*

*Երկրորդ, պատերազմի սպառնալիքի դեմ ծավալվող պայ-*

քարի շահերը պահանջում են դրա էության բացահայտում։ Այդ ծառայությունը մարքսիզմին է պատկանում, որ դիտական անաչառությամբ ցույց տվեց պատերազմների սոցիալ-դասակարգային դրդապատճառները։

«Հարկավոր է մարդկանց բացատրել այն բանի ռեալ իրադրությունը, թե որքան է մեծ գաղտնիքը, որի մեջ ծնվում է պատերազմը» (Վ. Ի. Լենին)։

Պատերազմը օբյեկտիվ տնտեսական հիմքեր ունի։ Առանց այդ հիմքերի վերլուծության անհնարին է ճանաչել դրա էությունն ու բովանդակությունը։ Տվյալ դեպքում պահանջվում է նաև պատմական փորձի դիալեկտիկական իմաստավորում՝ կոնկրետ պայմանների հաշվառումով։ Հեգելը ճիշտ էր նկատում, որ զարգացման արդյունքը չի կարելի ըմբռնել առանց դրա պատմության, քանի որ մերկ արդյունքը սոսկ դիակ է։

Պատմական փորձը հաստատում է այն ճշմարտությունը, որ պատերազմը տնտեսական շահով մտրակվող քաղաքական գործողություն է՝ բռնի միջոցների գործադրումով։ Իսկ քանի որ քաղաքականությունը արտահայտում է դասակարգային հարաբերություններ, ուստի ապադասակարգային քաղաքականություն լինել չի կարող։ Ամեն մի քաղաքական պայքար դասակարգային պայքար է։ Հետևաբար, պատերազմը չի կարելի քննարկել դասակարգային պայքարից դուրս, որպես սպոնտան երևույթ։ Այն որոշակի դասակարգերի քաղաքականության շարունակությունն է, այս կամ այն դասակարգի շահերի համար մղվող պայքարի ձևերից մեկը։

Երրորդ, քննարկվող պրոբլեմի բաղադրիչ մասերից մեկը երկու համաշխարհային պատերազմների փորձի և դրանց օբյեկտիվ հետևանքների վերլուծությունն է, որ հնարավորություն է տալիս հասկանալու իմպերիալիստական ռազմամոլության դասակարգային ասպեկտը։

Իմպերիալիզմն արագացնում է ինքնաբացասման պրոցեսը։ Նրա ընդերքում գնալով էլ ավելի են ծավալվում հակաիմպերիալիստական, հակամիլիտարիստական հասարակական ուժերը։ Իմպերիալիզմի սանձազերծած համաշխարհային

պատերազմները շրջվեցին հենց իր դեմ, դառնալով հեղափոխական պայթյունների «անուղղակի ռեզերվը»։

Պատմականորեն դատապարտված իմպերիալիստական բուրժուազիան, իր դասակարգային դիրքերի խարխլման ժամանակակից պայմաններում, շատ ագրեսիվ և քիչ բանական է դարձել։ Նա անելանելիության վիճակում կարող է համաշխարհային պատերազմ հրահրել։

Միլիտարիզմը մոնոպոլիստական բուրժուազիայի պետական քաղաքականության անկյունաքարն է։ Այն բռնի հարկադրանքի մի մեխանիզմ է, առանց որի շահագործող ոչ մի դասակարգ ի վիճակի չէ պահպանելու քաղաքական իշխանությունը։ Իմպերիալիզմի ժամանակ միլիտարիզմը վիթխարի չափերի է հասնում։ Գիտությունը միլիտարիզմի կցորդն ու սպասարկուն է դառնում։

Անչափ շահագրգռվածությունը ռազմա-տեխնիկական առաջադիմության մեջ օբյեկտիվորեն այնպիսի դրություն է առաջացնում, երբ պատերազմի տեխնիկական միջոցների կիրառությունը մահացու վտանգ է նրանց համար, ովքեր դրանք ստեղծել են։ Մի կողմից՝ հրթիռա-ջերմամիջուկային զենքի պայմաններում աճում են հանկարծակի ագրեսիայի դիմելու, մյուս կողմից՝ դրա կանխման, ագրեսորին վճռական հարված հասցնելու հնարավորությունները։

Միլիտարիստական միակողմանի զարգացում ստացած բնագիտությունը օբյեկտիվորեն շրջվում է իմպերիալիզմի դեմ։

Ավելի ու ավելի պարզ է դառնում իմպերիալիստական բուրժուազիայի ռազմա-քաղաքական ստրատեգիան՝ ո՛չ համաշխարհային պատերազմ, ո՛չ համընդհանուր խաղաղություն, որ նշանակում է սառը պատերազմի և պարբերական լոկալ պատերազմների վիճակ։

Չորրորդ, պատերազմի բնույթի փոփոխությունը, որպես օբյեկտիվ գործոն, չի կարող փոխել պատմության ու դասակարգային պայքարի օրենքները։

Հինգերորդ, հեղափոխական դասակարգի պայքարի ստրատեգիան կառուցվում է տեսության մեջ ռադիկալության և

գործնականում ռեալիզմի միահյուսման վրա։ Ռացիոնալիզմը քաղաքականության մեջ հատուկ է մեռնող դասակարգին։ Սոցիալիզմը առաջադրում է խաղաղության ստրատեգիան, որն ադեկվատորեն արտացոլում է առաջացած պատմական իրադրությունը, պայքարող ուժերի հարաբերակցությունը, ինչպես նաև ռազմատեխնիկական հեղափոխության առանձնահատկությունները։ Այդ ստրատեգիայի քաղաքական հիմքը սոցիալիստական երկրների արտաքին քաղաքականությունն է։ Ռազմական վտանգի դեմ ծավալված համաժողովրդական շարժումը միահյուսվում է բանվոր դասակարգի հակաիմպերիալիստական հեղափոխական ստրատեգիայի խնդիրների հետ։ Խաղաղության համար մղվող պայքարը ոչ թե տակտիկական, այլ ստրատեգիական խնդիր է, որ բխում է պրոլետարիատի հեղափոխական պայքարի ու համայն առաջադեմ մարդկության վերընթաց շարժման շահերից։ «Կոմունիզմը... ոչ միայն բանվորների, այլ ամբողջ մարդկության գործն է»[1]։

Արդի էտապում խաղաղության համար ծայր առած պայքարի ասպարեզն այն հանգույցն է, որտեղ միահյուսվում են բազմապիսի հասարակական-քաղաքական ուժերի շահերը, որոնց ավանգարդը դարաշրջանի կենտրոնում կանգնած միջազգային բանվոր դասակարգն է։

Խաղաղության ստրատեգիան ազատ է պացիֆիստական երանգներից։ Սոցիալիստական պետությունների ռազմական հզորության ամրապնդումը կենսական անհրաժեշտություն է։

«Այս պայմաններում, երբ իմպերիալիզմի ագրեսիվ ուժերը սրում են միջազգային լարվածությունը, ստեղծում են պատերազմի օջախներ, ՍՄԿԿ-ն այսուհետև ևս կբարձրացնի սովետական ժողովրդի զգոնությունը, կամրապնդի մեր հայրենիքի պաշտպանական հզորությունը, որպեսզի ՍՍՀՄ-ի զինված ուժերը միշտ պատրաստ լինեն հուսալիորեն պաշտպանելու սոցիալիզմի նվաճումները և խորտակիչ հակահարված հասցնելու իմպերիալիստական ամեն մի ագրեսորի»[2]։

Այսպիսով, խաղաղության սովետական ստրատեգիան

---

[1] **К. Маркс** и **Ф. Энгельс.** Соч., т. 2, стр. 516.

[2] ՍՄԿԿ XXIII համագումարի բանաձևը, «Հայաստան» հրատարակչություն, 1966, էջ 12։

միաձուլվում է սովետական ռազմական ստրատեգիայի հետ, որոնց ընդհանուր հիմքը սովետական պետության խաղաղասեր արտաքին քաղաքականությունն է։

«...Մեր ամբողջ քաղաքականությունն ու պրոպագանդան,— գրում էր Վ. Ի. Լենինը,—ուղղված է ոչ թե այն բանին, որպեսզի պատերազմի դրդենք ժողովուրդներին, այլ որպեսզի վերջ տրվի պատերազմին»[1]։

Խաղաղության համար ծավալվող շարժման մեջ մարմնավորվում է սոցիալիստական հումանիզմը, որը հենվելով հանուն լավագույն ապագայի մասսաների ռեալ պայքարի վրա, գործուն նշանակություն է ստանում։

Համաշխարհային պատերազմը կանխելու ստրատեգիան սոցիալիստական և կապիտալիստական պետությունների խաղաղ գոյակցությունն է։ Դրա հիմքում ընկած է պատերազմից, որպես միջպետական տարաձայնությունների լուծման միջոցից, հրաժարվելը։ Միաժամանակ այն պահանջում է միջպետական հարաբերություններում որոշակի սկզբունքների պահպանում։

Խաղաղ գոյակցությունը կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանի օրինաչափություններից մեկն է, պետականորեն ձևակերպված դասակարգերի միջև ծավալվող պայքարի սպեցիֆիկ ձևը։ Խաղաղ գոյակցությունն արագացնում է համաշխարհային հեղափոխական պրոցեսը, քանի որ դրա պայմաններում սոցիալիզմն ավելի լայնորեն և ակնբախ է դրսևորում իր առավելությունները հասարակական կյանքի բոլոր ոլորտներում, օրինակի ուժով հեղափոխականացնող ներգործություն ունենում մասսաների վրա։ Հասարակական կյանքի օբյեկտիվ օրինաչափություններն ու համաշխարհային քաղաքականության տենդենցները զարգանում և իրենց ճանապարհը հարթում են առաջադեմ սոցիալական ուժերի պրակտիկ հեղափոխական գործողությունների միջոցով։ Մեռնող դասակարգերը սուբյեկտիվորեն դիմակայում են այդ

---

[1] В. И. Ленин. Полн. собр. соч., т. 42, стр. 99.

պրոցեսին, հակադրվում պատմական անհրաժեշտությանը։ Ժամանակակից մոնոպոլիստական բուրժուազիայի քաղաքական գործունեության ուղղությունը հենց այդ օրինաչափությունների ու տենդենցների գործողության ոլորտի սահմանափակումն է բռնի միջոցով։ Այդ երկու իրարամերժ հակադրությունների պայքարում է նոր, առաջադեմ, հեղափոխական բովանդակությամբ օժտված կողմը գերակշռության հասնում հին, կենսազուրկ, ռեակցիոն կողմի նկատմամբ։ Խաղաղ գոյակցությունը համաշխարհային քաղաքականության մեջ գերիշխող գործոնի կվերածվի միայն այն ժամանակ, երբ արդիականության հեղափոխական ուժերը հասարակական կյանքի բոլոր ոլորտներում վճռական գերազանցության հասնեն իմպերիալիզմի նկատմամբ։

Այսպիսով, խաղաղ գոյակցության սկզբունքը ոչ թե ըմբռնում է գտնում իմպերիալիստական պետությունների կողմից, այլ պարտադրվում է նրանց սոցիալիստական պետությունների և հեղափոխական մասսաների հարաճուն հզորությամբ։

Ժամանակակից աշխարհում պատմության մեջ առաջին անգամ այնպիսի օբյեկտիվ պայմաններ են գոյացել, որոնց մեջ աննախադեպ աճել է սուբյեկտիվ գործոնի՝ մասսաների, դասակարգերի, կուսակցությունների և հասարակական-քաղաքական այլ շրջանների գործունեության դերը՝ իմպերիալիզմի ռազմատենչ ուժերը զսպելու և դրանով իսկ համաշխարհային պատերազմը բացառելու ուղղությամբ։

Ֆ. Էնգելսը նշում էր, որ պատմության մատերիալիստական ըմբռնման համաձայն, պատմական պրոցեսում վերջին հաշվով որոշիչը իրական կյանքի արտադրությունն ու վերարտադրությունն է. «Ո՛չ ես, ո՛չ Մարքսը ավելին երբեք էլ չենք պնդել։ Եթե որևէ մեկն այս դրույթը խեղաթյուրի այն իմաստով, որ իբր տնտեսական մոմենտը միակ որոշիչ մոմենտն է, այն ժամանակ այդ պնդումը կվերածվի ոչինչ չասող մի աբստրակտ անմիտ ֆրազի... պատմական պայքարի ընթացքի վրա ազդեցություն են գործում և շատ դեպքերում գերազանցապես նրա ձևը որոշում են վերնաշենքի զանազան մոմենտ-

ները՝ դասակարգային պայքարի քաղաքական ձևերը և նրա արդյունքները...»[1]։

Սոցիալիզմի՝ համաշխարհային սիստեմի վերածվելը և դրանով իսկ հակամիլիտարիստական հզոր նյութական ուժի հանդես գալը, ազատագրված երկրների ինքնուրույն զարգացման ուղի դուրս գալը, միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման հաջողությունները, հակապատերազմական դեմոկրատական բազմապիսի շարժումներն այնպիսի գործոններ են, որոնք վճռականորեն հակազդում են կապիտալիստական մոնոպոլիաների շահերը ներկայացնող իմպերիալիստական տերությունների կառավարող խմբերի քաղաքականությանը և կարող են որոշել իրադարձությունների ընթացքը։

Բնորոշ է, որ համաշխարհային պատերազմը կանխելու ռեալ հնարավորությունը ծագել է կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու պատմական ժամանակաշրջանում։

«Պրոլետարիատի սոցիալական հեղափոխությունն է միայն,— նշել է Վ. Ի. Լենինը,— ճանապարհ հարթում դեպի խաղաղությունը և ազգերի ազատությունը»[2]։

Առաջադեմ մարդկությունը անկասելիորեն շարժվում է դեպի հասարակական կեցության բարձրագույն և կատարյալ ձևերը։ Այդ օրինաչափության գործողությունն արագացվում է ժամանակակից արտադրողական ուժերի, ամենից առաջ գիտության և տեխնիկայի, բուռն զարգացումով և հեղափոխական զանգվածների ակտիվ հակաիմպերիալիստական պայքարով։ Իմպերիալիզմը փորձում է բռնությամբ արգելակել այդ օբյեկտիվ պրոցեսը։ Սոցիալիստական պետությունների նյութական հզորությունը և համաշխարհային կոմունիստական ու բանվորական շարժման գործողությունների միասնությունն այդ փորձերը խափանելու և դրանով իսկ համընդհանուր խաղաղությունը պահպանելու գլխավոր պայմանն են։

---

[1] Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հատ. 2, Հայպետհրատ, 1950, էջ 628։

[2] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 21, էջ 441։

ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ

# ՊԱՏԵՐԱԶՄԻ ԵՎ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԸՄԲՌՆՄԱՆ ԷՎՈԼՅՈՒՑԻԱՆ ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ՍՈՑԻՈԼՈԳԻԱՅՈՒՄ

## 1. Մինչմարքսյան հումանիստները պատերազմի և խաղաղության մասին

*Հայտնի է, որ մինչմարքսյան սոցիոլոգիայում թագավորում էր պատմության իդեալիստական ըմբռնումը։ Հասարակական բոլոր երևույթներն ու իրադարձությունները մեկնաբանվում էին նյութական հարաբերություններից անջատ։ Դեռևս անտիկ աշխարհի մտածողներից Անաքսագորը գտնում էր, թե մարդիկ տուժում են պատերազմներից, որովհետև նրանք չեն գիտակցել դրանց վնասաբերությունը, ճիշտ այնպես, ինչպես մարդիկ ապրում են բռնակալության պայմաններում, քանի դեռ չեն գիտակցել ազատության առավելությունները։*

*Ստրկատիրության օրոք միջպետական զինված ընդհարումները կազմակերպված ու պարբերական բնույթ ստացան։ Ստեղծվեցին մշտական զինված ջոկատներ, որոնք գործնականորեն իրականացնում էին միապետ-կառավարողների թալանչիական ծրագրերը։ Ստրկատերերի գաղափարախոսները փորձում էին տեսականորեն արդարացնել այդ պատերազմները։* Արիստոտելը *որպես ստրկատիրության պաշտպան ու ջատագով, հասկանում էր, որ ստրուկների ու ստրկատերերի միջև ծավալվող պայքարի պատճառները բնակչության տարբեր շերտերի բարոյական և մտավոր շահերի տարբերության մեջ չեն թաքնված։ Մարդկանց գործունեության նպատակներն ու բնույթը պայմանավորված են ունեցվածքային դրությամբ։ Նա անհրաժեշտ էր համարում տեսություն ստեղծել ստրկատիրության և ստրուկներ ձեռք բերելու մասին, որը կլիներ գիտության նման մի բան պատերազմի կամ որսորդության*

մասին։ Ստրուկներ ձեռք բերելը նա դիտում էր որպես «որսորդության» տարատեսակ։ Հասկանալի է, որ այս հիմնադրույթներից պետք է բխեր Արիստոտելի այն հետևությունը, թե պատերազմն իրերի բնական կարգի օրինավոր և նորմալ վիճակն է։

Հերակլիտը կարծում էր, որ «պատերազմն ամեն ինչի հայրն ու արքան է... ոմանց ստրուկներ է դարձրել, մյուսներին՝ ազատներ»։

Հոմերոսի ստեղծագործություններում հստակորեն հնչում են խաղաղասիրական մոտիվներ։ Որպես շրջմոլիկ երգիչ, Հոմերոսը մշտապես շփվում էր ժողովրդի հետ, հասկանում նրա վիշտն ու ցավը, ձգտումներն ու երազանքը։ «Իլիականում» նա պատերազմը որակում է, իբրև մի արյունախում դահիճ, որի համար միևնույն է թե ում գլուխը կկտրի։ Էպոսի սկզբում նա գովերգում է Աքիլեսի ցասումը, որը սակայն հետագայում իր տեղը զիջում է խաղաղասիրությանը։ Ոդիսևսի վերջին երգերը կոչ են անում մոռացության տալ եղբայրասպան պատերազմը, վերածնել փոխադարձ սերը և հասնել բարեհաջողության և հավիտենական խաղաղության։

5-րդ դարում, մեր թ. ա., հին հունական պատմաբան Հերոդոտը գրում էր, որ ոչ մեկը այնքան չի կորցրել իր խելքը, որպեսզի պատերազմը գերադասի խաղաղությունից, քանի որ խաղաղության օրերին երեխաներն են թաղում հայրերին, իսկ պատերազմի ժամանակ՝ հայրերը՝ երեխաներին։

Սոկրատեսը գտնում էր, որ անհրաժեշտ է փիլիսոփայել այնքան ժամանակ, մինչև որ զորավարները ավանակներ քշողների կվերածվեն։

Ինչպես երևում է, այս մտքերում դրսևորվում է պատերազմի բարոյական գնահատականը, բայց ոչ մի փորձ չի արվում հետազոտելու դրա աղբյուրներն ու շարժիչ ուժերը։

Արիստոտելը, Պլատոնն ու Հերակլիտը ելնում էին դասակարգային դիրքերից, մտորում պատերազմի շահավետության պահը։ Մինչդեռ Հոմերոսին ու Հերոդոտին ավելի շատ էթիկական կողմն էր զբաղեցնում։

Ստրկատիրական հարաբերություններին փոխարինած ֆեոդալիզմը շահագործման, սոցիալական հակամարտու-

թյունների և դասակարգային ընդհարումների մի նոր դարաշրջան էր։ Ֆեոդալական ազնվականության դասակարգային շահերը կյանքի կոչեցին բազմաթիվ թալանչիական պատերազմներ։

Սկսած 16-րդ դարից ֆեոդալիզմի ընդերքում բուռն կերպով ձևավորվում և զարգանում էր տնտեսության կապիտալիստական կացութաձևը։ Առանձնապես այդ պրոցեսն արագ տեմպերով էր ընթանում Արևմտյան Եվրոպայում, որը անհամեմատ ավելի նպաստավոր պայմաններում էր գտնվում արտադրողական ուժերի համակողմանի առաջընթացի տեսակետից։ Սոցիալ-տնտեսական այդ խորը պրոցեսներին զուգընթաց, լուրջ տեղաշարժեր կատարվեցին նաև գաղափարախոսության ու կուլտուրայի բնագավառում։ Մարդկային ստեղծագործական միտքն ազատվեց միջնադարյան խավարամոլությունից։ Մասսայական ժողովրդական շարժումներն այդ մտավոր հեղաշրջման նախադրյալն էին։

Ֆեոդալական ազնվականության և հոգևորականության դեմ մղված պայքարում երիտասարդ բուրժուազիան առաջադեմ դեր խաղաց։ Նա հանդես եկավ իբրև վերընթաց հասարակական դասակարգ, որի պայքարի հակաֆեոդալական բնույթն իր արտացոլումը գտավ գաղափարական և կուլտուրական հեղաշրջման մեջ։ Այդ հեղաշրջման դրսևորումներից մեկը վերածնունդն էր իր նոր հումանիստական գաղափարախոսությամբ, որի երանգներից էին խաղաղասիրական մոտիվները։ Այդ դարաշրջանում մեծ հումանիստները խաղաղության պրոբլեմին մոտենում էին ոչ միայն բարոյական տեսանկյունից։ Դատապարտելով պատերազմները, որպես հակաբարոյական երևույթ, նրանցից շատերը կռահում էին ռազմական աղետների խթանները, կոնկրետ պայմանների հետ կապելով խաղաղության պահպանման հնարավորությունը։

Ուտոպիստ-սոցիալիստ **Թոմաս Մորը** գրում էր, որ մասնավոր սեփականությունն անկուշտ ագահություն է ծնում և քանի դեռ այն պահպանվում է, «...մարդկության ամենամեծ և ամենալավագույն մասի մոտ առհավետ կմնա վշտերի դառը և անխուսափելի բեռը։ Որտեղ ամեն ինչ փողով են չա-

փում, այնտեղ հազիվ թե երբևիցե հնարավոր լինի ճիշտ և հաջող վարել պետական գործերը»[1]։

Մորը կռահում էր, որ մասնավոր սեփականությունը վերացնելուց հետո հասարակությունը կազատվի այն աղբյուրներից և ուժերից, որոնք փոքրամասնության ագահ ախորժակները բավարարելու համար մեծամասնությանը վիշտ ու տառապանքներ են պատճառում։

Վերածննդի շրջանի նշանավոր մտածողներից մեկը՝ **Էրազմ Ռոտերդամցին**, որն իր շրջագայությունների ժամանակ մշտապես բախվում էր պատերազմների և դրանց կործանարար հետևանքների հետ, վճռականապես դատապարտում ու անիծում էր մարդկային արյունահեղությունները։ «Խաղաղության գանգատը» աշխատության մեջ Էրազմը գրում է, որ «պատերազմը... զզվելի է այն ամենի համար, ինչ գոյություն ունի. պատերազմը բոլոր դժբախտությունների և չարիքների սկզբնապատճառն է, առանց տարբերության ամեն ինչ լափող անտակ օվկիանոս է։ Պատերազմի պատճառով ամեն մի ծաղկողը փտում է, ամեն մի ամուրը փլվում է, ամեն մի գեղեցիկը և օգտավետը ոչնչանում է, քաղցրը՝ դառնանում»[2]։

Էրազմը որսում է այն ճշմարտությունը, որ տիրապետող ուժերի սանձազերծած պատերազմները ոչ մի ընդհանուր բան չունեն մեծամասնության, ժողովրդի շահերի հետ։ Նա ուղղակի հայտարարում է, որ «պատերազմի բոլոր պատճառները ծնվում են այնպիսի իրերից, որոնք ժողովրդի հետ ոչ մի առնչություն չունեն... Ժողովրդի մեծամասնությունը ատում է պատերազմը և աղոթում խաղաղության համար։ Միայն քչերը, որոնց ստոր բարեհաջողությունը կախված է ժողովրդական վշտից, ցանկանում են պատերազմ»։ Էրազմը նկատում է, որ անհնարին է հաստատել խաղաղության ու արդարության վիճակ այն հասարակությունում, որտեղ «իշխանավորները... ավելի շատ ագահության, քան բանականության, առողջ դատողությունների ձայնն են լսում, իսկ քաղա-

[1] **Т. Мор,** Утопия, М., 1953, стр. 95—97.

[2] **Эразм Роттердамский,** Жалоба мира, «Трактаты о вечном мире», М., 1963, стр. 40.

ռաներն ու ճգնավորները մարդկանց մեջ պատերազմի և մարդասպանության կրքեր են բորբոքում»։ Նա համարձակ ընտրություն է կատարում. դիմում է այն մարդկանց, ովքեր անմիջապես ճաշակում են պատերազմների ամբողջ դառնությունը՝ հասարակ աշխատավորներին. «Թող բոլոր մարդիկ միավորվեն պատերազմի դեմ, թող բոլոր մարդիկ իրենց ձայնը բարձրացնեն դրա դեմ։ Թող բոլոր մարդիկ հրապարակորեն կամ մասնավոր ձևով քարոզեն, փառաբանեն և մեծարեն խաղաղությունը... Այսպես ուրեմն, օգտագործեք ձեր բանականությունն ու փորձն այն բանի համար, որպեսզի ձեզ կապեն ոչ թե պարանի շղթաները, այլ ալմաստի նման ամուր շղթաներ, որոնք կտրելն անհնարին կլինի։

Հասկացեք, թե ինչպիսի վիթխարի ուժ է թաքնված աղնըվականների բռնակալության հակադրվող մեծամասնության համատեղ գործողություններում»[1]։

Ժողովրդի շահերի հետ պատերազմների անհամատեղելի լինելու գաղափարը կարմիր թելի պես անցնում է Էրազմի տրակտատով։ Այստեղից էլ բխում է մասսաներին ուղղած նրա կոչը՝ պատերազմի դեմ միասնական ու համաձայնեցված պայքար ծավալելու մասին։ Էրազմը հավատում է ժողովրդի ուժին, բայց պայմանները նրան հնարավորություն չտվեցին հասկանալու օբյեկտիվ գործոնը, առանց որի մասսաների գործողությունները չեն կարող հաջողությամբ պսակվել։

Հանուն խաղաղության միասնության հասնելու, Էրազմի կրքոտ կոչը արձագանք գտավ ռեֆորմացիոն շարժման ձախ թևի ներկայացուցիչ Սեբաստիան Ֆրանկի մոտ։ Հումանիստ Ֆրանկը գտնում էր, որ համընդհանուր խաղաղություն հաստատելը երկրի վրա արդարության թագավորության հաստատման պայմանն է։ Նա պատերազմը դիտում էր իբրև անասնական, մարդկանց էությանը հակասող գործողություն։ Ֆրանկը առաջադրում էր այն գաղափարը, որ ռազմական հանցանքների համար պետք է պատասխանատվության ենթարկել յուրաքանչյուրին, անկախ բանակում նրա գրաված դիրքից, եթե նա մասնակցել է թալանչիական պատերազմին։

[1] Նույն տեղում, էջ 40։

Ով պատերազմ է ձեռնարկում և բռնության դիմում, որպեսզի յուրացնի ուրիշի բարիքը և առանց ցանկալու հնձում է՝ բռնակալ է, և ովքեր նրան օգնում են, նրանք նույնպես բռնակալներ, մարդասպաններ և թալանչիներ են։ Ֆրանկը բոլոր պատերազմների հակառակորդը չէ, նա հանդես է գալիս արդարացի պատերազմների օգտին, որոնք ուղղված են իրենց հպատակներին հալածող տերերի դեմ։ Այսպես, 1525 թվականի գյուղացիական պատերազմը Գերմանիայում նա արդարացի գործողություն էր համարում։ Միայն տիրակալության և անարդարության, հանցագործությունների և անբարոյականության ոչնչացումը, զավթումներից հրաժարվելը, համընդհանուր բարեկամությունը կհասցնեն մարդկանց կյանքից պատերազմների վերացմանը։ Այս դատողությունների մեջ առկա է Ֆրանկի հակապատերազմական ելույթի հեղափոխական երանգը։ Սակայն արդարացի և խաղաղասեր հասարակարգ ստեղծելու համար պրակտիկ գործողությունների կոնկրետ ծրագրի և նյութական հիմքերի բացակայությունը պայմանավորում է Ֆրանկի բողոքների և բարի ցանկությունների վերացական, ուտոպիական բնույթը։ Անհրաժեշտ է ընդգծել, որ խաղաղության ռեալ ծրագրի ծնունդը կապված է նյութական նախադրյալների հետ, որոնց մեջ ծագում է պատերազմները վերացնելու հնարավորությունը։ Մինչդեռ 16-րդ դարում այդպիսի նախադրյալներ չկային, և հետևաբար, չի կարելի հումանիստ մտածողից ավելին պահանջել։ Հենց միայն այն հանգամանքը, որ Ֆրանկը վճռականապես մերկացնում էր թալանչիական պատերազմները, դրանց վերացման հնարավորությունը կապելով բռնակալության և անարդարության ոչնչացման հետ, խոսում է այն մասին, որ նա մեծ հումանիստ էր, խաղաղության և արդարության ջատագով։

Մարդկային անհաշիվ կյանքեր խլող միջպետական զինված ընդհարումները շարունակում են մտահոգություն պատճառել հետագա հումանիստներին, որոնք դատապարտելով պատերազմները, փորձում են գտնել դեպի խաղաղություն և ժողովուրդների միջև համերաշխություն տանող ուղիները։ Այս իմաստով վառ դրսևորվող դեմք է 17-րդ դարի չեխ մանկավարժ, փիլիսոփա և գրող Յան Ամոս Կոմենսկին, որը շատ

մտավոր ջանքեր գործադրեց խաղաղության որոշակի ծրագիր մշակելու համար։ «Համընդհանուր խորհուրդ մարդկային գործերը կարգավորելու մասին» աշխատության մեջ Կոմենսկին շարադրում է խաղաղության իր կոնցեպցիան, համաձայն որի ժողովուրդների մեջ արդարության և խաղաղության սերմերը պետք է ցանեն պետությունները։ Խաղաղությունն արմատավորելու համար ամենուրեք պետք է ստեղծվի պետությունների համապատասխան տաճար, որը կարող է կոչվել նաև խաղաղության տերությունների դիրեկտորիա, խաղաղության սենատ կամ խաղաղության արեոպագ, որի անդամները կլինեն խաղաղության գերագույն տիրակալները կամ դատավորները. «Նրանք պետք է դառնան մարդկային հասարակությունը միավորող իսկական օղակը, ամեն ինչ և բոլորին դեպի խաղաղության բևեռը ձգող իսկական մագնիսը, մարդկային հասարակության մեջ կարգ ու կանոն հաստատող կենդանի սյուները և հենարանը»[1]։

Խաղաղության սենատի անդամները կդառնան հասարակական բարօրության գերագույն պահապանները, որոնք կխանգարեն ոչ միայն նոր պատերազմների, փոթորիկների և արյունահեղությունների ծագմանը, այլև իր ժամանակին կվերացնեն դրանց շարժառիթները, անհաղթահարելի պատնեշներ կստեղծեն ամեն մի պատերազմի առջև։

Կոմենսկին միայն մարդկանց զգացմունքներին և բանականությանը դիմելով չէր զբաղվում, հույս դնելով խաղաղ կյանքի նկատմամբ մարդկանց բարեհաճ վերաբերմունքի վրա։ Նա խաղաղություն հաստատելու հնարավորությունը կապում էր հասարակական հարաբերությունների, այդ թվում, կրոնի, փիլիսոփայության և քաղաքականության բարելավման հետ, որոնք միասնաբար իրենց պետք է նվիրաբերեն համընդհանուր խաղաղության գործին։ «...Բոլորը միասին պետք է մրցեն, որպեսզի յուրաքանչյուրն իր բնագավառում հնարավորին չափ ավելի լավ օժանդակի մարդկային ցեղի բարօրությանը»[2]։

---

[1] Ян Амос Коменский. Всеобщий совет об исправлении человеческих дел, «Трактаты о вечном мире», стр. 78.

[2] Նույն տեղում, էջ 75։

Կոմենսկին գտնում էր, որ մարդկային հարաբերություններում կրքերն ու ցասումը վատ խորհրդատուներ են, իսկ բռնության դիմելն ու զենք գործադրելը ոչ մարդկային գործ է, գազանների զբաղմունք։ Պատերազմը պետք է անդառնալիորեն վերացվի։ Այդ նպատակին հասնելու, թշնամանքին և պատերազմներին վերադառնալու հնարավորությունը բացառելու միակ երաշխիքը սպառազինությունն արգելելն է։ «...Զենքը հարկավոր է գործադրել գիշատիչների դեմ... հրանոթներից պետք է կանչող զանգեր ձուլել կամ երաժշտական գործիքներ պատրաստել»[1] — եզրափակում է Կոմենսկին։

17-րդ դարի վերջերին խաղաղության իր ծրագրով հանդես եկավ Անգլիայում կվակերյան շարժման ղեկավարներից մեկը՝ Վիլյամ Պեննը։ Ինչպես իր նախորդները, Պեննը ատելությամբ էր համակված պատերազմի նկատմամբ, որն ամեն ինչը լափող մի արյունոտ ողբերգություն է։ Միայն նա է գիտակցում խաղաղության բարիքները, ով իր վրա զգում է պատերազմի անողոք և տանջալից արհավիրքները։ Պեննը երազում է խաղաղության մասին, որին հասնելու ամենահուսալի միջոցը պետությունների կողմից պաշտպանվող արդարությունն է։ Նա խաղաղության գործոն է համարում պետությունների համընդհանուր դաշինքը։ Պեննը պետությունների պալատի կազմը սահմանափակում էր եվրոպական երկրներով, սակայն նա լավ էր հասկանում, որ «որքան ներկայացուցչական է պետությունների ասամբլեան, այնքան ավելի մեծանշանակ, արդյունավետ և ազատ կլինեն մտքերի փոխանակությունը և որոշումներն անհրաժեշտության դեպքում ավելի մեծ հեղինակություն ձեռք կբերեն...»[2]։

Պեննը գտնում էր, որ այդ լիգայի անդամների ներկայացուցիչները պետք է հավաքվեն որոշակի ժամկետներում, անհրաժեշտության դեպքում, և քննարկեն վիճելի հարցերը։ Նա ընդունում էր, որ քննարկումների ընթացքում հնարավոր են այնպիսի դեպքեր, որոնք կարող են կասկած առաջացնել այդ

---

[1] Նույն տեղում, էջ 80։

[2] **В. Пенн.** Опыт о настоящем и будущем мире в Европе, «Трактаты о вечном мире», стр. 92—93.

միության արդյունավետության մեջ։ Նա փորձում է ցրել այդ տարակուսանքները, ասելով, որ եթե որևէ ուժեղ պետություն չընդունի դաշինքի մեջ մտնելու նախագիծը, մեծամասնությունը նրան կհարկադրի կատարելու այդ քայլը։ Կաշառակերության հնարավորությունը բացառելու համար հարկավոր է խորհուրդ ուղարկել խելացի, ազնիվ ու ունևոր մարդկանց և պատշաճ վերահսկողություն սահմանել նրանց գործողությունների վրա։ Պեննը ժխտում է զինվորների գզվածության վտանգը՝ ծրագիրը կատարելու ժամանակ։

Պեննը սնանկ էր համարում այն կարծիքը, թե մտնելով համընդհանուր դաշինքի մեջ, կառավարողները կկորցնեն սուվերենությունը։ Իրենց երկրներում նրանք կպահպանեն անկախություն ու ինքնուրույնություն։ Ո՛չ նրանց իշխանությունը և ո՛չ էլ նրանց սովորական եկամուտները չեն նվազի, չխոսելով այն մասին, որ դրա բնական հետևանքը կլինի ռազմական ծախսերի կրճատումը, որ կնպաստի հասարակության բարօրությանը։ Այսպիսով, պետությունները, ինչպես նախկինում, կպահպանեն իրենց սուվերենությունը, բայց նրանցից ոչ մեկը մյուսի նկատմամբ առավելություն չի ունենա։ «Եվ եթե դա կոչվում է նրանց հզորության թուլացում,— ասում է նա,— ապա միայն այն իմաստով, որ մեծ ձուկն այլևս չի կարող լափել փոքրին և որ յուրաքանչյուր տերություն հավասարապես պաշտպանվում է անարդարությունից և ինքը անկարող է կատարելու անարդարություններ։ Cedant arma togae— հրաշալի ասույթ. աղավնու մնչոց, խաղաղության ձիթենու ճյուղ, այնպիսի մեծ բարեգործություն։ Երբ աստված մեզ ցանկանում է խստորեն պատժել մեր մեղքերի համար, նա մեծ մասամբ որպես ճիպոտ է ընտրում պատերազմը։ Եվ փորձը ցույց է տալիս, որ հենց պատերազմն է ամենախոր սպիներ թողնում»[1]։

Պեննը կրթությունն ու դաստիարակությունը գնահատում էր որպես համերաշխության և խաղաղության պայմաններից մեկը։ Նա համոզված էր, որ երբ պատանիներն ստանան ճշգրիտ գիտելիքներ, ուսումնասիրեն բնագիտությունն ու արվեստը, ինքնաճանաչման կգան և կըմբռնեն խաղաղության ան-

[1] Նույն տեղում, էջ 97։

հրաժեշտությունը։ Դառնալով կիրթ ու հասարակության համար պիտանի մարդիկ, նրանք կօգնեն ու կկարեկցեն իրար, այլ ոչ թե կսպանեն ու կավերեն։

Պեննի բարեսիրտ խաղաղասեր զգացմունքները վկայում են, որ նա իսկապես մտահոգված էր մարդկության բախտով և մարդկանց կոչ էր անում ղեկավարվել բանականությամբ՝ հաշտ ու խաղաղ ապրելու։

Սակայն Վիլյամ Պեննը իր նախորդներ Ֆրանկի ու Կոմենսկու համեմատությամբ զգալիորեն աղքատ էր դատողությունների խորության ու շրջահայացության տեսակետից։ Նրա ծրագրում գերակշռում է արտաքին քաղաքական կողմը։ Եթե Ֆրանկն ու Կոմենսկին խաղաղության հաստատումը չէին բաժանում սոցիալական վերափոխություններից, ապա Պեննը տարվում է մերկապարանոց պնդումներով, մխիթարվելով բարի նկատառումներով։ Պեննին անհասելի էին պատերազմի պատճառները. Պատերազմները նա բնութագրում է որպես մենամարտ միապետների և իշխանավորների միջև։ Այստեղից էլ բխում է նրա պացիֆիստական ծրագրի վերացական, երևակայական բնույթը։ «Ինչպիսի՜ ատելություն, ինչպիսի՜ արյունախումություն, ինչքա՜ն պատերազմներ ու ավերածություններ են ծնվել դարերի ընթացքում իշխանավորների և նրանց կանանց խարդավանքից», գրել է նա։

Ահա թե ինչու նրա տեսակետի հիմքում ընկած է միապետների ու իշխանավորների դաշինքը, որի շնորհիվ, իբր կվերանա իշխանավորներին բաժանող հակամարտությունը։

Վաղ լուսավորության ներկայացուցիչ, դիվանագետ և փիլիսոփա Սեն-Պյեռի կարծիքով ժողովուրդների միջև հավիտենական և համընդհանուր խաղաղություն հաստատելու ծրագրի ստեղծումը և նրա իրականացման միջոցները մշակելն ամենափառահեղ, գեղեցիկ և օգտակար մտահղացումն է։ Որպես հումանիստ, Սեն-Պյեռը երազում էր այն լուսավոր ապագայի մասին, երբ մարդիկ կմիավորվեն փոխադարձ սիրո զգացմունքների հիման վրա և կստեղծվի փոխըմբռնման պայմաններում ապրող եղբայրների խաղաղասեր համագործակցություն։ Նրանք կղեկավարվեն միևնույն ճշմարտություններով և համընդհանուր բարեկեցությունը կերջանկացնի նրանց։

Սեն-Պյեռը փորձում էր հասկանալ պատերազմի պատճառները։ Նրա հայացքների համաձայն, պետությունների վատ բավարարված պահանջմունքները կամ դրանցից բխող պահանջները տերությունների միջև եղած փոխհարաբերություններում, որոնք իրենց վրա ոչ մի գերիշխանություն չեն ընդունում, պատերազմների անխուսափելի աղբյուրն են։ Այդ պատերազմները ծագում են այն ժամանակ, երբ իրադրության փոփոխությունը հավակնություն ունեցող կողմին նոր ուժեր է տալիս։ Ապա՝ եվրոպական հրապարակային իրավունքի բացակայությունն իրարամերժ կանոններ է առաջացնում, որոնք կարող են կարգավորվել միայն ուժեղի իրավունքով։ Այդպիսի հակասությունները զենքի օգնությամբ են լուծվում։ Պատերազմի սերմերը թաքնված են նաև այն բանում, որ իրերը չեն փոխում իրենց ձևը, փոխելով բնույթը, «քանի որ ըստ էության ժառանգական կառավարումն արտաքուստ ընտրովի է թվում, քանի որ միապետություններում գոյություն ունեն պառլամենտներ կամ ազգային նահանգներ, իսկ հանրապետություններում՝ ժառանգական առաջնորդներ... մի տերությունը, որ կախված է մյուսից, պահպանում է ազատության տեսանելիությունը, իսկ միևնույն իշխանությանը ենթակա ժողովուրդները միևնույն օրենքներով չեն ղեկավարվում, ժառանգելու կարգը միատեսակ չէ միևնույն միապետի տարբեր տերություններում»[1]։

Հենց պատերազմների դրդապատճառների ըմբռնման հետ են կապված Սեն-Պյեռի հետագա դատողությունները դրանց վերացման հնարավորությունների մասին։ Նրան ամենից առաջ հետաքրքրում է եվրոպական մայրցամաքը, որտեղ քաղաքական կառուցվածքը բնության գործողության արդյունքն է և որի առանձնահատկությունները համընդհանուր համաձայնության ռեալ նախադրյալներն են բովանդակում։ Հավիտենական խաղաղության հնարավորության մասին նրա առաջարկած ծրագիրն օրիգինալ չէ։ Ինչպես Վիլյամ Պեննը, նա խաղաղության երաշխիք էր համարում համաեվրոպական կոնֆեդերացիայի ստեղծումը։ Դրա մեջ պետք է գոյություն ունենա

---

[1] «Трактаты о вечном мире», стр. 114.

դատական տրիբունալ, որի մշակած օրենքները և կանոնները պետք է պարտադիր լինեն բոլոր մասնակիցների համար։

Այդ կազմակերպությունը պետք է օժտված լինի այնպիսի զործուն և համակենտրոնացված ուժով, որպեսզի յուրաքանչյուր պետության հարկադրի ենթարկվելու որևէ գործողության մասնակցելու կամ դրանից հրաժարվելու մասին ընդհանուր որոշմանը։ Նա պետք է ընդունակ լինի խանգարելու մասնակիցների՝ իրենց քմահաճույքով անջատվելուն, հենց որ նրանք գտնեն, թե ընդհանուր շահերը հակասում են իրենց մասնավոր շահերին։ Այսպիսով, կոնֆեդերացիայի այս կողմերը նրա ամրության և երկարակեցության պայմանն են։ Դաշինքի մեջ մտած անդամներից մշտական խորհուրդ է ստեղծվում, որի խնդիրն է բանակցությունների միջոցով լուծել ծագած բոլոր տարաձայնությունները։ Պայմանագիրը խախտող յուրաքանչյուր կողմ մեկուսացվում և հալածվում է որպես հասարակության թշնամի։ Սեն-Պյեռը ընդգծում է զինված ուժերի և համատեղ հարձակողական գործողությունների անհրաժեշտությունը խորհրդի բոլոր որոշումներին չենթարկվող կողմի դեմ, որը պարտավոր է փոխհատուցելու խորհրդին հասցրած վնասն ու ծախսերը։ Այդ ուժերը պետք է զսպեն պատերազմատենչ շրջաններին, որովհետև պատերազմը հակասում է կոնֆեդերացիայի շահերին։ Մշտապես զինված կոնֆեդերացիան, այսպիսով, կպատժի այն փառասեր կառավարողներին, որոնք կփորձեն խախտել խաղաղությունը։ Սեն-Պյեռը չէր ժխտում առանձին դաշինքների ստեղծման հնարավորությունը, սակայն գտնում էր, որ կոնֆեդերացիայի նման հզոր կազմակերպության առկայության պայմաններում այդ դաշինքներն ի վիճակի չեն լինի սպառնալու խաղաղությանը։

Եվրոպական պետությունների այս սիստեմում, ըստ Սեն-Պյեռի, վճռական է մեծամասնության կամքը։ Բայց դա բնավ չի ենթադրում ազատության և ինքնուրույնության ոտնահարում։ Բացահայտ տարբերություն գոյություն ունի որևէ մեկից և կոլեկտիվ օրգանից կախվածության միջև, որտեղ յուրաքանչյուրը հերթականորեն որպես ղեկավար է հանդես գալիս, քանի որ այդ դեպքում անկախությունն ամրապնդվում է նրան

ազատություն ապահովող երաշխիքների շնորհիվ. Ազատությունն օտարանում է, եթե այն մեկ իշխանավորի ձեռքն է ընկնում, բայց այն ամրապնդվում է, եթե համագործակցության պատկանելիությունն է։

Ինչպես երևում է, Սեն-Պյեռը տարված էր բարեմաղթություններով։ Նրա դրույթները տոգորված են իրավաբանական ոգով և ուտոպիական բնույթով։

Հետաքրքիր է, որ ընդհանուր տեսական դատողություններ անելու ընթացքում Սեն-Պյեռն ավելի խոր մտքեր է արտահայտում, ուշագրավ կռահումներ անում, քան համաեվրոպական խաղաղ ալյանսի ամբողջ սիստեմը նկարագրելու ժամանակ։ «...Եթե իրերը լինեին այնպես, ինչպես ես եմ նկարագրում,— ասում էր նա,— բոլորն իսկապես շահագրգռված կլինեին պատերազմից խուսափելու մեջ, և խաղաղությունը պահպանելու նպատակով մասնավոր շահերը հասարակականի հետ միաձուլելու շնորհիվ այն պետք է ինքն իրեն հաստատվեր և շարունակվեր հավերժորեն, առանց որևէ կոնֆեդերացիայի»[1]։

Ինչպես երևում է, Սեն-Պյեռը խաղաղություն հաստատելու հնարավորությունը իշխանավորների համաձայնության մեջ է տեսնում, գտնելով, որ դրան խանգարում է միայն նրանց դիմադրությունը։ Սակայն հեղինակը տարակուսում է և համոզված չէ իր ծրագրի իրականացման մեջ։ «Իհարկե, ասվածը չի նշանակում այն,— նշում է նա,— թե կառավարողները կընդունեն այդ նախագիծը... այլ միայն այն է նշանակում, որ նրանք կարող էին այն ընդունել, եթե համակերպվեին իրենց իսկական շահերին»[2]։

Վերջին դատողությունը բացահայտ մոլորություն է։ Ստացվում է, որ խաղաղությունը համապատասխանում է իշխող վերնախավի շահերին, որը չի գիտակցում այդ հանգամանքը։

Այստեղ միաժամանակ իդեալիզմի հոտ է փչում։ Նրա վարանումներն այն բանում, որ իր խաղաղության նախագիծը իշխող շրջաններում կարող է դրական արձագանք գտնել, իրենց արտացոլումն են գտնում նրա հետևյալ խոսքերի մեջ։

---

[1] «Трактаты о вечном мире», стр. 130.

[2] Նույն տեղում, էջ 137։

*«Եթե, չնայած այդ բոլորին, նախագիծը չիրականացվի, դա կկատարվի ոչ թե այն պատճառով, որ այն ցնորամիտ է, ո՛չ, դա կպատահի այն պատճառով, որ մարդիկ խենթ են և որ լինել խելոք խելացնորների ամբոխի մեջ, նույնպես խելահեղության մի տեսակ է»։*

*Սեն-Պյերի նախագծին համակիր էր ֆրանսիական լուսավորիչների դեմոկրատական թևի ներկայացուցիչ* Ժան Ժակ Ռուսոն: *Ռուսոն Սեն-Պյերին համարում էր խաղաղության մունետիկ, որ ձգտում է իր բարեպաշտական ծրագրի իրականացմանը։ Ըստ Ռուսոյի Սեն-Պյերը շիտակ հոգի է, որը մտահոգված է ընդհանուրի բարօրությամբ։ Ռուսոն միջազգային խաղաղասիրական ասոցիացիայի կողմնակիցներից մեկն էր։ «Մեկ օրով ստեղծեցեք եվրոպական հանրապետություն և դա բավական կլինի, որպեսզի այն անվերջ գոյություն ունենա, քանի որ յուրաքանչյուրը սեփական փորձով իր համար կգտնի ընդհանուր բարօրության մեջ շատ օգուտներ»*[1]*։*

*Սակայն Ռուսոն տեսնում էր Սեն-Պյերի նախագծի ոչ ռեալ լինելը։ Հավերժական խաղաղություն ապահովելու նպատակով, Սեն-Պյերի առաջարկած եղանակներն ու միջոցառումները վկայում են հեղինակի մանկական միամտության մասին։ «Նա պարզամտորեն ենթադրում էր,— գրել է Ռուսոն,— որ բավական է հավաքել կոնգրեսը, առաջադրել նրան պայմանագրի հոդվածները... և ամեն ինչ կկատարվի»*[2]*։*

*Ռուսոն ավելի շրջահայաց և խորաթափանց դատողություններ էր անում։ Նա ավելի լավ էր հասկանում կառավարողների քաղաքական վարքագծի շարժառիթները։ Ռուսոն համոզված էր, որ իր շահերով կաշկանդված ոչ մի միապետ առանց զայրույթի չի ընկալի սոսկ մի միտք անգամ այն մասին, որ ինքը պետք է արդարացի վարվի ոչ միայն օտարերկրացիների, այլև նույնիսկ իր սեփական հպատակների հետ։ «...Պատերազմներն ու նվաճումները մի կողմից, բռնակալության պրոգրեսը՝ մյուս կողմից,— ասում էր նա,— օժանդակում են միմյանց։ ....Սորկաբար հնազանդ ժողովրդից կարե-*

---

[1] **Ж. Ж. Руссо.** Суждение о вечном мире, «Трактаты о вечном мире», стр. 139—144.

[2] *Նույն տեղում։*

յի է առատորեն դրամ կորզել և մարդկանց հավաքել ուրիշ ժողովուրդների սարկացնելու համար... Իր կողմից պատերազմն առիթ է ստեղծում ֆինանսական հարկահավաքի համար, ինչպես նաև ոչ պակաս լուրջ հնարավորություն է ստեղծում ձեռքի տակ ունենալու մեծ բանակներ՝ ժողովրդին հնազանդ վիճակում պահելու նպատակով»[1]։

Պատերազմի մեջ շահագրգռված են իշխանավորները։ Պատերազմները նրանց պետք են, որպեսզի շուկաներում հարստանան, հագեցնեն իրենց կեղտոտ կրքերը։ Հավիտենական խաղաղությունը կզրկի նրանց հարստանալու, ժողովրդի հաշվին ճարպակալելու հնարավորությունից։ Հավիտենական խաղաղությունը կմարմնավորվի կյանքում միայն այն ժամանակ, երբ մասնավոր շահերը չեն գերակշռի հասարակական շահերին և յուրաքանչյուրը կգիտակցի, որ ընդհանուր բարօրությունն է բովանդակում այն գերագույն բարօրությունը, որ նա կցանկանար իր համար։ Այստեղից երևում է, որ խաղաղության պայմանը պետությունների ներքին կառուցվածքի փոփոխությունն է, բռնակալության ոչնչացումը, քաղաքական կյանքի դեմոկրատացումը։ Ինչ վերաբերում է ֆեդերատիվ լիգաներին, ապա դրանց ստեղծումը հնարավոր է միայն հեղափոխական ճանապարհով։

Ռուսոն հասկանում էր, որ խաղաղությունը հնարավոր է միայն կոնկրետ պայմաններում, և խաղաղության պրոպագանդան առանց իրադրության հաշվառման՝ վերացական զբաղմունք է։ «Իհարկե, հավիտենական խաղաղությունը մեր ժամանակներում բավականաչափ անհեթեթ նախագիծ է»— գրել է նա։

Ինչպես երևում է, Ռուսոն քննադատության սուր ծայրն ուղղում է ֆեոդալա-միապետական կարգերի դեմ, դրանց հետ կապելով անընդմեջ ռազմական ընդհարումները։

Ռուսոյի հայրենակից Վոլտերը խաղաղության հեռանկարը հոռետեսորեն էր գնահատում։ Նա գտնում էր, որ ժամանակակից աշխարհում չկան այնպիսի միջոցներ, որոնց օգնությամբ հնարավոր լիներ կանխել այնպիսի սարսափելի հիվանդությունը, ինչպիսին պատերազմն է։ Նա ծաղրում էր

---

[1] Նույն տեղում։

աբբատ Սեն-Պյեռի նախագիծը, այն բնութագրելով որպես մաքուր ցնորք, որն անընդունելի է իշխանավորների համար այնպես, ինչպես փղերի կամ ռնգեղջյուրների համար։

Ըստ Վոլտերի, խաղաղությունը անիրագործելի իդեալ է։ Հավիտենական խաղաղություն հաստատելու միակ պայմանը նա համարում էր կրոնական հանդուրժողությունը։

18-րդ դարի ֆրանսիական մատերիալիստների տեսադաշտից չի վրիպել խաղաղության պրոբլեմը ևս։ Նրանք հանդես էին գալիս հակապատերազմական կոչերով։ Դիդրոն, Ռուսոյի նման, զավթումների քաղաքականությունը կապում էր բռնակալական կարգերի ուժեղացման հետ։ Իդեալականացնելով պետական կառավարման հանրապետական ձևը, Դիդրոն համոզված էր, որ հանրապետական կարգը նվազեցնում է ռազմական ընդհարումների հնարավորությունը։ Ազատասիրությունն ու ազատությունը կորցնելու երկյուղը հաճախ հանրապետական երկրներին հարկադրում է հանդես գալ բռնակալական պետությունների դեմ զինված ուժերով։ Այստեղից նա այն հետևությունն է անում, որ միայն ազատության համընդհանուր առաջընթացը և միապետական ռեժիմների վերացումը կառաջացնեն այնպիսի պայմաններ, երբ պատերազմները ժողովուրդների միջև կփոխարինվեն օրենսդիրների միջև պատերազմներով։ Բայց քանի դեռ ժողովուրդների բախտը բռնապետերն են որոշում, երեսպաշտությունը, ստորությունը, ճնշումը, անարդարությունն ու պատերազմներն անխուսափելի են։

Հոլբախը դատապարտում էր պատերազմը։ Փիլիսոփայի պատկերավոր արտահայտությամբ, պատերազմը չի խնայում նաև հաղթողին, և նույնիսկ ամենաերջանիկ պատերազմն, այնուամենայնիվ, դժբախտություն է։

Ֆրանսիական մատերիալիստները ֆեոդալա-միապետական կարգերին հակադրում էին բուրժուա-դեմոկրատական հանրապետական կարգը, որի ժամանակ իբր միջազգային երկպառակությունները կանհետանան։

Միապետները լավ էին հասկանում, թե ում դեմ են ուղղված ֆրանսիական մատերիալիստների հակապատերազմական դատողությունները և փորձում էին հակառակն ապացու-

ցել։ Այդ տենդենցն իր դրսևորումը գտավ պրուսական միապետ Ֆրիդրիխ II-ի կոնցեպցիայում։ Ըստ դրա՝ սնոտիապաշտությունը, շահամոլությունը, վրեժխնդրությունը, երեսպաշտությունը, երախտամոռությունը միշտ կծնեն ոճրագործություններ, որովհետև մարդկանց ղեկավարում են կրքերը, այլ ոչ թե բանականությունը։ Պատերազմները, ավերվածությունները, համաճարակը երևույթներ են, որոնց շուրջը պտտվում է աշխարհը։

Միապետների բոլոր ճիգերն ու մտավոր մանիպուլյացիաները չէին կարող խախտել մեծ մտածողների համոզմունքը, որ ոչ թե թշնամանքն ու պատերազմները, այլ խաղաղությունն ու փոխըմբռնումն են մարդկանց բնական վիճակը։

* * *

Գերմանիան համեմատաբար ավելի ուշ ոտք դրեց կապիտալիստական զարգացման ուղին։ Կ. Մարքսը գրում էր, որ գերմանացիները խորհրդածում էին այն մասին, ինչ ուրիշ ժողովուրդներ իրագործում էին։ Հենց դրա մեջ էր դրսևորվում 18-րդ դարի վերջի և 19-րդ դարի սկզբի Գերմանիայի տնտեսական և քաղաքական զարգացման հակասությունը։ Այդ հակասությունն իր արտացոլումը գտավ Էմանուել Կանտի աշխարհայացքում։ Կանտը ժողովրդական զանգվածների պայքարի հեղափոխական մեթոդների հակառակորդն էր և արտահայտում էր հեղափոխությունից վախեցող գերմանական բյուրգերի տրամադրությունները։ Նա կառավարությունների իրականացվող ռեֆորմների կողմնակից էր։ Նրա համար գլխավորը բարոյական կատարելագործումն էր։ Հենց այդ դիրքերից էլ փիլիսոփան մեկնաբանում էր պատերազմի և խաղաղության պրոբլեմները։

Եթե Վոլտերը բացառում էր հավերժական խաղաղություն հաստատելու հնարավորությունը, ապա Կանտն այդ հնարավորության մեջ օբյեկտիվ օրինաչափություն էր տեսնում, խորհրդածում էր ժողովուրդների միջև խաղաղության դաշինք ստեղծելու անխուսափելիության մասին։ Կանտի կարծիքով հասարակության մեջ օբյեկտիվորեն գործում է մի այնպիսի

ուժ, որը հարկադրում է մարդկանց պետություն ստեղծելու և որը կստիպի պետություններին՝ իրար միջև համաձայնություններ կնքելու։ Այդ ուժը սոցիալական հակամարտությունն է։ Մարդը համաձայնություն է ձգտում, բայց բնությունն ավելի լավ գիտե, թե ինչ է բարորությունը նրա ցեղի համար, այն գժտություն է ձգտում։ Բնությունն օգտագործում է մարդկային անհաշտությունը, որպես ժողովուրդների միջև ռազմական կոնֆլիկտները վերացնելու միջոց։ Այդ ընդհարումներըն անհրաժեշտորեն պետություններին ստիպում են ելք որոնել «վայրենության անօրինական վիճակից» դուրս գալու համար։ Այդպիսի ելք է ժողովուրդների մեծ դաշինքի ստեղծումը։

«Դեպի հավիտենական խաղաղություն» տրակտատում Կանտը շարադրում է իր տեսակետը հասարակության կյանքից պատերազմները բացառելու ուղիների և միջոցների մասին, ընդգծելով, որ խաղաղությունը կարող է ձեռք բերվել համաձայնության միջոցով։ Տեղին են նրա այն խոսքերը, թե պատերազմը կարող է հասցնել հավիտենական խաղաղության «միայն մարդկության վիթխարի գերեզմանատանը»[1]։

Կանտի հավիտենական խաղաղության նախագիծը դիվանագիտական պայմանագրի տեսք ունի։ Տրակտատի առաջին բաժնում հեղինակը շարադրում է խաղաղության պրելիմինար հոդվածները, որոնք, ըստ էության, հավիտենական խաղաղության նախնական պայմաններն են։ Այստեղ նա վեց հիմնական սկզբունքներ է առաջադրում, որոնք հանգում են մոտավորապես հետևյալին.

1. Ոչ մի խաղաղության պայմանագիր իր մեջ չպետք է բովանդակի նոր պատերազմի թաքնված հնարավորություն, այլապես դա կլիներ ոչ թե խաղաղություն, այլ սոսկ հաշտություն, ռազմական գործողությունների դադարեցում։

2. Ոչ մի ինքնուրույն պետություն չպետք է նվաճվի մեկ ուրիշ պետության կողմից, ո՛չ ժառանգական ճանապարհով, ո՛չ խաբեբայությամբ, ո՛չ էլ գնման կամ նվիրատվության միջոցով։ Պետությունը մարդկանց համագործակցություն է, այլ ոչ թե գույք։

[1] **Кант.** Сочинения, т. 6, М., 1966, стр. 264.

«Ուստի, ամեն մի փոքր պետություն որպես ճյուղ պատվաստելու ծառաբնի պես սեփական արմատներ ունեցող մեկ այլ պետության, կնշանակեր նրա ոչնչացումը որպես բարոյական դեմք և բարոյական դեմքի վերածումը մի իրի և կհակասեր նախնական պայմանագրի գաղափարին, առանց որի չի կարելի մտածել ժողովրդին ղեկավարող ոչ մի իրավունքի մասին»[1]։

3. Մշտական բանակները ժամանակի ընթացքում պետք է չքանան։ Քանի դեռ պահպանվում են զինված ուժերը, պատերազմի սպառնալիքը կպահպանվի։

4. Պետական պարտքերը չպետք է օգտագործվեն արտաքին քաղաքական պայքարում։

5. Ոչ մի պետություն չպետք է բռնությամբ միջամտի ուրիշ պետությունների կառավարման և պետական կառուցվածքի հարցերին։ Այստեղ Կանտը դիմում է իրավական հիմնադրույթներին, ասելով, որ կողմնակի տերությունների միջամտությունը նշանակում է անկախ ժողովրդի իրավունքների խախտում։

6. Ոչ մի պետություն մեկ ուրիշ պետության դեմ մղվող պատերազմում չպետք է դիմի այնպիսի թշնամական գործողությունների, որոնք անհնարին դարձնեն վստահությունը ապագայում, խաղաղ պայմաններում (օրինակ՝ մարդասպաններ, թունավորողներ ուղարկելը, կապիտուլյացիայի պայմանները խախտելը, դավաճանության դրդելը)։

Երկրորդ բաժնում Կանտը քննարկում է պետությունների միջև հավերժական խաղաղություն հաստատելու դեֆինիտիվ հոդվածները։ Նա գտնում է, որ «յուրաքանչյուր պետություն պետք է հանրապետական վարչակարգ ունենա» և «միջազգային իրավունքը պետք է կառուցվի ազատ պետությունների ֆեդերալիզմի հիման վրա», «ինչպես նաև համաշխարհային քաղաքացիության իրավունքը պետք է սահմանափակվի համընդհանուր հյուրընկալության պայմաններով» (էջ 260—264)։

Ազատ պետությունների ֆեդերալիզմի վերաբերյալ Կանտի թեզում կոսմոպոլիտական ոչ մի տարր չկա։ Նա աներկմիտ

---

[1] Նույն տեղում, էջ 261։

ասում է, որ «դա կլիներ ժողովուրդների դաշինք, որը սակայն, չէր կարող լինել ժողովուրդների պետություն» (էջ 271)։ Իսկ դա նշանակում է, որ այդ մեծ դաշինքի ամեն մի անդամ պահպանում է իր սուվերենությունը, միաժամանակ օգտվելով ընդհանուր հարցերի քննարկմանը մասնակցելու իրավունքից։ Այդ դրույթը զուգորդվում է համաշխարհային քաղաքացիության իրավունքի մասին թեզի հետ, որը հագեցված է հակագաղութատիրական ոգով։ Կանտը նշում է, որ հյուրընկալությունն այնպիսի իրավունք է, երբ օտարերկրացին տեղացիներին չի դիտում իբրև թշնամիներ։ Դա այցելության իրավունք է, որը տեղական բնակիչների հետ խաղաղ հարաբերությունների մեջ մտնելու հնարավորությունների շրջանակներից դուրս չի գալիս։ Այսպիսով, երկրագնդի հեռավոր մասերը կարող են միմյանց հետ խաղաղ հարաբերությունների մեջ մտնել, որոնք հետագայում կարող են վերածվել հրապարակային օրինականացված հարաբերությունների և այդ ճանապարհով ավելի ու ավելի մոտեցնել մարդկային ցեղը համաշխարհային քաղաքական կառուցվածքին։

Կանտը դիմում է կոնկրետ փաստերի, որոնց մեջ արտացոլվում է օտար հողեր նվաճելու եվրոպացիների քաղաքականությունը։ Նա գտնում է, որ եվրոպացիներն առևտրական նպատակների պատրվակով Հնդկաստան ներխուժեցին, որին հետևեցին տեղացիների ճնշումը, շատ երկրների պատերազմի հրահրելը, դավադրություններն ու ուխտադրժությունը։ Կանտը վճռականորեն դատապարտում է գաղութատիրությունը։

Կանտը մերժում է մաքիավելիզմը քաղաքականության մեջ, առաջ քաշելով քաղաքականությունը բարոյականության հետ համաձայնեցնելու անհրաժեշտության գաղափարը։ Նա պնդում է, որ պատերազմը չի համապատասխանում ժամանակակից կուլտուրային։ Կանտի մոտ իրավական և բարոյական կատեգորիաները միահյուսվում են։ Նա նշում է, որ բանականությունը բարոյական պարտականության (կատեգորիկ իմպերատիվի) միջոցով մարդկանց պարտավորեցնում է ձգտել այն բանին, որպեսզի պետական կառուցվածքը համապատասխանի օրենքներին։ Պետությունը որակելով որպես որոշակի թվով մարդկանց միավորում՝ իրավական կանոննե-

րի ներքո, Կանտը մարդկանց բնական վիճակն անօրինական վիճակ է համարում, որը խաղաղ համակեցության համար ոչ մի երաշխիք չի տալիս։ Կատեգորիկ իմպերատիվը մարդկանց պարտավորեցնում է մտնել քաղաքացիական կարգի մեջ։ Պետությունների համաշխարհային դաշինքի ստեղծումն իրավունքի պահանջն է։ Միայն այն կարող է վերջնական օրինավորություն տալ մարդկային հիմնարկներին։ Այդ ճանապարհով կարելի է հասնել քաղաքական կարգի բարձրագույն նպատակին՝ հավիտենական խաղաղության։ Յուրաքանչյուր մարդու պարտականությունն է բոլոր միջոցներով հասնել այդ նպատակին։ Դա պրակտիկ բանականության կատեգորիկ իմպերատիվն է, որն ասում է, թե մարդկանց միջև պատերազմ չպետք է լինի։ «Դրա համար պետք է հատուկ դաշինք գոյություն ունենա, որը կարելի է անվանել խաղաղության դաշինք (foedus pacificum) և որը կտարբերվեր հաշտության պայմանագրից (pactum pacis) նրանով, որ վերջինը ձգտում է վերջ տալ միայն մեկ պատերազմին, այն ժամանակ, երբ առաջինը՝ բոլոր պատերազմներին և առհավետ... Կարելի է ցույց տալ այդ ֆեդերացիայի իրագործելիությունը (օբյեկտիվ ռեալությունը), որը պետք է աստիճանաբար ընդգրկի բոլոր պետությունները և այդ ճանապարհով հավիտենական խաղաղության հասցնի»[1]։

Ըստ Կանտի հավիտենական խաղաղությունը միջազգային իրավունքի վերջնական նպատակն է։ Նա յուրօրինակ դատողություն է անում, ասելով, թե հարցը հավիտենական խաղաղության ռեալ կամ ուտոպիական լինելու մեջ չէ։ Պետք է այնպես վարվել, որ կարծես թե հավիտենական խաղաղությունը ռեալ նպատակ է և ջանքերն ուղղել դրա հիմնավորմանն ու համապատասխան սահմանադրության իրագործմանը, որի հետևանքով վերջ կտրվի պատերազմներին։

Բարի ցանկության դեպքում անգամ յուրաքանչյուրի պարտականությունն է անխոնջ կերպով մաքառել պատերազմի դեմ, խաղաղության գաղափարն իրականացնելու համար։

Կանտը որպես մեծ մտածող ընդգծում է, որ պատերազմը բարոյական այլանդակություն է ծնում։ Նա լիովին միանում

[1] Նույն տեղում, էջ 274։

է հին հույներից մեկի այն ասույթին, թե պատերազմն այլանդակ է նրանով, որ ավելի շատ չար մարդիկ է ստեղծում, քան սպանում է նրանց։

Փիլիսոփայի որոնող միտքը ձգտում է գտնել այնպիսի իրավիճակ, որի պայմաններում պատերազմը կդառնա անբանական քաղաքականություն։ Իհարկե, ով չի ճանաչում ռազմական աղետների իսկական մոտիվները, չի կարող գտնել դրանցից դուրս գալու պայմաններն ու եղանակները։ Կանտը գտնում է, որ կուլտուրայի աճը և սկզբունքների մեծ միասնությանը մարդկանց մոտեցումը տանում են դեպի համաձայնություն և խաղաղություն։ Ուշագրավ է այն միտքը, որ մարդկանց միաբանության և խաղաղության հաստատման համար կարևոր է սկզբունքների ընդհանրությունը։ Հետաքրքիր է նաև այն միտքը, որ «առևտրի ոգին, որը վաղ թե ուշ իրեն է ենթարկում ամեն մի ժողովրդի՝ ահա թե ինչը չի կարող գոյություն ունենալ պատերազմի կողքին։

Կանտի համար պատերազմը հակասում է մարդկային հակումների մեխանիզմին, այն անբարոյական վիճակ է։ Նա գրում է, որ քանի դեռ օբյեկտիվորեն (տեսության մեջ) քաղաքականության և բարոյականության միջև վեճ գոյություն ունի, հարկավոր է հասնել դրանց գործնական դաշինքին։ Բոլոր պետությունների ճանաչում գտած հրապարակային իրավունքի հիման վրա կարելի է նրանց միջև համաձայնության հասնել և դրանով իսկ խաղաղություն ապահովել։

Հավիտենական խաղաղության կանտյան ծրագիրը վերացական սխեմաների մի գումար է։ Ըստ էության, ժողովուրդների միջև խաղաղություն հաստատելը Կանտի համար ավելի շատ բարոյական իդեալ է, պարտականություն, քան պատմական կոնկրետ խնդիր։ Հեղինակը հեռու է մնում հասարակության նյութական հարաբերությունների վերլուծությունից, ռեալ գործող սոցիալական ուժերի շահերի ըմբռնումից։ Պատահական չէ, որ Կանտը պատերազմները բխեցնում է կրոնի և լեզվի տարբերություններից, որոնք իբր փոխադարձ ատելություն են ծնում և պատերազմի առիթ ծառայում։

18-րդ դարի վերջին Գերմանիայում ֆեոդալական խավարամոլության դեմ մղվող պայքարը բովանդակում էր հումա-

նիստական տարրեր։ Գերմանական լուսավորիչներին հատուկ էր լավատեսությունը, ուրիշ ժողովուրդների հետ բարեկամություն հաստատելու ձգտումը, ատելությունը դինաստիական, ֆեոդալական պատերազմների նկատմամբ։ Ճիշտ է, գերմանական լուսավորիչները հետևողական չէին հասարակական քաղաքական խնդիրների բարձրացման և լուծման մեջ, սակայն նրանց գաղափարներում դրսևորվում էին ազգային ինքնագիտակցությունը, միապետության խարազանումը, անհանդուրժողությունը ֆեոդալական գաղափարախոսության նկատմամբ։

Գերմանական հումանիզմի բաղադրիչ մասերից մեկը հակապատերազմական, խաղաղասիրական տենդենցն էր։ Այս տեսակետից ուշագրավ են **Իոհան Գոտֆրիդ Հերդերի** հայացքները։ Մահաբեր պատերազմները խիստ մտատանջում էին Հերդերին։ Նա երազում էր համընդհանուր խաղաղության և բարեկամության մասին, դատապարտում էր պատերազմը, որպես միջազգային տարաձայնությունների լուծման մեթոդ։ Նա օգտագործում էր անցյալի հումանիստական տրադիցիաները, գտնում, որ հավիտենական խաղաղություն հաստատելու անհրաժեշտության մասին նախորդ մտածողների գաղափարները չեն կորցրել իրենց նշանակությունն ու թարմությունը։ Հեղինակը բանավիճում է Կանտի հետ, առանց նրա անունը տալու։ Խաղաղության պրոբլեմը Հերդերին հետաքրքրում է ամենից առաջ բարոյական կողմից։ Ի տարբերություն Կանտի, որը հավիտենական խաղաղությունը ժողովուրդների դաշինքի, համաձայնության հետ էր կապում, Հերդերը իրավացիորեն նկատում էր, որ թշնամանքով լի աշխարհում ոչ մի համաձայնություն և ոչ մի դաշինք խաղաղության երաշխիք չի կարող լինել։ Նա գտնում էր, որ բազմապիսի միջոցներն ու պաշտպանական դաշինքները բավական չեն խաղաղությունն ապահովելու համար։

Մինչև խաղաղ գոյակցության իր սեփական սկզբունքների վերլուծությանն անցնելը, Հերդերը սիմվոլիկ ձևով պատմում է խաղաղության և համաձայնության հասնելու հնդկական ցեղերի փորձերի մասին։

Իրոկեզների և դելավարների միջև եղած մշտական պատե-

թաղմի վիճակը առաջացնում է այն բանի գիտակցումը, որ հետագա փոխադարձ արյունահեղությունը կհասցնի միայն հնդիկների լրիվ բնաջնջմանը։ Այդ պատճառով իրոկեզները դելավարներին առաջարկում են հաշտություն կնքել, խաղաղություն հաստատել։ Այդ նպատակին հասնելու համար ցեղերից մեկն իրեն պետք է անվանի «խաղաղության կույս» և բնակվի կենտրոնում, իսկ մյուս ռազմատենչ ցեղերն իրենց կանվանեն «տղամարդիկ» և կտեղավորվեն նրա շուրջը։ «Տղամարդկանցից» ոչ մեկն իրավունք չունի ուռնձգություն կատարելու «կույսի» նկատմամբ, հակառակ դեպքում մնացած «տղամարդիկ» պատասխանատվության կենթարկեն վիրավորողին և եթե նա ուշքի չգա, կհարձակվեն նրա վրա։ Իսկ եթե երկպառակություններ սկսվեն «տղամարդկանց» միջև, ապա «խաղաղության կույսը» իր կողմից պետք է դիմի նրանց հետևյալ խոսքերով. «Տղամարդիկ, ինչ եք անում դուք. մտածեք ձեր կանանց և երեխաների մասին, նրանք կկործանվեն, եթե դուք կանգ չառնեք։ Մի՞թե դուք ուզում եք բնաջնջել իրար»։ Եվ «տղամարդկանց» սուրբ պարտականությունն է ունկնդրել «խաղաղության կույսի» ձայնը ու ենթարկվել նրա պահանջներին։

Իրոկեզների առաջարկն ընդունվեց և դելավարներն իրենց վրա վերցնելով «խաղաղության կույսի» դերը, դարձան խաղաղության պահապաններ։ Սակայն այդ դաշինքը երկար չըտևեց, քանի որ եվրոպացիները ներխուժեցին նրանց հողերը և «տղամարդկանց» պահանջով «խաղաղության կույսը» ըստիպված էր մասնակցելու պաշտպանությանը։ Այսպիսով, չնախատեսված բռնությունը ի չիք դարձրեց վայրենիների խաղաղության հիանալի ծրագիրը։ Հերդերը եզրակացնում է, որ մինչև խաղաղության ծառն իր ամուր արմատները չգցի յուրաքանչյուր ժողովրդի մեջ, բռնությունը կկործանի ամեն մի խաղաղասիրական նախաձեռնություն ու ծրագիր։

Ֆանտաստիկական այս պատմվածքը, որ նախորդում է խաղաղության ծրագրի նկարագրությանը, և եզրակացությունը վկայում են, որ Հերդերը իդեալիստորեն էր ըմբռնում բռնության ու թշնամանքի վերացման հեռանկարները։ Նա գտնում էր, թե այդ երևույթներն ինքնին կվերանան, հենց որ

ժողովուրդները գիտակցեն արյունահեղությունների ավելորդությունը։ Սակայն առանձին դատողություններում Հերդերը համարձակ ու խորաթափանց է։ «Այն աշխարհում,— գրում է նա,— որտեղ պատերազմները նախապատրաստվում և սանձազերծվում են մինիստրական առանձնասենյակների խորքում, խաղաղության նախիշտի բոլոր ջանքերն ավելորդ կլինեն»[1]։

Հերդերը խաղաղության մեծ նախիշտ էր համարում համընդհանուր արդարությունը, մարդկայնությունը, գործունյա բանականությունը, որոնք եթե նույնիսկ չհասցնեն հավիտենական խաղաղության, ապա աստիճանաբար կկրճատեն պատերազմները։ Նա մեծագույն ատելությամբ էր խոսում պատերազմի մասին, որը ոչ միայն բնաջնջում է մարդկանց և ավերում ամեն ինչ, այլև առաջացնում է հիվանդություններ, սով, ժանտախտ, թալան, բռնություն, ընտանիքների քայքայում և բարքերի այլասերում։ Այդ վիճակից դուրս գալու ուղին մարդկանց բարոյական վերադաստիարակությունն է, կատարելագործումը։ Հիրավի, Հերդերի համար մարդկանց բարոյական վերափոխումը գործունյա կյանքի դժվարությունները հաղթահարելու կարողությամբ օժտված մի հրաշակերտ միջոց է։ Եվ նա ներկայացնում է յոթ սկզբունքներից կազմված բարոյական դաստիարակության մի ամբողջական սիստեմ։ Այդ սկզբունքներն են.

1. Ատելություն պատերազմի նկատմամբ։ Այդ զգացմունքը պետք է ամենուրեք ներարկվի մարդկանց։ «Պատերազմ» բառը պետք է այնպիսի սարսուռ առաջացնի, ինչպիսին առաջացնում են խելագարությունը, ժանտախտը, սովը, երկրաշարժը, ծաղկախտը հիշելիս։

2. Քիչ հարգանք դեպի ռազմական փառքը։ Նա առաջարկում է լայնորեն տարածել այն համոզմունքը, որ նվաճողական պատերազմներում ցուցաբերած հերոսությունն արժանի չէ այն փառքին ու պատվին, որ ավանդորեն մատուցվում է նրանց։ «Բանականությամբ օժտված բոլոր մարդկանց համատեղ ջանքերով հարկավոր է հողմացրիվ անել Մարսյի,

[1] **И. Г. Гердер.** Письма для поощрения гуманности, «Трактаты о вечном мире», стр. 205.

Սուլլայի, Աթիլլայի, Չինգիզ-խանի, Թամերլանի անունները շրջապատող կեղծ փառքի լուսապսակը, մինչև որ վերջապես ամեն մի կրթված ուղեղ կհասկանա, որ նրանց մասին եղած երգերը հերոսական են այնքան, ինչքան երգերը ավազակ Լիպս Տուլյանի մասին»։

3. Ատելություն պետական կեղծ կառավարման նկատմամբ, որը դրսևորվում է օտար տերիտորիաներ նվաճելու հաշվին իրենց սահմաններն ընդարձակելու, եկամուտներն ավելացնելու, ճարպիկ բանսարկությունների, միահեծան կամայականության, խորամանկության և խաբեբայության քաղաքականության մեջ։ Նման քաղաքական գիծը, որ դիտվում է որպես պետական կառավարման արվեստ, պետք է մերկացվի։ Դրա կրողները պետք է իրենց տեսքով կանգնեն հասարակ ժողովրդի աչքերի առջև։ Համընդհանուր բողոքի ձայնը պետք է հաղթանակ տանի պետական աստիճանավորների անհերես ձեռնածության և սնապարծության նկատմամբ։

4. Մաքրված հայրենասիրություն։ Հայրենասիրությունը պետք է ազնվացվի և լուսավորվի։ Այն պետք է միաձուլվի ուրիշ ժողովուրդների նկատմամբ ցուցաբերվող հարգանքի, նրանց արժանապատվությունն ու անկախությունը հարգելու զգացմունքի հետ։ Ծաղրանքի ու ատելության են արժանի նրանք, ովքեր ատում և հալածում են միմյանց՝ իրենց համար բոլորովին անհասկանալի և իրենց չվերաբերող օտար գործերի համար։

5. Արդարության զգացմունք ուրիշ ժողովուրդների նկատմամբ։ Ամեն մեկն իրեն պետք է ուրիշի տեղը դնի։ Դա կարթնացնի համերաշխության զգացմունք, որի ձևավորմանը զուգընթաց աննկատելիորեն կծագի լուսավորված ժողովուրդների դաշինքն ընդդեմ ռազմատենչ ուժերի։ «Ավելի շուտ պետք է հույս կապել խաղաղ գալիքի, քան Սեն-Պյեռի առաջարկած առանձնասենյակների ու արքունիքների ձևական համաձայնության հետ։ Նրանցից չի կարելի առաջին քայլերն սպասել, բայց նրանք ի վերջո հարկադրված կլինեն, հակառակ իրենց գիտակցությանն ու կամքին, ենթարկվել ժողովուրդների պահանջին»[1]։

[1] Նույն տեղում, էջ 210։

Ինչպես երևում է, Հերդերն անցնում է ժողովրդի կողմը, նրա մեջ տեսնելով հակապատերազմական լիցքերի մի անըսպառ աղբյուր։ Ժողովուրդն ընդունակ է իշխելու մարդասպան կրքեր բորբոքող ուժերին։ Պատերազմի խավարամոլ ուժերի դեմ մղվող պայքարում ժողովուրդների համերաշխության վճռական դերի մասին Հերդերի առաջ քաշած գաղափարն արժանի է ամենաբարձր գնահատականի։ Սակայն Հերդերը չէր կարող առաջ անցնել իր դարաշրջանից։ Այդ իսկ պատճառով, քաղաքականության ոլորտում ժողովրդական մասսաների դերի մասին նրա հետաքրքիր դատողությունները ոչ գիտական, վերացական բնույթ են կրում։ Հերդերը հումանիստ է, նա երազում է հաշտ ու խաղաղ կյանքի մասին, աշխատում գտնել չարագործ ռազմամոլների ճանապարհը փակող ամուր պատնեշներ և նրա մտորումներն ապարդյուն չեն անցնում։ Նա առաջ է քաշում խելացի սկզբունքներ, որոնց կենսագործումը, ըստ նրա, խավարամոլներին կխանգարի մարդկանց ներքաշելու փոխադարձ բնաջնջման սպանդանոցը։ Այս տեսակետից ուշագրավ է նաև նրա հաջորդ սկզբունքը։

6. Մարդիկ պետք է մանկական հասակից դաստիարակվեն առևտրի հասարակական և անձնական նշանակությունն ըմբռնելու ոգով։ Առևտուրը ոչ թե պետք է բաժանի, այլ միավորի մարդկանց։ Ով կփորձի խանգարել միջազգային առևտրին, կառաջացնի ժողովուրդների համընդհանուր զայրույթը։ Միջազգային առևտրական կապերը կխափանեն ազատ տարրերքների ստրկացման փորձերը։

7. Պատերազմի դեմ, խաղաղության համար մղվող պայքարում հզոր միջոց է աշխատանքային գործունեությունը։ Հասկը հզոր զենք է սրի դեմ։ «Մարդիկ որքան ավելի շատ ճաշակեն հանրօգուտ գործունեության պտուղները և համակվեն այն բանի գիտակցումով, որ մարտական սակրով ոչինչ չի կարելի ստեղծել, բայց շատ բան կարելի է կործանել, որքան ավելի շուտ խղճուկ ու ծիծաղելի դառնան խայտառակ նախապաշարմունքները պատերազմի համար ծնված կաստայի աստվածային կոչվածության մասին, որի մեջ իբր խոսում է Կայենի, Նեմվրոդի և Օգայի, Վասանեցի արքայի հերոսական արյունը, այնքան մեծ հարգանք կվայելեն հասկերից պատ-

բաստված պսակը, խնձորենու և սրմավենու ճյուղերն այն անփառունակ պսակի համեմատությամբ, որը աճում է մռայլ կիպարիսի կողքին և եղինջի ու տատասկների հետ միասին վերքեր ու խոցեր է առաջացնում»։

Այսպիսով, Հերդերը խաղաղության գործի հաղթանակը չի կապում կառավարողների ողջամտության հետ։ Նա դիմում է ժողովրդական մասսաներին, հավատում նրանց ստեղծագործական ուժին, կարողությանը։

Կանտի հավիտենական խաղաղության գաղափարը հավանություն է գտնում Իոհան Գոտլիբ Ֆիխտեի կողմից։ Գնահատելով Կանտի «Դեպի հավիտենական խաղաղություն» աշխատությունը, Ֆիխտեն տրակտատի հիմնական գաղափարը համարում է այն, որ ինքը՝ բանականության էությունը, խաղաղության գաղափարի իրացման կարիք է զգում։ Հավիտենական խաղաղությունը մի խնդիր է, որ իմանենտ է մաքուր բանականությանը։ Մեկնաբանելով Կանտի աշխատության երկրորդ դիֆինիտիվ հոդվածը, ըստ որի «միջազգային իրավունքը պետք է հիմնվի ազատ պետությունների ֆեդերալիզմի վրա», Ֆիխտեն գրում է. «Պատերազմն արդարացնող միջազգային իրավունք չկա: Իրավունքը խաղաղությունն է։ Պատերազմը առհասարակ իրավական վիճակ չէ... Հազիվ թե հնարավոր լինի գտնել ավելի անհեթեթ մի բան, քան պատերազմի իրավունք հասկացությունը»[1]։

Ֆիխտեն նշում է, որ խաղաղության հասնելու համար անհրաժեշտ է փոխել գոյություն ունեցող ունեցվածքային հարաբերությունները։ Իր ներքին կառուցվածքով անարդարացի պետությունը անխուսափելիորեն ձգտում է թալանել հարևաններին, որպեսզի որոշ հանգիստ տա իր արյունաքամ եղած քաղաքացիներին և նվաճի նոր լրացուցիչ աղբյուրներ։ Եվ միայն այն բանից հետո, երբ կհաստատվի ունեցվածքային հավասարություն և հարստությունները հավասարաչափ կբաշխվեն, օրինական պետության մեջ կհաղթի իրավունքն ու բանականությունը և հավիտենական խաղաղությունը ժողովուրդների դաշինքի միջոցով կդառնա իրականություն։

[1] **И. Г. Фихте.** К вечному миру. Философский проект Иммануила Канта. «Трактаты о вечном мире», стр. 199.

Ֆիխտեն գրում է, որ արդարացի պետական կարգ ստեղծելու ուղղությամբ բնության վերընթաց շարժումն առկա է։ «Սակայն հենց որ դա իրականացվի,— ասում է նա,— ապա այդ սկզբունքների վրա հիմնված բոլոր պետություններում կհաստատվեն միջազգային իրավունքի վրա խարսխվող հարաբերություններ, հավիտենական խաղաղություն, քանի որ այդ պետությունները պատերազմում կտուժեն միայն, ոչինչ ձեռք չբերելով»։

Ֆիխտեն համոզված էր, որ առկա է խաղաղության հասնելու տենդենցը։ Սակայն նա չէր կարողանում գտնել սոցիալական այն հարաբերությունները, որոնց մեջ պատերազմներն ավելորդություն կլինեն։ Ինչևիցե, որոշակի հասարակական պայմաններում խաղաղության հնարավորության մասին գաղափարը, որի մեջ կմարմնավորվի արդարությունը և կպահպանվեն իրավական նորմաները՝ ռացիոնալ և դիալեկտիկական գաղափար է։

Առանձին առիթներով պատերազմի մասին խոր ատելությամբ են խոսել Լայբնիցն ու Սպինոզան, Յումն ու Պասկալը։ Յումը պատերազմող ազգերին համեմատում է երկու հարբեցողների հետ, որոնք կռիվ են սարքում ամանեղենի կրպակում և բացի հարվածներից առաջացած կապտուկները բուժելու անհրաժեշտությունից, ստիպված են որոշակի գումար մուծել ջարդված ամանեղենի համար։ Պասկալը համոզմունքով ընդգծում է, որ չկա ավելի ծիծաղելի բան, երբ մարդուն թույլատրվում է սպանել ինձ զուտ այն բանի համար, որ նա գետի մյուս կողմում է ապրում, և որ նրա իշխանը հավակնություններ ունի իմ իշխանի նկատմամբ, չնայած այն բանին, որ ես ոչ մի հավակնություն չունեմ նրա իշխանի նկատմամբ։ Ի դեպ, Վոլտերը ավելացնում է. «ծիծաղելի» բառն այստեղ հարմար չէ, հարկավոր է ասել «նողկալի խելացնորություն»։

Համընդհանուր խաղաղության գաղափարը հրապուրում է 18-րդ դարի անգլիական մատերիալիստ **Ջոզեֆ Պրիստլիին**։ Նա պատմական մեծ իրադարձություններ էր համարում ֆրանսիական բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունը, ինչպես նաև հյուսիս-ամերիկյան նահանգների պատերազմն անկախության համար։ Պրիստլին հույս ուներ, որ հենց այդ

իրադարձությունները մարդկային պատմության մեջ նոր դարաշրջան կբացեն, որ կհասցնի քաղաքացիական և արտաքին պատերազմների վերացմանը։ Հաղթանակի բանականությունը և բանականության թագավորությունը՝ խաղաղության թագավորությունը։ «Կգա երջանիկ այն վիճակը... երբ աշխարհի բոլոր ծայրերում կդադարեն պատերազմները, մարդիկ իրենց սրերից արոր, իսկ նիզակներից մանգաղ կձուլեն։ Ժողովուրդն այլևս ժողովրդի դեմ չի ապստամբի և ժողովուրդներն այլևս պատերազմել չեն սովորի»[1]։

* * *

Արևմտաեվրոպական մտածողների հումանիստական հայացքներն ու ավանդույթներն իրենց ըմբռնումն ու արտացոլումն են գտել ռուս լուսավորիչների դատողություններում։

18-րդ դարի երկրորդ կեսին Ռուսաստանում ֆեոդալաճորտատիրական սիստեմի հիմքերն սկսում էին խարխլվել։ Ծայր էր առնում կապիտալիստական հարաբերությունների զարգացումը։ Այդ հիման վրա ռուսական առաջավոր հասարակական միտքը, ֆրանսիական լուսավորիչների գաղափարական ազդեցության ներքո, սկսում էր վերագնահատել հին հասկացություններն ու հայացքները։ Գյուղացիական հակաճորտատիրական պոռթկումները ռուսական հասարակական քաղաքական մտքի ներկայացուցիչներին ստիպում էին խորհրդածել երկրի սոցիալական վերակառուցման հարցերի վրա։ Դրսևորվում էին հակապատերազմական տրամադրություններ ու հայացքներ։

18-րդ դարի ռուս լուսավորիչ Ս. Ե. Դեսնիցկին բացասական վերաբերմունք ուներ պատերազմների նկատմամբ։ Պատմական կոնկրետ փաստերով նա ցույց էր տալիս պատերազմների վնասաբեր ու կործանարար հետևանքները։ Նկատի ունենալով հռոմեացիների բազմաթիվ ռազմական արշավանքները, Դեսնիցկին գրում էր. «Նրանց մոտ հաղթանակին հետևում էր հաղթանակ և ամեն մի նվաճում բորբոքում էր ցուցամոլ ու մեծամիտ կարծիք իրենց ռազմական փառքի

[1] **Дж. Пристли.** Избранные сочинения, М., 1934, стр. 258.

մասին, որից հետագայում կատարվեց այն, որ հռոմեացինե-րը համակվում էին ռազմական փառքի ու պատվի մասին մտամարզանքներով, իսկ հայրենիքի խաղաղ վիճակի օրոք անհրաժեշտ մտքերը արհամարհված էին մնում... Այս իսկ պատճառով, մենք տեսնում ենք, որ այն պետություններում, որտեղ ամենուրեք ռազմական փառքն ու ռազմական աստի-ճանավորությունն է գերադասվում, ազատ գիտություններն ու նկարչությունն արագորեն չեն ծաղկում»[1]:

Դեսնիցկին մեծ նշանակություն էր տալիս առևտրին, այն բնութագրելով որպես ժողովուրդներին միավորող միջոց և միջազգային պայմանագրերի ու դաշինքների ամրության աղ-բյուր:

Դեսնիցկին բարձր էր գնահատում Հուգո Գրոցիի «Պատե-րազմի ու խաղաղության իրավունքի մասին» գիրքը, այն հա-մարելով իրավագիտության լավագույն սիստեմ: Սակայն Դեսնիցկին Գրոցիի հեղինակության առջև կուրորեն չէր խո-նարհվում: Նա նշում էր այդ գրքի թերությունները: «Նրա եր-կը կազուիստական է,— գրել է Դեսնիցկին,— կանխամտած-ված կերպով ստեղծված կոմսերի և վերնախավի համար, որի մեջ ապացուցվում է, թե ինչպիսի դեպքերում օրինական պա-տերազմ կարելի է հայտարարել և ինչքան հեռու պետք է տա-րածվի այդ իրավունքը»:

Դեսնիցկին գտնում էր, որ Գրոցիի կարծիքով պատերազմ կարելի է հայտարարել բոլոր դեպքերում և ամեն մի վիրա-վորանքի համար, որն օրենքով պատժի ենթակա չէ: Իրակա-նում ոչ թե կառավարողների վիրավորանքն է «պատերազմի և խաղաղության իրավունքի» հիմքը, այլ պետությունների տըն-տեսական զարգացումը:

Հետաքրքրական են 18-րդ դարի ռուս մտածող Յա. Կոզելսկու դատողությունները: Նա պատերազմը բնութագրում է որպես վնասաբեր քաղաքականություն, որ առաջին հերթին ոչնչով չփոխհատուցվող մարդկային կյանքեր է խլում. «Թույլ և անբավականաչափ է այն քաղաքականությունը,— ասում է

[1] **С. Е. Десницкий.** Слово о прямом и ближайшем способе к научению юриспруденции. Избр. произв. русских мыслителей II половины XVIII в. М., 1952, стр. 192.

նա,— որը հարուստ եկամուտներ ձեռք բերելու համար թեկուզ մի քանի մարդ է կործանում. կորցրած եկամուտների փոխարեն մարդկանց հետ միասին կարելի է նոր եկամուտներ ձեռք բերել, իսկ կորցրած մարդկանց փոխարեն չի կարելի ո՛չ նոր եկամուտներ, ո՛չ այդպիսի նոր մարդիկ ստանալ...»[1]։ Այդ պատճառով, անհրաժեշտ է խուսափել պատերազմից, առանձնապես կառավարող վերնախավի եսասիրական շահերի համար պատերազմներից։ Յուրաքանչյուր հասարակության անվտանգության պայմանը նրա բարի և արդարացի վարվեցողությունն է ուրիշ ժողովուրդների հետ, նրանց վնաս բերող գործողություններից խուսափելը։ Մարդիկ հարուստ կամ աղքատ են ոչ թե իրերի քանակով, այլ մյուս մարդկանց հետ համեմատվելով։

Կոզելսկին խարազանում էր նվաճողական պատերազմները, որոնց պատճառը, ըստ նրա, ուրիշի բարիքը զավթելու ձգտումն է։

Կոզելսկին հաճախ տարվում է բարոյախոսությամբ, ասելով, որ իրեն անվնաս պահելու համար մեծ հասարակությանը հարկավոր են մեծ խստապահանջություն՝ իրավական օրենքները, մեծ կայունություն և հաստատակամություն՝ բարի սովորությունները պահպանելու համար, մեծ զգուշություն և կարևորություն՝ փոփոխությունների մեջ։ Անկախ բոլոր խորհուրդներից այդ հասարակությունը պետք է մշտապես և անգույլ կերպով ձգտի բարեգործության։

Սակայն Կոզելսկին ռեալ իրականությունից չէր կտրվում։ Նա հասկանում էր, որ քաղաքականության այնպիսի խստավարժված միջոց, ինչպիսին պատերազմն է, հեշտությամբ և արագորեն չի հաղթահարվի, թեպետև այն անխուսափելի չարիք չէ։ Կոզելսկին միաժամանակ հավատում էր, որ կգա ժամանակ, երբ նվաճումների, վաճառականության և այլ գրափումների նկատմամբ ունեցած կրքերը կհանգչեն։ Դա կկատարվի ոչ թե ինքն իրեն, այլ սոցիալական վերափոխությունների հետևանքով։ «Ամբողջ ժողովուրդներ շատ դարերի

[1] **Я. П. Козельский.** «Философические предложения», Избр. произв. русск. мыслителей II-ой половины XVIII в., М., 1952, стр. 543—545.

ընթացքում փոխվում են բարքերի, սովորությունների և կըր-քերի մեջ... Լարված բոլոր գործերը չեն կարող ամուր լինել... Մեծ հասարակությունը նվաճումների կարիք... չի զգում»[1]։

Կոզելսկին մոտենում է հասարակական կյանքի դինամիզմի ըմբռնմանը, սակայն նրան անհասկանալի են մնում դրա շարժառիթները։ Նա երազում էր այնպիսի հասարակության մասին, որտեղ սեփականության վիճակի մեջ տարբերություններ չեն լինի և կչքանա շահասիրություն, իշխանատենչություն, նախանձ, ատելություն, թշնամանք և այլ խոցեր ծնող անզուսպ էգոիզմը։ Համաձայն նրա հայացքների, հենց այդ էգոիզմից է պատերազմն անհրաժեշտ և համարյա օրինական վարժություն դարձել և բոլոր պատմությունները լի են ռազմական գործերով, ռազմական վարժություններով ու ռազմական խորամանկություններով, իսկ օգտակար օրենքների, բարի հիմնարկների, մասնավոր սովորությունների և մյուս առաքինությունների մասին քիչ է հիշատակվում»։

Կոզելսկին անցյալի պատմության հայեցողական ըմբռնման շրջանակներից դուրս չի գալիս։ Ապրելով ճորտատիրական հարաբերությունների պայմաններում, նա երազում էր լավագույն ապագայի մասին, դրա մեջ որոնելով խաղաղության հնարավորությունը։ Բայց նա պատերազմների իսկական դրդապատճառները չէր ըմբռնում, ուռճացնելով և սխալ մեկնաբանելով կենսաբանական ազդակները։ Այսպես թե այնպես, հանդես գալով որպես զավթողական պատերազմների հակառակորդ, Կոզելսկին մնում է իր դարաշրջանի հումանիստներից մեկը։ Ի դեպ, նա գտնում էր, որ երբ ժողովուրդը պաշտպանում է իր հայրենիքն ու իրավունքները, նա արդարացի պատերազմ է մղում։

Հակապատերազմական, խաղաղասեր տենդենցներ են դրսևորվում ռուս մատերիալիստ հեղափոխական **Ա. Ն. Ռադիշչևի** աշխարհայացքում։ Ռադիշչևը Կոզելսկու շատ մտքերին քաղաքական սրություն տվեց։ Որպես Ռուսաստանի հեղափոխական մտքի նախահայր, ճորտատիրության հետևողական թշնամի և արմատական սոցիալական վերափոխության-

---

[1] Նույն տեղում, էջ 546, 550։

ների կողմնակից, Ռադիշչևը վայրույթով բողոքում է նվաճողական պատերազմների դեմ։ Նա ընդգծում է, որ մարդու էությանը խորթ են ագահությունն ու շահամոլությունը։ Միջազգային հարաբերություններում գործում է ուժեղի իրավունքը, սուրը։ Ուժեղը օրինականացնում և արդարացնում է իր գործողությունները։ Մարդու վեհությունն ու առաքինությունը ոչ թե ժողովուրդներին սնանկացնելու և թալանելու, այլ բարեգործության մեջ է։ Ալեքսանդր Մակեդոնացու նվաճողական արշավանքները չէին կարող նրան փառք ու պատիվ բերել. հակառակը, նրա անցած ճանապարհները մարդկանց արյամբ են շաղախված։— Անմիտ,— դիմում է Ռադիշչևը Մակեդոնացուն,— հայացք նետիր քո արշավանքներին։ Քո թռիչքի գահավիժող մրրիկը... իր ետևից թողնում է անապատ և ամայի տարածություն...»[1]։ Ժողովուրդները կանիծեն նրան, որ մահ ու սարսափ է տարածել։

Ռադիշչևը պատերազմը բնութագրում է որպես միմյանց հոշոտելու մարդկանց գազանային սովորություն, որ ծնվել է Ասիայի վայրենի ժողովուրդների մոտ և տարածվել աշխարհով մեկ։ Նա բանավիճում է Արիստոտելի հետ, մերժում նրա այն տեսակետը, թե ստրկությունը բնական վիճակ է։—Ստրկությունը,— ասում է նա,— կենսապայմանների, մարդկային էությանն հակասող, բռնություն գործադրելու հետևանք է։ «Ձեզ մի արդարացրեք, մարդկության բռնադատողներ, չարագործներ,— շարունակում է Ռադիշչևը,— թե այս սարսափելի շղթաները հնազանդում պահանջող կարգ ու կանոն են»։

Ռադիշչևը հավատում է, որ հասարակության հեղափոխական վերափոխումը մարդկությանը հեռու կպահի բռնությունից և ստրկացումից, «Ընդմիշտ կփակի պատերազմի աստված երկերեսանի Յանուսի տաճարը»։

Խաղաղության և պատերազմի պրոբլեմներին նվիրված մի ամբողջական ծրագիր մշակեց 18-րդ դարի ռուս սոցիոլոգ, լուսավորիչ Վ. Ֆ. Մալինովսկին։ Նրա «Դատողություն խաղաղության և պատերազմի մասին» տրակտատը հագեցված

---

[1] **А. Н. Радищев.** Избр. филос. и обществ-полит. произведения, М., 1952, стр. 140.

է բացահայտ հակամիլիտարիստական ոգով։ Ջայրույթով ու ատելությամբ է նա խոսում պատերազմի մասին, որը, նրա խոսքերով ասած, իր մեջ ամփոփում է գազանների մոլեգնությունը և մարդկային բանականության արվեստը՝ բնաջնջելու և ավերելու նպատակով։ Այն դժոխային մի անկուշտ հրեշ է, որի հետքերն ամենուրեք արյամբ են շաղախված։ Պատերազմըն իր հետ անհուսություն, սարսափ, վիշտ, հիվանդություններ և մահ է բերում։ Պատերազմը մարդկության ու լուսավորության ոխերիմ թշնամին է։ Այն ներելի է միայն մեր նախնիներին, որոնք բարբարոսական կյանք էին վարում, չգիտեին ուրիշ փառք, բացի սպանելուց և ավերելուց։

Մալինովսկին ժխտում է պատերազմի անհրաժեշտությունը։ Մարդիկ պետք է հրաժարվեն պատերազմից և ցույց տան, որ իրենց խորթ են բարբարոսական սովորությունները։ «Մարդիկ կարծում են,— ասում է նա,— թե առանց պատերազմի չեն կարող ապրել, որովհետև պատերազմները շատ հնուց են գալիս։ Սակայն չարիքի երկարատևությունը չի ապացուցում դրա անհրաժեշտությունը»[1]։ Ժողովուրդներին մերձեցնող ընդհանուրն ավելի շատ է, քան տարբերությունները։ Եվրոպական մայրցամաքի օրինակով Մալինովսկին ցույց է տալիս, որ այդ աշխարհամասի բնակիչներին միավորող բարքերը, գիտություններն ու առևտուրը հող են ստեղծում նրանց միջև խաղաղություն ապահովելու համար։

Հեղինակը քննադատում է այն տեսակետը, որի համաձայն պատերազմը օգուտ է բերում, քանի որ մարդկանց բազմացումը կանխող շատ գործուն միջոց է։ Ծաղրելով այս կարծիքը, Մալինովսկին հեգնանքով նկատում է. «Կարճ ասած, մենք շատ ներողամիտ կվերաբերվեինք մեր ժառանգության նկատմամբ, եթե չդադարեինք միմյանց սպանել, վախենալով այն բանից, որ նրանց ապրելու տեղ չի լինի» (էջ 218)։

Մալինովսկին հոդմացիվ է անում նաև այն կարծիքը, ըստ որի երբ պատերազմը նպաստում է պետությունների ընդար-

[1] **В. Ф. Малиновский.** Рассуждение о мире и войне. «Трактаты о вечном мире», стр. 215.

ձակմանը։ «Պետության ուժը,— ասում է նա,— հզորությունն ու ամրությունը ոչ տիրապետությունների տարածությունից են կախված, ոչ էլ մարդկանց թվից... պատերազմների միջոցով իրականացված նվաճումները նման են շենքի հիմքի անհամաչափ կառույցներին, որոնք ինքն իրենց փլվում են և ամբողջ շենքը փլուզման վտանգի տակ դնում։

Պետության ամենահուսալի ուժը այն կազմող ժողովրդի ուժն է» (էջ 218—219)։

Մալինովսկին հասկանում է, որ կառավարողների քաղաքականության և ժողովուրդների շահերի միջև անտագոնիզմ կա։ «Ժողովուրդները... փակված են քաղաքականությամբ... ո՛չ պատերազմի փառքը, ո՛չ էլ արքունիքի վեհաշուքությունը ժողովրդի փառքն ու վեհաշուքությունը չեն»։ (էջ 221)։ Միայն ստեղծագործական ոլորտում են ժողովուրդները փառք ու պատիվ ձեռք բերում։ Մեկը մյուսից ուժով ու հզորությամբ առաջ անցնելու նրանց ձգտումը պահպանում է նրանց միջև ատելություն և զգուշություն, որոնք նպաստում են պատերազմը շարունակելուն։ Մեկը մյուսից առաքինությամբ և ձիրքով առաջ անցնելու ձգտումը նպաստում է նրանց իսկական բարօրությանն ու փառքին։

Մարդկային արյունահեղությունները Մալինովսկին բացատրում է սովորույթով, տգիտությամբ, սնոտիապաշտությամբ, շահամոլությամբ և էգոիզմով, որոնք կհաղթահարվեն մարդկային այնպիսի ընդհանուր հատկություններով, ինչպիսիք են ափսոսանքը, երախտապարտությունը, մտերմությունն ու սերը։ Այսպիսով, ստացվում է, որ սոցիալական ընդհարումների շարժառիթներն ու հաղթահարման հնարավորությունները պետք է որոնել մարդու էության մեջ։ Որպեսզի ժողովուրդները փոխադարձաբար իրար հարգեն, պետք է մեկը մյուսին լավ ճանաչեն։ Տարբեր ժողովուրդների մեջ կարելի է գտնել միևնույն համոզմունք ունեցող մարդիկ, ինչպես միևնույն ժողովրդի մեջ կարելի է գտնել տարբեր համոզմունք ունեցող մարդիկ։ Տարբերությունները չպետք է բաժանեն մարդկանց, թեպետև ժողովուրդները կարող են ունենալ առավելություններ և թերություններ։ Անհրաժեշտ է մարդկանց միավորել սերտ կապերով, որպեսզի նրանք օգնեն միմյանց,

փոխադարձաբար ավելի կատարյալ դառնան և միասին հաղթահարեն թերությունները։

Մալինովսկին պնդում էր, որ պատերազմը հարմար ուղի չէ հերոսություն կատարելու կամ փառքի հասնելու համար։ Իսկական փառքը ձեռք է բերվում ստեղծագործական, այլ ոչ թե ոչնչացման ոլորտում։ Ալեքսանդր Մակեդոնացին, Հուլիոս Կեսարը, Թամերլանն ու Չինգիզ խանը իրենց կարճատև կյանքի ընթացքում ավելի շատ չարիքներ են պատճառել մարդկությանը, քան համաճարակները, երկրաշարժերը, ջրհեղեղներն ու բնության մյուս տարերքները։ «Մենք պետք է աղոթենք աստծուն,— ասում է նա,— որպեսզի ազատի մեզ այդպիսի մեծություններից կամ մենք պետք է ջնջենք կեղծ հասկացությունը փառքի մասին, որ մեծություններին վնասաբեր գործերի է դրդում։ Մենք պետք է խորշենք նրանցից, ովքեր անօգուտ մեծություններ են և սարսափենք նրանցից, ովքեր վնասաբեր մեծություններ են» (էջ 226—227)։ Ավազակը մեռնում է կառափնարանի վրա՝ մեծագույն ոճրագործի անունը շուրթերին, նվաճողը վախճանվում է բնական մահով՝ մեծագույն հերոսի անունը շուրթերին։ Իսկական փառքը առաքինությամբ ձեռք է բերվում ստեղծագործական ոլորտում, որ ճանաչվում է որպես իմաստություն ու մնում է հավերժ։

Մալինովսկին գովերգում ու փառաբանում է խաղաղությունը, որի պայմաններում ժողովուրդները կապրեն բարեկեցիկ կյանքով։ Նա իրավացիորեն նկատում է, որ պատերազմի չարիքը չի վերանա մինչև այն ժամանակ, քանի դեռ պահպանվում է նրա վերսկսման հնարավորությունը։ Նա համոզված է, որ իշխող ուժերն են սանձազերծում պատերազմներ, որոնք իրենց չարանենգ գործողությունները քողարկում են մարդասիրական սուրբ խոսքերով։ «Ներկա հարյուրամյակի գլխավոր պատերազմներն ապացուցում են,— նշում է Մալինովսկին,— որ իսկական քաղաքականությունը աղետաբեր է ժողովուրդների բարօրության համար, որ եվրոպական տերությունները ոչ մի ճիշտ բան չունեն իրենց վարքագծի մեջ, բացի ուժեղանալու և վնասելու ցանկությունից... Որ տրակտատները խախտվում են առանց որևէ խղճի զգացմունքի, որ քաղաքական դաշինքները արագացնում են պատերազմի սան-

ձաղերծումը և այն տարածում են շատ ժողովուրդների վրա» (էջ 239—240)։

Այս խորիմաստ դատողությունից կարելի է եզրակացնել, որ Մալինովսկին սկսում էր հասկանալ քաղաքական դաշինքների իսկական արժեքը և իմաստը, տարակուսանք արտահայտելով նման համաձայնագրերի արդյունավետության նկատմամբ։

Մալինովսկին առաջարկում է խաղաղության իր ծրագիրը։ Նա գտնում է, որ անհրաժեշտ է ստեղծել պետությունների համաեվրոպական ասոցիացիա, որը կոչված է կարգավորելու միջպետական հարաբերությունները՝ սահմանված ընդհանուր օրենքների հիման վրա։ Այդ օրենքների պահպանումն ու իրականացումը մտնում է դաշնակից ժողովուրդների ներկայացուցիչներից կազմված ընդհանուր խորհրդի իրավասության մեջ։ Խորհուրդը պահպանում է ընդհանուր անվտանգությունն ու սեփականությունը, ինչպես նաև խաղաղ ճանապարհով լուծում է միջպետական տարաձայնությունները։ Որևէ պետության կողմից խորհրդի որոշումը չկատարելու դեպքում այն հեռացվում է դաշինքից, իսկ համառելու դեպքում նրա դեմ համատեղ ուժ է գործադրվում։

Առևտուր անող երկրները ենթարկվում են միևնույն օրենքներին։ Յուրաքանչյուր երկիր անկախ ու սուվերեն է, բոլոր երկրները փոխադարձաբար հարգում են այդ սկզբունքները և միմյանց տերիտորիալ ամբողջականությունը։ Սպառազինումն ու զորքերի տեղաշարժերը սահմանափակվում են օրենքներով։

Մալինովսկին համոզված չէր հավիտենական խաղաղության իր ծրագրի իրականացման մեջ։ «Աստված միայն կարող է երկրի վրա ընդհանուր հավիտենական խաղաղություն հաստատել»— ասում է նա։ Բայց Մալինովսկին հավատում է, որ պետությունների միջև սահմանվող ու նրանց կողմից պահպանվող օրենքների հիման վրա հնարավոր կլինի կանխել միջպետական երկպառակություններն ու պատերազմները։ Նա ռոմանտիկական երանգավորումներով նկարագրում է ապագա խաղաղ ու հաշտ ապրող Եվրոպայի պատկերը. «Խաղաղությունը Եվրոպայում կտարածի նրա ժողովուրդների բա-

ընկեցությունը կազմող ատատություն և արդարություն,— ասում է նա,— այն կպահպանի նրան անկախության և ամբողջականության իսկական վիճակում և այնտեղ տարածվող լուսավորությունը կհասցնի մարդկային իմաստության բարձրագույն աստիճանին։ Ժողովուրդների ու հողերի տեսքը կըփոխվի այնպես, որ դժվար կլինի դրանք ճանաչել, և եվրոպացիները կափսոսան ու կզարմանան, որ այդքան երկար մոլորվել են ու հետաձգել խաղաղության երանությունը, որով հաճենալը կախված է միայն իրենց ընդհանուր ցանկությունից» (էջ 233)։

Մալինովսկու պլանն աչքի չի ընկնում օրիգինալությամբ։ Այն իրենից ներկայացնում է 18-րդ դարում տարածված պետությունների դաշինքի գաղափարի տարբերակներից մեկը։

* * *

Դժվար չէ նկատել, որ պատերազմը նշավակող և խաղաղությունը գրվատող գաղափարները լայն տարածում գտան բուրժուական հարաբերությունների ձևավորման, զարգացման և նյութականացման պրոցեսում։ Երիտասարդ հեղափոխական բուրժուազիայի գաղափարախոսները սոցիալական բոլոր չարիքների աղբյուրը տեսնում էին ֆեոդալա-միապետական, ինքնակալական կարգերի մեջ։ Նրանց թվում էր, թե բուրժուահանրապետական պետական կառուցվածքի պայմաններում կստեղծվի հարատև խաղաղության հնարավորություն։ Ինչպես Ֆր. Էնգելսն էր գրում, ոչ հասուն տնտեսական հարաբերություններին համապատասխանում էին ոչ հասուն տեսություններ։ «Չզարգացած տնտեսական հարաբերությունների մեջ դեռևս թաքնված հասարակական խնդիրների լուծումը հարկ էր լինում գլխից մոգոնել»[1], հասարակության արատների ու պակասությունների վերացումը մտածող ուղեղի խնդիր էր դարձել։

Սակայն օբյեկտիվ իրականությունը ցրեց լուսավորության դարաշրջանի հումանիստների պատրանքները։ Ֆեոդալիզմին փոխարինած կապիտալիզմն էլ ավելի սրեց հասարակական

[1] **К. Маркс** и **Ф. Энгельс.** Соч. т. 20, стр. 269.

անտագոնիզմը։ Բուրժուական հեղափոխությունների հետևանքով ծնված «բանականության» հասարակությունը զարգացման պրոցեսում կորցրեց իր բանականությունը և գոյության իրավունքը։ «Բանականության պետությունը լիովին խորտակվեց... Խոստացած հավիտենական խաղաղությունը նվաճողական պատերազմների մի անվերջ շարքի վերածվեց»[1]։

Ֆ. Էնգելսը գրում էր, որ համապատասխան քաղաքական կազմակերպության կամ եվրոպական հանրապետության ըստեղծման պայմաններում հավիտենական խաղաղության հասնելու մասին գաղափարները դատարկ պատրանքներ էին այնպես, ինչպես առևտրի համընդհանուր ազատության էգիդայի ներքո ժողովուրդներին միավորելու մասին դարձվածքները։ Գործնականում այդ բոլոր սենտիմենտալ ցնորքներն ամբողջովին կորցրեցին իրենց հրապույրը։ Խաղաղությունը բավականաչափ ռադիկալ խնդիր է, որպեսզի այն հնարավոր լինի լուծել լոկ բարի ցանկություններով կամ մարդկանց ըզգացմունքներին ու բանականությանը դիմելով։

Իհարկե, չի կարելի ամենևին կասկածել շատ մտածողների բարեպաշտ ցանկությունների մեջ, որոնք միջոցներ էին որոնում մարդկային արյունահեղություններից խուսափելու համար։ Նրանք ատելությամբ էին լցված դեպի պատերազմը, այն համարում էին ոչ մարդկային զբաղմունք և համակված էին մեծ ձգտումով՝ մարդկությանը խելացի միջոցներ առաջարկել պատերազմը հասարակական կյանքից վերացնելու համար։ Հումանիստների նախագծերն ու սենտենցիաները բանական բովանդակությամբ էին օժտված, սակայն կտրված էին իրականությունից, տոգորված չէին ռեալիզմով, անտեսում էին կեցության օբյեկտիվ պայմանները։ Ահա թե ինչու օբյեկտիվորեն հակասություն ծագեց ցանկության և իրականության, մտածողության և կեցության միջև։

Այնուամենայնիվ, պատերազմի ու խաղաղության հարցերում նրանց մտավոր ստեղծագործության նպատակասլաց բնույթը, նրանց կողմից պատերազմների ամբաստանումն ու խաղաղության գովաբանումը վկայում է այն մասին, որ

---

[1] К. Маркс и Ф. Энгельс. Соч. т. 20, стр. 267.

մարդկության լավագույն մտածողները խաղաղության իսկական մունետիկներ են։

Ֆեոդալիզմին հերթափոխած կապիտալիզմի զարգացումն ուղեկցվեց նրան ներհատուկ հակասությունների անընդհատ աճով ու սրումով։ Դրանց կոնկրետ դրսևորումներն են պարբերաբար կրկնվող տնտեսական ճգնաժամերը, գործազրկությունը, ռազմական կոնֆլիկտները։ Ֆ. Էնգելսի արտահայտությամբ, «բանականության հաղթանակով» հաստատված հասարակական և քաղաքական հիմնարկները լուսավորիչների փայլուն խոստումների համեմատ չար, դառը հիասթափություն առաջացնող ծաղրանկար դուրս եկան։

Բուրժուական հասարակության օրենքները հեղինակազրկեցին նրանց, ովքեր բուրժուա-դեմոկրատական կարգերի հետ էին կապում խաղաղություն հաստատելու հնարավորությունը։

* * *

Կապիտալիզմի սրվող հակասությունները և ժողովրդական զանգվածների զրկանքներն իրենց արտացոլումը գտան ուտոպիական սոցիալիզմի ներկայացուցիչների և բաբուվիստների հայացքներում։ Բաբուվիստական շարժման մեջ պատերազմի և խաղաղության պրոբլեմը կոնկրետ ու ռացիոնալ հիմքի վրա էր լուծվում։

Բաբուվիստական շարժումը խաղաղության հասնելու հնարավորությունը կապում էր արմատական հասարակական վերափոխությունների հետ, առանց որի այդ ուղղությամբ ամեն մի ձգտում ու նպատակ պատրանքային կլինեին։

Բաբյոֆը պնդում էր, որ բռնի հեղափոխության միջոցով կոչնչացվի ճնշման, նախապաշարմունքների ու անոտխապաշտության հին ռեժիմը և կհաստատվի այնպիսի սոցիալական կարգ, որի պայմաններում չեն լինի ո՛չ «վերևիններ», ո՛չ «ներքևիններ», ո՛չ «առաջիններ», ո՛չ «վերջիններ», ո՛չ շահագործողներ, ո՛չ շահագործվողներ։ Բոլոր համաքաղաքացիների ջանքերը կմիանան հանուն համընդհանուր բարեկեցության եղբայրական մեծ նպատակի։ Կհաստատվի հա-

սարակության բոլոր անդամների լիակատար հավասարության թագավորություն, որը ժողովրդին հնարավորություն կտա իսկական սուվերեն դառնալու։ «Այն ժողովուրդը, որ զբաղվում է... տնտեսությամբ... և ապրում է առանց պերճանքի, այն ժողովուրդը, որի քաղաքացիները հավասարության, ազատության և առատության քաղցրությունը ճաշակող նրա զինվորներն են, իր հարևաններին ճնշելու նպատակով զենքի դիմելու ո՛չ ցանկություն և ո՛չ էլ հնարավորություն ունի»[1]։

Բաբուվիստներին խորթ էր նիհիլիստական վերաբերմունքը պատերազմների նկատմամբ։ Նրանք ընդունում էին արդարացի պաշտպանական պատերազմների անհրաժեշտությունը։ Գտնում էին, որ կոմունիստական կառավարման ըսկզբունքների վրա խարսխված հասարակությունը պետք է պատրաստ լինի ինքնապաշտպանության։ Այդ հասարակությանն օտար են նվաճումները, նրան հատուկ է արդարացի մոտեցումը օտարերկրացիների նկատմամբ։ Բանակը միաժամանակ աշխատանքային ֆունկցիաներ պետք է կատարի։ Խաղաղ օրերին այն պետք է ակտիվորեն մասնակցի արտադրական աշխատանքներին։ Նոր հասարակարգի քաղաքացիների հայրենասիրությունն ազատ է սահմանափակվածությունից, պահպանողականությունից, ազգային նախապաշարմունքներից։ Այն միաձուլվում է ամբողջ մարդկության նկատմամբ ունեցած սիրո հետ։ Նոր հասարակության անդամներն իրենց պետք է ընդունեն որպես համամարդկային մեծ համագործակցության զավակներ։ Նրանք իրենց իմաստությամբ ու օրինակով պետք է նպաստեն համընդհանուր խաղաղությանը և ամենուրեք հարգանք ներշնչեն այն բարքերի նկատմամբ, որ բնությունն է պարգևել բոլորին։

Սոցիալիստ-ուտոպիստները մերկացնելով կապիտալիստական հասարակության խոցերն ու արատները, սոցիալական կոնտրաստներն ու հակամարտությունները, հավատում էին նոր կազմակերպված հասարակարգի՝ սոցիալիզմի անխուսափելի հաղթանակին, որը վերջ է տալիս շահագործմանը, աղքատությանը, տգիտությանն ու մարդու բարոյական

---

[1] **Ф. Буонаротти.** Заговор во имя равенства, М., 1963, стр. 330.

դեգրադացիային։ «Այդ փոփոխությունը արմատախիլ կանի և վերջնականապես ամբողջ աշխարհում կոչնչացնի տգիտություն, աղքատություն, անհատական մրցակցություն, երկպառակություններ և ազգային պատերազմներ սերմանող հին, անպետք ու խղճուկ սիստեմը։ Դրա փոխարեն կմտցվի խելացի հասարակական սիստեմ, որի պայմաններում առհավետ կդադարեն մրցակցությունը, երկպառակություններն ու պատերազմները և մարդիկ ամենավաղ մանկական հասակից կըսովորեն օժանդակել մեկը մյուսի երջանկությանը»[1]։

Ուտոպիստ-սոցիալիստները պատերազմի և խաղաղության հարցերում չկարողացան բարձրանալ դասակարգային հակամարտությունները և շահերի հակադրությունն ըմբռնելու աստիճանին։ Հույս դնելով տիրապետող դասակարգի ջանքերով սոցիալիզմի իրականացման վրա, նրանք այդ դասակարգին կոչ էին անում. «հանուն ինքնապահպանման» սոցիալիզմ իրականացնել, որպեսզի «...չընկնել անարխիայի, պատերազմների և աղետների մեջ»[2]։

* * *

Ռուս հեղափոխական դեմոկրատներն ընդհուպ մոտեցան պատերազմների դասակարգային էության ըմբռնմանը։ Չերնիշևսկին գրում էր. «Աշխատավոր մարդու համար ամեն մի պատերազմ ավերիչ է, նրա համար օգտակար է այն պատերազմը, որ մղվում է հայրենիքի սահմաններից թշնամիներին դուրս մղելու նպատակով»[3]։

Վ. Ի. Լենինն ասում էր, որ Չերնիշևսկու աշխատություններից դասակարգային պայքարի հոտ էր փչում։ Ուշագրավ է նաև Գերցենի այն միտքը, որ քաղաքականության մասին արվող դատողությունները պետք է տնտեսական սկզբունքների վրա կառուցվեն։

---

[1] Р. Оуэн. Избранные сочинения, т. II, стр. 208.

[2] Նույն տեղում, էջ 209։

[3] Г. Чернышевский. Избранные философские сочинения, т. II, стр. 198.

Սակայն այս պնդումները մի ամբողջական տեսություն չէին ներկայացնում, այլ լոկ խելացի կռահումներ էին։ Հասարակության զարգացման օրինաչափություններն ու սոցիալական իրադարձությունների դրդապատճառներն ու շարժառիթները նրանց տեսադաշտից դուրս մնացին։

Քաղաքական իշխանությունը նվաճելու նպատակով մարտնչող բուրժուազիայի գաղափարախոսությունը առաջադեմ, մատերիալիստական բովանդակությամբ էր օժտված։ Բայց հենց որ բուրժուազիան հասավ դասակարգային տիրապետության և ակնհայտորեն սկսեցին դրսևորվել կապիտալիզմի սոցիալ-տնտեսական հակասությունները, բուրժուական սոցիոլոգիական միտքն սկսեց ճգնաժամ ապրել։ Ինչպես Պոլ Լաֆարգն էր նշում, բուրժուազիայի վերջնական հաղթանակն Անգլիայում ու Ֆրանսիայում հեղաշրջում առաջացրեց փիլիսոփայական մտքի մեջ, այն մաքրելով առաջադիմական բովանդակությունից։ Կապիտալիստական կարգերի արդարացումն ու պաշտպանությունը դարձան բուրժուական գաղափարախոսների մտավոր աշխատանքի առանցքը։

Կապիտալիստների դասակարգը պատերազմներ սանձազերծելու գործում գերազանցեց նախորդ շահագործող դասակարգերին։ Նրա պատմությունը թալանչիական արշավանքների, մարդկային արյունահեղությունների տարեգրություն է։

## 2. Բուրժուական սոցիոլոգիական մտքի ճգնաժամը պատերազմի ըմբռնման հարցում իմպերիալիզմի օրոք

Նյութական արտադրության զարգացումն ու առաջընթացն ուղեկցվում են աշխատավոր զանգվածների գիտակցության աճով, և նրանց գաղափարապես մշակելը շահագործող դասակարգերի միլիտարիստական քաղաքականության օրգանական մասն է դառնում։ Խոշոր արդյունաբերության, մեքենայական ինդուստրիայի ստեղծումը փոխեց պատերազմի բնույթն ու վարելու եղանակները։ Մետաղը վերածվեց հրաձիգ զենքի և ամենուրեք այն սկսեց օգտագործվել որպես հակառակորդին խոցելու, հարվածելու արդյունավետ միջոց։ Կապի-

տալիստական դասակարգը մարտադաշտը վերածեց շարժիչների պատերազմի, որոնք դրան է՛լ ավելի ավերիչ բնույթ հաղորդեցին։

Մարդ-զինվորի դերը մեծացավ։ Շարժիչները գործողության մեջ դնելու համար հարկավոր են որոշակի տեխնիկական տվյալներ և նախապատրաստություն։ Մարտիկը ստանում է այդ նախապատրաստությունը, ձեռք բերում գիտելիքներ, զուգահեռաբար ընդլայնվում է նրա ընդհանուր մտահորիզոնը՝ միլիտարիստական թեքումով։ Այս պայմաններում շահագործող դասակարգն էլ ավելի է ակտիվացնում իր պրոպագանդիստական աշխատանքը։ Այս հարցում առանձնապես մեծ ջանքեր է գործադրում բուրժուազիան։ Նա իր ամբողջ պրոպագանդիստական մեքենան գործի է դնում մասսաներին խաբելու և ապակողմնորոշելու, նրանց ուղեղները մշակելու համար։ Բուրժուազիան նպատակադրվում է բանակը վերածել իր կամակատարի։ Զինվորը պետք է միակողմանի ռազմական դաստիարակություն ստանա, առանց քաղաքականության հետ առնչություն ունենալու։ Նա պետք է դառնա ճշգրիտ մեխանիզմի մասնիկը, որը ծառայում է որոշակի տեղում որոշակի ֆունկցիաներ կատարելու համար և ենթարկվի կենտրոնական լծակի սեղմմանը, գրում է հիտլերյան գեներալ Վերներ Պիխտը[1]։

Սակայն այս ձգտման և իրականության միջև հակասություն է ծագում։ Պատերազմը վիշտ ու տառապանք, զրկանքներ ու թշվառություն է առաջացնում։ Շահագործող դասակարգն իր թալանչիական պլաններն իրագործելու համար ռազմադաշտ է քշում հասարակ մարդկանց։ Իր աչքերի առջև տեսնելով մահվան ուրվականը, զինվոր դարձած աշխատավորն սկսում է լուսավորվել, ելք որոնել։ «Հայրենիքին ծառայելը» նրա համար միրաժ է դառնում, նրա մեջ է՛լ ավելի շոշափելի դրսևորվում է արյունահեղությունը դադարեցնելու զգացմունքը։ Զավթողական, անարդարացի պատերազմ մղող զինվորի համար անմիջական ռազմական գործողությունները որոշ իմաստով դաստիարակչական դպրոց են դառնում։ Նա սկսում է խորհել, մտածել, մտորսալ այն գործողությունների

[1] Տե՛ս «Итоги второй мировой войны», М., 1957, էջ 40—41.

իմաստը, որոնց մեջ ներքաշված է։ Բանակի շարքային կազմը շահագործողական հասարակություններում հիմնականում աշխատավոր ընտանիքներից մոբիլիզացված անդամներն են ներկայացնում։ Ռազմաճակատի ողբերգությունը չի կարող իր արձագանքը չգտնել թիկունքում։ Իրադարձությունների տրամաբանությունն օբյեկտիվորեն մարդկանց քաղաքականության ոլորտ է ներքաշում և զինվորը սկսում է դադարել այն մեխանիզմի մասնիկը լինելուց, որը ենթարկվում է կենտրոնական լծակի սեղմմանը։ Մեխանիզմը սկսում է խախտումներով աշխատել. ծայր է առնում «Մասսաների խուլ վրդովմունքը, ընկճված և խավար խավերի բարեհամբույր, «դեմոկրատական», հաշտության աղոտ ցանկությունը, «ստորին խավերում» ծայր առնող տրտունջը...

Պատերազմի փորձը, ինչպես և պատմության մեջ յուրաքանչյուր ճգնաժամի, մարդու կյանքի մեջ յուրաքանչյուր մեծ աղետի և յուրաքանչյուր բեկման փորձը, ոմանց բթացնում և կոտրում է, **բայց դրա փոխարեն լուսավորում** և **կոփում** է **մյուսներին...»**[1]:

Այսպիսով, զինվորներին քաղաքական կյանքից մեկուսացնելու գիծն օբյեկտիվորեն նրանց ներքաշում է քաղաքականության մեջ, հենց որ նրանք ճաշակում են պատերազմի ամբողջ դառնությունը։ Խաղաղության ձգտումը գերակշռում է մյուս բոլոր կրքերի նկատմամբ և իսկական մարդկային բնությունը ապստամբում է պատերազմի դեմ։

Բուրժուազիան չի կարող հաշվի չնստել նման իրավիճակի հետ, որքան էլ նա ձգտի։ Զինվորագրված մարդիկ չեն կարող դառնալ նրա կույր կամակատարները։ Ինչպիսի պայմաններում էլ գտնվի մարդը, անկախ աշխարհըմբռնման աստիճանից, նրա գործողությունները նախապես գիտակցվում են, ավելի կամ պակաս չափով մտավոր ձևավորում ստանում։ Ահա թե ինչու զինվորին քաղաքականությունից կտրելու և մասսաներին ապակողմնորոշելու քաղաքական գիծը միաձուլվում է գաղափարական ընդհանուր մշակման հետ։ Մոգոնվում և տարածվում են դրույթներ, որոնք աղավաղում են պատերազ-

[1] Վ. Ի. Լենին, *Երկեր, հատ. 21, էջ 265*։

մի էությունն ու պատճառները, իրականությունը ներկայացնում մռայլ անելանելիության կեղծ լույսի տակ։ Մարդուն գիշատչի բնազդներ են վերագրվում, որոնցով իբր բնությունն է օժտել նրան և որը դրդում է կռվել իր նմանների հետ՝ իր ագահ ախորժակը բավարարելու համար։ Մարդկանց միջև կոնֆլիկտի և ընդհարումների աղբյուրը, իբր թաքնված է մարդու անփոփոխ բնության մեջ։ Հետևապես, պայքարի մեջ արդարացի կողմ չկա, ըմբշամարտիկների գոտեմարտի պես, նրանցից յուրաքանչյուրը ձգտում է մյուսին տապալել։

Կապիտալիստական հարաբերությունների զարգացման արշալույսին երևան եկան մտածողներ, որոնք հենց այդ տեսանկյունից էին դիտում պատերազմը։ 17-րդ դարի անգլիական մատերիալիստ Թոմաս Հոբսը գրում էր, որ բոլոր մարդիկ ամեն ինչի նկատմամբ հավասար իրավունքներ ունեն, քանի որ նրանց բնական վիճակը բնութագրվում է սեփականության, տիրապետությունների, «իմի» և «քոնի» միջև ընկած սահմանի բացակայությամբ։ Բոլոր մարդիկ ձգտում են իրականացնել իրենց իրավունքները։ Այդ հողի վրա անխուսափելիորեն պայքար է ծագում, որի մեջ ոչ մեկին անարդարացի համարել չի կարելի. բոլորն էլ իրավացի են, մեկը օրինական կերպով հարձակվում է, մյուսը՝ պաշտպանվում։ «Բնական վիճակի» ժամանակ համընդհանուր սկզբունքն է՝ «բոլորի պատերազմը բոլորի դեմ». «...Քանի դեռ մարդիկ ապրում են առանց ընդհանուր իշխանության... նրանք այնպիսի վիճակում են գտնվում, որը պատերազմ է կոչվում, և հենց բոլորի դեմ բոլորի պատերազմի վիճակի մեջ»[1]։ Հոբսը գտնում էր, որ մարդկային կյանքը կարելի է համեմատել վազքի գծով մրցության հետ. մասնակիցներից յուրաքանչյուրի միակ նպատակն իր մրցակիցներից առաջ անցնելն է։ Նշանակում է մարդուն եսամոլությունն է ղեկավարում, սեփական օգուտն ապահովելու համար ուրիշների շահերը ոտնահարելու բնական ու բնածին զգացմունքը։

Այս տեսակետը, անշուշտ, զուրկ չէ սոցիալական արմատներից։ Մասնավոր ձեռնարկատիրության պայմաններում թա-

---

[1] Гоббс. Избранные произведения, М., 1964, т. II, стр. 152.

գավորում է կատաղի մրցակցությունը, փոխադարձ թշնամանքը և բուրժուազիայի նեղ դասակարգային էգոիզմը։ Այն իր կնիքը դրեց փիլիսոփայի աշխարհայացքի վրա։ Հոբսի ուսմունքում արտացոլում գտած սոցիալական պայմանները հասարակական երևույթների նկատմամբ հակապատմական, ոչ դիալեկտիկական մոտեցում ծնեցին։ Պատահական չեն Հոբսի այն խոսքերը, որ իրենց բնույթով մարդիկ ո՛չ չար են և ո՛չ էլ բարի։ Չարիքը ոչ թե իրենց պահանջմունքները բավարարելու մարդկանց ձգտումն է, այլ այն օբյեկտիվ դրությունը, որն ստեղծվում է բոլոր մարդկանց գործողությունների շնորհիվ։ Այստեղ Հոբսը աղոտ ձևով այն միտքն է արտահայտում, որ հասարակական պայմաններն են որոշում մարդկանց վարքագիծը։

Պրուսական բախտախնդիր ռազմամոլների ագրեսիվ տրամադրություններն իրենց ցայտուն դրսևորումը գտան Նիցշեի փիլիսոփայության մեջ։ Նիցշեի ամբողջ ուսմունքը հագեցված է պատերազմի ու բռնության, հուսահատության և հոռետեսության, համաշխարհային քաղաքակրթության անխուսափելի կործանման մոտիվներով։ Նա հայտարարում էր, որ մարդկանց բնաջնջումը «գերմարդու» բարձրագույն բարեգործության դրսևորումն է, և պատերազմի, անզուսպ բռնության կոչ էր անում։ Նիցշեն գտնում էր, որ երկիրը լցված է ավելորդ մարդկանցով և այստեղից հետևություն էր անում, որ այդ վիճակից մարդկանց դուրս բերելու լավագույն միջոցը պատերազմն է, որն «հավիտենական կյանք» է ապահովում նրանց։ «Ինքը, կյանքն իր հիմքում հափշտակում է, վնասաբերություն, օտարի և ավելի թույլի հաղթահարում, ճնշում, կայունություն, սեփական ձևերի բռնի ամրացում, մարմնավորում և առնվազն ամենամեղմ ձևով շահագործում...»[1]։ Ըստ Նիցշեի մարդկային հասարակությունն անբաժանելի է բռնությունից, շահագործումից, ճնշումից և բնաջնջումից։

Անցան տարիներ, մոնոպոլիստական բուրժուազիան իր թաթը դրեց կապիտալիստական երկրների տնտեսական կյանքի վրա։ Իմպերիալիստական պատերազմները կապիտալիս-

[1] **Ф. Ницше.** Собрание сочинений, т. I, 1903, стр. 221.

տական պետությունների մշտական ուղեկիցները դարձան։ Բուրժուազիան սկսեց առատորեն ֆինանսավորել նրանց, ովքեր առաջարկում էին իրենց ծառայությունները։ Պատերազմի կենսաբանական տեսությունն էլ ավելի ջերմեռանդորեն սկսեց պրոպագանդվել։ Շպենգլերը գրում էր, որ մարդը գիշատիչ կենդանի է. կոնֆլիկտը կյանքի նախասկզբնական դրսևորումն է, ինքը կյանքն է, և ոչ մի, նույնիսկ ամենահամոզված պացիֆիստ ի վիճակի չէ իր հոգուց արմատախիլ անելու այն գաղտնի հաճույքը, որ կոնֆլիկտն է առաջացնում։ Պատերազմի նկատմամբ եղած հակումը ժառանգաբար է անցնում և դրա համար էլ վերահսկողությունից դուրս է դրանվում։ Մարդու բնության մեջ թաքնված են պատերազմի ամենախճճված պատճառները։ «Պատերազմը մարդկային բարձրագույն կեցության հավիտենական ձևն է և պետությունը գոյություն ունի պատերազմի համար»[1]։

Նիցշեի և Շպենգլերի տեսակետների հետ օբյեկտիվորեն ներդաշնակվում են արևմտագերմանական փիլիսոփա Կարլ Յասպերսի և ֆիզիկոս Վայցզեկերի առանձին դատողությունները։ Յասպերսը գրում է. «Մեզանից յուրաքանչյուրի մեջ թաքնված է այն բռնությունը, որի հետևանքով մենք ապրում ենք պատերազմի վտանգի մեջ և դա մեր մարդկային ճակատագիրն է։ Այդ վտանգը երբեք լիովին չի չքանա... Պատերազմը մարդկային կեցության մեջ, նրա ընդերքում է տկիզբ առնում, որոնք բավարար բացատրություն չեն կարող ստանալ ո՛չ որպես բնորոշ առանձնահատկություններ և ո՛չ էլ որպես օբյեկտիվորեն չլուծված հակասություն մարդկանց և մարդկանց խմբերի միջև»[2]։

Յասպերսը պնդում է, թե մարդը մնում է այնպես, ինչպես եղել է, այսինքն՝ կոպիտ, խելահեղ, բռնություն գործադրող։ Սոցիալական անհավասարության վերացման խնդիրը հակասում է մարդու արժանապատվությանը։ Մարդը պետք է միշտ

---

[1] **О. Шпенглер.** Пруссачество и социализм, Изд. Academia, 1922, стр. 46.

[2] «Критика современной бурж. философии и социологии», М., 1963, стр. 66—67.

տանջվի, հակառակ դեպքում նա անասունի ատրճանի կիչնի, կկորցնի իր էկզիստենցիան (գոյությունը)։

Իսկ ինչ վերաբերում է Վայցզեկերին, ապա նա պատերազմները դիտում է որպես «Կոնֆլիկտային մատերիայի տեսանելի խտացումներ, որոնք մշտապես կուտակվում են մարդկային էության անքանական խորքերում»[1]։

Սոցիալական հոռետեսության և վհատության այս տեսակետները վկայում են բուրժուազիայի դատապարտվածության մասին, որի գաղափարները հանգում են նրան, թե իբր կապիտալիզմի կործանումը քաղաքակրթության վախճանն է։ Պատերազմների անխուսափելիության գաղափարը տարածում է գտել նաև բուրժուական ռազմական գործիչների շրջանում։ Այսպես, օրինակ, անգլիական պաշտոնաթող գեներալ Ֆուլլերը գրում է. «Մարդկանց նախանձի, ագահության և երկյուղի մեջ պետք է որոնել պատերազմի արմատները»[2]։

Եթե գիշատիչները վարքագծի բարոյական նորմաներ ունենային, հաճույքով կընդունեին կապիտալի գաղափարախոսների և քաղաքագետների էթիկան, համենայն դեպս, նրանց գործողությունները տեսական արդարացում կստանային։ Լավ է ասում ամերիկյան առաջադեմ մտածող Դանեմը, որ եթե պատերազմը մարդկային պահանջմունք լիներ, ապա պատերազմի ժամանակ մարդիկ իրենց ավելի լավ կզգային։ «Ճիշտ հակառակն է նկատվում,— ասում է նա։— Պատերազմն այնքան է հակասում մարդկային նորմալ ապրելակերպին, որ մարդկանց ներքաշում են դրա մեջ... Եթե երջանկությունը մի զգացություն է, որն օգնում է որոշել, թե ինչ պայմաններ են ներդաշնակվում մարդկային հատկությունների հետ, ապա այն անպայման մեզ պետք է հուշի, որ պատերազմը հակաբնական է մարդու համար։ Ինձ, վերջապես, թըվում է, որ հենց այդ բնության ազդեցության տակ մարդը մի գեղեցիկ օր անբարենպաստ պայմաններ կստեղծի պատերազմի համար»[3]։

---

[1] «Критика современной бурж. философии и социологии», стр. 78.

[2] **Дж. Фуллер.** Вторая мировая война, М., 1956, стр. 543.

[3] **Б. Данэм.** Человек против мифов, М., 1961, стр. 51.

Այսպիսով, սովերելով դինված ընդհարումների դրդապատճառները, պատերազմի հոգեբանական տեսությունների հեղինակները դրանք դիտում են որպես մարդու մեջ թաքնված ոչնչացման բնազդի դրսևորում։ Բուրժուական սոցիոլոգների կարծիքների համաձայն, այդ բնազդը չնայած պատմական է, սակայն անհաղթահարելի, այն իր գոյությունը միշտ կպահպանի։ Մարդուն հատուկ է բնածին ագրեսիվություն, ուստի քաղաքական, տնտեսական կամ դաստիարակչական կարգի ոչ մի վերափոխում չի շոշափի ռազմական վտանգի ակունքները, մինչև որ միջոցառումներ չձեռնարկվեն լարվածության անգիտակից պատճառները ոչնչացնելու և երկյուղի ու ատելության աղբյուրները վերացնելու ուղղությամբ։

Շարադրելով նման դրույթների բովանդակությունը, անգլիական սոցիոլոգ Մորիս Հինզբերգը գրում է, որ դրանց կողմնակիցները ենթադրում են, թե մարդկային գիտակցության մեջ ավերիչ և ագրեսիվ հակումներ կան, որոնք լարվածության ժամանակաշրջանում բուռն կերպով դրսևորվում են թշնամու նկատմամբ. «Ազդակների երկու ֆունդամենտալ խմբերի՝ սիրո և ագրեսիայի, ոչ ճիշտ ճնշումը՝ ահա… այդ սարսափի աղբյուրը և այդ պրոբլեմի լուծման միակ ռադիկալ եղանակը սադիզմին և մազոխիզմին նպաստող ազդեցությունների… վերացման մեթոդների մեջ է»[1]։

Հոգեբանական ասպեկտներով պատերազմը մեկնաբանող բուրժուական գաղափարախոսների փաստարկների աղբյուրը անգլիական պսիխոսոցիոլոգ Մակդաուգալի և Ֆրեյդի ուսմունքն է։ Մակդաուգալի բոլոր դատողությունների ելակետն այն պնդումն է, թե մարդկային գլխավոր բնազդներից մեկը և պատերազմների հիմնական պատճառը «կռվարարությունն է»։

Նեոֆրեյդիստները հանդես են գալիս «միջազգային հարաբերությունների պսիխոպատոլոգիա» անվանվող արատավոր մի տեսությամբ։ Պատերազմի դրդապատճառը համարվում են մարդկային հոգեբանության մեջ իբր թաքնված հիվանդագին երևույթները, որոնք հատուկ են ժողովրդական

[1] Տե՛ս «Исторический материализм и социальная философия современной буржуазии», М., 1960, էջ 560.

մասսաներին։ Մարդկանց բնազդները խեղդվում են դեռ վաղ մանկական հասակում և դա նպաստում է գրգռականության երևան գալուն։ Հետագայում այն կուտակվում է, ծնվում են մասսայական նևրոզներ, որոնք առաջացնում են պատերազմներ։

Այս պնդումների օբյեկտիվ իմաստն այն է, որ պատերազմը դիտվում է որպես բնական վիճակ, անխափանելի, ճակատագրական անխուսափելիություն, որ այն հատուկ է ոչ միայն մարդկային հասարակությանը, այլև մեզ շրջապատող բոլոր իրերին։ Այլ կերպ չի կարելի գնահատել Ֆրեյդիստների այն դրույթը, թե պատերազմը, բառիս ամենալայն նշանակությամբ, կոնտակտ է՝ բռնության կիրառումով տարբեր, բայց միատարր էակների միջև։ Այս իմաստով, աստղերի բախումները, գիշատիչների պայքարը, պրիմիտիվ ցեղերի ճակատամարտերը և ժամանակակից ազգերի միջև թշնամական գործողությունները պատերազմ են։ Ուրեմն ստացվում է, որ պատերազմը ոչ միայն ընդհանուր սոցիոլոգիական, այլև կենսաբանական և նույնիսկ անօրգանական աշխարհի օրինաչափությունն է։

Սակայն, եթե պատերազմի շարժառիթը մարդու հոգեբանության մեջ թաքնված ագրեսիվ բնազդն է, ապա այն անհրաժեշտորեն պետք է իր դրսևորումը գտնի հասարակական բոլոր պայմաններում։ Մինչդեռ կենսափորձն այլ բան է ասում։ Ռազմական ընդհարումները հակամարտ հակասություններով լի շահագործողական հասարակությունների ծնունդ են։

* * *

Պատմության մեջ դեռ չի եղել այնպիսի մի դարաշրջան, երբ իշխող շահագործողական դասակարգի տեսական ծառաներն այնպիսի ջերմեռանդությամբ քարոզեին պատերազմի էությունն ու դրդապատճառները խեղաթյուրող գաղափարներ, ինչպես իմպերիալիզմի օրոք։ Մոնոպոլիստական բուրժուազիան իր ամբողջ գործունեությանը գաղափարական հիմնավորում է որոնում։ Մասսաներին խաբելն ավելի հղկված ձևեր

է ընդունում։ Բուրժուական գաղափարախոսները մրցում են իրենց տերերի գործերի օգտին համոզիչ փաստարկներ գտնելու մեջ։ Մոնոպոլիստական կապիտալի ասպետների մերկ շահը նրանց դատողությունների լեյտմոտիվն է։ Գլխավորը կապիտալիստական իրականության կոնտրաստների պատճառները հասկանալուց մասսաներին հեռու պահելն է։ Ուրիշ նպատակ չեն հետապնդում մալթուսականների պնդումներն այն մասին, որ շատ չարիքների՝ սովի, գործազրկության, աղքատության, պատերազմների սկզբնաղբյուրը աշխատավոր մասսաներն են։

Հայտնի է, որ նման պնդումների հոգևոր նախորդը Անգլիայում Վեստ-Հնդկական կոլեջի քաղաքատնտեսության և պատմության պրոֆեսոր Թոմաս Մալթուսն էր։ 1798 թվականին «Փորձ ազգաբնակչության օրենքի մասին» աշխատության մեջ Մալթուսը ծննդաբերությունը դարձնում է մի անլուծելի պրոբլեմ, սոցիալական բոլոր չարիքների աղբյուրը։ Ծննդաբերությունը մի ոսկոր է մարդկության կոկորդում, որ խանգարում է սոցիալական օրգանիզմի ազատ շնչառությանը։ Ահա նրա մտամարզանքի նմուշներից մեկը։ Եթե արդեն բզբաղված աշխարհ եկող մարդը չի կարող իր ծնողներից գոյամիջոցներ ստանալ, որոնց նա իրավունք ունի ներկայացնելու այդ պահանջը, և եթե հասարակությունը նրա աշխատանքի կարիքը չի զգում, ապա նա սննդի նվազագույն չափի նկատմամբ անգամ պահանջ ներկայացնելու իրավունք չունի, և, ըստ էության, նա գործ չունի անելու այնտեղ, ուր ընկել է։ Կյանքի մեծ խնջույքում նրա համար ազատ ճաշասարք չկա։ Բնությունը նրան հրամայում է հեռանալ և արագորեն ի կատար կածի իր հրամանը, եթե միայն նա հյուրերից մեկի մոտ կարեկցանք չարթնացնի։ Բայց եթե հյուրերը խտանան և նրբան տեղ տան, անմիջապես կերևան ուրիշները և նույն բարյացակամությունը կպահանջեն։ Խնջույքի կարգն ու ներդաշնակությունը կխախտվեն, նախկին ազատությունը կվերածվի սովի։ Աղքատությունն ու ընչաքաղցությունը «ստորին դասակարգերի» բնական պատիժն է, որոնք բազմացումից չեն խուսափում։ Նրանք դժբախտներ են, որոնք կյանքի մեծագույն վիճակախաղում չշահող տոմս են քաշել։

Եվ Մալթուսը առաջադրում է պրոբլեմի լուծման մեթոդները՝ ծննդաբերությունը պակասեցնող «նախազգուշական սահմանափակումներ», և մահացությունն ավելացնող «պոզիտիվ սահմանափակումներ»։ Նախազգուշական սահմանափակում է նա համարում ինքնազսպումը։ Սովը, աղքատությունը, պատերազմները ազգաբնակչության աճի պոզիտիվ սահմանափակումներն են։ Եթե ըստ Հեգելի «...ինչպես քամիների շարժումը չի թողնում որպեսզի լիճը հոտի... այնպես էլ պատերազմը ժողովուրդներին պաշտպանում է նեխվածությունից...»[1], ապա ըստ Մալթուսի պատերազմը հասարակությունը մաքրում է ավելորդ բերաններից։

Սա ոչ այլ ինչ է, եթե ոչ պատերազմի գովերգում, միլիտարիզմի պաշտամունք։

Մալթուսը պատերազմն արդարացնում է, ըստ էության, երկու առումով. մի կողմից՝ երկրի այսպես կոչված գերբնակչությունը համընդհանուր հուզմունք է առաջացնում, որը ի վերջո սոցիալական կյանքի մակերես է դուրս գալիս և իր մրցակցին այնտեղից դուրս մղելու բնական զգացմունք բորբոքում, երբ նա զբաղեցրել էր տեղ համեմունքների սեղանի շուրջը, մյուս կողմից՝ պայքար է գոյության համար, որը պատերազմի է վերածվում։ Վերջինս պրոբլեմի լուծման էֆեկտիվ միջոց է դառնում։

Ավելի հստակ արտահայտվում են Մալթուսի հետնորդները՝ նեոմալթուսականները։ Այսօր, զառամյալ կապիտալիզմի և կենսունակ սոցիալիզմի միջև մղվող պայքարի պայմաններում, մոնոպոլիստական բուրժուազիան շահագրգռված է արխիռեակցիոն այն գաղափարներին հարություն տալու մեջ, որոնք արդարացնում են իր գարշելի գործողությունները։

Նեոմալթուսականների կարծիքով, չքավորությունը, թերսնումը, սովը, հիվանդությունները, պատերազմը բնական մեծ պրոցեսի մասերն են, որոնք մթերքի առկա պաշարներին համապատասխանող մակարդակի վրա են պահում բնակչության թիվը։ Նյու-Յորքի կենդանաբանական ընկերության ղեկավարներից մեկը գրում է. «Դոկտոր Մալթուսի սովերը. նա

[1] Гегель. Соч. т. VII, 1934, стр. 344.

այնքան էլ չէր մոլորվում, երբ պնդում էր, որ բնակչության աճը նրան կերակրելու երկրի ընդունակության նկատմամբ գերակշռելու տենդենց ունի, և, որ եթե մթերային ռեսուրսները ավելանում են թվաբանական պրոգրեսիայով, ապա բընակչությունն աճում է երկրաչափական պրոգրեսիայով... Երկրի բնակչությունը աճում է, իսկ կյանքն ապահովող երկրի ռեսուրսները կրճատվում են»[1]։

Ավելի «կատարյալ» մեթոդներ են առաջարկվում այդ անհամամասնությունը վերացնելու համար՝ վերահսկողություն ծննդաբերության վրա, ամլացում (ստերիլիզացիա)։

Նեոմալթուսական Պենդելը գրում է, որ գերբնակչությունը ոչ միայն պատերազմի հիմնական, այլև անխուսափելի պատճառն է։ Ամերիկյան սոցիոլոգ Ջոն Բեկլսը գտնում է, որ ժամանակակից աշխարհում կան այնպիսի տնտեսական ուժեր, որոնք համարյա անխուսափելի են դարձնում պատերազմը։ Ցուրնասը կրկնելով նրան ասում է, որ երբ ստամոքսը պահանջում է, մարդիկ իրար սպանում են կամ առանձին-առանձին կամ էլ կոլեկտիվ ձևով։ Հազիվ թե լինեն այնպիսի պատերազմներ, որոնց հիմքում ընկած չլինեն դատարկ ստամոքսների դրդապատճառները։

Նման դրույթներից տրամաբանորեն բխում է, որ աղքատ և խիտ բնակեցված ժողովուրդները միշտ հարձակվել են իրենց հարուստ հարևանների վրա։ Սակայն դա իրավիճակի արտացոլումն է ծուռ հայելու մեջ։ Ի՞նչ են ասում փաստերը. «Արդյո՞ք աֆրիկացիներն են հարձակվել իրենց հարուստ եվրոպական հարևանների վրա, նրանց հողերն ու հանքային հարստությունները զավթելու համար։ Արդյո՞ք Լատինական Ամերիկան ագրեսիայի դիմեց Իսպանիայի նկատմամբ, երբ այն իր նյութական բարեկեցության գագաթնակետին էր հասել։ Արդյո՞ք Խուարեսը Մեքսիկայում փորձեց թալանել Ֆրանսիան Նապոլեոն 3-րդի օրոք։ Արդյո՞ք Չինաստանը հարձակվեց Անգլիայի վրա օպիումային պատերազմների ժամանակ։ Արդյո՞ք Հնդկաստանը, Հնդկաչինը և Ինդոնեզիան բռնապատում էին Անգլիային, Ֆրանսիային և Հոլանդիային»—

[1] Дж. Озер. Должны ли люди голодать, М., 1959, стр. 47.

հարցնում է ամերիկյան տնտեսագետ Ջակոբ Օզերը և անմիջապես պատասխանում. «Ակնհայտ է, որ առավել հարուստ երկրներն առավել ռազմատենչ էին, այն ժամանակ, երբ ամենաաղքատներն ամենամեծ խաղաղասիրությունն էին ցուցաբերում միջազգային ասպարեզում»[1]։

Նեոմալթուսականները պատճառը նենգափոխում են հետևանքով։ Պատերազմը մի վամպիր է, որ ծծում է հասարակության բոլոր հյութերը, նրան ետ շպրտելով։ Հումքի, հարստությունների, կենսական տարածության կարիք զգացող երկիրը հսկայական նյութական միջոցներ չի վատնի թալանչիական նպատակներով հզոր ռազմական մեքենա ստեղծելու համար, այլ կհոգա ներքին պրոբլեմների մասին։ Երկրորդ համաշխարհային պատերազմը Գերմանիայի վրա 272 միլիարդ դոլար նստեց։ Դա մի գումար է, որի հաշվին կարելի էր թեթևացնել ներտնտեսական շատ հոգսեր։

Բնորոշ է և այն, որ գերբնակչության, որպես պատերազմի գրգռիչի և չբնակեցված հողերի հաշվին երկրի տերիտորիայի ընդլայնման բնական իրավունքի մասին պրոպագանդային զուգահեռ, ջանքեր էին գործադրվում ծննդաբերությունն ավելացնելու ուղղությամբ։ Հիտլերյան կլիկը խաղալով գերմանացիների ազգային զգացմունքների հետ, առաջարկում էր գերմանացիների թիվը Կենտրոնական Եվրոպայում 20-րդ դարի վերջին հասցնել 250 միլիոն մարդու։ Յուրահատուկ պատկեր է ստացվում։ Մեկ նոտայի վրա բղավել գերբնակչության վնասաբերության մասին, որն իբր արտաքին նվաճումների է դրդում, իսկ մյուս նոտայով գովերգել ծննդաբերությունը։ Նման սրբապղծությունն ու տրյուկները քաղաքականության մեջ հատուկ են միայն իմպերիալիստական բուրժուազիային։ Զգտելով բարդացնել կեղծ հիվանդությունը, բուրժուական մտածողները հայտարարում են, թե դեղ են որոնում։ Դա նման է մի երիտասարդի հետ կապված պատմությանը, որը սպանելով իր ծնողներին, իր նկատմամբ ներողամտություն է խնդրում, հենվելով այն բանի վրա, որ ինքը որբ է։

[1] Дж. Озер. Должны ли люди голодать, стр. 127.

Գերմանական ֆաշիզմն իր մարդատյաց քաղաքական նպատակների համար դիմում էր ամենանողկալի միջոցներին և որպես թնդանոթի միս օգտագործում գերմանական ժողովրդին։ Հենց այդ նպատակներից էին բխում գերմանական ազգի թվական աճի մասին գաղափարները։

Կործանման եզրին գտնվողը ճիշտ հաշվել չի կարող,— ասում էր Վ. Ի. Լենինը։

Կարիքը, աղքատությունը, զրկանքները ոչ թե պատերազմի պատճառներն են, այլ նրա անմիջական հետևանքը։ Իսկ համեմատաբար խաղաղ ժամանակաշրջաններում պատերազմի նախապատրաստությունն այլանդակում է տնտեսական կյանքը, խիստ կրճատում մարդկանց նյութական ապահովվածությունը։ Ջակոբ Օզերի տվյալներով, 1914-ից մինչև 1954 թվականն ընկած ժամանակաշրջանում ռազմական հատկացումների և նյութական ավերվածությունների մեծությունը կազմում է 2551,4 միլիարդ դոլար։ Այդ գումարը բավական էր թույլ զարգացած երկրներում կապիտալ ներդրումների չափերը կապիտալ սարքավորման մեջ հասցնելու ԱՄՆ-ի 1937 թվականի մակարդակին և միաժամանակ յուրաքանչյուր 6,7 միլիոն մարդու ապահովելու 25 մլդ կվտ. ժամ հզորություն ունեցող հիդրոէներգետիկ սիստեմով[1]։

Հարստության և աղքատության պատճառները թաքնված են արտադրության կոնկրետ եղանակի մեջ, արտադրական հարաբերությունների որոշակի սիստեմում։ Սոցիալական կոնտրաստների աղբյուրը մասնավոր ձեռնարկատիրությունն է։ Նեոմալթուսականները գտնում են, թե իբր մթերային ռեսուրսները չեն բավարարում մարդկանց պահանջմունքները, որովհետև բնությունն անկարող է կերակրել ամբողջ մարդկությանը։ Սակայն ինչպե՞ս համատեղել այդ պնդումն այն փաստի հետ, որ շատ կապիտալիստական երկրներ սահմանափակում են մթերային ապրանքների արտադրությունը, ներմուծումը, ավելին, ոչնչացնում են մթերքի պաշարները։ 1931 թվականին Ֆրանսիայում, բերքատվությունը կրճատելու նպատակով, արգելվեց խաղողի այգիների ոռոգումը, խաղո-

---

[1] Տե՛ս **Дж. Озер.** Должны ли люди голодать, стр. 142—146.

դի բարձր բերքի համար տուգանք սահմանվեց։ 1935 թվականին այստեղ ոչնչացվեցին 75 հազար ակր տարածություն ունեցող խաղողի այգիներ։ 1955 թվականին ԱՄՆ-ի կառավարությունը ցանքատարածությունների հարկադրական սահմանափակումներ մտցրեց։ Շուկայական քվոտներ սահմանվեցին ցորենի, բամբակի, ծխախոտի, բրնձի և գետնանուշի վրա։ Ցորենի ցանքատարածությունը ԱՄՆ-ում 1955 թվականին 30 տոկոսով ցածր էր, քան 1953 թվականին, իսկ բամբակինը՝ 27 տոկոսով։ Եվ, այս բոլորն այն ժամանակ, երբ միլիոնավոր ամերիկացիներ ԱՄՆ-ի պրեզիդենտների խոստովանությամբ, թերսնված են։ Կապիտալիզմի օրոք ոչ թե սպառողի, այլ արտադրողի շահերն են գտնվում ուշադրության կենտրոնում։ «Ապրանքները ոչնչացվում կամ օտարերկրյա շուկաներ են նետվում դեմպինգային գներով, և դրանց արտադրությունը սահմանափակվում է, որպեսզի բարձրացվեն գները»[1]։

Բնությունը շատ առատ է մարդկանց նկատմամբ։ Նա ոչ մի հիմք չի տալիս տրտնջալու, որ իբր սահմանափակ նյութական հնարավորություններ ունի։ Մարդը շատ է աճել որպես հզոր արտադրողական ուժ։ Այդ պայմաններում մարդկանց բնական աճը նրանց կերակրման համար անհրաժեշտ միջոցների պակասությամբ հիմնավորելն անիմաստ ու անհիմն է։ Որոշ հաշվումներով, մարդկությունը կարող է մշակել մոտավորապես 6,5 միլիարդ հեկտար հող։ Դա նշանակում է, որ երկրագնդի բնակչության ժամանակակից մակարդակի պայմաններում մեր մոլորակի յուրաքանչյուր բնակչին մշակելու համար 3 հեկտար հող է ընկնում։ Այնինչ, ներկայումս 8 անգամ ավելի պակաս տարածություն է մշակվում։ Մասնագետները գտնում են, որ 0,8 հեկտար մշակվող հողից կարելի է ստանալ մեկ մարդուն նորմալ կերակրելու համար անհրաժեշտ քանակությամբ սննդամթերքներ[2]։

Արդի դարաշրջանում մարդկությունը գիտության և տեխնիկայի բնագավառում մեծագույն նվաճումներ է ձեռք բերել։

---

[1] **Дж. Озер**, Должны ли люди голодать, стр. 82.

[2] *Ժոզուե դե Կաստրո, Սովի աշխարհագրությունը, Հայպետհրատ, 1957, էջ 52։*

Առկա են բոլոր նախադրյալները մարդկանց կենսապայմանները արմատապես բարելավելու համար։ Սակայն նյութական ինչպիսի հնարավորություններ էլ լինեն, դրանցից չեն կարող օգտվել բոլորը, եթե արտադրողական ուժերի զարգացումը կատարվում է մասնավոր սեփականատիրական հարաբերությունների շրջանակներում։ Կապիտալիզմը վիթխարի չափերով զարգացրեց արտադրողական ուժերը։ Բայց կապիտալիստական արտադրական հարաբերությունների մեջ այդ ուժերը չեն կարող լիաթոռ շնչել։ «Եթե 20-րդ դարը՝ արտադրողական ուժերի հսկայական աճի և գիտության զարգացման դարը, դեռ վերջ չի տվել հարյուր միլիոնավոր մարդկանց աղքատությանը, չի բերել նյութական և հոգևոր բարիքների առատություն աշխարհի բոլոր մարդկանց համար, ապա դրանում մեղավոր է միայն կապիտալիզմը»[1]։

Մալթուսականությունը գնահատելով որպես նողկալի ծաղր բնության և մարդու հասցեին, Մարքսը բացահայտեց այն օրինաչափությունը, որ գերբնակչությունը բնական օրենք չէ, այլ կապիտալիստական արտադրական հարաբերությունների արդյունք։ Արտադրողական ուժերի աճը, գիտատեխնիկական նվաճումները և աշխատանքի արտադրողականության բարձրացումը կապիտալիզմի օրոք հասցնում են բանվորական ուժի կրճատմանը։ Դրա հետևանքով բանվորական բնակչության մի մասն ավելորդ է դառնում, այսպես կոչված, բնակչության «ավելցուկ» է ստեղծվում, որի աճմանը նպաստում է նաև կապիտալիստական մրցակցության հետևանքով մանր արտադրողների սնանկացումը։ Այսպիսով, տեխնիկական առաջադիմությունը կապիտալիզմի պայմաններում ծնում է գործազրկություն, աճում է աղքատությունը։ Շառլ Ֆուրիեի պատկերավոր արտահայտությամբ, կապիտալիզմի օրոք «աղքատությունը առատությունից է ծնվում»։

* * *

Իմպերիալիստական պատերազմները սովորաբար նախապատրաստվում են ռասիզմի և շովինիզմի դրոշի ներքո։ Ռա-

[1] ՍՄԿԿ ծրագիրը, Հայպետհրատ, 1961, էջ 7։

սիզմը պետական գաղափարախոսություն դարձավ ֆաշիստական Գերմանիայում՝ հիտլերականների իշխանության գլուխ անցնելուց հետո։ Սակայն այն իր պատմությունն ունի։

Դեռ անցյալ դարի վերջերին գերմանական տնտեսներին վերագրվում էր զարգացման հատուկ ուղի և առաջավոր դեր՝ ընտրյալ ժողովուրդների մեջ, քանի որ, իբր միայն նրանք են ընդունակ հասկանալու մարդկության ղեկավարման սկզբունքները։ Քիչ անց, Ֆ. Բեռնգարդին «Մեր ապագան» գրքում պնդում էր, որ գերմանացիները հատուկ ծառայություններ ունեն մարդկության հանդեպ, որ իբր նրանք փրկեցին եվրոպական կուլտուրան «բարբարոսությունից»։ Հեղինակը մեծախոսում էր այն մասին, որ պատմական զարգացումը գերմանացիներին կանգնեցրել է երկընտրանքի առջև՝ կա՛մ համաշխարհային տիրապետություն կա՛մ կործանում։ Երրորդը բացառված է։

Ռասիստները դիմում են մոգոնված «գիտական փաստարկների», որպեսզի ինչ-որ կենսաբանական չափանիշներ գտնեն, որոնք իբր պայմանավորում են մարդկանց ռասայական առանձնահատկությունները։ Արհեստականորեն նրանք մարդկանց բաժանում են բիոլոգիապես, հոգեբանորեն լիարժեք և ոչ լիարժեք ազգերի, որոնց վարքագծի սպեցիֆիկան պայմանավորված է այնպիսի ժառանգական հատկանիշներով, ինչպիսիք են հասակը, գլխի ձևը, աչքերի և մազերի, մաշկի գույնը, արյան բնույթը։ 19-րդ դարի կեսերին ֆրանսիական սոցիոլոգ Գոբինեն առաջ քաշեց «արիական» ռասայի տեսությունը, ըստ որի այն օժտված է գերշնորհ հատկություններով և կուլտուրայի ու քաղաքականության զարգացման գործում կոչված է հատուկ դեր խաղալու։ Նույնացնելով «ռասա» և «ազգ» հասկացությունները, գերմանական ռասիստ ռազմամոլներն սկսեցին պրոպագանդել մյուս բոլոր ազգերի նկատմամբ գերմանական ազգի գերազանցության գաղափարը։ Դեռ առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակին գերմանական բուրժուազիային հաջողվեց այլասերել պրոլետարիատի մի զգալի մասը Գերմանիայում։ «Գերմանիան ամեն ինչից բարձր է» դևիզը թունավորեց գերմանական ժողովրդի մեծ մասի գիտակցությունը։ Ռազմական ջախջախու-

մը չհանդստացրեց ռասիստական զառանցանքների հեղինակներին։ Հենց որ Գերմանիայում իշխանության գլուխ անցան ֆաշիստները, նրանք ռասիստական տենդով համակեցին ամբողջ երկիրը, ամեն ինչ ծառայեցրին իրենց արկածախնդիր քաղաքական դիտավորություններին, հատուկ տեղ հատկացնելով ռասիստական պրոպագանդային։ Ֆաշիստները հետեվողականորեն գերմանացիների ուղեղները թունավորում էին անզուսպ նացիոնալիզմի միկրոբներով, ամբողջ աշխարհով մեկ բղավելով տիրելու Գերմանիայի բնական իրավունքի մասին։ «Բախվելով ֆաշիստական ռեժիմն ամրապնդելու և ուրիշ երկրներ նվաճելու նպատակով գերմանական ժողովրդին մոբիլիզացնելու անհրաժեշտության հետ,—գրել է Բ. Դանեմը,—նրանք (այսինքն՝ նացիստները— Ս. Ք.) դադարեցին հույս դնել ինչպես տնտեսական մեծ անհատի, այնպես էլ առասպելական ծագում ունեցող մյուս հերոսների վրա։ Ընդհակառակը, նրանք զավթեցին մամուլը, ռադիոն, դպրոցները, համալսարանները և ուրիշ կուլտուրական հիմնարկներ և դրանք ստիպեցին ծառայել իրենց նպատակներին... Նրանք օգտագործեցին հնարավոր բոլոր միջոցները, որպեսզի իրենց ժողովրդին այնպիսի պայմանների մեջ դնեն, որոնք նրան կստիպեին իրեն պահել այնպես, ինչպես իրենք են ցանկանում»[1]։

Դեռևս առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակին հանդես եկած պանգերմանիզմի գաղափարը խաչակիրների ժառանգներին նոր հանցանքների ոգեշնչեց։ Պանգերմանիզմի ջատագով Բեռնգարդին գտնում էր, որ պատերազմը տարբեր ազգերի միջև գոյության համար մղվող պայքարի ձեվերից մեկն է, որի ժամանակ «թույլ և հնացած տարրերը կործանվում են, իսկ ուժեղներն ու բարձր կուլտուրա ունեցողները՝ տիրապետում, իշխանություն նվաճում, դառնալով դրության տերը, մինչև որ կատարեն պատմական միսիան և զիջեն ավելի կենսունակ և ավելի ուժեղ ժողովրդի ճնշման տակ»[2]։

Գազային խուցեր և հրեաների մասսայական ջարդեր, անհաշիվ կախաղաններ և կուլտուրայի օջախների անխնա ոչըն-

---

[1] **Б. Данэм.** Человек против мифов, стр. 107.

[2] **Ф. Бернгарди.** «Наша будущность», 1914, стр. 1.

*չացում, Մայդանեկ, Օսվենցիմ, Դախաու և Բուխենվալդ, միլիոնավոր անմեղ մարդկանց բնաջնջում՝ ահա ռասիստական տեսության առարկայացումը, ֆաշիզմի պրակտիկան։ Այս ամբողջը հրամցվում էր որպես բարձր կուլտուրայի և հատուկ միսիայի գործնական դրսևորում։*

*Ինքնին հասկանալի է, որ քաղաքական նման վարքագիծը կապված է սոցիալական կոնկրետ պայմանների հետ և դասակարգային դրդապատճառներ ունի։ Ռասիստական տեսությունը լայն տարածում գտավ երկու համաշխարհային պատերազմներին նախորդած տարիներին։ Գերմանական ռազմամոլները, հիտլերյան ճիվաղները ռասիզմը դիտում էին որպես մի գործուն միջոց գերմանական ժողովրդի մեծ մասին խաբելու, նրա մեջ ոգևորության ազդակներ բորբոքելու համար, որոնք այնքա՜ն պետք էին նրանց թալանչիական արշավանքներում։*

*Ֆաշիզմի գաղափարախոսությունը ծայրաստիճան ռասիզմի և շովինիզմի գաղափարախոսություն էր, որը մոնոպոլիստական կապիտալիզմի ծնունդն էր։ Ֆաշիզմի ջախջախումը երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ տրամաբանական վախճանն էր այն հրեշավոր չարագործությունների, որ կատարվում էին մարդատյաց ռասայական տեսության քողի տակ։*

*Պրակտիկան, փոփոխված պատմական պայմանները, անկասկած, իրենց յուրովի արտացոլումը գտնում են իմպերիալիստական գաղափարախոսության մեջ, որի ներկայացուցիչները մանևրում են, ձգտելով համարվել կյանքի դինամիկային։*

*Հետպատերազմյան տարիները իմպերիալիզմի համար ճակատագրական դարձան։ Նա այնպիսի կործանիչ հարվածներ ստացավ, որ հազիվ թե կարողանա կարգավորել իր գործերը։ Արդիականության հեղափոխական ուժերի դեմ մղվող պայքարի շահերը գործողությունների միասնություն են պահանջում։ Այդ հանգամանքը բուրժուազիայի վարձու գաղափարախոսներին հարկադրում է լրջորեն նայել իրադրությանը։ Ամերիկյան սոցիոլոգներ Բեռնսը և Ռուդին գրում են. «Բազմակողմանի ռասայական գերազանցության մասին տեսության հաս-*

տատման համար համոզիչ ապացույցներ չկան... Հետևապես ռասայական ֆանատիզմը, որը վերջին տասնամյակներում բորբոքվեց ավելի ուժեղ, քան երբևիցե, գիտական հիմք չունի»[1]։

Ամերիկյան որոշ սոցիոլոգներ նույնիսկ պահանջում են երկրի ներսում ռասայական խտրականությունից հրաժարվել, որովհետև, ըստ նրանց, այն ժամանակաշրջանում, երբ իբր Ամերիկայի Միացյալ Նահանգների վրա դրված է համաշխարհային ղեկավարությունը, ռասայական խտրականությունն ԱՄՆ-ում ցլատում է միջազգային գործերում ամերիկյան ազդեցությունը։

Հայտնի է, որ 19-րդ դարի վերջին և 20-րդ դարի սկզբին ամերիկյան մի ամբողջ շարք սոցիոլոգներ ռասայական տեսության ջատագովներ էին։ Այսպես, օրինակ, Լոջը, Թեոդոր Ռուզվելտը, Մեխենը ձգտում էին այս տեսությամբ արդարացնել ԱՄՆ-ի էքսպանսիոնիստական քաղաքականությունը։ Ամերիկյան քաղաքական հորիզոնում ռասիստական բարբաջանքներ լսվում էին և ավելի ուշ, երկրորդ համաշխարհային պատերազմից անմիջապես հետո։ Դանուեյը, Հեդինգտոնը հայտարարում էին, որ պատերազմը «ռասայական ոգու հավիտենական դրսևորումն է»։ Բայց և այնպես, ներկայումս ամերիկյան սոցիոլոգիայում նոր տենդենցներ են նկատվում։ Փաստերի տրամաբանության ճնշմամբ որոշ մտածողներ սկըսել են կարծես թե ավելի ողջամտորեն գնահատել երևույթները։ Այս տեսակետից ուշագրավ են ամերիկյան պատմաբան Լայվզիի դատողությունները. «Մեխենի և նրա դպրոցի հռչակած ուժի և կայսրության դոկտրինները, որպես արտաքին քաղաքական գործողությունների հիմք, սնանկ դուրս եկան... Կայսրության օգտին քարոզիչները, որոնք առաջ էին քաշում տերերի ռասայի գաղափարը, ձեռք բերեցին ապստամբությամբ համակված աշխարհի կեսը»[2]։

---

[1] «Современная империалистическая военная идеология», М., 1958, стр. 246.

[2] Նույն տեղում։

Այս տենդենցներն, իհարկե, ունեն իրենց օբյեկտիվ պատճառներն ու քաղաքական նկատառումները։

Իմպերիալիզմի գաղութային սիստեմի փլուզումը, ինքնուրույն զարգացման ուղի դուրս եկած ազատագրված ժողովուրդների վերածնման պրոցեսը չեն կարող դուրս մնալ նույնիսկ իմպերիալիզմի ամենապնդաճակատ գաղափարախոսների տեսադաշտից։ Եվ, հիրավի, ռասիզմը ոչ միայն չնպաստեց իմպերիալիստական տիրապետության ոլորտների ընդարձակմանը, այլ է՛լ ավելի ուժեղացրեց ժողովուրդների պայքարը գաղութային ռեժիմի դեմ, արագացնելով դրա խորտակումը։

Նման պայմաններում ռասիզմի քարոզը և աշխարհում տիրապետող դրության հասնելու ձգտումը տեսականորեն արդարացնելը իմպերիալիստներին լուրջ դժվարությունների և պրոբլեմների առաջ կկանգնեցնի։ Հակակոմունիստական, հակահեղափոխական ուժերի կոնսոլիդացումը, ագրեսիվ ռազմաքաղաքական բլոկների ինտեգրացման կուրսը պահանջում են հոգալ «միասնության և համերաշխության» մասին։ Ահա թե ինչու տրադիցիոն ռասայական հիմնադրույթներից հեռանալու տենդենցը բացատրվում է տակտիկական, կոնյունկտուրային նկատառումներով։ Իրենց էքսպանսիոնիստական դիտավորություններն իրականացնելու համար իմպերիալիստները ուրիշ երկրների մարդկային ռեսուրսների խիստ կարիք են զգում։ Այդ խնդիրը հակասում է ռասայական սկզբունքներին։ Ահա թե ինչու ռասիզմը ռազմատենչ իմպերիալիստական ստրատեգների վզից կախված քար է դարձել։

Բայց ռասիզմը մեռած չէ, քանի դեռ պահպանվում է սոցիալական հողը։ Նա կարող է թաքցնել իր գլուխը, սակայն կարող է նաև չարախինդ դեմքը ժամանակ առ ժամանակ ցույց տալ տարբեր երանգներով։ Ռասիզմը վերջնականապես կթաղվի միայն այն ժամանակ, երբ կքայքայվի նրա գլուխը պահպանող մարմինը՝ իմպերիալիզմը։

Մարքսիզմը, հենվելով բնագիտության տվյալների վրա, հողմացրիվ է անում ռասիստական տեսության ռեակցիոն դոգմաները։ Մարդկային ռասաները միասնական կենսաբանական տեսակ են, որոնք ընդհանուր ծագում ունեն։ Մարդու

մորֆոլոգիական հատկությունները, որոնք դրսևորվում են մաշկի, աչքերի, մազերի գույնի և ուրիշ արտաքին գծերի մեջ, չեն կարող նրա կուլտուրական զարգացման, հոգեբանության և մտավոր ունակությունների չափանիշը դառնալ։

Սոցիալիստական շինարարության պրակտիկան ցուցադրում է բուրժուազիայի գաղափարախոսների տեսական կոնստրուկցիաների ամբողջ արատավորությունը։ Սոցիալիզմի պայմաններում, հասարակության շահերի ներդաշնակության հիման վրա, հաստատվում է բոլոր ազգերի իրավահավասարություն։ Նրանցից յուրաքանչյուրը, անկախ քանակական մեծությունից և արտաքին հատկություններից, իր ավանդն է մուծում սոցիալիստական և համաշխարհային կուլտուրայի գանձարանը։

Սոցիալական վարքագիծը կոնկրետ պատմական պայմանների և դասակարգային շահերի արտահայտությունն է։ Սոցիալիզմը վերացրեց և վերացնում է բոլոր ազգերի կուլտուրտնտեսական հետամնացությունը, նրանց դուրս բերելով բարձր զարգացման ճանապարհը։ «Բնական հետամնացությունը» գիտական հասկացություն չէ։ Եթե աշխարհի այս կամ այն մասում տնտեսապես հետամնաց շրջաններ կան, դա բացատրվում է իմպերիալիստական գաղութատիրությամբ, որի հետևանքով այդ շրջանները շահույթի աղբյուրների են վերածվել։

* * *

Կապիտալիստական աշխարհում սպառազինությունների մրցավազքը զուգորդվում է պատերազմն արդարացնող գաղափարների մրցավազքի հետ։ Բուրժուական սոցիոլոգիայում ներկայումս տարածված է սոցիալական երևույթների այսպես կոչված բազմաքանակ գործոնների տեսությունը։ Մորիս Հինզբերգը, որը, ի դեպ, համաձայն չէ պատերազմի հոգեբանական տեսության հետ, գրում է, որ ժամանակակից պատերազմներն իրար հետ զուգորդվող այնպիսի գործոնների ծնունդ են, ինչպես՝ 1. ազգերի միջև իմպերիալիստական մրցակցությունը. 2. երկյուղը, որ տածում են ազգերը մեկը

մյուսի նկատմամբ. 3. այդ երկուսը պահպանող սպառազինությունների գոյությունը. 4. ինքնապաշտպանության իրենց իրավունքներից ազգերի հրաժարվելը. 5. երկյուղ առաջացնող հոգեբանական գործոնները և վերջապես 6. խաղաղության ձգտող ընդհանուր կամքի բացակայությունը։

Էկլեկտիկական այս տեսության կողմնակիցները միտումնավոր խճճում են պատերազմի պատճառները, մասսաներին շփոթության մեջ գցելու և ապակողմնորոշելու նպատակով։ Առաջ են քաշվում նորանոր գործոններ, որոնցից մեկն ըստ Լ. Բեռնարդի, «բնակչության ճնշումն է գոյամիջոցների վրա»։ Նրա մտքերի դասակարգային գունավորումը բացահայտվում է անմիջապես, երբ հայտարարում է, թե «ժամանակակից տնտեսական պատճառները... պատերազմներ չեն առաջացնում»։ Մանրելով, Լ. Բեռնարդն ի վերջո եզրակացնում է. «Պատերազմը բնական երևույթ է, այնպիսին, ինչպես սոցիալական երևույթների ամեն մի ուրիշ տիպ»[1]։

Ամերիկյան պրոֆեսոր Կվինսի Ռայտը պատերազմները դիտում է որպես տեխնիկական, ֆիզիկական, սոցիալական և ինտելեկտուալ մեծությունների հարաբերակցության փոփոխության հետևանք, գտնելով, որ պատերազմի որևէ կոնկրետ պատճառ գոյություն չունի. «Ամեն մի առանձին դեպքում պատերազմի հավանականությունը որոշելու համար պահանջվում է համաշխարհային մասշտաբով միջխմբային հարաբերությունների վրա ընթացիկ փոփոխությունների ներգործության գնահատականը»[2]։

Տրամաբանության և ողջախոհության կանոններին հակառակ, բուրժուական մտածողները մեկ տեսակետից մտավոր անցումներ են կատարում մյուսին, միայն թե մի կերպ «հիմնավորեն» պատերազմի ծագման այնպիսի պատճառներ, որոնք բուրժուական հասարակության հակասությունների հետ իբր ոչ մի առնչություն չունեն։

Վերջին ժամանակներս նկատվում է բազմաքանակ գործոնների տեսությունից հրաժարվելու և պատերազմների ծագ-

---

[1] Տե՛ս Исторический материализм и соц. философ. совр. буржуазии, էջ 563.

[2] Նույն տեղում։

ման համընդհանուր պատճառ գտնելու տենդենց։ Կապիտալիզմի ջատագովները նշում են, որ պատերազմի պատճառը թաքնված է հասարակական կառուցվածքի թերությունների մեջ, որոնցից գլխավորը, ըստ նրանց, ազգերի ինքնուրույնությունն է։ Սուվերեն ազգերի գոյությունը տարբեր ազգերի շահերի բախում է ծնում։ Ազգային սուվերենության հասնելու ձգտումը դիտվում է որպես լարվածության և պատերազմների պատճառ։ Մինչդեռ ամեն ինչ կախված է նրանից, թե ով է որոշում ազգի քաղաքականությունը, դասակարգային ինչ բովանդակություն ունի այն։

Այս տեսության հիմնադիրն անգլիական հրապարակախոս Նորման Էնջելն է։ Չհամաձայնվելով պատերազմների ծագման կենսաբանական, հոգեբանական և գեոպոլիտիկական տեսությունների հետ, Էնջելը պատերազմների ծագման համընդհանուր պատճառ է համարում ազգային սուվերենությունը։ Նա գրում է. «Կոնֆլիկտի զգացմունքն ազգային կազմավորումների անջատվածության և անկախության հետևանքով է ծագում... Կապիտալիզմը ներգրավվում է այդ կոնֆլիկտների մեջ, որովհետև կապիտալիստը սկսում է մտածել ոչ թե որպես կապիտալիստ, այլ որպես նացիոնալիստ... Եթե կապիտալիստն ավելի շատ մտածեր որպես կապիտալիստ և ավելի քիչ, որպես նացիոնալիստ, ապա, հնարավոր է, որ չէր ծագի պատերազմ և կապիտալիզմն այսպիսի խղճուկ վիճակի չէր հասնի... Պատերազմը ծագում է յուրաքանչյուր ազգի ջանքերի շնորհիվ, համապատասխանաբար պաշտպանելու իր իրավունքներն ու շահերն այս անմիտ աշխարհում, անմիտ միջոցներով... Ես գտնում եմ, որ մեր օրերում աշխարհում ազդեցությունների երկու հոսանք գոյություն ունի՝ սովորական հին կովարարության հետևանքով ուժեղացող նացիոնալիզմի տենդենց և... միջազգային կազմակերպություն ստեղծելու տենդենց»[1]։

Էնջելը ազգային սուվերենության սկզբունքը հակաբարոյական և հակասոցիալական է համարում, դրա մեջ տեսնելով պատերազմի վտանգը։ Ըստ նրա, եթե այդ սկզբունքները

---

[1] Տե՛ս նույն տեղում, էջ 566։

համընդհանուր ճանաչում գտնեն, ապա ազատ հումանիստական հասարակության մասին խոսք անգամ չի կարող լինել։

Էնչելի տեսակետի մեջ ռեակցիոն բովանդակություն է ամփոփված։ Նա կոչ է անում ստեղծել համաշխարհային, վերազգային պետական կառուցվածք, որն, ըստ էության, արտահայտում է համաշխարհային տիրապետություն հասնելու իմպերիալիստական ձգտումներն այնպիսի պատմական պայմաններում, երբ ժողովուրդները մարտնչում են իմպերիալիստական ճնշման ու շահագործման դեմ՝ ազգային անկախության ու սուվերենության դրոշի ներքո։

Ազգային սուվերենության դեմ հարձակումներ են գործում ամերիկյան պրագմատիստ Դյուին, Չիկագոյի համալսարանի պրոֆեսոր Մորտիմեր Ադլերը։ Նրանց հայացքների համաձայն, միջազգային հարաբերություններում իբր տիրում է քաոս ու անարխիա, որոնց պատճառը քաղաքական նացիոնալիզմն է, ազգերի գոյությունը։ Նրանք նույնացնում են շովինիզմն ու ազգային ազատագրության գաղափարը, որոնք ըստ էության ոչ մի ընդհանուր բան չունեն։ Ադլերը հայտարարում է, թե քանի դեռ գոյություն ունեն սուվերեն ազգերը, պատերազմներն անխուսափելի են, «սուվերենության գինը՝ պատերազմն է»[1]։ Ադլերը մանրում է, ասելով, որ ոչ թե պատերազմն ու ագրեսիան, այլ խաղաղությունն է մարդկանց ձգտումն ու նորմալ վիճակը։ Այստեղ դրսևորվում է նրա ձգտումը՝ կողմնակիցներ և իրեն հավատացողներ գտնել, որպեսզի նրանց համոզի, թե իբր միայն համաշխարհային կառավարությունն է ընդունակ վերացնելու պատերազմները, նա է քաղաքական էքսպանսիայի վերջին սահմանը։ Ադլերի տեսության դասակարգային իմաստն ակնհայտորեն է դրսևորվում, երբ նա հասարակական կառուցվածքի իդեալ է հռչակում «մաքուր կապիտալիզմը», որն իբր կոչված է միավորելու ամբողջ աշխարհը, ԱՄՆ-ի գլխավորությամբ։

Այն կապիտալիզմը, որ երկու համաշխարհային աղետ է ծնել և այսօր էլ մարդկությանն սպառնում է երրորդ համաշխարհային պատերազմով, ներկայացվում է որպես մի սխ-

---

[1] Տե՛ս նույն տեղում, էջ 567։

տեմ, որն իբր կատարելագործելու դեպքում կարող է վերջ տալ քաղաքական էքսպանսիաներին։ Նման տեսակետի դեմ ոչ միայն փաստերն են հանդես գալիս, այլև առողջ դատողության ամենատարրական կանոնները։

Բուրժուական սոցիոլոգների հայացքներում արտացոլվող կոսմոպոլիտական տենդենցները նոր պատմական պայմաններում բուրժուական նացիոնալիզմի դրսևորումներն են։

Խաղաղության հաստատման պայմանը ոչ թե ազգային սուվերենության հաղթահարումն է, այլ սուվերեն պետությունների համագործակցությունը՝ խաղաղ գոյակցության սկզբունքների հիման վրա։

Ազգային սուվերենության վերացման գաղափարը իմպերիալիզմի զավթողական, ագրեսիվ քաղաքականության և բուրժուական նացիոնալիզմի ու շովինիզմի քողարկված տեսական արտացոլումն է։ Այդ տեսության իսկական իմաստը լավ է դրսևորվում արևմտագերմանական փիլիսոփա Բ. Նոլլի գրքույթում։ Նա կոչ է անում հասնել «պետությունների ինտերնացիոնալ ձուլմանը»՝ ուժի դիրքերից։

Կապիտալիզմի ջատագովները վերջին ժամանակներս պրոպագանդում են նաև այնպիսի գաղափարներ, թե իբր պատերազմն առանձին քաղաքագետների հաշվեսխալների, ինքնակամայական գործողությունների կամ էլ անկենսունակ քաղաքական պայմանագրերի հետևանք է։ Անգլիական ռազմական տեսաբան Ջոն Ֆուլլերը գրում է. «Կասկածից վեր է, որ 1939—1945 թթ. պատերազմը Հիտլերը սանձազերծեց. հավասարապես կասկածից վեր է նաև այն, թե ով և ինչը Հիտլերին կյանքի կոչեցին։ Դա Կլեմանսոն է, հաշտության կոնֆերանսի անկոնտրոլ և ամեն ինչ վերահսկող նախագահը և նրա գլուխ գործոց՝ Վերսալյան պայմանագիրը»[1]։

Այս դատողությունն ինքնամերկացման փաստաթուղթ է, եթե նույնիսկ արձանագրենք, որ պատերազմի պատճառը հակագիտական դիրքերից է ներկայացվում։ Իմպերիալիստական հաշտությունը իմպերիալիստական պատերազմից է ծնվում։

[1] **Дж. Ф. С. Фуллер.** Вторая мировая война, стр. 37.

ֆաշիզմը, ինչպես նաև Վերսալյան պայմանագիրը, միջազգային իմպերիալիզմի զարգացման օրինաչափությունների արդյունք են։ Այստեղ մի տենդենց էլ է նկատվում՝ պատերազմների մեկնաբանման դասակարգային ասպեկտները միաձուլվում են երևույթների նեղազգային ըմբռնման հետ։ Իմպերիալիզմի գաղափարախոսների յուրաքանչյուր խումբ ձիգ է գործադրում արդարացնելու, գունազարդելու իր ազգային բուրժուազիայի քաղաքական վարքագիծը, հակառակորդի վրա բարդելու պատերազմի սանձազերծման պատասխանատվությունը։ Սակայն նման ճիգերն է՛լ ավելի պարզ են դարձնում կապիտալիզմի պաշտպանների իսկական դիտավորությունները։ Չիկագոյի համալսարանի պրոֆեսոր Կ. Ռայտը ուղղակի հայտարարում է. «Ժամանակակից քաղաքականության պայմաններում պատերազմը հիմնվում է խնամքով մշակված գաղափարական շենքի վրա, որը պահպանվում է խոսքի, կանոնների, սիմվոլների և իդեալների սիստեմների դաստիարակության միջոցով։ Այդ սիստեմների բացատրությունն ու մեկնաբանությունը հաճախ այնքան հեռու են իրադարձությունների իսկական ընթացքից, ինչպես պատերազմի պրիմիտիվ բացատրությունը մոգության, արարողության կամ վրեժխնդրության տեսանկյունից»[1]։

Բուրժուական գաղափարախոսության մեջ ֆրազներ են հնչում այն մասին, թե պատերազմն իբր նպաստում է ազգի վերածնմանը, մարդու մեջ լավագույն էմոցիաներ է արթնացնում, խթանում այնպիսի պոռթկումներ, ինչպես արիությունը, հերոսությունը, անձնազոհությունը։ Պատերազմն ավելի խոր իմաստ ունի, քան իբր կարող է որսալ բանականությունը. այն մաքրում է ժողովրդի ոգին և զտում տվյալ դարաշրջանի արատները, օժանդակելով հասարակության բարեփոխմանը։ Ստացվում է, որ պատերազմը ո՛չ թե կործանման, այլ ըստեղծագործության, ո՛չ թե վհատման, այլ ոգեշնչման աղբյուր է։ Խիզախությունն ու հերոսությունը բարոյական այնպիսի նորմաներ են, որոնք դրսևորվում են հանուն կյանքի և երջանկու-

---

[1] Տե՛ս Современная империалистическая военная идеология, էջ 243:

թյան, այլ ոչ թե մահվան ու հուսահատության համար մղվող պայքարում։ Բարոյական վեհ գծերի դրսևորման համար գոյություն ունի ավելի հարմար ասպարեզ՝ խաղաղ շինարարությունը, որի ժամանակ մարդու վրա չի ծանրանում մահվան և հուսալքության ուրվականը, այլ նրա մեջ ստեղծագործելու և կառուցելու զգացմունքն է բոցավառվում։

Ազգի վերածնունդ՝ մարդկանց դիակների և ավերակների վրա, անձնազոհություն՝ շահագործողների հարստացման համար. նման հնարքներով բուրժուազիան օբյեկտիվորեն ընդլայնում է աշխատավոր մասսաներից իրեն բաժանող սահմանները։ Անարդարացի իմպերիալիստական պատերազմները, որոնք բուրժուական գաղափարախոսները ներկայացնում են որպես հասարակությունն արատներից մաքրող գործողություն, իրականում, մի կողմից՝ արտացոլում են այդ իդեալները ծնող հասարակության արատավորությունը, մյուս կողմից՝ ավելացնում դրա թարախակալած խոցերը, ուժեղացնելով աշխատավոր զանգվածների դժգոհությունն ու զայրույթը, բազմապատկելով նրանց հեղափոխական եռանդը։

Որքան ավելի շատ ռազմական դրամներ է սարքում իմպերիալիզմը, այնքան ջանասիրաբար են նրա երկրպագուները խուսանավում, որպեսզի հիմարացնեն մարդկանց, բթացնեն նրանց գիտակցությունը՝ պատերազմի պատճառները չըհասկանալու համար։ Այստեղ գործում է համարժեքության օրենքը։ Կապիտալիստների շահերն այն չափանիշներն են, որոնցով ղեկավարվում են իմպերիալիզմի ջատագովները։ Նըրանց գլխավոր խնդիրն է՝ սանձազերծված պատերազմների համար պատասխանատվությունից հեռու պահել բուրժուազիային, քողարկել զինված ընդհարումների շարժիչ ուժերը։ Եթե տերերը ոչնչից չեն խորշում գրպանները ոսկով լցնելու համար, ապա նրանց տեսական ծառաներին ոչինչ չարժե գաղափարախոսության մեջ դրամանենգի դեր խաղալը։

Այսպիսով, իմպերիալիզմի պայմաններում բուրժուական սոցիոլոգիան ամբողջովին զբաղված է մոնոպոլիստական բուրժուազիայի արյունոտ գործերի հիմնավորումով։ Նեղ դասակարգային մտածողությամբ սահմանափակված բուրժուական սոցիոլոգները կաշվից դուրս են գալիս, որպեսզի համա-

տացնեն մարդկանց, թե արդյունաբերա-ֆինանսական բուրժուազիան համաշխարհային արյունահեղությունների մեջ մեղք չունի։ Օբյեկտիվ չափանիշների լիակատար բացակայությունը, հասարակական իրադարձությունների սուբյեկտիվիստական մեկնաբանությունը, փաստերի կամայական վերլուծությունը, նեղդասակարգային ֆանատիզմը բուրժուական աշխարհըմբռնման երանգներն են արդի պայմաններում։

Ստեղծելով խոշոր արդյունաբերություն, բուրժուազիան կյանքի կոչեց արդյունաբերական պրոլետարիատին։ Վերջինիս դասակարգային պայքարի ընթացքում ձևավորվեց և զարգացավ նոր աշխարհայացք՝ մարքսիզմ-լենինիզմը, որը գիտական օբյեկտիվությամբ բացահայտելով պատերազմների նյութական աղբյուրներն ու դասակարգային դրդապատճառները, իմաստավորեց ու հիմնավորեց պատերազմները վերացնելու և ազգերի ու ժողովուրդների միջև համընդհանուր խաղաղություն հաստատելու ռեալ ուղիներն ու գործուն միջոցները։

ԳԼՈՒԽ ԵՐԿՐՈՐԴ

## ՊԱՏԵՐԱԶՄԻ ՍՈՑԻԱԼ-ԴԱՍԱԿԱՐԳԱՅԻՆ ԷՈՒԹՅՈՒՆԸ

### 1. Քաղաքականության և պատերազմի հարաբերակցությունը

Պատերազմի էությունն ու դրդապատճառները հնարավոր եղան բացահայտել միայն պատմության մատերիալիստական ըմբռնման դիրքերից։

Պատերազմը պայքարի ձևերից մեկն է տարբեր հասարակական-տնտեսական սիստեմների, դասակարգերի և պետությունների միջև։ Նախամարքսյան սոցիոլոգները սահմանափակվեցին մարդկանց պատմական գործունեության գաղափարական դրդապատճառները նշելով։ Նրանք չգտան օբյեկտիվ օրինաչափությունը, մարդկանց պրակտիկ գործողությունների նյութական խթանները։

Կապիտալիզմի զարգացումը կյանքի կոչեց նոր դասակարգեր, սոցիալական ճնշման նոր պայմաններ և պայքարի նոր ձևեր։ Այն ավելի պարզեցրեց դասակարգային հակամարտությունները։ Հանդես եկավ արդյունաբերական պրոլետարիատը, որն իր գոյապայմանների թելադրանքով կազմակերպված, մասսայական պայքարի ուղին բռնեց։ Նա հանդես եկավ որպես նոր արտադրական հարաբերությունների, հասարակության կազմակերպման նոր ձևերի կրող։

Գերարտադրության ծնունդ տնտեսական ճգնաժամերը, սոցիալական բևեռների առկայությունը, մրցակցային պայքարը, արտադրության անարխիան ակնբախորեն ցուցադրեցին կապիտալիստական արտադրաեղանակի հակասությունները։ Պարբերաբար սանձազերծվող պատերազմները ցուցադրեցին կապիտալիզմի ագրեսիվ բնույթը։

Պատմական զարգացման ընթացքը մտորսալու համար անհրաժեշտ էր մանրակրկիտ վերլուծել բուրժուական հարաբերությունների ծագման ու զարգացման դիալեկտիկան, քանի որ ինքը՝ ֆեոդալիզմի ընդերքից դուրս եկած բուրժուական հասարակությունը, համաշխարհային պատմության ընդհանուր շղթայի անհրաժեշտ մի օղակն է։ Այս իմաստով, կապիտալիստական հարաբերությունների գիտական վերլուծությունը հնարավորություն տվեց բացահայտելու դրանց հասարակական հետևանքները և գտնելու պատերազմների դրդապատճառները։ Մարքսը նկատել է. «...ավելի հեշտ է զարգացած մարմինն ուսումնասիրել, քան մարմնի մի փոքրիկ բջիջը... Ինքնըստինքյան էականն այստեղ այն հասարական հակամարտությունների զարգացման ավելի բարձր կամ ավելի ցածր աստիճանը չէ, որոնք բխում են կապիտալիստական արտադրության բնական օրենքներից։ Էականը հենց այդ օրենքներն են, այդ տենդենցները, որոնք գործում և իրագործվում են երկաթե անհրաժեշտությամբ։ Արդյունաբերապես ավելի զարգացած երկիրը պակաս զարգացած երկրին միայն նրա սեփական ապագայի պատկերն է ցույց տալիս»[1]։

Քանի որ պատերազմը հասարակական հարաբերությունների սիստեմում որոշակի տեղ է գրավում, ուստի նրա խթաններն ու շարժիչ ուժերն ըմբռնելու համար անհրաժեշտ է մըտորսալ ամբողջ սիստեմի զսպանակը։ Այս տեսակետից օբյեկտիվ պայմաններ առաջացան կապիտալիստական հարաբերությունների զարգացման ընթացքում։ Վ. Ի. Լենինը հետևյալ կերպ էր գնահատում Մարքսի և Էնգելսի հայտնագործած պատմության մատերիալիստական ըմբռնման էությունը. «Մատերիալիստորեն նայելով տիեզերքին ու մարդկությանը՝ նրանք տեսան, որ ինչպես բնության բոլոր երևույթների հիմքը մատերիական պատճառներն են, այնպես էլ մարդկային հասարակության զարգացումը պայմանավորվում է մատերիական արտադրողական ուժերի զարգացմամբ։ Արտադրողական ուժերի զարգացումից են կախված այն հարաբերությունները, որոնց մեջ մտնում են մարդիկ իրար նկատմամբ՝

---

[1] Կ. Մարքս, Կապիտալ, հատ. 1, Հայպետհրատ, 1954, էջ 4—7։

*մարդկային պահանջները բավարարելու համար անհրաժեշտ առարկաների արտադրության ժամանակ։* **Եվ այս հարաբերությունների մեջ է հասարակական կյանքի բոլոր երևույթների, մարդկային ձգտումների, իդեաների ու օրենքների բացատրությունը»**[1] *(ընդգծումը մերն է — Ս. Ք.)։*

*Մարքսիզմը ցույց տվեց, որ ո՛չ ֆիզիոլոգիան, ո՛չ կենսաբանությունը, ո՛չ էլ բնության օրենքները չեն կարող բացատրել պատերազմների ծագումն ու էությունը։ Պատերազմը պետական քաղաքականություն է դառնում հասարակական կյանքի զարգացման այն աստիճանում, երբ ծագում են արտադրության միջոցների մասնավոր սեփականությունը, հակամարտ դասակարգերը և դասակարգային տիրապետության քաղաքական գործիքը՝ պետությունը։ Պատերազմը կախված է անմիջապես հասարակության դասակարգային կառուցվածքից և արտադրության եղանակից։ Քաղաքականության և պատերազմի հիմքերը թաքնված են հասարակական-տնտեսական հարաբերությունների որոշակի սիստեմում։ Ֆրանց Մերինգը գրում էր, որ պատերազմների ամբողջ պատմությունը կարելի է հասկանալ միայն այն դեպքում, եթե այն հանգեցվի հասարակության տնտեսական հիմքերին։*

*Ստրկատիրական հասարակարգում պատերազմը հանդես է գալիս որպես պետությունների նորմալ գործունեության գործիք, որոշակի տնտեսական և քաղաքական նպատակներին հասնելու համար։ 264 թ. մ. թ. ա. ծավալված Փյունիկյան պատերազմներում երկու կողմերն էլ՝ Հռոմը և Կարթագենը պայքարում էին Արևմտյան Միջերկրածովյան շրջանում իրենց տնտեսական և քաղաքական տիրապետությունը հաստատելու համար։ XVII—XVIII դարերում եվրոպական պետությունների կատաղի պայքարը՝ գաղութներ նվաճելու համար, նրանց միջև առևտրական պատերազմներ առաջացրեց։*

*Տարբեր երկրների միջև ծավալվող զինված ընդհարումները միջպետական հակասությունների սրման բարձրագույն արտահայտությունն են, որոնց սովորաբար նախորդում են դիվանագիտական ճնշումը, տնտեսական միջոցառումները և*

---

[1] Վ. Ի. Լենին, *Երկեր, հատ. 2, էջ 9։*

գաղափարական կամպանիան, եթե դրանք շոշափելի արդյունք չեն տալիս։

Պատերազմը հայտնագործել են շահագործող դասակարգերը, նրա մեջ տեսնելով իրենց քաղաքական նպատակների իրականացման միջոցը, երբ մյուս բոլոր մեթոդները սպառվում են։ Ահա թե ինչու, քանի դեռ պահպանվում է շահագործողական հասարակարգը, կմնա նաև այն հողը, որից պատերազմն է ծնվում։

Քաղաքական նպատակը բխում է տվյալ արտադրաեղանակի, ասենք, անտագոնիստական հասարակարգում՝ անտագոնիստական արտադրաեղանակի հակասությունների բընույթից։ Քաղաքական նպատակը և նրա իրականացման համար գործադրվող միջոցները դիալեկտիկորեն փոխկապակցված են։ Ինչպիսին քաղաքական նպատակի տնտեսական, սոցիալ-դասակարգային բովանդակությունն է, այնպիսին էլ նրա իրականացմանն ուղղված միջոցներն են։ Ամեն մի հասարակական տնտեսական ֆորմացիային համապատասխանում են կառավարման և պետական կառուցվածքի որոշակի ձևեր, իսկ վերջիններին՝ որոշակի քաղաքական նպատակներ պատերազմում, որը անխզելիորեն կապված է կոնկրետ հասարակական տնտեսական կարգի հետ։ Այսպես, օրինակ, ստրկատիրական պետությունները պատերազմում էին մեկը մյուսի նկատմամբ տիրապետության հասնելու և ստրուկների թիվն ավելացնելու համար։ Իմպերիալիստական պետությունների միջև ծավալվող պատերազմների նպատակն է՝ ընդարձակել ֆինանսական կապիտալի տիրապետության ոլորտը։ Եվ, քանի որ բուրժուական պետությունը կապիտալիստական դասակարգի գործավար կոմիտեն է, ուստի նրա խնդիրն է պաշտպանել բուրժուազիայի դիրքերը և ընդարձակել նրա տնտեսական շահագործման և քաղաքական տիրապետության շրջանակները։

Գերմանական սոցիոլոգ ֆոն դեր Հոլցը գրում էր, թե երբ պատերազմի ժամանակ քաղաքականությունը հետին պլան է նահանջում։ Կ. Կաուցկու կարծիքով, հենց որ սկսվում է պատերազմը, պատմականորեն նախապատրաստված քաղաքական հարաբերությունները ժողովուրդների ու դասակար-

գերի միջև դաղարում են և միանգամայն այլ վիճակ է իշխում՝ հարձակվողներ և պաշտպանվողներ։ Այս պնդումը պատերազմը քաղաքականությունից կտրելու, այն որպես մեկուսացված ինքնուրույն երևույթ դիտելու դրսևորում է։

1963 թվականին «Իզվեստիա» թերթում (№ 228) տպագրված հոդվածներից մեկում հեղինակը՝ Բորիս Դմիտրեև, իրավացիորեն դատապարտելով նրանց, ովքեր պատերազմի և խաղաղության պրոբլեմները քննարկելու ժամանակ անտեսում են կոնկրետ իրադրությունը, միաժամանակ այսպիսի դատողություն է անում. «Այդ պայմաններում (այսինքն՝ ժամանակակից պայմաններում), պատերազմը չի կարող քաղաքականության շարունակությունը լինել, այն կարող է լինել նրանց ավանտյուրիստական քաղաքականության անկասելի վախճանը, ովքեր մարդկությանը կներքաշեն կործանիչ կոնֆլիկտի մեջ... Պատերազմը կարող է լինել միայն խելացնորության շարունակությունը։ Ռեալիստական քաղաքականության շարունակությունը կարող է և պետք է լինի խաղաղությունը»։ Ապա, հեղինակը մարտնչում է Կլաուզևիցի դրույթի դեմ, պնդելով, թե ներկայումս այն անընդունելի է։

Այս մտքերում խառնաշփոթություն կա։ Հեղինակը մեկ դատողության մեջ երկու իրարամերժ դրույթներ է համատեղում. «պատերազմը չի կարող քաղաքականության շարունակությունը լինել» և «այն կարող է լինել ավանտյուրիստական քաղաքականության անկասելի վախճանը»։ Նշանակում է, այնուամենայնիվ, պատերազմը քաղաքականության շարունակությունն է, անկախ այն բանից, թե ինչպիսի քաղաքականության։ Ջերմամիջուկային զենքի առկայության պայմաններում պատերազմը կլինի ավանտյուրիստական, խելացնոր քաղաքականության շարունակությունը, սակայն բոլոր դեպքերում, զենքի բնույթից ու մակարդակից, ընդհարման հետևանքներից անկախ, այն մնում է որպես քաղաքականություն։ Պատերազմի քաղաքական բնույթը չպետք է խառնել նրա հնարավոր հետևանքների հետ։ Ինչպիսի հետևանքների էլ հասցնի պատերազմը, միևնույն է, նրա բնույթը քաղաքական կլինի։ Իմպերիալիզմի քաղաքագետները պարզորոշ կերպով են նշում, որ իրենց կողմից նախապատրաստ-

վող միջուկային պատերազմի նպատակն է ոչնչացնել սոցիալիստական սիստեմը։ Ավանտյուրիզմը նույնպես քաղաքականության կուրս է, թեպետ և անհեռատես, կույր, միակողմանի, դատապարտված քաղաքականություն։

Տվյալ դեպքում հեղինակը բաց դուռ է բախում, տուրք տալով ակամա նրանց, ում դեմ մարտնչում է։

Բուրժուական սոցիոլոգիայում Կլաուզևիցի դրույթը քննադատվում է մեծ կրքոտությամբ։ Իմպերիալիզմի գաղափարական ջատագովները փորձում են նոր ջերմամիջուկային պատերազմի հնարավոր հետևանքները ներկայացնել որպես մի փաստարկում այն գնահատականի դեմ, որ պատերազմին տվել է Կլաուզևիցը։ Ջոն Կինգստոն-Մակլորին գրում է. «...Վերցրեք նրա նշանավոր հայտարարությունն այն մասին, որ «պատերազմը քաղաքականության շարունակությունն է այլ միջոցներով» (բռնի միջոցներով) և քննարկեցեք այն ժամանակակից պայմանների լույսի տակ։ Միջուկային պատերազմի դեպքում ոչինչ ճշմարտությունից այնքան հեռու չէր լինի, ինչպես այդ պնդումը։ Այդպիսի պատերազմը, սանձազերծման դեպքում, կնշանակեր ամեն մի քաղաքականության վերջ և փոխադարձ լրիվ բնաջնջում»[1]։

Պատերազմի շարժառիթը եղել և մնում է քաղաքական նպատակը։ Պատերազմը ու քաղաքականությունն այնպիսի հարաբերության մեջ են, ինչպես մասն ու ամբողջը։ Ամեն մի քաղաքականություն պատերազմ չէ, բայց ամեն մի պատերազմ, անկախ նրա բնույթից, քաղաքականություն է, քաղաքականության բաղկացուցիչ մասն ու շարունակությունը։ Պատերազմը քաղաքականությունից կտրելը նշանակում է կառչել գռեհիկ էմպիրիզմից և գլորվել մետաֆիզիկական աշխարհըմբռնման ճահիճը։ Վ. Ի. Լենինը գրում էր.«Պատերազմը քաղաքականության շարունակությունն է այլ» (այն է՝ բռնի) «միջոցներով». «Այս հռչակավոր իմաստախոսությունը պատկանում է ամենախորը ռազմական գրողներից մեկին՝ Կլաուզևիցին։ Այս դրույթը մարքսիստները միշտ արդարա-

[1] Э. Дж. **Кингстон-Макклори.** Глобальная стратегия. М., 1959, стр. 290.

ցիորեն համարել են յուրաքանչյուր տվյալ պատերազմի նշանակության մասին ունեցած հայացքների տեսական հիմքը։ Մարքսն ու Էնգելսը հենց այս տեսակետից են միշտ նայել տարբեր պատերազմներին»[1]։

Պետք է ընդգծել, որ «պատերազմը քաղաքականության շարունակությունն է բռնի միջոցներով» դրույթը կարող է իր մեջ տարբեր բովանդակություն ամփոփել։ Կլաուզևիցը քաղաքականությունը դիտում էր որպես «ամբողջ հասարակության շահերի արտահայտություն», դասակարգային տարբերից զուրկ։ Մինչդեռ մարքսիզմը քաղաքականությունը դիտում է, որպես տնտեսության համակենտրոնացված արտահայտություն, դասակարգերի միջև եղած հարաբերություն։ Այսպիսով, Կլաուզևիցը իդեալիստորեն էր մեկնաբանում քաղաքականությունը, իսկ մարքսիզմը՝ մատերիալիստորեն, դասակարգային պայքարի դիրքերից։ Սակայն, անկախ դրանից, նրա դրույթը պատերազմի քաղաքական էության մասին անառարկելի է։

Քաղաքական նպատակը, որպես պատերազմի շարժառիթ, նյութական հարաբերությունների հետևանք է։ Քաղաքականության առանձնահատկություններն ու բնույթը որոշում են այդ հարաբերությունների սիստեմում տիրապետող դասակարգի շահերը։ Սոցիալական հարաբերությունների մեջ քաղաքականությունը կենտրոնական տեղ է գրավում, այն ներխուժում է հասարակական կեցության բոլոր ոլորտները, իր մեջ համակենտրոնացնելով տիրապետող դասակարգի տնտեսական շահերը։ Տնտեսական շահն ու քաղաքական նպատակը փոխկապակցված և փոխպայմանավորված են։ Հենց այստեղից է բխում քաղաքականության կոնկրետությունը։ Պատերազմը սանձազերծում են իրենց նյութական շահերով ղեկավարվող դասակարգերը։

Անտագոնիստական հասարակություններում շահագործող խմբերի սանձազերծած պատերազմներում դրսևորվում են նրանց դասակարգային շահերը։ Քաղաքականությունը իշխող դասակարգի ներկայացուցիչների պրակտիկ գործունեության

---

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 21, էջ 385։

*գիծն ու ուղղությունն է։ Այն տիրապետող դասակարգի գաղափարների ու հայացքների կոնկրետ իրականացումն է, որոնց մեջ իրենց անմիջական արտացոլումն են գտնում տնտեսական հարաբերությունները և որոնցով ղեկավարվում է այդ դասակարգը ներքին և արտաքին ոլորտներում. «Այն դասակարգը, որ տիրապետում է, որոշում է քաղաքականությունը նաև պատերազմի մեջ։ Պատերազմն ամբողջապես քաղաքականություն է, նույն նպատակների իրագործման շարունակությունն է այդ դասակարգերի կողմից՝ այլ ճանապարհով»*[1]*։*

*Պատերազմը ոչ միայն արտաքին քաղաքական, այլև ներքաղաքական իրադարձություն է։ Միջպետական ռազմական կոնֆլիկտները արտաքին քաղաքական գործողություն են, իսկ միջդասակարգային զինված ընդհարումները երկրի ներսում որոշակի ներքաղաքական հարաբերությունների դրսևորում։ Ընդ որում, միջպետական պատերազմներն իրենց կնիքն են դնում կռվող կողմերի ներքին կյանքի վրա, իսկ միջդասակարգային պատերազմներն իրենց հերթին, միջազգային իրադրության վրա։ Միջպետական և միջդասակարգային գոտեմարտերի պատճառները տարբեր են և յուրահատուկ ասպեկտներ ունեն։ Սակայն այդ սահմանը բացարձակ չէ։ Տեղի է ունենում փոխներգործություն, արտաքին ու ներքին կապերի ու շարժառիթների ներհոսում և միահյուսում։ Արտաքին պատճառները հաճախ ներքինների գոյության արտահայտությունն ու ձևն են դառնում։ Երբեմն, շահագործող դասակարգերը միջպետական կոնֆլիկտներն օգտագործում են միջդասակարգային հակասություններ լուծելու համար, կամ միջդասակարգային հակասությունները կոնկրետ պայմաններում ռազմական ընդհարման են վերաճում։ Շահագործողական հասարակական-տնտեսական ֆորմացիաներում դասակարգային անհաշտելի շահերը ծնում են իրարամերժ հեղափոխական և պահպանողական տենդենցներ, որոնց բախումը բացահայտ զինված կոնֆլիկտի ձև է ընդունում։*

*Հայտնի է, որ 1358 թվականին Ֆրանսիայում բռնկվեց*

---

[1] Վ. Ի. Լենին, *Երկեր, հատ. 25, էջ 25։*

հակաֆեոդալական մեծագույն պատերազմներից մեկը միջին դարերում՝ «Ժակերիան», որը անողոք շահագործման և կատաղի դասակարգային պայքարի հետևանք էր։ Գյուղացիական այդ ապստամբությունն սկսվեց Հարյուրամյա պատերազմը սկսվելուց անմիջապես հետո, որը խիստ վատթարացրել էր գյուղացիության վիճակը։ «Ժակերիայից» ահաբեկված, թագավորական կառավարությունը շտապեց 1360 թվականին անգլիացիների հետ ստորագրել Բրետինյան հաշտությունը։ Այդ փաստը ներքին ու արտաքին հակասությունների, միջպետական և ներդասակարգային հարաբերությունների փոխգործողության ակնհայտ դրսևորում էր։ Դասակարգային տիրապետությունը պահպանելու ձգտումը ֆեոդալական ազնվականության մոտ գերակշռեց միջպետական հակասությունների հանդեպ։

Այդ օրինաչափությունն ավելի ակնհայտորեն դրսևորվեց այն ժամանակ, երբ պատմական ասպարեզ դուրս եկավ հեղափոխական պրոլետարիատը։ Պրոլետարիատն իր պայքարում հիմնավոր քաղաքական նպատակներ է հետապնդում։ Նրա պայքարն ուղղված է ընդդեմ արտադրության միջոցների մասնավոր սեփականության, սոցիալական անհավասարության ու շահագործման։ Խաղաղություն, աշխատանք, հավասարություն, ազատություն, եղբայրություն և երջանկություն կոչերի մեջ ամփոփված են բանվոր դասակարգի պայքարի քաղաքական նպատակները։ Այստեղից հետևում է, որ կապիտալիստական հասարակությունում միջդասակարգային պայքարի հասարակական հետևանքները ոչ մի համեմատության մեջ չեն կարող դրվել նախակապիտալիստական ֆորմացիաներում տեղի ունեցած միջդասակարգային ռազմական ընդհարումների հետևանքների հետ։

Հոկտեմբերյան հեղափոխությունը պատմության զարգացման օրինաչափ ընթացքի դրսևորումն էր։ Վերջինս, ինչպես հայտնի է, պայթեց առաջին համաշխարհային պատերազմի տարիներին։ Պատերազմը սրեց քաղաքական իրադրությունը և համազգային ճգնաժամը երկրի ներսում, արագացնելով հեղափոխության հաղթանակը։ Հեղափոխությունը երկիրը դուրս բերեց պատերազմից, նպաստեց հակապատերազմա-

կան և հեղափոխական տրամադրությունների աճմանն ամբողջ աշխարհում, ներգործեց պատերազմող իմպերիալիստական տերությունների քաղաքականության վրա։ Վերջիններս շտապեցին ձևակերպել «հաշտության ծրագիրը», իրենց զավթողական դիտավորությունները քողարկելու նպատակով։ Այդ խարդախիկ մանևրն իր արտահայտությունը գտավ Վիլսոնի «14 կետերի» մեջ, որոնք տոգորված էին համաշխարհային պատերազմի իսկական նպատակները քողարկող վերամբարձ հայտարարություններով և դեմոկրատական միգապատումներով։ Հետագա իրադարձությունները ցույց տվեցին Հոկտեմբերյան հեղափոխության հարաճուն միջազգային նշանակությունը, որը փոխեց դարաշրջանի բովանդակությունը, սկիզբ դնելով կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու պատմական պրոցեսին։

Այսպիսով, սոցիալիստական հեղափոխությունը, որպես պրոլետարիատի արդարացի պատերազմ՝ ընդդեմ բուրժուազիայի, ոչ միայն սկիզբ է դնում հասարակական կյանքի բոլոր ոլորտներում արմատական վերափոխումների, այլև էական ներգործություն է ունենում համաշխարհային պատմության ամբողջ ընթացքի վրա։

Հեղափոխությունը, որպես դասակարգային պայքարի բարձրագույն արտահայտություն, հասարակության առաջադեմ ուժերի պատերազմն է ռեակցիոն, իրենց դարն ապրած ուժերի դեմ, հանուն սոցիալական նոր հարաբերությունների հաղթանակի. «Այդ միակ օրինական, օրինաչափ, արդարացի, իրոք մեծ պատերազմն է այն բոլոր պատերազմներից, որ գիտե պատմությունը։ Այդ պատերազմը մղվում է ոչ թե կառավարողների ու շահագործողների մի փոքրիկ խմբակի շահախնդրական նպատակների համար, ինչպես բոլոր և ամեն տեսակ պատերազմները, այլ ժողովրդի մասսայի շահերի համար, ընդդեմ բռնակալների, միլիոնավոր և տասնյակ միլիոնավոր շահագործվողների և աշխատավորների շահերի համար, ընդդեմ կամայականության և բռնության»[1]։

Պատմությունը ցույց տվեց, որ միջպետական անարդա-

---

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 8, էջ 119—120։

րացի պատերազմը հասունացող հեղափոխությունն արագացնող գործոնի դեր է խաղում։ Այսպես, առաջին ռուսական հեղափոխության նախօրյակին ծագած ռուս-ճապոնական պատերազմը բացահայտեց ցարական ինքնակալության խոցերը և ամբողջ նեխվածությունը, լցրեց ժողովրդական համբերության բաժակը. «Ժողովուրդն արդեն կայացրել է իր դատավճիռը ավազակների այդ կառավարության նկատմամբ։ Հեղափոխությունն ի կատար կածի այդ դատավճիռը»[1]։

Առաջին համաշխարհային իմպերիալիստական պատերազմն արագացրեց սոցիալիստական հեղափոխության հաղթանակը։ Այդ պատերազմը մի մեծագույն պատմական ճգնաժամ էր։ Այն սրեց և մակերես հանեց խորը թաքնված հակասությունները, պատռեց բոլոր քողերը, դեն նետելով պայմանականությունը, խաղաթղթի վրա դնելով կապիտալիզմի բախտն այս կամ այն երկրում։

Ինչպես հայտնի է, երկրորդ համաշխարհային պատերազմի հետևանքով մի շարք երկրներ դուրս եկան իմպերիալիզմի շղթայից։

Անարդարացի, թալանչիական պատերազմներն օբյեկտիվորեն արագացնում են հեղափոխական իրադարձությունների զարգացումը, իսկ հեղափոխական պատերազմները՝ առաջ են մղում պատմությունը։ Ահա այստեղ է, որ հստակորեն դրսևորվում է սոցիալիստական հեղափոխության սուբյեկտիվ գործոններից մեկի՝ կոմունիստական կուսակցության դերը, որը ոչ միայն հանդես է գալիս անարդարացի պատերազմի ծագման դեմ և սկսված պատերազմը դադարեցնելու օգտին, այլև կոչված է հմտորեն օգտագործելու պատերազմի հետևանքով սրված ճգնաժամը՝ բուրժուազիայի տիրապետությունը տապալելու համար։ Այս տեսակետից բնորոշ է առաջին համաշխարհային պատերազմի տարիներին բոլշևիկների մշակած տակտիկական գիծը՝ իրենց հիմնական ստրատեգիական նպատակին հասնելու համար։ Այն իր արտացոլումը գտավ իմպերիալիստական պատերազմը քաղաքացիականի վերածելու դիրքորոշման մեջ, քանի որ «թե՛ ռազմական ժամա-

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 8, էջ 621։

նակում, թե՛ պատերազմում և թե՛ ըստ ռազմականի շարունակում են գոյություն ունենալ և կդրսևորվեն այն դասակարգային հակասությունները, որոնք բզկտում են ժողովուրդներին... Պատերազմի ժամանակ հեղափոխությունը քաղաքացիական պատերազմ է...»[1]։

Ազգային բուրժուազիայի դեմ քաղաքացիական պատերազմ ծավալելու բոլշևիկների տակտիկական դիրքորոշումը, որպես կապիտալիզմի տիրապետությունը խորտակելու և համաշխարհային պատերազմից երկիրը դուրս բերելու ճիշտ ուղի, կոմունիստների կուսակցության լենինյան քաղաքականության կոնկրետ դրսևորումն էր առաջին համաշխարհային պատերազմի տարիներին։ Իմպերիալիստական պատերազմն իր հերթին, օտար երկրներ զավթելու, բաժանված աշխարհը վերաբաժանելու, ֆինանսական կապիտալի ազդեցության ոլորտներն ընդլայնելու իմպերիալիստական քաղաքականության շարունակությունն էր։

Վ. Ի. Լենինը նկատում էր, որ համաշխարհային իմպերիալիստական պատերազմի պայմաններում Տրոցկու և Է. Դավիդի «ո՛չ հաղթանակ, ո՛չ պարտություն» լոզունգը մանր բուրժուական, շովինիստական, պրոլետարական քաղաքականության թշնամիների լոզունգ է, որովհետև «պատերազմը պատերազմի դեմ» կոչը հեղափոխական տարրերից զուրկ գարշելի մի դարձվածք է, որը բացառում է ամեն մի գործնական քայլ զավթողական պատերազմ վարող կառավարության դեմ։

Առաջավոր դասակարգի հեղափոխական պատերազմը իշխանության նվաճումով չի ավարտվում։ Տապալված ռեակցիոն դասակարգերը կատաղի դիմադրություն են ցույց տալիս նոր քաղաքական ռեժիմին, փորձում են վերականգնել իրենց իշխանությունը բռնի միջոցներով։ Հաղթանակած հեղափոխության նշանակությունը դուրս է գալիս երկրի շրջանակներից։ Հեղափոխության դեմ զինվում են նաև արտաքին ռեակցիոն ուժերը։ Այսպես, 1789 թվականի ֆրանսիական բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունը նպաստեց հակաֆեոդալական պայքարի ծավալմանը այլ երկրներում, այն

---

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 21, էջ 34, 348։

ընդհանուր համակրանք առաջացրեց համաշխարհային առաջադեմ հասարակության շրջանում։ Հակահեղափոխական ուժերը Ֆրանսիայի դեմ ռազմական կոալիցիա ստեղծեցին, որի մեջ մտան Եվրոպայի ֆեոդալա-միապետական պետությունները, Անգլիայի գլխավորությամբ։ Վերջինս խիստ անհանգստացած էր Ֆրանսիայի միջազգային դրության ամրապնդման և երկրի ներսում ռադիկալ-դեմոկրատական շարժումների ուժեղացման հեռանկարներով։ Անգլիական պահպանողական բուրժուազիայի տնտեսական և քաղաքական շահերն ավելի ուժեղ դրսևորվեցին, քան համադասակարգային շահերը և Անգլիան հանդես եկավ ֆեոդալական երկրների հետ ընդհանուր լագերի մեջ։ Դա այն քաղաքականության շարունակությունն էր, որ վարում էր անգլիական բուրժուազիան եվրոպական մայր ցամաքում գերիշխող դրության հասնելու համար։ Եթե Ավստրիայի և Պրուսիայի հակաֆրանսիական հակահեղափոխական քաղաքականության մեջ գերիշխում էին դասակարգային շահերը, ապա Անգլիայի քաղաքականության մեջ՝ ազգային բուրժուազիայի տնտեսական և քաղաքական շահերը։ Նեղդասակարգային շահը գերակշռեց ընդհանուր դասակարգային շահի նկատմամբ։

Ֆեոդալա-ինքնակալական պետությունների կոալիցիայի դեմ մղվող հեղափոխական պատերազմների ընթացքում ակներև դարձավ, որ արտաքին հակահեղափոխական ուժերի դեմ հաղթանակն անհնար է առանց ներքին ռեակցիայի ուժերի ջախջախման։ Ֆրանսիական բանակի առաջին անհաջողությունները ուժեղացրին մասսաների դժգոհությունը թագավորական իշխանությունից, և միապետությունը տապալվեց, որից հետո միայն ապահովվեց հաղթանակը Եվրոպայի ֆեոդալա-միապետական երկրների հակահեղափոխական բլոկի նկատմամբ։

Խայտաբղետ, հակասական ներքին ու արտաքին քաղաքական իրադրություն ստեղծվեց Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից հետո։ Հեղափոխության հաղթանակն աննախադեպ ռեակցիա առաջացրեց ամբողջ աշխարհում։ Հեղափոխական Ռուսաստանը հիմնական իրադարձությունների հորձանուտը ներքաշվեց։ Կապիտալիստական 14 պե-

*տություններ միասին և առանձին, միաժամանակ և տարաժամանակ նետվեցին սովետական իշխանության վրա, փորձելով ներքին հակահեղափոխական ուժերի հետ համագործակցած, խեղդել նորածին սովետական պետությունը։ Այս գործողությունը իմպերիալիստական տերությունների հակահեղափոխական քաղաքականության շարունակությունն էր բռնի միջոցներով։ Տեղի ունեցավ միջպետական և միջդասակարգային պատերազմի միահյուսում։ Հեղափոխական ժողովրդի և ներքին ու արտաքին հակահեղափոխության միջև կենաց ու մահու պայքար ծավալվեց։ Ռեակցիայի ուժերի դեմ սկսված զինված գոտեմարտը հեղափոխական իշխանության քաղաքականության շարունակությունն էր և ավարտվեց միայն այն ժամանակ, երբ ինտերվենտները դուրս շպրտվեցին և ներքին հակահեղափոխական ուժերը ջախջախվեցին։*

**Այսպիսով, պատերազմի ավարտման գլխավոր պայմանը քաղաքական նպատակի իրականացումն է:**

* * *

*Հաճախ պատերազմն ընդհատումներով է զարգանում։ Ժամանակավոր դադարն այն բանի վկայությունն է, որ պատերազմող երկու կողմերն էլ չեն հասել իրենց քաղաքական նպատակների իրականացմանը, համոզված չեն պատերազմի բարենպաստ վախճանի մեջ։ Ռազմական գործողությունները ժամանակավորապես ընդհատվում են։ Եվ քանի որ պատերազմող կողմերի քաղաքական նպատակները մնում են չիրականացված և պատերազմի դրդապատճառները պահպանվում են, այդպիսի դադարը դառնում է ուժերի կուտակման և նոր գոտեմարտի նախապատրաստության ժամանակաշրջան։ Բնորոշ է նաև այն, որ այդպիսի տենդենցներ երևան են գալիս համարյա բոլոր տեսակի պատերազմների ժամանակ։ Այսպես, հարյուրամյա պատերազմի ընթացքում կրած ռազմական պարտությունները և ներքին դժվարություններն ստիպեցին Ֆրանսիայի թագավորական կառավարությանը օգտագործելու Բրետինյան հաշտությունը, որպես դադար՝ վարձկան ջոկատներ ստեղծելու, հրետանին կատարելագործելու և հար-*

կային սիստեմը կարգավորելու համար։ «Ամեն մի պատերազմում հակառակորդները, որոնց ուժերը հավասարակշռվում են, կանգ են առնում որոշ ժամանակ, ուժեր են կուտակում, հանգստանում են, մարսում են ապրած փորձը, պատրաստվում են և նետվում նոր մարտի[1]»։

Հեղափոխության նվաճումները պաշտպանելու խնդիրը կոնկրետ պատմական պայմաններում կարող է նույնիսկ զիջումների գնով ժամանակավոր դադարի անհրաժեշտություն առաջացնել։ Դրա կոնկրետ դրսևորումն էր 1918 թվականի մարտի 3-ին ստորագրված Բրեստի հաշտությունը։ Մերժելով «ձախ կոմունիստների» դիրքորոշումը, որոնք պահանջում էին «հեղափոխական պատերազմ» գերմանական բլոկի դեմ, Վ. Ի. Լենինն ընդգծում էր, որ հաշտություն կնքելուց հրաժարվելը կհասցնի սովետական իշխանության կործանմանը, մինչդեռ հաշտությունը անհրաժեշտ դադարի հնարավորություն կտա սոցիալիստական շինարարության ծավալման համար։ Վ. Ի. Լենինն այսպես էր գնահատում Բրեստի հաշտության միջազգային նշանակությունը. «Առաջին, եթե մենք Բրեստի հաշտությունը չկնքեինք, մենք իշխանությունը միանգամից կտայինք ռուսական բուրժուազիային և դրանով մեծագույն կերպով կվնասեինք համաշխարհային սոցիալիստական հեղափոխությանը։ 2-րդ, ազգային զոհողությունների գնով մենք պահպանեցինք հեղափոխական այնպիսի ինտերնացիոնալ ազդեցություն, որ այժմ ուղղակի մեզ ընդօրինակում է Բուլղարիան, եռում են Ավստրիան ու Գերմանիան, թուլացել են երկու իմպերիալիզմն էլ, իսկ մենք ամրապնդվել ենք ու սկսել ենք ստեղծել իսկական պրոլետարական բանակ»[2]։

Ինչպես երևում է, այնպիսի իրադրության առաջացումը, երբ հաղթանակած հեղափոխությանը մահացու վտանգ է սպառնում, զիջումների ու զոհողությունների գնով դասակարգային թշնամու հետ ժամանակավոր համաձայնության մեջ մտնելու որոշումը, ուժեր հավաքելու և հակահարվածին նախապատրաստվելու նկատառումով, հեղափոխական ուժերի հաշվենկատ, հեռատես քաղաքականության դրսևորումն է։

---

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 10, էջ 490։

[2] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 28, էջ 126։

Ե՛վ երկրի ներսում, և՛ նրանից դուրս քաղաքական կուրսը ապահովում է տիրապետող դասակարգի նյութական շահերը, նպատակներն ու խնդիրները։ Կիրառվող մեթոդներն ու միջոցները, որոնց օգնությամբ այդ նպատակներն ու խնդիրները իրականացվում են, ամբողջովին ենթարկվում են հենց այդ շահերին։ Արտաքին քաղաքականությունը իշխող սոցիալական խմբերի ներքաղաքական գործունեությունից կտրված չէ։ Կարելի է ասել, որ պատերազմը ներքին քաղաքականության էության դրսևորումն է միջպետական հարաբերություններում։ Պատերազմը բնութագրում է քաղաքականության ամբողջ բովանդակությունը. «... պատերազմը տվյալ երկրի՝ պատերազմից առաջ վարած ներքին քաղաքականության արտացոլումն է»[1]։

Վ. Ի. Լենինը գտնում էր, որ առանձնացնել արտաքին քաղաքականությունն առհասարակ քաղաքականությունից և նամանավանդ, հակադրել արտաքին քաղաքականությունը ներքինին՝ ոչ գիտական մոտեցում է։

Իմպերիալիստական պետությունների քաղաքականության նպատակներն ու խնդիրները բխում են էկոնոմիկայի մեջ գերիշխող մոնոպոլիաների շահերից և դրանց հակասող ամեն մի քաղաքական քայլ խստորեն պատժվում է։

Քաղաքականությունն ընդգրկում է միջդասակարգային հարաբերությունները երկրի ներսում և միջազգային հարաբերությունները՝ նրանից դուրս։ Քաղաքականությունը դասակարգային բովանդակություն ունի։ Ներքաղաքական կուրսը արտաքին քաղաքական գործունեության բարոմետրն է։ Պատերազմի մեջ արտացոլվում է նախապատերազմյան քաղաքականության էությունը։ Շահագործող դասակարգը հասարակական կյանքի բոլոր ոլորտները ենթարկում է իր նեղ շահադիտական խնդիրներին, երկրի ներսում յուրացնելով աշխատավոր մասսաների աշխատանքը։ Այդ դասակարգի սանձազերծած պատերազմի հաջող վախճանի դեպքում շահագործման ոլորտ են ներքաշվում նորանոր ժողովուրդներ։ Շահագործող դասակարգի ագրեսիվությունը պայմանավոր-

1 Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 30, էջ 176։

ված է նրա սոցիալական դրությունից ծնվող անզուսպ ագահությամբ, շահասիրական ազդակներով։

Բոլոր դեպքերում, շահագործող հասարակական խմբերի քաղաքական գործողությունների առանցքը մասնավոր սեփականատիրական շահն է։ Վ. Ի. Լենինն ասում էր, որ քաղաքական նպատակը այս կամ այն դասակարգի քաղաքականության օրինաչափ դրսևորումն է։ Եթե քաղաքականությունը ուղղված է ֆինանսական կապիտալի տիրապետության պաշտպանությանը՝ շահագործման, օտար հողերի զավթման քաղաքականություն է, որի շարունակությունը հանդիսացող պատերազմը իմպերիալիստական, զավթողական բնույթ է կրում։

Քաղաքական գործողությունների արմատը տնտեսական շահն է։ Պատերազմը, որպես քաղաքական նպատակին հասնելու միջոց, բխում է տնտեսական հիմքերից։ Քաղաքականությունն ու էկոնոմիկան փոխկապակցված են, քաղաքականության ներքին բովանդակությունը էկոնոմիկան է։ Յուրաքանչյուր կառավարություն կազմված է էկոնոմիկայի մեջ տիրապետող դասակարգի ներկայացուցիչներից և իրականացնում է դասակարգային քաղաքականություն։

Արտաքին քաղաքականությունը ներքին քաղաքականության փոխակերպված ձևն է, յուրատեսակ դրսևորումը։ Պատերազմն այն քաղաքականության շարունակությունն է փոփոխված ձևով և այլ միջոցներով, որ կոնկրետ դասակարգը վարում է մինչև պատերազմը։

Ներքին և արտաքին քաղաքականության փոխգործողությունը դրսևորվում է ոչ միայն այն բանի մեջ, որ երկրորդը օրգանապես բխում է առաջինից, անհրաժեշտորեն շարունակում դրա գիծը, այլև այն իմաստով, որ արտաքին քաղաքականությունն իր հերթին ակտիվորեն ներգործում է ներքաղաքական ամբողջ իրադրության վրա։ Ագրեսիվ արտաքին քաղաքական կուրսը սրում է միջպետական հարաբերությունները, խախտում միջազգային կապերը, որն անդրադառնում է ներքաղաքական կյանքի վրա։ Ուժեղանում են դասակարգային հակասությունները երկրի ներսում, միլիտարիստական կուրսը ավելացնում է մասսաների զրկանքներն ու կարիքները,

առաջացնում մասսայական դժգոհություն։ Իշխող վերնախավը ներքին կյանքի բոլոր բնագավառներում ռեակցիոն մեթոդների է դիմում, որոնք է՛լ ավելի են խորացնում սոցիալական բոլոր հակասությունները։

Միլիտարիզմը, ռազմական պսիխոզը, դեմոկրատական ազատությունների ոտնահարումը, հարկադրանքի դաժան ռեժիմը, աշխատավորների առանց այն էլ ցածր կենսամակարդակի խիստ անկումը, անհայտության քողով ծածկված մռայլ ապագան ագրեսիվ արտաքին քաղաքականության բաղադրիչ մասերն են։

Խաղաղասիրական արտաքին քաղաքականությունը պայմաններ է ստեղծում երկրի ներսում ստեղծագործական աշխատանք ծավալելու, ժողովրդական տնտեսության քաղաքացիական ճյուղերը զարգացնելու, աշխատավորների կենսամակարդակը բարձրացնելու համար, այն ստեղծում է հանգիստ, նորմալ ներքաղաքական իրադրություն։

Եթե արտաքին քաղաքականությունը ներքինի տրամաբանական շարունակությունն է, ապա դրանից չի բխում թե այն պետական կյանքի երկրորդական գործոն է։ Այդ երկու կողմերի փոխկապակցությունն ու փոխներթափանցումն ավելի շատ ընդգծում է դրանց միասնությունը՝ բնույթի, ծագման իմաստով։ Ինչ վերաբերում է նշանակությանը, տեսակարար կշռին, ապա հազիվ թե կողմերից մեկը զիջի մյուսին։

Քաղաքականության ներքին և արտաքին կողմերը, որպես պետության որոշակի ֆունկցիաներ, համարժեք են, իսկ պատմական կոնկրետ պայմաններում ակնհայտորեն ուրվագծվում է արտաքին քաղաքականության առաջատար դերը։

Պատերազմն այնպիսի մի վիճակ է, երբ կռվող կողմերը ձգտում են մոբիլիզացնել մարդկային և նյութական բոլոր ռեսուրսները՝ ռազմաճակատի կարիքները բավարարելու համար։ Ռազմական կոնֆլիկտի մեջ գտնվող երկրների կյանքում պատերազմն առաջնահերթ նշանակություն է ձեռք բերում։ Հրապարակ է դուրս բերվում «ամեն ինչ ռազմաճակատին» լոզունգը։ Այսպիսով, պատերազմի ժամանակ արտաքին քաղաքականությունը վերածվում է պետական կյանքի առանցքի։

Պատերազմի ընթացքում էկոնոմիկայի և արտաքին ու ներքին քաղաքականության փոխգործողությունը դրսևորվում է ակնբախորեն։ Պատերազմը քննում է հասարակության կազմակերպման այս կամ այն ձևը, տվյալ հասարակարգի նյութական ու հոգևոր հնարավորությունները, կարողություններն ու կենսունակությունը։ Ֆր. Էնգելսը խոսելով պատերազմի քաղաքական էության մասին, նշում էր, որ պատերազմելու եղանակն անգամ կախված է հասարակության քաղաքական կառուցվածքից։ Վ. Ի. Լենինը պատերազմը գնահատում էր որպես ճգնաժամ, որ երևան է հանում երևույթների ու պրոցեսների էությունը, դեն նետում մակերեսայինը, մանրը, արտաքինը, բացահայտում կատարվողի խորը հիմքերը. «Վերցրեք... այնպիսի ճգնաժամ, ինչպիսին է պատերազմը. բոլոր քաղաքական ու սոցիալական հաստատությունները ենթարկվում են ստուգման և քննության՝ «հրով ու սրով»։ Ամեն մի ժողովրդի հաստատությունների ու կարգերի ուժն ու թուլությունը որոշվում է պատերազմի վախճանով և նրա հետևանքներով»[1]. «պատերազմն ամեն մի ազգի բոլոր տնտեսական և կազմակերպական ուժերի ստուգումն է»[2]։

1870 թվականի ֆրանս-պրուսական պատերազմը ցույց տվեց Ֆրանսիայի պետական կառուցվածքի ամբողջ նեխվածությունը, արագացնելով դրա խորտակումը։ Կ. Մարքսը գրում էր, որ 1870 թ. ֆրանսիական աղետը նոր ժամանակի պատմության մեջ զուգահեռներ չունի։ Այն ցույց տվեց, որ պաշտոնական Ֆրանսիան, Լուի Բոնապարտի Ֆրանսիան, իշխող դասակարգերի և նրանց պետական պորտաբույծների Ֆրանսիան — փտող դիակ է։

Ցարական ինքնակալության խոցերն ու նեխվածությունը բացահայտվեցին Ղրիմի և ռուս-ճապոնական պատերազմների ընթացքում։ Ինչպես Վ. Ի. Լենինն էր նշում, Ղրիմի պատերազմը ցույց տվեց ճորտատիրական Ռուսաստանի նեխվածությունն ու անկարողությունը, իսկ ռուս-ճապոնական պատերազմը՝ ինքնակալության ամբողջ քաղաքական սիստեմի

---

1 Վ. Ի. Լենին, *Երկեր, հատ. 17, էջ 221—222։*

2 Վ. Ի. Լենին, *Երկեր, հատ. 30, էջ 178։*

արատավորությունը։ Պատահական չէր, որ Ղրիմի պատերազմից հետո վերացվեց ճորտատիրական իրավունքը։ Տնտեսական զարգացման պահանջները երկրում ճորտատիրական իրավունքը վերացնելու հրամայական անհրաժեշտության առջև կանգնեցրին։ Ղրիմի պատերազմը մի ահազանգ էր։

«Ղրիմի պատերազմը բնութագրում էր հենց արտադրության պրիմիտիվ ձևերով ազգի անհուսալի պայքարը ժամանակակից արտադրություն ունեցող ազգի դեմ։ Ռուս ժողովուրդը դա շատ լավ հասկացավ և այստեղից նրա անցումը ժամանակակից ձևերին՝ մի անցում, որ վերջնական դարձավ ազատագրության մասին 1861 թ. ակտով»[1]։

Ռազմական կրախը արագացնում է հեղափոխական իրադարձությունների զարգացումը, այն սրում է խորը քաղաքական ճգնաժամը։ Այդպես եղավ ֆրանս-պրուսական պատերազմի ժամանակ, երբ ծագեց Փարիզի կոմունան, այդպես եղավ նաև ռուս-ճապոնական պատերազմից հետո։ «Ինքնակալության ջախջախումը բոլոր առաջավոր ռուս մարդկանց կողմից, ռուսական սոցիալ-դեմոկրատիայի կողմից, ռուսական պրոլետարիատի կողմից այժմ հաստատված է ճապոնական զենքի ջախջախությամբ...»[2]։

Վ. Ի. Լենինը նշում էր, որ իմպերիալիզմի դարաշրջանում տեղի ունեցող պատերազմների նշանակությունը պետք է գնահատել, ելնելով պրոլետարական շարժման շահերից ու նպատակներից։ Այսպես, 1904—1905 թթ. բախվեցին ցարական ինքնակալությունը և բուրժուական Ճապոնիան։ Երկու կողմերն էլ անարդարացի քաղաքական նպատակներ էին հետապնդում։ Այս իմաստով նրանց քաղաքականությունը պետք է դատապարտվեր։ Սակայն, մյուս կողմից՝ ինքնակալության ոչնչացման և ռուսական հեղափոխության խնդիրները կապակցվում էին պատերազմում ցարիզմի պարտության հետ. «... այդ կատաստրոֆը նշանակում է համաշխարհային կապիտալիստական զարգացման վիթխարի արագացում, պատմության արագացում... այդպիսի արագացումը պրոլե-

[1] К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 38, стр. 398.

[2] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 8, էջ 45։

տարիատի սոցիալական հեղափոխության արագացումն է... Առաջավոր երկրի պատերազմը հետամնաց երկրի դեմ այս անգամ ևս, ինչպես արդեն բազմիցս եղել է պատմության մեջ, հեղափոխական մեծ դեր խաղաց»[1]։

* * *

Մարքսիզմը մերժում է պատերազմների նկատմամբ բուրժուական սենտիմենտալ վերաբերմունքը, դրանք դիտում դիալեկտիկորեն, ղեկավարվելով պրոլետարական շարժման ստրատեգիական և տակտիկական խնդիրներով։

Պատերազմը պետք է քննարկել պատմականորեն, գնահատել դիալեկտիկորեն, հաշվի առնելով դասակարգերի ընդհանուր տենդենցներն ու նրանց շահերի յուրօրինակ դրսևորումները, ինչպես նաև նրանց պրակտիկ գործողությունների հնարավոր հեռանկարներն ու օբյեկտիվ հասարակական հետևանքները։

Այսպիսով, պատերազմը քաղաքականության շարունակությունն է, ամբողջովին վերցրած, այն Վ. Ի. Լենինի խոսքերով ասած, ոչ միայն քաղաքականության շարունակությունն է, նա քաղաքականության հանրագումարն է։ Պատերազմի բնույթը կախված է զինված պայքարի մեջ մտած երկրի սոցիալ-տնտեսական և քաղաքական կառուցվածքից։ «... Պատերազմի բնույթը և նրա հաջողությունն ամենից ավելի կախված է այն երկրի ներքին կարգից, որը պատերազմի մեջ է մտնում»[2]։

Պատերազմի մեջ շահագրգռված են այն դասակարգերը, որոնք բռնի միջոցներով փորձում են տնտեսական և քաղաքական օգուտներ ստանալ, ամրապնդել իրենց տիրապետությունը, խեղդել ճնշված մասսաների ազատագրական ձգտումներն ու շարժումները, լուծել իրենց ներքաղաքական և արտաքին քաղաքական հակասությունները, մնալ դրության լիիրավ տերերը։

---

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 8, էջ 41, 47։

[2] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 30, էջ 175—176։

## 2. Արդարացի և անարդարացի պատերազմների փոխհարաբերության մասին

*Մարքսիզմ-լենինիզմը պատերազմը դիտում է որպես բարբարոսական արհեստ և դատապարտում է մարդկային արյունահեղությունները։ Սակայն, նա ռեալիստորեն է նայում իրականությանը, մատերիալիստորեն մեկնաբանելով հասարակական յուրաքանչյուր երևույթ։ Պատերազմի դասակարգային վերլուծությունը մարքսիզմի մեջ զուգորդվում է գիտական օբյեկտիվության հետ։*

*Պատերազմն ազատ կամքի կամայական ստեղծագործություն չէ, այլ օբյեկտիվ հիմքերի արդյունք։ Բազմատիպ պատերազմների խայտաբղետ սիստեմում կարելի է ճիշտ կողմնորոշվել միայն օբյեկտիվ դասակարգային դիրքերից ելնելով։*

*Հայտնի է, որ պատերազմել են և՛ շահագործող ռեակցիոն և՛ ճնշված հեղափոխական դասակարգերը։ Բնական է, որ այդ պատերազմներում հակադիր սոցիալական դրությունը կյանքի է կոչել հակադիր քաղաքական նպատակներ։ Քաղաքական նպատակներն էլ որոշում են պատերազմի բնույթը։ Հենց այդ հանգամանքը նկատի ուներ Վ. Ի. Լենինը, ասելով. «պատերազմները շատ խայտաբղետ են, զանազանակերպ, բարդ։ Չի կարելի մոտենալ ընդհանուր շաբլոնով»*[1]*։*

*Մարքսիզմը մերժում է պատերազմների նկատմամբ պացիֆիստական վերաբերմունքը, նրան խորթ է ամեն տեսակի պատերազմների մերկ, հախուռն բացասումը։*

*Պատերազմում բախվում են երկու կողմ, որոնցից մեկն արդարացի է, մյուսը՝ անարդարացի, կամ երկուսն էլ անարդարացի են։ Պատերազմի մեջ մտած երկու կողմերն արդարացի լինել չեն կարող։ Այս տեսակետից կողմերի քաղաքական նպատակները պատերազմի բնույթի չափանիշներն են։*

*Բոլոր դեպքերում պատերազմը, անկախ բնույթից, անարդարացի հասարակական հարաբերությունների արդյունք է։ Շահագործման, սոցիալական և ազգային ճնշման դեմ, հեղափոխության նվաճումները պաշտպանելու, ռեակցիոն*

---

[1] Վ. Ի. Լենին, *Երկեր, հատ. 35, էջ 291։*

հասարակական հարաբերությունները վերացնելու համար ծավալված զինված գործողություններն արդարացի քաղաքական նպատակների գործնական դրսևորումներն են։

«Բռնությունը պատմության մեջ մեկ ուրիշ դեր էլ է խաղում, հենց հեղափոխական դեր... բռնությունը այն զենքն է, որի միջոցով հասարակական շարժումն իր ճանապարհն է հարթում և խորտակում է քարացած, մեռնող քաղաքական ձևերը»[1]։

Պատերազմները տարբեր են լինում։ Պատճառների ըմբռնումն հնարավոր է դարձնում որոշելու նաև դրանց բնույթը։ Յուրաքանչյուր պատերազմ կոնկրետ դասակարգերի շահերից բխող որոշակի քաղաքական նպատակների կենսագործման միջոց է։ Այն սոցիալական չարիք է, եթե որպես միջոց է ծառայում շահագործող ռեակցիոն հասարակական խմբերի համար։ Իրենց սեփական ժողովրդին շահագործող հարստահարիչները չեն կարող ապրել առանց ուրիշ ժողովուրդների ճնշելու ու շահագործելու։ Ուրիշի հողերը զավթելու, շահույթներ ստանալու նպատակով թալանը միշտ էլ եղել է նրանց դասակարգային քաղաքականության արգասիքը։

Վ. Ի. Լենինը գրում էր, որ մարքսիզմը պահանջում է ամեն մի առանձին դեպքում, ամեն մի պատերազմի համար հատուկ որոշել դրա քաղաքական բովանդակությունը. «Սոցիալ-դեմոկրատիան պատերազմի վրա երբեք չի նայել և չի նայում սենտիմենտալ տեսակետից։ Անդառնալիորեն դատապարտելով պատերազմները, որպես մարդկության վեճերը լուծելու գազանային եղանակներ, սոցիալ-դեմոկրատիան գիտե, որ... պատերազմ էլ կա, պատերազմ էլ։ Կա պատերազմ-ավանտյուրա, որը բավարարում է դինաստիայի շահերին, թալանչիական շայկայի ախորժակներին, կապիտալիստական հարստացման հերոսների նպատակներին։ Կա պատերազմ— և դա միակ օրինական պատերազմն է կապիտալիստական հասարակության մեջ—ժողովրդին ճնշողների և ստրկացնողների դեմ։ Միայն ուտոպիստները և ֆիլիստերները կարող են սկզբունքորեն դատապարտել այդպիսի պատերազմը»[2]։

---

[1] К. Маркс и Ф. Энгельс, соч., т. 20, стр. 189.

[2] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 8, էջ 728—729։

Պատերազմների ծագման հնարավորությունն ու բնույթը հասկանալու համար անհրաժեշտ է նաև ճիշտ ըմբռնել դարաշրջանի բնույթը։ Վ. Ի. Լենինը նշում էր, որ չի կարելի հասկանալ տվյալ պատերազմը, առանց հասկանալու դարաշրջանը։ Իմպերիալիզմի դարաշրջանին հատուկ են բազմատիպ պատերազմներ, և՛ արդարացի՝ ազատագրական, և՛ անարդարացի՝ զավթողական։ Դրանք համապատասխանում են իմպերիալիզմի երեք հիմնական հակասություններին։ Ներիմպերիալիստական հակասություններն առաջացնում են իմպերիալիստական անարդարացի պատերազմներ, բուրժուազիայի և պրոլետարիատի միջև գործող հակասությունները՝ հեղափոխական քաղաքացիական պատերազմներ և իմպերիալիստական «քաղաքակրթված» ազգերի և ճնշված ժողովուրդների միջև գործող հակասությունները՝ ազգային-ազատագրական պատերազմներ։ Պատերազմների այս տիպերը բնորոշ էին իմպերիալիզմի անբաժան տիրապետության պայմաններին։

Ազատագրական, հակագաղութային, շահագործողների կամայականությունների, բռնության ու դասակարգային ճնշման դեմ ուղղված պատերազմներն արդարացի բնույթ են կրում։ Նրանք դասակարգային ու ազգային ճնշումից ժողովրդի ազատագրության քաղաքականության շարունակությունն են։

Մասնավոր սեփականատիրական հարաբերությունների վերացման և սոցիալիստական հասարակարգի հաստատման հետևանքով, արդարացի պատերազմների բովանդակությունն ընդլայնվում է։ Սոցիալիստական պետության պատերազմները իմպերիալիստական ռեակցիայի ոտնձգություններից և տապալված ներքին ռեակցիոն ուժերի դավադրություններից հեղափոխության նվաճումները պաշտպանելու համար, հեղափոխության քաղաքականության շարունակությունն են և արդարացի պատերազմների կլասիկ օրինակ։ Ինչպես Վ. Ի. Լենինն էր ասում, մարքսիզմը չի ժխտում հեղափոխական պատերազմների, այսինքն՝ այնպիսի պատերազմների հնարավորությունը, որոնք բխել են դասակարգային պայքարից, մղվում են հեղափոխական դասակարգերի կողմից և ունեն ուղղակի, անմիջական հեղափոխական նշանակություն։

Քանի դեռ գոյություն ունեն իմպերիալիզմը և գաղութատիրությունը, ազգային-ազատագրական պատերազմներն անխուսափելի են։

Սոցիալական և ազգային ճնշման պայմանները վերացվում են դասակարգային պայքարի միջոցով։ Դա հեղափոխական, արդարացի, ազատագրական պայքար է։

Ընդգծելով պատմականորեն արդարացվող պատերազմների օրինաչափ լինելը, «պետք է պարզել, թե ինչպիսի՞ պատմական պայմաններից է բխել տվյալ պատերազմը, ո՞ր դասակարգերն են մղում այն, հանուն ինչի՞ են մղում։ Չպարզելով այդ, մենք պատերազմի մասին արած մեր բոլոր դատողությունները կդատապարտենք կատարյալ դատարկության, զուտ բանավոր ու ապարդյուն վեճերի»[1]։

Եթե անտեսենք պատմական այն դարաշրջանը, երբ երիտասարդ ֆրանսիական բուրժուազիան խլեց իշխանությունը ֆեոդալական ազնվականությունից, ապա անհնարին կլինի ըմբռնել հեղափոխության թշնամիների դեմ ֆրանսիական բուրժուազիայի մղած պատերազմների բնույթը։ Եվրոպայի միապետական տերությունների կոալիցիայի դեմ ֆրանսիական հանրապետության մղած զինված պայքարը հեղափոխական դասակարգի քաղաքականության շարունակությունն էր։ Դրա հեղափոխական բնույթը պայմանավորված էր նրանով, որ 1792 թվականին ֆեոդալական պետությունների դեմ պատերազմը վարում էր հեղափոխություն կատարած դասակարգը՝ հանուն հեղափոխական պայքարը շարունակելու նպատակի։

Ռեակցիոն շահագործողական դասակարգերի սանձազերծած պատերազմները՝ օտար հողեր զավթելու, գաղութներ ձեռք բերելու, իրենց դասակարգային տիրապետությունն ամրապնդելու, ժողովուրդներին թալանելու նպատակով, հաղթանակած հեղափոխության, առաջավոր հասարակական կարգերի դեմ, ժողովուրդների ճնշման և ստրկացման դաժան շահագործման քաղաքականության շարունակությունն են։

---

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 24, էջ 500։

Այդպիսի պատերազմները անարդարացի, ռեակցիոն քաղաքական գործողություններ են։

Պատերազմի մասշտաբները և սոցիալ-քաղաքական բնույթը չպետք է խառնել։ Պատերազմի տիպը որոշվում է ոչ թե համաշխարհային, լոկալ կամ ազատագրական չափանիշներով, այլ սոցիալ-դասակարգային բնույթով, սոցիալ-քաղաքական բովանդակությամբ։

Պատերազմի բնույթը չի որոշում նաև այն, թե ով է առաջին հարվածը հասցնում։ Առաջին համաշխարհային իմպերիալիստական պատերազմի տարիներին Վ. Ի. Լենինը գրում էր, որ եթե վաղը Մարոկկոն պատերազմ հայտարարի Ֆրանսիային կամ Հնդկաստանը՝ Անգլիային, ապա այդ պատերազմներն ուղղված կլինեին գաղութային տիրապետության, իմպերիալիստական ճնշման դեմ։ Նպատակներ, որոնք կորոշեին դրանց արդարացի բնույթը։ Ազատագրությունը ձեռք է բերվում ակտիվ հեղափոխական պայքարով։ Ոչ թե գաղութատերերի ողորմածությունը, այլ ժողովուրդների հեղափոխական ջանքերն են ազատության և անկախության հասնելու նախադրյալները։ Գաղութային երկրների ժողովուրդների սոցիալական դրությունն է ազատագրվելու անընկճելի կամք ծնում, որն ակտիվ գործնական պայքարի է վերածում։

Պատմության մեջ եղել են պատերազմներ, որոնցում արդարացի կողմ չի եղել։ Շահագործող դասակարգերի պատմությունը հաստատում է այդ ճշմարտությունը։ Այս փաստի ցայտուն արտահայտությունն են իմպերիալիստական պատերազմները։ Արտաքին շուկաների, հումքի աղբյուրների, կապիտալների ներդրման ոլորտների համար մղվող պայքարը բաժանում է իմպերիալիստներին, առաջացնելով միջիմպերիալիստական զինված կոնֆլիկտներ։ Երկու կողմից էլ դրանք հակաժողովրդական, անարդարացի, թալանչիական բնույթ են կրում, անկախ այն բանից, թե ով առաջինը կկրակի, ով առաջինը կսկսի. «...եթե պատերազմը մղվում է գիշատիչների ու հարստահարողների երկու խմբերի միջև ավազակային ավարը բաժանելու համար, այն բանի համար, թե ո՛վ ավելի շատ ժողովուրդներ կխեղդի, ո՛վ ավելի շատ կթալանի,— նշել է Վ. Ի. Լենինը,— ապա այդպիսի պատերազմի համար ոչ մի՝ ո՛չ

տնտեսական, ո՛չ քաղաքական նշանակություն չունի այն հարցը, թե ո՞վ է առաջինը սկսել, ո՞վ է հայտարարել պատերազմը և այլն»[1]։

Հակառակորդի ջախջախումը պատերազմող կողմերի վերջնական նպատակն է։ Պաշտպանական պատերազմը չպետք է խառնել պաշտպանական ռազմական գործողությունների հետ։ Արդարացի պաշտպանական պատերազմը չի ենթադրում սոսկ պաշտպանական գործողություններ ռազմաճակատում։ Այստեղ պատերազմի բնույթի և ռազմական գործողությունների տակտիկայի հարաբերակցության ճիշտ ըմբռնում է պահանջվում։ Մարքսը ծաղրում էր այն կարծիքը, թե եթե որևէ մի սրիկա փողոցում հարձակվում է մեկի վրա, ապա վերջինս պետք է միայն ետ մղի նրա հարվածները, սակայն հարվածելու իրավունք չունի, որովհետև այդ դեպքում հարձակվող կդառնա։

Կ. Մարքսի և Վ. Ի. Լենինի այս դատողությունների մեջ դրսևորվում են պրոլետարիատի դասակարգային պայքարի ստրատեգիայի ու տակտիկայի հարցերը։ Բանվոր դասակարգի, աշխատավորների սոցիալիստական պետությանը բնորոշ են պաշտպանական, արդարացի պատերազմներ, որոնցում ագրեսորին, ռեակցիոն ուժերին ջախջախելու խնդիրը կարող է պահանջել մտնելու թշնամու տերիտորիա։ Տվյալ դեպքում, արդարացի պատերազմ մղող սոցիալիստական պետության զինված ուժերի գտնվելու վայրը պատերազմի բնույթը չի փոխում։ Հայտնի է, որ ֆաշիստական Գերմանիան հարձակվեց Սովետական Միության վրա եվրոպական մայր ցամաքի մի շարք կապիտալիստական երկրներ նվաճելուց և այնտեղ բռնապետական ռեժիմ հաստատելուց հետո։ Ֆաշիզմն իր սուրը մերկացրեց մարդկության դեմ և մահացու վտանգ ստեղծեց ամբողջ առաջադեմ աշխարհի համար։ Սովետական ժողովրդի՝ ֆաշիստական Գերմանիայի դեմ զինված պայքարը դուրս եկավ ազգային շահերի շրջանակներից, ավելի լայն նպատակներ ու խնդիրներ բովանդակեց։ Օբյեկտիվորեն Սովետական Միության վրա ընկավ ֆաշիստական լծի տակ գըտ-

---

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 24, էջ 126։

նըվող ժողովուրդներին ազատագրելու միսիան։ Սովետական բանակը մեր երկրից դուրս վռնդելով ֆաշիստական ավազակախմբերը, ռազմական գործողությունները փոխադրեց Գերմանիայի տերիտորիան, թշնամու վերջնական ջախջախումն ավարտելով նրա որջում։ Այդ գործողությունը սովետական ժողովրդի մղած հետևողական, արդարացի, ազատագրական պատերազմի անհրաժեշտ էտապներից մեկն էր, նրա կողմից իրականացվող պատմական միսիայի բաղկացուցիչ մասը՝ ժողովուրդների ազատության և անկախության համար մըղվող պայքարի քաղաքականության շարունակությունը։

Այսպիսով, իմպերիալիստական ագրեսորների դեմ սովետական ժողովրդի մղած պաշտպանական պատերազմներն ըստ էության, համամարդկային, հեղափոխական քաղաքական նպատակներ են հետապնդում։ Մինչդեռ միջազգային իմպերիալիզմի քաղաքական նպատակները հակասում են համաշխարհային քաղաքակրթության շահերին, որովհետև դրանց մեջ դրսևորվում է շահագործող բացարձակ փոքրամասնության նեղ դասակարգային շահը։ Այս տեսակետից, որոշակի պայմաններում սոցիալիստական երկրները, ղեկավարվելով աշխատավոր մարդկության շահերով, կարող են նախաձեռնություն ցուցաբերել ագրեսորների նենգ դիտավորությունները խափանելու ուղղությամբ։

* * *

Պատմության մեջ պատերազմները երկակի դեր են խաղում՝ հեղափոխական և ռեակցիոն։ Դա բխում է նրանց սոցիալ-դասակարգային բնույթից։ Այս հարցում որպես օբյեկտիվ չափանիշ հանդես են գալիս նաև պատերազմի հասարակական հետևանքները։ Վ. Ի. Լենինը գրում էր, որ մարդկության առաջադեմ զարգացմանը, վնասաբեր և ռեակցիոն հիմնարկների կործանմանը նպաստող պատերազմները, որոնք անխուսափելիորեն կապված են սարսափների, գազանությունների, զրկանքների հետ, եղել են առաջադեմ, ներդաշնակել մարդկության առաջընթաց շարժման տենդենցների հետ։ Գնահատելով ֆեոդալիզմից կապիտալիզմին անցնելու պատմական դարաշրջանի փուլերից մեկը, Վ. Ի. Լենինը գրում էր,

որ 1789 թվականի ֆրանսիական հեղափոխությունից սկսած, մինչև 1871 թվականն ընկած ժամանակաշրջանը, տիպիկ էին բուրժուա-առաջադիմական ազգային-ազատագրական պատերազմները, որովհետև դրանց գլխավոր բովանդակությունն ու պատմական նշանակությունը միապետության ու ֆեոդալիզմի տապալումն էր, օտարի լծի թոթափումը։ Ֆրանսիայի հեղափոխական պատերազմները Թալանի և օտար հողեր նվաճելու տարրեր էին բովանդակում, բայց դրանք չփոխեցին այդ պատերազմների հիմնական պատմական նշանակությունը, որոնք խարխլում և խորտակում էին հին ճորտատիրական Եվրոպայի ֆեոդալա-միապետական կարգերը։ Ֆրանս-պրուսական պատերազմի ժամանակ Գերմանիան թալանեց Ֆրանսիան, բայց դա չփոխեց այդ պատերազմի պատմական նշանակությունը։ Այն գերմանական ժողովրդին ազատագրեց ֆեոդալական մասնատվածությունից և օտարերկրյա լծից։

XIX դարի երկրորդ կեսին Գերմանիայում կապիտալիզմի արագ զարգացումը երկիրն ազգային միավորման անհրաժեշտության առջև կանգնեցրեց։ Օբյեկտիվ իրավիճակն այնպիսին էր, որ միավորման երկու հնարավոր ուղի կար։ Առաջին ուղին Մարքսն ու Էնգելսը կապում էին պրոլետարիատի գլխավորությամբ ժողովրդական մասսաների հեղափոխական պայքարի հետ, որը պետք է ուղղված լիներ ֆեոդալական բոլոր մնացուկների վերացմանը և պրուսական յունկերության ու ռազմամոլության տնտեսա-քաղաքական հզորության ոչնչացման հիման վրա միասնական դեմոկրատական հանրապետության ստեղծմանը։

Երկրորդ ուղին կապված էր դինաստիական պատերազմների հետ, որոնց հետևանքով երկիրը կարող էր պրուսական կամ ավստրիական գերիշխանության ներքո միավորվել։ Իհարկե, այդ եղանակով միավորումն կամրապնդեր ռեակցիոն ուժերի տիրապետությունը։ Բիսմարկի կարծիքով, ժամանակի մեծ հարցերը երկաթով ու արյամբ են լուծվում։ Նա այդ մեթոդը հետևողականորեն էր կիրառում երկիրը միավորելու համար։ Գերմանիայի միավորումն իրականացվեց ֆիզիկական ճնշման միջոցների օգնությամբ։ Եթե այդ իրադարձությունը գնահատենք հասարակական հետևանքների տեսակե-

ափց, ապա դրա առաջադիմական նշանակությունն անվիճելի է։ Եվ դա ոչ միայն երկրի տնտեսական ու քաղաքական առաջընթացն ապահովելու, այլև ազգային բանվոր դասակարգի միավորման համար նախադրյալ ստեղծելու տեսանկյունից։ 1916 թվականի դեկտեմբերին Ինեսա Արմանդին հասցեագրած նամակում Վ. Ի. Լենինը նշում էր, որ եթե 1891 թվականին Ֆրանսիան և Ռուսաստանը Գերմանիայի դեմ պատերազմ սկսեին, ապա այն նրանց կողմից կկրեր ռեակցիոն բնույթ, որովհետև պատերազմի քաղաքական նպատակը կլիներ ետ շրջել Գերմանիայի զարգացումն ազգային միասնությունից, երկիրը մասնատվածության վերադարձնել։ Այստեղից երևում է, թե Վ. Ի. Լենինը ինչպիսի մեծ նշանակություն էր տալիս Գերմանիայի միավորմանը, այն որակելով որպես պատմականորեն առաջադիմական երևույթ, չնայած այդ գործողությունը կատարվեց «վերևից» և ոչ առանց դաժանության ու բռնի միջոցների։

* * *

Քաղաքացիական բոլոր պատերազմները դասակարգային պայքարի դրսևորումներ են։ Վ. Ի. Լենինը գրում էր, որ 1861—1865 թ. թ. քաղաքացիական պատերազմն ԱՄՆ-ում համաշխարհային պատմական նշանակություն ուներ։

Ստրկատիրական Հարավի դեմ Հյուսիսի մղած պատերազմի արդարացի բնույթը ուժեղանում էր ժողովրդական մասսաների ակտիվ մասնակցությամբ։ Բավական է ասել, որ մարտիկների հիմնական միջուկը աշխատավորներն էին։ Ամեն մի հազար զինվորին 423 բանվոր և 487 ֆերմեր էր ընկնում[1]։ Բանվոր դասակարգի և ֆերմերության գործուն մասնակցությունը որոշեց իրադարձությունների ընթացքը, արագացնելով Լինկոլնի բուրժուական կառավարության՝ պատերազմելու հեղափոխական մեթոդներին անցումը։ Ստրկատիրության դեմ մղված պայքարի հետևանքով երկրի տնտեսա-քաղաքական մասնատվածությունը լիկվիդացվեց, ստրկությանը վերջ տրվեց և իշխանությունն անցավ արդյու-

[1] Տես «Всемирная история», М., 1959, հատ. VI, էջ 472։

նաքերական բուրժուազիայի ձեռքը, որի հետևանքով անհրաժեշտ պայմաններ ստեղծվեցին կապիտալիստական ուղիով երկրի զարգացման համար։

Այսպիսով, քաղաքացիական պատերազմը զինված ընդհարում չէ պետությունների միջև, այլ երկրի ներսում տարբեր սոցիալական խմբերի զինված գոտեմարտ։ Այն դասակարգային պատերազմ է, դասակարգային շահերի բախում՝ բռնության կիրառումով։

Մի դեպքում՝ քաղաքացիական պատերազմները հաղթանակած հեղափոխության քաղաքականության շարունակությունն են։ Դա բացահայտ զինված պայքար է իրենց դասակարգային տիրապետությունը վերականգնելու փորձ կատարող տապալված ռեակցիոն սոցիալական ուժերի դեմ (օրինակ, քաղաքացիական պատերազմը Սովետական Ռուսաստանում 1918—1922 թթ.)։ Մյուս դեպքում՝ քաղաքացիական պատերազմները հանդես են գալիս որպես կոնկրետ պատմական դարաշրջանում առաջադեմ դասակարգի քաղաքականության շարունակություն։ Դրանք ուղղված են սոցիալական առաջընթացը արգելակող մեռնող ուժերի դեմ, որոնք խանգարում են ավելի բարձր նյութական հիմքի վրա երկրի միավորմանը (օրինակ, քաղաքացիական պատերազմը ԱՄՆ-ում 1861—1865 թթ.)։ Մեկ ուրիշ դեպքում՝ քաղաքացիական պատերազմի դրսևորում են շահագործվողների և ճնշված աշխատավոր մասսաների զինված ապստամբությունները շահագործողների և կեղեքիչների դեմ՝ երկրի ներսում։ Վ. Ի. Լենինն ընդգծում էր, որ յուրաքանչյուր դասակարգային հասարակությունում տեղի ունեցող քաղաքացիական պատերազմները դասակարգային քաղաքական պայքարի սրման արդյունք և արտահայտություն են։ Դրանք բազմամիլիոն ճնշված և իրավազուրկ աշխատավոր զանգվածների՝ մի խումբ արտոնյալ վիճակում ապրող պորտաբույծների դեմ ուղղված պատերազմներն են, որոնք ազատագրական բնույթ են կրում։ Ուստի հասկանալի է, թե ինչու Վ. Ի. Լենինը հեղափոխությունը դիտում էր որպես արդարացի, օրինական, մեծ պատերազմ, որը բխում է միլիոնավոր աշխատավորների կենսական շահերից և կամայականության ու բռնության դեմ է ուղղված։

Պատմության մեջ շահագործման դեմ ուղղված բոլոր ելույթներն արդարացի գործողություններ են եղել։ Ստրկատերերի և ֆեոդալական ագնվականության դեմ ուղղված ստրուկների և ճորտ գյուղացիների ապստամբություններն արդարացի, ազատագրական նպատակներ են հետապնդել։ Չնայած ըստրուկներն ու ճորտերը գործողությունների կոնկրետ ծրագիր չունեին, նոր արտադրական հարաբերությունների կրողներ չէին, այնուամենայնիվ նրանց պայքարն արդարացի էր, քանի որ ուղղված էր շահագործողների դասակարգային ճնշման դեմ։ Իրենց տարերային, անկազմակերպ ելույթներով ստրուկներն ու ճորտերն օբյեկտիվորեն քայքայում էին ստրկատիրական և ֆեոդալական կարգերի հիմքերը, դրանց կործանման համար պայմաններ նախապատրաստում։ Սիցիլիայի ստրուկների ապստամբությունը 137 և 104 թթ. մ.թ.ա., ըստրուկների հզոր հակաստրկատիրական շարժումը Սպարտակի գլխավորությամբ 73—71 թթ. մ. թ. ա. արտացոլում էին հին հռոմեական հասարակությունը բզկտող խորը դասակարգային անտագոնիզմը։ Կ. Մարքսը և Վ. Ի. Լենինը Սպարտակին համարում էին անտիկ պրոլետարիատի իսկական առաջնորդը, ստրուկների ամենախոշոր ապստամբություններից մեկի ամենանշանավոր հերոսներից մեկը։ Պուգաչովի, Ռազինի, Բոլոտնիկովի հակաճորտատիրական ապստամբությունները Ռուսաստանում, Թոնդրակեցիների շարժումը Հայաստանում 9—11-րդ դարերում քաղաքացիական պատերազմներ էին, որոնք ահ ու սարսափի մեջ գցեցին իշխող դասակարգերին, ցնցեցին շահագործողական կարգերի հիմքերը։

Այսպիսով, իրենց դարն ապրած, փտող սոցիալական կարգերի և դրանց կրողների, շահագործման ու օտարերկրյա լծի դեմ, ազգային ազատագրության համար հեղափոխական դասակարգերի մղած և մղվող պատերազմները պատմության մեջ առաջադիմական դեր են խաղում։

Պատմության մեջ եղել են դեպքեր, երբ ագրեսիվ նպատակներ հետապնդող երկու պետությունների միջև ծավալված ռազմական գործողությունների ընթացքը օբյեկտիվորեն օժանդակել է իր անկախության համար երրորդ ժողովրդի մղած պայքարի հաջող վախճանին։ 1877 թվականի ռուս-

թուրքական պատերազմը հասցրեց երկար ժամանակ թուրքական լծի տակ գտնվող բուլղար ժողովրդի ազատագրությանը։ Բուլղարիայի ազատագրությունը ցարական կառավարության պլաններում չէր մտնում. նա շահագրգռված էր Բուլղարիան նվաճելու մեջ։ Սակայն հիմնականում հասարակ աշխատավորներից բաղկացած ռուսական բանակի մարտական գործողությունները հասցրին Բուլղարիայի ազատագրմանը։ Բուլղար ժողովուրդը մեծ խանդավառությամբ դիմավորեց ռուսական բանակին։ Դա պայմանավորված էր ռուս և բուլղար ժողովուրդների պատմական բախտի ու ազգային ավանդույթների միասնությամբ և թուրքական օկուպանտների ջախջախմամբ։ Առաջացած կոնկրետ պատմական պայմաններում ռուսական բանակը օբյեկտիվորեն ազատագրական դեր խաղաց։ Բուլղար ժողովրդի ազգային-ազատագրական շարժումը, ռուսական բանակի մարտական գործողությունների շնորհիվ, պսակվեց հաջողությամբ։ Տվյալ դեպքում արտաքին գործոնը դրական դեր խաղաց։

Անհրաժեշտ է ընդգծել, որ Թուրքիայի և Պարսկաստանի դեմ Ռուսաստանի մղած պատերազմներն օբյեկտիվորեն բարեբար ներգործություն են ունեցել փոքր ժողովուրդների պատմական զարգացման վրա, թեպետև այդ պատերազմներում ցարիզմը շարունակում էր իր տիրապետությունների ընդարձակելու քաղաքական կուրսը։ Այդպիսի օրինակ կարող է ծառայել ռուսական զորքերի մուտքը Երևան 1827 թվականի հոկտեմբերին։ Հայաստանի միավորումը Ռուսաստանի հետ դարձյալ օբյեկտիվորեն առաջադիմական դեր խաղաց։ Այն Արևելյան Հայաստանը փրկեց վերջնական ավերումից և հայ ժողովրդին ազատեց արևելյան հետամնաց բռնապետությունների ստրկացման վտանգից։ Ֆեոդալական մասնատվածությանն ու երկպառակություններին վերջ տրվեց, ցարական ինքնակալության դեմ ռուս և հայ ժողովուրդների միասնական պայքարի համար պայմաններ ստեղծվեցին։ Այդ ընդհանուր խնդրին ծառայեց նաև երկու ժողովուրդների տնտեսական, քաղաքական ու կուլտուրական կապերի զարգացումը։

Քաղաքական իշխանությունը նվաճած բանվոր դասակարգի իմպերիալիստական տերությունների ոտնձգությունների

դեմ մղած պատերազմներն արդարացի բնույթ են կրում և սոցիալիստական պետության անվտանգությանը սպառնացող ուժերի համար դառնում ճակատագրական։

Հաղթանակած սոցիալիստական հեղափոխությունը չի բացառում պատերազմները, նա միանգամից վերջ չի տալիս պատերազմներին, քանի դեռ պահպանվում է ռազմական ավանտյուրաների սոցիալական հողը՝ իմպերիալիզմը։ Սոցիալիստական պետության զինված ուժերը պաշտպանում են ամբողջ ժողովրդի շահերը։ Սոցիալիստական և կապիտալիստական պետությունների միջև տեղի ունեցող զինված ընդհարումները վառ արտահայտված դասակարգային բնույթ են կրում, դասակարգային պատերազմներ են։ Իմպերիալիստական ռեակցիայի ուժերի դեմ սոցիալիստական պետության մղած ճակատամարտերի նշանակությունը միշտ դուրս է եկել ազգային շրջանակներից։

Սովետական իշխանության հուշակումը ամբողջ մարդկության ազատագրման դարագլխի սկիզբը նշանավորեց։ Ռուսաստանի պրոլետարիատը համամարդկային միսիա կատարեց, դառնալով նոր հասարակական հարաբերությունների դրոշակակիրը։ Պատմության մեջ առաջին անգամ շահագործվող դասակարգի հեղափոխական գործողությունն ավարտվեց հաղթանակով։ Սովետական հանրապետությունն առաջին անգամ ազդարարեց արդարության, իսկական մարդկային հարաբերությունների, բոլոր երկրների աշխատավորների ու ճնշված մասսաների եղբայրության, համընդհանուր խաղաղության ու սոցիալիզմի սկզբունքները։ Սովետական պետությունը համաշխարհային հեղափոխական շարժման էպիկենտրոնը դարձավ։ Այս իմաստով, սովետական պետության դեմ ուղղված պատերազմը շոշափում է համայն աշխատավոր մարդկության շահերը, ընդլայնում շահագործողների և շահագործվողների միջև եղած անտագոնիզմը, հակաիմպերիալիստական հեղափոխական լիցքավորում տալիս կապիտալիզմի պայմաններում ապրող աշխատավորներին։ Մեր դարաշրջանում պատերազմի և խաղաղության հարցերում խիստ աճել է ժողովրդական լայն զանգվածների դերը։ Վ. Ի. Լենինի խոսքերով ասած, հավիտենականության գիրկն են անցել այն

ժամանակները, երբ պատերազմները վարձկանների կամ ժողովրդից կտրված կաստայի ներկայացուցիչներն էին վարում։

Երիտասարդ սովետական հանրապետության դեմ ձեռնարկված օտարերկրյա ինտերվենցիան բացահայտեց հակասությունը հեղափոխությունը խեղդելու իմպերիալիստական քաղաքականության և ինտերվենցիային մասնակցած երկրների ժողովրդական մասսաների գործողությունների միջև։ Ինտերվենցիան զգալի ռեակցիա առաջացրեց այն նախաձեռնողների քաղաքականության դեմ։ Հեղափոխական Ռուսաստանը բարոյական մեծ աջակցություն ստացավ։ Շատ երկրների կոմունիստական ու սոցիալիստական կուսակցությունների կոչերը բանվոր դասակարգին՝ պաշտպանելու հեղափոխական Ռուսաստանին և դատապարտելու ինտերվենցիան, ինտերնացիոնալ գումարտակների ստեղծումը, «Ձեռքերդ հեռու Ռուսաստանից» լոզունգը, օտարերկրյա բանակների շատ զինվորների անցումը հեղափոխության կողմը, հեղափոխական գաղափարների տարածումը՝ այդ փաստի համոզիչ դրսևորումն են։

Այսպիսով, սոցիալիստական պետության ստեղծումից հետո մարդկային պատմության մեջ առաջին անգամ իմպերիալիզմի դեմ պայքարի ընդհանուր ճակատ առաջացավ՝ աշխատավորների հեղափոխական նվաճումները պաշտպանելու համար։ Այդ տենդենցը իրադարձությունների հետագա զարգացման պրոցեսում վերածվեց օրինաչափության։ «Այժմ,— գրել է Վ. Ի. Լենինը,— իրագործվում է զանազան ազգերի հեղափոխականների միությունը, որի մասին երազել են լավագույն մարդիկ, բանվորների և ոչ թե ինտելիգենտական երազողների իսկական միությունը»[1]։

Ամերիկյան իմպերիալիզմը ռազմական ինտերվենցիա ձեռնարկելով Վիետնամի ժողովրդի դեմ, հանդիպեց երկրագնդի բոլոր առաջադեմ, դեմոկրատական ուժերի դիմադրությանը։ Սովետական Միությունը, սոցիալիստական մյուս երկրները և համաշխարհային բանվորական ու կոմունիստական շարժումը Վիետնամի ժողովրդին բազմակողմանի օգ-

---

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 28, էջ 31։

նություն են ցույց տալիս։ Միջազգային հասարակայնության լայն շրջերը ակտիվորեն դատապարտում են ամերիկյան իմպերիալիզմի ավազակային քաղաքական կուրսը Վիետնամում։ Գնալով աճում են բողոքի ձայները նաև Ամերիկայի Միացյալ Նահանգներում։ Ագրեսորների բարոյա-քաղաքական մեկուսացումն ավելի ու ավելի ակնհայտ է դառնում։

Հետհոկտեմբերյան ժամանակաշրջանում երիտասարդ սովետական հանրապետությունում յուրահատուկ իրադրություն ստեղծվեց։ Սովետական իշխանության դեմ իմպերիալիստական տերությունների կազմակերպած ռազմական ինտերվենցիան միաձուլվեց քաղաքացիական պատերազմի հետ։ Ոչ միայն ռուսական, այլև համաշխարհային հեղափոխության բախտն էր որոշվում։ Ռազմական հարցը հեղափոխության արմատական խնդիրը դարձավ։ Սոցիալիստական հայրենիքի պաշտպանությունը հանդես եկավ որպես համազգային խնդիր. սովետական երկրի աշխատավորների զինված պայքարը ներքին և արտաքին հակահեղափոխական ուժերի դեմ միջազգային նշանակություն ձեռք բերեց։

«Մեր պատերազմը,— ասում էր Վ. Ի. Լենինը,— հեղափոխության քաղաքականության շարունակությունն է, շահագործողների, կապիտալիստների և կալվածատերերի տապալման քաղաքականության շարունակությունը։ Այս պատճառով մեր պատերազմը... դեպի մեզ է գրավում բանվորների ու գյուղացիների համակրությունը»[1]։ Դա իշխանություն նվաճած ճնշված ու շահագործվող մասսաների միակ օրինական, արդարացի, սրբազան պատերազմն է բռնապետների և թալանչիների դեմ։

Եվ, այդ իմաստով, սոցիալիստական պետության պատերազմները իմպերիալիստական ներխուժումների դեմ՝ պատմական դերով և նշանակությամբ, հետևանքների բնույթով, համաշխարհային քաղաքակրթության վերընթաց զարգացման տեսանկյունից ամենահետևողական արդարացի պատերազմներն են։ Աշխատավորների իշխանության դեմ ուղղված ռազմական հարձակումները ոչ միայն աշխատավորների

---

1 Վ. Ի. Լենին, *Երկեր, հատ. 30, էջ 275։*

նկատմամբ շահագործողների ատելության դրսևորումներն են, այլև չարագույժ հանցագործություն հասարակական առաջընթացի հանդեպ։

Սովետական պետության մղած արդարացի ազատագրական պատերազմների համազգային նշանակությունը անվիճելիորեն դրսևորվեց երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին։ Ֆաշիզմի մեջ արտացոլվում էր իմպերիալիզմի գիշատչական դեմքը։ Գերմանական ֆաշիստներն իրենց ավանտյուրիստական գործողությունների էտապներից մեկում նետվեցին Սովետական Միության վրա։ Ֆաշիստական Գերմանիայի սանձազերծած պատերազմը ՍՍՀՄ-ի դեմ իմպերիալիզմի ձեռնարկած պատերազմներից ամենաանարդարացին էր։ Ֆաշիզմի դեմ մղված կատաղի պայքարում սովետական ժողովրդի ազգային խնդիրները զուգորդվեցին համաշխարհային քաղաքակրթությունը ստրկությանը, միջնադարյան խավարամոլությանը վերադարձնելու ռեալ վտանգից փրկելու համազգային խնդիրների հետ։

Սովետական ժողովրդի Հայրենական մեծ պատերազմը մարդկության ապագայի, համաշխարհային հեղափոխության համար սովետական պետության մղած պայքարի երկրորդ կարևորագույն էտապն էր։ Պատմության մեջ ոչ մի ժողովուրդ, ոչ մի պետություն մարդկության հետագա առաջընթացն ապահովելու համար այնքան շատ բան չի արել, ինչ արեց սովետական ժողովուրդը երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին, առաջադեմ մարդկությանը փրկելով ֆաշիստական ստրկացման վտանգից։

Այսպիսով, սովետական պետության դեմ պատերազմները շահագործող դասակարգերն են հրահրել։ Այդ պատերազմներում բախվում են երկու հակադիր սոցիալ-տնտեսական սիստեմների՝ սոցիալիզմի և կապիտալիզմի ուժերը։ Դա անհաշտելի պայքար է առաջավոր հասարակական հիմքերի վրա զարգացող պետությունների և իմպերիալիզմի ուժերի միջև։ Վիթխարի ճակատամարտ է ծավալվում հնի և նորի, ծնվողի և մեռնողի, հեղափոխության և հակահեղափոխության միջև։ Այդ պայքարը նժարի վրա նետելով երկու իրարամերժ աշխարհների՝ ռեակցիայի և առաջադիմության հնարավորու-

թյունները, օրինաչափորեն ավարտվում է իմպերիալիզմի ուժերի պարտությամբ, սոցիալիստական համակարգի հաղթանակով։

Յուրաքանչյուր արդարացի պատերազմ ունի միջազգային նշանակություն։ Սակայն այդ նշանակության մասշտաբներն ու իմաստը միատեսակ չեն բոլոր արդարացի պատերազմներում։ Սոցիալիստական պետության պատերազմներն իրենց ինտերնացիոնալ, համապարփակ նշանակությամբ հատուկ տեղ են գրավում պատմության մեջ, քանի որ, ինչպես վերևում նշվեց, դրանք շոշափում են համամարդկային շահեր, լուծում են համազգային խնդիրներ։

Սոցիալիզմը համաշխարհային սիստեմի վերածվելուց հետո, կապիտալիզմն այս կամ այն սոցիալիստական երկրում ռնությամբ վերականգնելու ամեն մի փորձ ամբողջությամբ վերցրած, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի դեմ իմպերիալիստական ղավադրության կոնկրետ դրսևորում է։ Սոցիալիզմի սիստեմի մեջ մտնող երկրները միավորված են շահերի և նպատակների ընդհանրությամբ, միջազգային սոցիալիստական համերաշխության սերտ կապերով։ Յուրաքանչյուր սոցիալիստական պետության շահերի, անձեռնմխելիության և սուվերենության, ձեռք բերած նվաճումների ամրապնդումն ու պաշտպանությունը ամբողջ սիստեմի ընդհանուր ինտերնացիոնալ պարտքն է, ամբողջ սիստեմի շահերի և ամրապնդման համար պայքարը՝ յուրաքանչյուր սոցիալիստական երկրի կոնկրետ դասակարգային խնդիրը։ Այս պետությունների միջև զարգացող հարաբերությունների ղեկավար սկզբունքը պրոլետարական ինտերնացիոնալիզմն է, որի մեջ մարմնավորվում են ազգային և համադասակարգային շահերն ու խնդիրները։

Սոցիալիստական համագործակցության եղբայրական երկրների շահերի վճռական պաշտպանության վառ օրինակ է այն անհրաժեշտ օգնությունը, որ ցույց տվեցին հինգ սոցիալիստական երկրները չեխոսլովակյան ժողովրդին ներքին հակահեղափոխության ոտնձգությունները խափանելու համար։ «Սովետական ժողովուրդը ու սոցիալիստական համագործակցության մյուս ժողովուրդները միասնական են իրենց վճռա-

կանության մեջ՝ զարգացնել ու արիաբար պաշտպանել սոցիալիզմի նվաճումները նրա բոլոր թշնամիներից։ Դրսից բխող ամեն մի սպառնալիքի եղբայրական երկրները կհակադրեն իրենց անխախտ համերաշխությունը։

Ոչ ոքի և երբեք թույլ չի տրվի սեպ խրել սոցիալիստական պետությունների միջև, նրանց հզոր համագործակցությունից պոկել և ոչ մի օղակ»[1]։

Իրադարձությունների զարգացման դիալեկտիկան այնպիսին է, որ որոշակի պատմական պայմաններում արդարացի պատերազմները կարող են վերածվել անարդարացի պատերազմների, իսկ վերջիններս, իրենց հերթին՝ առաջացնել արդարացի, ազատագրական պատերազմներ, և, հակառակը՝ անարդարացի թալանչիական պատերազմները կարող են արդարացի, ազատագրական պատերազմների վերածվել։ Այսպես, օրինակ, ինչպես արդեն նշվեց վերևում, ֆեոդալա-միապետական երկրների հակահեղափոխական կոալիցիայի դեմ 1789 թվականի ֆրանսիական հեղափոխության պատերազմներն արդարացի առաջադեմ բնույթ էին կրում։ Սակայն, հետագայում Նապոլեոն Բոնապարտի հակահեղափոխական դիկտատուրայի հաստատումից հետո, Ֆրանսիայի մղած պատերազմները վերածվեցին նվաճողականի։ Այդ քաղաքականությունը ազգային-ազատագրական պատերազմներ առաջացրեց նապոլեոնյան դինաստիայի դեմ. «ֆրանսիական մեծ հեղափոխության պատերազմները որպես ազգային պատերազմ սկսվեցին և այդպես էլ էին։ Նրանք հեղափոխական պատերազմներ էին, մեծ հեղափոխության պաշտպանությունն ընդդեմ հակահեղափոխական միապետությունների կոալիցիայի։ Բայց երբ Նապոլեոնն ստեղծեց ֆրանսիական կայսրությունը՝ ստրկացնելով Եվրոպայի վաղուց կազմավորված, խոշոր, կենսունակ ամբողջ մի շարք ազգային պետություններ, այն ժամանակ ֆրանսիական ազգային պատերազմներից ստացվեցին իմպերիալիստական պատերազմներ, որոնք իրենց հերթին առաջ բերին ազգային-ազատագրական պատերազմներ՝ ընդդեմ Նապոլեոնի իմպերիալիզմի»[2]։

---

[1] «Правда», 22 օգոստոսի 1968 թ.։

[2] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 22, էջ 415։

Այդ ազատագրական պատերազմների արտահայտությունն էին 1808 թվականի ապստամբություններն Իսպանիայում և Պորտուգալիայում, որոնք հետագայում օտարերկրյա օկուպանտների դեմ ուղղված պարտիզանական պատերազմի ձև ընդունեցին։ Նապոլեոնի արշավանքը Ռուսաստան՝ արդարացի, ազատագրական համաժողովրդական պատերազմ առաջացրեց օտարերկրյա նվաճողների դեմ։ Ռուս ժողովրդի մղած պատերազմի ազատագրական բնույթը պայմանավորեց նապոլեոնյան բանակի ջախջախումը, որից հետո Արևմուտքում ֆրանսիական տիրակալության դեմ ծայր առան համընդհանուր ապստամբություններ։

1870—1871 թթ. ֆրանս-պրուսական պատերազմը Պրուսիայի կողմից առաջադիմական բնույթ էր կրում մինչև Փարիզի կոմունան, թեպետև պատերազմի ոգեշնչողներից մեկը՝ Բիսմարկը, ոչ մի միջոցից չէր խորշում այն հրահրելու համար։ Բայց հենց որ պրուսական զորքերը ներխուժեցին ֆրանսիական տերիտորիա, օգնելով ներքին հակահեղափոխությանը՝ կոմունան խեղդելու համար, Պրուսիայի կողմից վարվող ռազմական գործողություններն անարդարացի պատերազմի վերածվեցին։ Այն անարդարացի պատերազմի վերածվեց այն պահից, հենց որ պրուսական ռազմամոլներն սկսեցին թալանչիական պլաններ իրագործել, անեքսիայի ենթարկելով Էլզասն ու Լոթարինգիան։ Ահա թե ինչու Մարքսն ու Էնգելսը վճռականորեն դատապարտեցին Պրուսիայի կառավարող շրջանների այդ քաղաքականությունը։

Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին, իմպերիալիստական պատերազմը քաղաքացիականի վերածելու բոլշևիկյան լոզունգը ադեկվատորեն արտացոլում էր անարդարացի պատերազմն արդարացի պատերազմի վերածելու դիալեկտիկան։

Վ. Ի. Լենինը մանրազնին վերլուծելով Ռոզա Լյուքսեմբուրգի տեսակետն ազգային և իմպերիալիստական պատերազմների հարաբերակցության վերաբերյալ, զարգացրեց պատերազմների դիալեկտիկան՝ իմպերիալիզմի դարաշրջանում։ Ռ. Լյուքսեմբուրգը, ճիշտ գնահատելով առաջին համաշխարհային պատերազմի բնույթը, միաժամանակ գտնում

*էր, թե քանի որ իմպերիալիստական տերությունները բաժանել են աշխարհը, ամեն մի պատերազմ, այդ թվում ազգային, իմպերիալիստականի է վերածվում, դիպչելով կամ իմպերիալիստական տերություններից մեկն ու մեկի կամ ամբողջ կոալիցիայի շահերին։*

*Իհարկե, բնության մեջ և հասարակական հարաբերություններում բոլոր սահմանները պայմանական են։ Չկա մի երևույթ, որ իր մեջ չբովանդակի որոշակի պայմաններում իր հակադրությանը վերածվելու հնարավորությունը։ Պատմական կոնկրետ պայմաններում ազգային պատերազմը կարող է իմպերիալիստականի վերածվել և հակառակը։ Սակայն դիալեկտիկական վերլուծությունը կգռեհկացվի, եթե իմպերիալիստական և ազգային պատերազմների միջև ընկած սահմանը անտեսվի այն հիման վրա, թե մեկը կարող է մյուսին վերածվել։ Դիալեկտիկան չի բացառում ամեն տեսակի փոխակերպումների հնարավորությունը, որոնք կարող են կատարվել պատմական կոնկրետ իրադրության մեջ։ Սահմանների պայմանականությունն ու հարաբերականությունը չեն ենթադրում օբյեկտիվ չափանիշների անտեսում։*

*Իմպերիալիզմի օրոք ազգային-ազատագրական պատերազմներն անխուսափելի են, որոնք դիպչում են ոչ միայն մեկ տերության կամ կոալիցիայի, այլև իմպերիալիզմի ամբողջ սիստեմի շահերին, թեպետև առաջին հերթին այն տերության շահերին, որի դեմ է ուղղված պատերազմը։ Վ. Ի. Լենինը նշում էր, որ այս կամ այն երկրում սոցիալիստական հեղափոխության հաղթանակից և համաշխարհային հեղափոխական օջախ գոյանալուց հետո, պայմաններ են ստեղծվում իմպերիալիստական տերությունների միջամտությունը սահմանափակելու ու վիժեցնելու և ազգային-ազատագրական պատերազմների հաջող վախճանի համար։ Դրան նպաստում են միջիմպերիալիստական անտագոնիզմն ու պատերազմները։*

*Պատմական փորձը հաստատեց լենինյան վերլուծության ճշտությունը։ Սոցիալիստական հեղափոխության հաղթանակը Ռուսաստանում, երկրորդ համաշխարհային պատերազմը, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավո-*

րումը, ներիմպերիալիստական հակասությունները օբյեկտիվորեն հասցրին գաղութային և կիսագաղութային ժողովուրդների ազգային-ազատագրական շարժման պատմական նվաճումներին։

## 3. Պատերազմում դրսևորվող գործոնների հարցի շուրջը

Պատերազմների դիալեկտիկան ըմբռնելու տեսակետից կարևոր է հասկանալ նաև ռազմական գործողությունների ամբողջ մեխանիզմը։ Հասկանալի է, որ չի կարելի ղեկավարվել հավիտենական, քարացած, անշարժ ու մեկընդմիշտ տրված կատեգորիաներով։ Սակայն չի կարելի նաև անտեսել օբյեկտիվ գործոնները, որոնք պատերազմող կողմերի հեռանկարները գծագրող համեմատաբար կայուն չափանիշներ են։

Բուրժուական սոցիոլոգները ղեկավարվում են դասակարգային շարժառիթներով, ուռճացնում այն ամենը, ինչ իրադարձությունների մակերեսի վրա է երևում։ Կառչելով երևույթից, աչք զարնողից, նրանք հաճախ անտեսում են էությունը, հիմքը կամ էլ հատուկ միտումնավորությամբ աղավաղում են իրողությունը։

Կապիտալիստական աշխարհի ռազմական տեսաբաններն ու պետական գործիչները հետպատերազմյան տարիներին մեծ եռանդով դիմում են երկրորդ համաշխարհային պատերազմի պատմության վերլուծությանն ու մեկնաբանությանը, կամայականորեն գնահատելով երևույթները։

Վերջին ժամանակներս տարածում է գտել այսպես կոչված «իմպրովիզացիոն տեսությունը», որի համաձայն իբր ֆաշիստները պատերազմում որոշակի ռազմա-ստրատեգիական պլան չունեին, ամեն ինչ կատարվում էր Հիտլերի անձնական «իմպրովիզացման» միջոցով, որը գործում էր սեփական ինտուիցիայով, իսկ գլխավոր շտաբը կուրորեն կատարում էր նրա այս կամ այն մտահղացումը։

Բուրժուական սոցիոլոգների դատողություններից հակասությունների կծիկ է գոյանում։ Անհատի դերի չափազանցված գնահատականը միահյուսվում է այնպիսի կարծիքների

հետ, թե իբր խոշոր ռազմական պարտությունները կարող են պատահական հանգամանքների հետևանք լինել։ Ջոն Ֆուլլերը, օրինակ, ենթադրում է, թե Մոսկվայի մոտ գերմանական զորքերի ջախջախման պատճառը «ռուսական կլիման էր, ... եթե անսպասելիորեն վրա հասած վաղ ձմեռը չլիներ, նրանք, հավանաբար, կկործնեին Մոսկվան»։

Սակայն հեղինակը գլխի չի ընկնում, թե ինչպես մեկ ուրիշ տեղում քննադատում է սեփական համոզմունքներն, ասելով. «Իր պարտությունը թաքցնելու համար գերմանական գլխավոր հրամանատարությունը դեկտեմբերի 8-ին հայտարարեց, թե «պատերազմն Արևելքում այսուհետև կախված կլինի ռուսական ձմեռվա պայմաններից»[1]։

Երկրորդ համաշխարհային պատերազմում Գերմանիայի պարտության պատճառները բացատրելիս բուրժուական որոշ գաղափարախոսների մոտ բացակայում է ամենաաննշան գիտական բարեխղճությունը, հատկապես երբ խոսքը վերաբերում է սովետա-գերմանական ռազմաճակատում ֆաշիստական բանակների պարտություններին։ Առանձին փաստարկներ նույնիսկ ծիծաղաշարժ են։ Այլ կերպ չի կարելի գնահատել Լիդել Հարտի խոսքերը, որոնց հավանություն է տալիս ֆաշիստական բանակի նախկին գեներալ-մայոր Վիլհելմ ֆոն Մելենտինը, ասելով, թե սովետական իշխանության տարիներին եթե Ռուսաստանում մոտավորապես այնպիսի ճանապարհային ցանց ստեղծվեր, ինչպիսին արևմտյան տերություններն ունեն, ապա այդ երկիրը, հավանական է, արագորեն կնվաճվեր։ Վատ ճանապարհները դանդաղեցրին գերմանական մեքենայացված զորքերի առաջխաղացումը։

Յուրահատուկ տրամաբանություն է ստացվում։ Ֆաշիստական բանակների առաջխաղացման, վճռական հաղթանակների հասնելու համար այդ ճանապարհները լուրջ խոչընդոտ էին, իսկ սովետական զորքերի համար՝ թշնամու ջախջախմանը նպաստող միջոցներ։ Եթե նկատի ունենանք ռազմական գործողությունների ընթացքում վատ ճանապարհների դերը, ապա դրանք կարող էին բացասաբար անդրադառնալ երկու

[1] **Дж. Фуллер.** Вторая мировая война, стр. 167.

կողմերի վրա էլ։ Կամ՝ երրորդ ռայխի ղեկավարների բնավորության առանձնահատկությունները մի՞թե կարող էին փոխել պատերազմի ընթացքը։ Այդպես դատել, նշանակում է օբյեկտիվ չափանիշները նենգափոխել սուբյեկտիվ-կենսաբանական հատկանիշներով։ Բանն այստեղ ոչ թե մոլորությունների ու թյուրիմացությունների, այլ դասակարգային մոտեցման մեջ է, որն իր արտահայտությունն է գտնում իրավիճակի միատեսնավոր խեղաթյուրման մեջ։ Վերմախտի ռազմաստրատեգիական կոնցեպցիան մարմնավորում էր պրուսական միլիտարիզմի ավանտյուրիստական ավանդույթները, դրանք օրգանապես շաղկապելով խոշոր մոնոպոլիաների շահերի հետ։ Երրորդ ռայխի պարագլուխները մոնոպոլիստական ռազմատենչ բուրժուազիայի դրածոներն էին, որոնց գործունեությունը դասակարգային բովանդակություն ուներ։

Որքան վառ ու պարզորոշ կերպով է դրսևորվում սոցիալիստական հասարակարգի անպարտելիությունը, իմպերիալիզմի քարոզիչներն այնքան ավելի շատ ու ջանասիրաբար են եռանդ վատնում սոցիալիզմի օրավուր աճող հաջողությունների վրա ստվեր գցելու համար։

Պատերազմում հաղթանակը պայմանավորված է մի շարք գործոններով, որոնք միշտ չէ, որ միատեսակ նշանակություն ունեն։ Ռազմա-տեխնիկական առաջընթացի դինամիկայում այս կամ այն գործոնի դերը փոխվում է, նոր գործոններ են գոյանում։ Սակայն, ռազմական տեխնիկայի զարգացման և մարտունակության մակարդակից անկախ, այնպիսի գործոններ կան, որոնց դերը պատերազմի ժամանակ չի նվազում։

* * *

Նախկին պատերազմներում հաղթանակն ապահովող չափանիշը նույնպես ուժերի թվաքանական հարաբերակցությունը չէր։ Մարդ-մարտիկը բանակի էական տարրն էր։ Եվ նրա միացումը ռազմական տեխնիկայի հետ, որոշակի գիտելիքներ էր պահանջում։ Զենքը գործածելու սկզբունքները յուրացնելու ազդակը աճում էր միայն այն ժամանակ, երբ զինվորը գի-

տակցում էր, որ այն ծառայում է արդար գործի պաշտպանությանը։

Պատերազմի բախտը վճռող էական գործոններից մեկը բանակի բարոյական ոգին է։ Այդ գործոնի դերն ընդգծել են շատ ռազմական տեսաբաններ։ Նապոլեոն Բոնապարտը պնդում էր, որ բանակի բարոյական ուժերը երեք քառորդով վճռում են հաղթությունը։ Կլաուզևիցի կարծիքով «... բարոյական մեծությունները պատերազմում ամենակարևոր տեղն են գրավում։ Այդ բարոյական ուժերը լիովին համակում են ամբողջ ռազմական տարերքը»[1]։ Նա գտնում էր, որ պատերազմական գործողությունների ժամանակ նյութական ու բարոյական մեծությունները միաձուլվում են։

Ժամանակակից բուրժուական ռազմական հեղինակությունները նույնպես ընդգծում են բարոյական գործոնի դերը։

Ֆելդմարշալ Մոնտգոմերին, օրինակ, բանակի բարոյական վիճակը համարում է մեծագույն և միակ գործոնը պատերազմում։

Սակայն բուրժուազիայի գաղափարախոսները ընդունակ չեն մատրսալու բարոյական գործոնի էությունը։ Նրանք բարոյական ուժերի ազդակները որոնում են հասարակության նյութական հարաբերություններից դուրս։ Ըստ նրանց, այդ ուժերի հիմքում ընկած են կենսաբանական բնազդները, ինքնապահպանման ձգտումը, հոտայնությունը, մի խումբ անհատների համերաշխությունն ու ատելությունը մեկ ուրիշ խմբի ներկայացուցիչների նկատմամբ։

Վ. Ի. Լենինը գիտականորեն հիմնավորեց հասարակական երևույթների կենսաբանացման արատավորությունը, ցույց տալով դրանց սոցիալ-տնտեսական բնույթը։ Ռազմաճակատում զինվորի վարքագիծը գաղափարա-քաղաքական շարժառիթներով է պայմանավորված։ Առանց նախաձեռնող, գիտակից զինվորի և նավաստու ժամանակակից պատերազմում անհնարին է հաղթության հասնելը։

Վ. Ի. Լենինն ընդգծում էր մարդու և ռազմական տեխնիկայի դիալեկտիկական փոխկապակցությունը ռազմադաշ-

[1] К. Клаузевиц. О войне, т. 1, стр. 195—196.

տում։ Սակայն այդ հարաբերակցությունը մեխանիկական կոորդինացիա չէ, այլ գիտակից, բանիմաց զինվորի կողմից տեխնիկական միջոցներն օգտագործում։ Չի կարելի մասսաներին տանել դեպի կողոպտչական պատերազմ ու հույս դնել նրանց խանդավառության վրա,— ասում էր Վ. Ի. Լենինը։

Մարտադաշտում գտնվող մարդկանց բարոյական վիճակը պատերազմի բնույթից է կախված։ Համոզմունքն այն բանում, որ պատերազմն արդարացի նպատակներով է մղվում, բարձրացնում է զինվորների բարոյական, մարտական ոգին, ոգեվորում նրանց, դժվարություններին ու զրկանքներին դիմանալու կարողություն ծնում։ Այս տեսակետից բնորոշ են հեղափոխական պատերազմները, որոնք բազմապատկում են ազատագրական նպատակներով մարտնչող աշխատավորների եռանդը։ Վ. Ի. Լենինը սովետական բանակի մարտական ոգին դիտում էր իբրև ազատության համար մասսաների հերոսական պայքարի օրինակ, որը ինտերնացիոնալ նշանակություն ունի։

«Ես կարծում եմ, որ այն, ինչ կարմիր բանակը կատարեց՝ նրա պայքարը և հաղթանակի պատմությունն Արևելքի բոլոր ժողովուրդների համար հսկայական համաշխարհային նշանակություն կունենա։ Դա Արևելքի ժողովուրդներին ցույց կտա, որ ինչքան էլ թույլ են այդ ժողովուրդները, ինչքան էլ անհաղթելի է թվում եվրոպական ճնշողների հզորությունը, որոնք պայքարում կիրառում են տեխնիկայի և ռազմական արվեստի բոլոր հրաշքները, այնուամենայնիվ ճնշված ժողովուրդների կողմից մղվող հեղափոխական պատերազմը... իր մեջ այնպիսի հնարավորություններ, այնպիսի հրաշքներ է թաքցնում, որ Արևելքի ժողովուրդների ազատագրությունը ... իրագործելի է...»[1]։

Հանուն հեղափոխության մասսայական հերոսությունը, անձնազոհությունը, մեծ տոկունությունը ոչ թե ֆանատիզմի, այլ արդարացի պատերազմի նպատակների և պատճառների ըմբռնման դրսևորումներ են։ Դեռևս 1792—1793 թթ. ֆրանսիական հանրապետության հեղափոխական պատերազմների ժամանակաշրջանում մասսաները համակված էին մեծ խան-

[1] Վ. Ի. Լենին, *Երկեր*, *հատ. 30*, *էջ 177—178*։

դավառությամբ։ Հասարակ աշխատավորներից բաղկացած ֆրանսիական հանրապետական բանակը հերոսության հրաշքներ էր գործում։ Սակայն, փաստորեն նա բուրժուա-դեմոկրատական հեղափոխության շահերն էր պաշտպանում. բուրժուազիային հաջողվեց դայթակղիչ լոզունգներով պատերազմի մեջ ներքաշել գյուղացիական, բանվորական և պլեբեյական զանգվածներին։

Հասարակական այդ շերտերի պայքարն իրականում ամրապնդեց բուրժուազիայի իշխանությունը։ Պատմականորեն դա արդարացվում էր հասարակության վերընթաց շարժման տեսակետից, չնայած որ պայքարի պտուղները բուրժուազիային բաժին հասան։ Հետագա իրադարձությունները ցույց տվեցին, որ «Ազատություն, Հավասարություն, Եղբայրություն» լոզունգները բուրժուազիան օգտագործում էր մասսաների մեջ հայրենասիրական, հեղափոխական կրքեր բորբոքելու նպատակով, որպեսզի ամրապնդի իր դասակարգային տիրապետությունը։ Էնգելսի խոսքերով ասած, հերոսության հրաշքներ գործող ֆրանսիական հեղափոխական բանակը իրականում պատրանքի, կեղծ հայրենիքի համար էր մարտնչում։

Ուրիշ բան է, երբ մարտի մեջ են մտնում սոցիալիստական հեղափոխության զինվորները, որոնց խանդավառության, տոկունության ու խիզախության առջև «ծղոտի պես կփշրվի ժամանակակից բանակի մեխանիկական վարժեցումը», քանի որ ոչ թե պատրանքի, այլ ռեալ ու շոշափելի արդյունքի, աշխատավորների և ճնշված զանգվածների իշխանության համար մարտնչող բանակն անպարտելի է։ Կոմունիզմի ամենաթունդ հակառակորդներն անգամ հարկադրված են խոստովանել սովետական բանակի բարձր բարոյական ոգին։ Դեռ 1941 թվականի հունիսի 29-ին ֆաշիստական «Ֆյոլկիշեր բեոբախտեր» թերթը գրում էր, որ «ռուսական զինվորը արևմտյան հակառակորդին գերազանցում է մահվան նկատմամբ ունեցած իր աոելությամբ։ Տոկունությունը նրան ստիպում է այնքան ժամանակ դիմանալ, մինչև որ նա չի սպանվում խրամատում կամ չի զոհվում սվինամարտում»։

Հիտլերյան գեներալ Հեյնց Գուդերիանը այսպես է բնութագրում սովետական մարտիկին. «Ռուսական զինվորը միշտ

աչքի է ընկել հատուկ համառությամբ, ամուր բնավորությամբ և մեծ անպահանջկոտությամբ։ Երկրորդ համաշխարհային պատերազմում ակնհայտ դարձավ, որ սովետական գլխավոր հրամանատարությունը նույնպես ստրատեգիայի ասպարեզում մեծ ընդունակություններով է օժտված։ Ճիշտ կլիներ և հետագայում սովետական հրամանատարներից ու զինվորներից սպասել բարձր մարտական նախապատրաստություն և բարձր բարոյական ոգի և ապահովել սեփական սպաների ու զինվորների գոնե համարժեք նախապատրաստություն... Նրանք նույնիսկ 1941 թվականի դժվարին իրադրության մեջ չէին հուսալքվում։ Նրանց համառության մասին է խոսում բոլոր պատերազմների պատմությունը։ Ոչ լուրջ վերաբերմունքն այդ բնագավառում կարող է սարսափելի հետևանքների հասցնել[1]»։

Գուդերիանը ոչ միայն ընդգծում է սովետական զինվորների և սպաների բարոյական մեծ ոգին և անընկճելի կամքը, այլև խորհուրդ է տալիս դասեր քաղել դրանից, օրինակ վերցնել, բուրժուական բանակի զինվորների մեջ սերմանել նույնպիսի դիմացկունություն և հաստատակամություն։ Տվյալ դեպքում Գուդերիանը հարցի նեղ ռազմական ըմբռնման շրջանակներից դուրս չի գալիս։ Բանակը բացարձակ իմաստով ռազմական մեծություն չէ։ Այն զենքը ձեռքին սոցիալական կոնկրետ խմբերի շահերն է պաշտպանում։ Այստեղից բխում է նրա դասակարգային, քաղաքական կոչվածությունը։ Պատերազմի ժամանակ բանակի կողմից իրականացվող քաղաքական նպատակի դասակարգային էությունը պայմանավորում է բարոյական գործոնը։

Գուդերիանի հարցադրումը վերացական-հիպոթետիկ բնույթ ունի։ Բանակը, որպես պետության էական հատկանիշներից մեկը՝ հասարակության տարբեր շերտերից դուրս եկած մարդկանցից է կազմված։ Դասակարգային հակասություններից բղխող կապիտալիստական հասարակությունում ստեղծված բանակը չի կարող բարոյական բարձր ոգի ունենալ։ Դասակարգային շահերի անտագոնիզմը չի կարող

[1] Гейнц Гудериан. Опыт войны с Россией. «Итоги второй мировой войны», М., 1957, стр. 133.

իր արտացոլումը չգտնել զինվորագրված աշխատավորների շրջանում։ Քաղաքական մեքենայությունների մեջ վարժված բուրժուազիան դիմում է ամենախորամանկ հնարամտությունների՝ զինվորներին իր նպատակներին ծառայեցնելու համար։ Այսպես, ժամանակակից իմպերիալիստները դիմում են զինվորներին «գնելու» մեթոդին, նրանց մարտադաշտ նետում՝ վճարելու պայմանով։ Մարդկային արյունը սպեկուլյացիայի առարկա է դառնում։ Սակայն ժամանակավոր նյութական շահը բարոյական վիճակի չափանիշը լինել չի կարող։ Առաջին իսկ անհաջողությունից բուրժուական բանակներում քայքայման նշաններ են երևում, խմորում է սկսվում։ Այսպես, երկրորդ համաշխարհային պատերազմի առաջին էտապում ժամանակավոր հաջողությունները կուրացրել էին վերմախտի զինվորներին, նրանց տրամադրությունը բարձրացնող դոպինգի դեր խաղալով։ Բայց հենց որ ֆաշիստական բանակն սկսեց պարտություններ կրել, հենց որ սովետական բանակը հիտլերյան ավազակախմբերի գլխին թափեց իր ամբողջ հզորությունը, ձախողելով կայծակնային պատերազմի հիտլերյան պլանները, ֆաշիստական զինվորների բարձր տրամադրությունը իր տեղը զիջեց հոռետեսական մտորումներին։ Այդ մասին են վկայում սովետա-գերմանական ռազմաճակատից հարազատներին հասցեագրված բազմաթիվ նամակները, որոնցում ֆաշիստական բանակի զինվորներն ու սպաները անիծում էին իրենց դառն ճակատագիրն ու պատերազմը։

Զինվորագնումների քաղաքականությունը հարազատ է ժամանակակից ամերիկյան ռազմամոլներին։ Հարավային Վիետնամ ուղարկելով հազարավոր զինվորներ, ամերիկյան իմպերիալիստները հավատացած են, թե իրենց կհաջողվի դոլարներով ոգևորություն առաջացնել ազատագրական շարժումը ճնշելու նպատակով օտար երկիր ուղարկված վարձկանների մեջ։ Բայց ավելի ու ավելի հաճախ են դրսևորվում հակապատերազմական տրամադրությունները ամերիկյան ինտերվենցիոն բանակում։ Մահվան ուրվականը գերակշռում է նյութական շահին։ Այստեղ կարելի է նորից հիշատակել Վ. Ի. Լենինի խոսքերը, թե չի կարելի մարդկանց թալանչիա-

կան պատերազմի քշել ու հույսը դնել նրանց ոգևորության վրա։ Սոցիալիստական երկրի բանակի զինվորներն ապրում ու դաստիարակվում են սոցիալական այնպիսի միջավայրում, որտեղ չկան ճնշողներ ու շահագործողներ և յուրաքանչյուր անհատ աշխատում է շահերի ու նպատակների միասնությամբ համախմբված ամբողջ սոցիալիստական կոլեկտիվի և իր բարօրության համար։ Նրանց աճող եռանդն ու խանդավառությունը պայմանավորված են նրանով, որ ինչպես Վ. Ի. Լենինն էր ընդգծում, աշխարհում առաջին անգամ ստեղծված է մի բանակ, զինված ուժ, որը գիտե, թե ինչի համար է պայքարում։ Աշխարհում առաջին անգամ բանվորներն ու գյուղացիները, որ անհավատալիորեն ծանր զոհաբերություններ են անում, պարզ գիտակցում են, որ իրենք պաշտպանում են իրենց Սովետական սոցիալիստական հանրապետությունը, աշխատավորների իշխանությունը, պաշտպանում են համաշխարհային պրոլետարական սոցիալիստական հեղափոխության գործը։

Բնորոշ է, որ ռազմական գործողությունների ամենակրիտիկական պահերին անգամ սոցիալիստական երկրի բանակի բարձր բարոյական ոգին ոչ միայն պահպանվում է, այլև էլ ավելի է աճում հեղափոխության նվաճումները, սոցիալիզմն արիաբար պաշտպանելու պատրաստակամությունը։ Նա երբեք չի կորցնում հավատը արդար գործի հաղթանակի նկատմամբ։

Այսպիսով, բարոյական բարձր ոգին ամեն մի բանակի բաղադրիչ մասը չէ։ Բարձր բարոյական հատկություններով օժտված է արդարացի պատերազմներ վարող, աշխատավորների, հեղափոխության, խաղաղության գործը պաշտպանող, իր գործողությունների արդարացի լինելու մեջ խորապես համոզված բանակը։

Ներկայումս, կապիտալիզմի ջատագովները շատ են խոսում այն մասին, որ Արևմուտքում ոգեշնչող գաղափարների պակասություն կա։ «ԱՄՆ-ի գլխավոր պլանը» գրքում Ջոն Ֆիշերը խոստովանում է, որ Արևմտյան աշխարհը սրտեր բորբոքող նպատակի, գաղափարների կարիք ունի։ Այսպիսի խոստովանություններն իրենց ամփոփված մարմնավորումն

են գտնում Ջոն Ֆոստեր Դալեսի «Պատերազմ, թե՞ խաղաղություն» գրքում, որտեղ նա տրտնջում է, ասելով, թե Արևմուտքին բացակայում է արդարացի, դինամիկ հավատը, առանց որի մյուս բոլորը քիչ կօգնեն։ Այդ պակասությունը չի կարող լրացվել ո՛չ քաղաքական գործիչներով, ինչպիսի ընդունակություններով էլ որ նրանք օժտված լինեն, ո՛չ դիվանագետներով, ինչքան շրջահայաց էլ որ նրանք լինեն, ո՛չ գիտնականներով, ինչպիսի ստեղծագործողներ էլ որ նրանք լինեն, ո՛չ էլ ռումբերով, ինչպիսի ավերիչ հատկություններ էլ դրանք ունենան։ Դալեսն արձանագրում է ժամանակակից բուրժուական հասարակության հատուկ հոգևոր վակումը։ Քաղաքագետ Դալեսը համոզիչ պատասխան է տալիս գեներալ Գուդերիանին, որն ապարդյուն կերպով փորձում էր բուրժուական բանակների զինվորներին դաստիարակել բարոյական այն բարձր ոգով, որ սովետական զինվորների անխզելի հատկությունն է։

* * *

Պատերազմը հաջողությամբ վարելու կարևորագույն գործոն է ամուր կազմակերպված թիկունքը, ոչ միայն նյութական մատակարարման, այլև բարոյական աջակցության տեսակետից։ «Պատերազմը պատերազմ է, և ոչ ոք թիկունքում կամ ցանկացած որևէ խաղաղ աշխատանքում չպետք է համարձակվի խուսափել այդ պարտականություններից[1]»։

Լայն իմաստով, «թիկունք» և «ռազմաճակատ» հասկացությունները փոխկապակցված են։ Երկուսն էլ մտնում են կատեգորիաների սիստեմի մեջ, որպես սոցիալական հարաբերությունների էական կողմերի արտացոլում՝ պատերազմի ծագումից հետո։ Այս առումով, ռազմաճակատի և թիկունքի փոխկապակցության ու փոխհարաբերության հարցը պետք է քննարկել դասակարգային չափանիշներով։ Ռազմաճակատի ու թիկունքի փոխգործողության բոլոր դրսևորումները, թիկունքի դերն ու նշանակությունը ճիշտ ըմբռնելու համար ան-

---

[1] Վ. Ի. ԼԵՆԻՆ, *Երկեր, հատ. 31, էջ 204։*

հրաժեշտ է վերլուծել ամբողջ ներքաղաքական իրադրությունը, դասակարգային ուժերի դասավորությունն ու հարաբերակցությունը, հասարակարգի սոցիալական էությունը և վարվող պատերազմի բնույթը։ Թիկունքը բարդ հասարական կապերի համակցում է։ Նրա նշանակությունը հասկանալու համար անհրաժեշտ է հարցը դիտել ամբողջության մեջ։

Պատմությունն անկասելիորեն առաջադիմում է։ Նյութական արտադրության զարգացման ու կատարելագործման հետ մեկտեղ ռազմական գործողություններ վարելու նոր միջոցներ են ստեղծվում, հակառակորդին հարվածելու նյութական հընարավորությունները մեծանում են։ Խոշոր մեքենայական արդյունաբերությունը պայմանավորեց արտադրության մեջ մեծաթիվ աշխատող ձեռքեր ներգրավելը։ Վ. Ի. Լենինը գրում էր, որ ժամանակակից պատերազմներում ժողովուրդների կենդանի ուժը ոչ միայն ռազմաճակատներում է վճռական դեր խաղում, այլև գործարաններում, հանքերում, թիկունքի բոլոր տեղամասերում։

Ժամանակակից պատերազմներում թիկունքի դերը ռազմաճակատի կյանքում զգացվում է անմիջապես և մշտապես։ Այն, ըստ էության, գլխավոր ինտենդանտի ֆունկցիա է կատարում։ Այստեղ ամեն մի խափանում, անկազմակերպվածության դրսևորում, ժամանակավոր վիժեցում կարող է ծանր նստել ռազմաճակատի վրա։ Ռազմաճակատի հետ թիկունքի նյութական կապը իրականացվում է տրանսպորտային միջոցներով, որոնք հանդես եկան մեքենայական ինդուստրիայի ստեղծման շնորհիվ։

Այսպիսով, ժամանակակից պայմաններում, երբ արտադրության, գիտության ու տեխնիկայի զարգացման հետևանքով պատերազմի նյութական բազան աննախադեպ աճել է, թիկունքի դերը է՛լ ավելի մեծանշանակ է դարձել, ռազմաճակատը և թիկունքը ամբողջական մեխանիզմի միակցված մասնիկներն են։ Սակայն այդ մեխանիզմի աշխատանքը կախված է ոչ թե կառավարող շրջանների սուբյեկտիվ ցանկությունից ու կամքից, այլ երկրում տիրող սոցիալ-դասակարգային հարաբերություններից, նրա կողմից մղվող պատերազմի բնույթից։ Կապիտալիստական հասարակարգում այդ մեխանիզմը

չի կարող անխափան աշխատել, ինչպես չեն կարող նորմալ գործել մարմնի բոլոր օրգանները, եթե օրգանիզմն ամբողջովին ախտահարված է։ Հակամարտ դասակարգերի գոյությունն ու սոցիալական շերտավորումը բացառում է միասնական վերաբերմունքը շահագործող բուրժուական խմբի սանձազերծած պատերազմի նկատմամբ։ Այս հանգամանքն իր հերթին խորացնում է դասակարգային հակամարտությունները, թիկունքը մի վառոդի պահեստի է վերածվում, որը պատրաստ է ամեն րոպե պայթել։ Այսպիսի իրավիճակ օբյեկտիվորեն ստեղծվում է այն ժամանակ, երբ բուրժուազիան դիմում է զավթողական պատերազմի։

Սոցիալիզմը որպես հասարակության կազմակերպման նոր ձև մարմնավորում է բնակչության բացարձակ մեծամասնության կամքը։ Սոցիալիստական պետության պաշտպանությունը յուրաքանչյուր քաղաքացու կենսական գործն է։ Նրա դեմ կազմակերպված ագրեսիայի դեպքում ամբողջ երկիրը վերածվում է միասնական ռազմական ճամբարի։ Ռազմաճակատն ու թիկունքը միասնաբար են գործում, որպես անթերի աշխատող մեխանիզմի բաղադրիչ մասեր. «...մենք հաղթում ենք և կհաղթենք, որովհետև մենք ունենք թիկունք և ամուր թիկունք...»[1]։

Արդարացի, հեղափոխական պատերազմը ռազմաճակատի և թիկունքի օրգանական միասնության նախադրյալն է։ Այդ դրույթի պերճախոս արտահայտությունն է սովետական պետության անցած ուղին։ 1941—1945 թթ. Հայրենական պատերազմի օրերին ռազմաճակատին ցույց տրված համաժողովրդական օգնությունը պատմության մեջ աննախադեպ երևույթ էր։ Նյութական օգնությունն ու բարոյական աջակցությունը ոգեշնչում էին ռազմադաշտերում մարտնչող սովետական զինվորներին, ամրապնդելով հաղթանակի նկատմամբ նրանց հավատը։ Ոչ միայն գործող բանակը, այլև թիկունքի աշխատավորները ոչ մի կասկած չունեին թշնամու նկատմամբ վերջնական հաղթանակի մեջ։ «Պատերազմում հաղթում է նա,— գրել է Վ. Ի. Լենինը,— ով ավելի շատ ռեզերվ-

---

1 Վ. Ի. Լենին, *Երկեր*, *հատ. 30*, *էջ 178*։

ներ, ավելի շատ ուժի աղբյուրներ, ավելի շատ դիմացկունություն ունի ժողովրդական զանգվածում... Մեր թշնամիները... նույնիսկ այս ռեզերվուարին հեռավոր կերպով նման ոչ մի բան չունեն... Ահա ինչո՛ւ, վերջին հաշվով, ապահովված և անխուսափելի է համաշխարհային սովետական իշխանության հաղթանակը[1]»։

Այս կապի մեջ պետք է ընդգծել բանակի տեխնիկական զինվածության դերը, որը պատերազմի մշտական գործոններից է, բանակի հաղթանակների կարևորագույն նախադրյալը։ Տեխնիկական տեսակետից լավ զինված թշնամուն, եթե նա նույնիսկ անարդարացի պատերազմ է մղում, հնարավոր չէ հաղթել, ունենալով միայն բարոյական բարձր ոգի և ամուր թիկունք։ Պատերազմի արդարացի նպատակները, բարոյական բարձր ոգին, ամուր կազմակերպված թիկունքը պետք է միաձուլվեն նորագույն մարտական տեխնիկայի հետ։

Հիրավի, առնվազն միամտություն կլիներ կարծել, թե հակառակորդի դեմ հնարավոր է հաջող պայքար մղել միայն խանդավառությամբ ու եռանդով։ Ոգևորությունն իսկույն կըկորչի, եթե անզեն կամ վատ զինված մարտիկը բաց դաշտում բախվի տեխնիկապես լավ զինված հակառակորդի հետ։ Այսպիսով, հաղթում է այն բանակը, որը արդարացի պայքար է մղում, օժտված է բարձր բարոյական տոկունությամբ, պայքարի նպատակներին նվիրված ամուր թիկունք ունի և հագեցված է լավագույն ռազմական տեխնիկայով։

* * *

Վերջին ժամանակներս, հատկապես երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, շատ սոցիոլոգներ և ռազմական տեսաբաններ զբաղվում են նաև պարտիզանական շարժման վերլուծությամբ։ Նրանք ձգտում են որսալ պարտիզանական պատերազմի շարժառիթները և տեղն ու դերը պատմական իրադարձությունների մեջ։ Հիտլերյան պաշտոնաթող գեներալ-գնդապետ Լոթար Ռենդուլիչը խոստովանում էր, որ պա-

---

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 30, էջ 75—76։

տերազմների պատմությունը չգիտե այլ օրինակ, երբ պարտիզանական շարժումն այնպիսի մեծ դեր խաղար, ինչպիսին երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ։ «Իր չափերով,— գրել է նա,— այն միանգամայն նոր երևույթ էր ռազմական արվեստի մեջ։ Ռազմաճակատային զորքերի և օկուպացված շրջաններում մատակարարման պրոբլեմների, թիկունքի աշխատանքների ու կառավարման վրա թողած իր վիթխարի ներգործությամբ այն տոտալ պատերազմի հասկացության մի մասը դարձավ։ Տարեցտարի ուժեղացող պարտիզանական շարժումը... ազդեց ամբողջ երկրորդ համաշխարհային պատերազմի բնույթի վրա[1]»։

Ռենդուլիչն այդ շարժումը որակում է որպես «պատերազմ թիկունքից», որն անսպասելի երևույթ էր ֆաշիստական հրամանատարության համար և իբր հակասում էր միջազգային իրավունքին։

Պատերազմի փորձը ցույց է տալիս, որ թիկունք հասկացությունը լայն իմաստով՝ երկրի տերիտորիայի ու բնակչության այն մասն է ընդգրկում, որը ռազմաճակատային իրադարձություններում անմիջական մասնակցություն չի ունենում, բայց հետևում է դրանց և սպասարկում ռազմաճակատին։ Նեղ իմաստով՝ օտարերկրյա զորքերի համար թիկունք են նաև օկուպացված շրջանները։ Այս տեսակետից, զավթողական, անարդարացի պատերազմ վարող բանակի համար ամենադժվարին վիճակն է ստեղծվում։ Պատերազմի նկատմամբ տարբեր հասարակական խմբերի շահերի անտագոնիզմից բխող ոչ միատեսակ վերաբերմունքը, հակադիր տենդենցների ու հայացքների պայքարը արտահայտելով անարդարացի պատերազմ վարող պետության ներքին կացությունը, բացառում է այդ պատերազմի համազգային պաշտպանությունը։

Միաժամանակ, օկուպացված տերիտորիաների բնակչության ցասումն ու ատելությունը թափվում է բռնությամբ իրենց ռեժիմը հաստատող օտարերկրյա նվաճողների գլխին։ Այդ բնակչությունը նրանց դեմ պարտիզանական զինված

---

[1] Лотар Рендулич. Партизанская война. *տես* «Итоги второй мировой войны», стр. 135:

պայքարի է ելնում։ Ամբողջովին վերցրած՝ «իր» թիկունքի անկայունությունը զուգորդվում է օտար երկրում «իր» թիկունքի ծայրաստիճան անհանգիստ վիճակի հետ։ Օկուպանտների ոտքերի տակ հողը վառվում է, նրանք ուժեղացնում են ռեպրեսիաները, դրանով օբյեկտիվորեն նպաստելով պարտիզանական պայքարի մասշտաբների ընդլայնմանը։

Նախասոցիալիստական ֆորմացիաներում միջպետական ընդհարումների ժամանակ արդարացի պայքար մղող երկրում, ուր ներխուժել էին օտարերկրյա նվաճողները, արտաքին թշնամու դեմ ուղղված պարտիզանական շարժումը հիմնականում տարերայնորեն էր ծավալվում, որովհետև շահագործող դասակարգն այդ շարժումը լայնորեն խթանելու, ժողովրդին զինելու մեջ շահագրգռված չէր։ Իշխող դասակարգը վախենալով աշխատավոր մասսաներից զգուշորեն էր մոտենում նրանց ռազմական ստեղծագործությանը, ուշադիր հետևում նրանց գործողություններին և հաղթանակի հասնելուց հետո դիմում էր տարբեր մեթոդների՝ նրանց հայրենասիրական պոռթկումներն ու ստեղծագործական եռանդը հանգցնելու համար։ Շահագործողները գիտակցում էին, որ այն զենքը, որն արտաքին թշնամիների դեմ էր ուղղված, որոշակի պայմաններում կարող է շրջվել իրենց դեմ։

Դրությունն արմատապես փոխվում է սոցիալիստական հասարակարգում։ Քաղաքացիական պատերազմի տարիներին սովետական հանրապետությունում ներքին հակահեղափոխության և օտարերկրյա ինտերվենտների դեմ ուղղված պարտիզանական շարժումն ընդգրկեց ամբողջ երկիրը։ Կոմունիստական կուսակցությունը ղեկավարում էր այդ շարժումը, այն դիտելով որպես հեղափոխական պատերազմի մի մասը։

1941—1945 թթ. Հայրենական մեծ պատերազմի տարիներին ֆաշիստական բանակի դեմ երկրի օկուպացված տերիտորիայում ծավալված համաժողովրդական պարտիզանական շարժումը գիտակցական բնույթ էր կրում։ Կոմունիստական կուսակցությունը ոգեշնչում և ղեկավարում էր այն։ Եթե ժամանակավորապես գրավված տերիտորիան դիտենք որպես գերմանական բանակի «թիկունք», ապա իրականում այն վերածվել էր հակաֆաշիստական պատերազմի երկրորդ ճա-

կատի։ Այն սոցիալիստական պետության բնակչության բոլոր շերտերի շահերի ու նպատակների անխզելի միասնության արտահայտությունն էր։ «Ռազմական գործողությունների ոչ մի այլ թատերաբեմում պարտիզանների և կանոնավոր բանակի միջև այնպիսի սերտ համագործակցություն չկար, ինչպես ռուսականում», գրել է Ռենդուլիչը։

Հայրենական պատերազմի տարիներին պարտիզանական պայքարի աննախադեպ չափերի ու մասշտաբների մասին է խոսում այն փաստը, որ գերմանական հրամանատարությունը հարկադրված էր օկուպացված շրջաններում մեծ ուժեր պահել և նույնիսկ ռազմաճակատից առանձին զորամասեր տեղափոխել այն շրջանները, որտեղ պարտիզանական գործողություններն սպառնալի թափ էին ընդունում։ «Լինում էին դեպքեր, երբ կարմիր բանակի զորամասերի հետ փոխգործողության մեջ էին մտնում մինչև 10 հազար մարդուց բաղկացած պարտիզանական ուժեր... Պարտիզանների հիմնական մասը կազմում էին տեղական բնակչությունից կամավորները[1]»։

Միայն 1942 թվականի ամռանն ու աշնանը, երբ Ստալինգրադի շրջանում կատաղի ճակատամարտեր էին ծավալվում, ֆաշիստական հրամանատարությունը պարտիզանների դեմ պայքարելու համար, ստիպված էր առանձնացնել ոստիկանական 144 գումարտակ և 27 գունդ, հետևակային 8 գունդ, ՍՍ-ի պահնորդական, ոստիկանական և պատժիչ 10 դիվիզիա, պահնորդական 2 կորպուս, 73 հատուկ զորամաս, գերմանական հետևակային մինչև 15 և Գերմանիայի սատելիտների 5 դիվիզիա։ Մի շարք շրջաններում պարտիզանական վրիժառուները վերականգնում էին սովետական իշխանությունը։ Սովետական զորքերի առաջխաղացման ընթացքում պարտիզանները մտնում էին նրանց շարքերը։ Բավական է ասել, որ միայն Մինսկի մոտ մղված մարտերի ժամանակ սովետական բանակի շարքերը մտան 130 հազար պարտիզաններ։

---

[1] **Лотар Рендулич.** Партизанская война, стр. 147.

Ամբողջովին վերցրած, թշնամու ժամանակավորապես օկուպացված տերիտորիայում ֆաշիստական զավթիչների դեմ մարտնչում էին 700 հազար պարտիզաններ[1]։ Նման բան պատերազմների պատմությունը չէր տեսել։ Հայրենական պատերազմի տարիներին սովետական պարտիզանական ջոկատների գործողությունները և դրանց արդյունքները գերազանցում էին նախորդ պատերազմներում կանոնավոր բանակների գործողություններին։ Սովետական պարտիզանները ոչնչացրին մոտավորապես 300 հազար ֆաշիստական զինվոր ու սպա։ Ոչնչացվեց կամ շարքից դուրս բերվեց 3 հազար երկաթուղային էշելոն, 1191 տանկ, 476 ինքնաթիռ, 890 տարբեր պահեստ և արհեստանոց[2]։

Հատկանշական է, որ երկրորդ համաշխարհային պատերազմում Ամերիկայի Միացյալ Նահանգների զինված ուժերը տվեցին 229 հազար սպանված։ Դա նշանակում է, որ սովետական պարտիզաններն ամերիկյան զորքերի կորուստներից մոտավորապես 1,5 անգամ շատ հիտլերականներ ոչնչացրին։

Այս փաստերը խոսում են այն մասին, որ սոցիալիստական պետության վրա հարձակում կատարող կողմը պատերազմի մեջ է մտնում ոչ միայն կանոնավոր բանակի, այլև գաղափարա-քաղաքական միասնությամբ համախմբված ամբողջ ժողովրդի հետ։ Վ. Ի. Լենինը մատնանշում էր, որ բանակի և ժողովրդի հայրենասիրությունը պայմանավորված են տվյալ երկրում իրականացված սոցիալ-տնտեսական վերափոխություններով։

Հակաֆաշիստական պարտիզանական շարժում ծավալվեց նաև եվրոպական մայր ցամաքի մի շարք երկրներում, առանձնապես Լեհաստանում, Չեխոսլովակիայում, Բալկանյան երկրներում։ Ֆաշիստական լուծն այդ երկրների ժողովրդական մասսաների մոտ պատասխան գործողությունների հասցրեց պարտիզանական պայքարի ձևով։ Ֆաշիզմի ոչնչա-

---

[1] Տե՛ս **П. П. Вершигора.** Военное творчество народных масс, М., 1961, էջ 814—817.

[2] Տե՛ս «Большевик», 1943, № 13։

ցումը համամարդկային խնդիր էր և դրա իրականացմանը մասնակցում էին հիտլերականների ստրկացած ժողովուրդները։ Կոմունիստներն այդ պայքարի ավանգարդումն էին։ Նրանք կազմակերպում ու համախմբում էին մասսաներին, նրանց հայրենասիրական եռանդն ուղղում հակաֆաշիստական պայքարի ընդհանուր հունը, բորբոքում նրանց ատելությունը մարդկության թշնամիների նկատմամբ։ Եվ եթե պատերազմից հետո ֆաշիստական լծից ազատագրված երկրներում արմատական սոցիալական վերափոխումներ իրականացվեցին, դա մասամբ պայմանավորված էր հակաֆաշիստական շարժման մեջ այդ երկրների ժողովուրդների ակտիվ մասնակցությամբ, որն իր կնիքը դրեց նրանց հետագա զարգացման վրա։

Այսպիսով, պարտիզանական պայքարը ազատագրական, արդարացի պատերազմի բաղադրիչ մասն է։ Այն ծագում է օբյեկտիվորեն և խոսք անգամ չի կարող լինել այդ շարժման անսպասելիության, անակնկալության մասին։

Երկրորդ համաշխարհային պատերազմի փորձը ցույց տըվեց, որ ֆաշիզմի ստրկացրած շատ երկրների ժողովուրդների՝ արտաքին թշնամու դեմ պայքարը միահյուսվեց ներքին շահագործող դասակարգի դեմ մղվող պայքարի խնդիրների հետ։ Այդ երկրների բուրժուազիան աշխատավորների աչքում իրեն մերկացրեց իր անհետևողական ծախու քաղաքականությամբ, ռազմական տեսակետից ավելի ուժեղ թշնամու առջև ստորաքարշությամբ, երկչոտ գործողություններով։ Եվ, պատահական չէր, որ պատերազմն ավարտվելուց հետո այդ երկրների բուրժուազիան չկարողացավ պահպանել իր իշխանությունը։ Նա աշխատավոր մասսաների անընդհատ աճող ճնշման տակ մեկուսացվեց, վնասազերծվեց և հեռացվեց իշխանությունից։

Եթե պարտիզանները երևում էին այնտեղ, որտեղ նրանց չէին սպասում, օկուպանտների որջում խառնաշփոթություն, ահ ու սարսափ տարածելով, դա, իհարկե, չի վկայում այն մասին, թե նրանց պայքարն անօրինական է, ինչպես Ռենդուլիչն է գտնում։

Երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին պարտիզանական շարժումը բացահայտ պայքար էր օտարերկրյա զավթիչների դեմ։ Լայնորեն մանրելը պարտիզանական գործողությունների առանձնահատկություններից մեկն է։ Այդ պայքարը ոչ միայն նյութական վնաս էր հասցնում թշնամու ուժերին, այլև բարոյական մեծ ներգործություն ունենում նրանց վրա։ Պարտիզանական պայքարն արդյոք համապատասխանու՞մ է միջազգային իրավունքի սկզբունքներին, թե ոչ, Ռենդուլիչի այս հարցադրումն ամբողջովին սխոլաստիկական բնույթ ունի։ Նախ՝ առնվազն անամոթություն է միջազգային իրավունքի մասին խոսելը այն մարդկանց համար, ովքեր այդ իրավունքը դիտում էին որպես թղթի կտոր և դատարկ խոսակցություն։ Իսկ եթե խորհրդածել այդ մասին պարտիզանական շարժման տեսանկյունից, ապա միանգամայն այլ հետևություններ կբխեն։ Ինքը՝ ագրեսիան միջազգային իրավական նորմաներին հակասող գործողություն է։ Ագրեսիային զինված հակահարվածը օրինական, արդարացի քայլ է։ Հարվածը կարող է տարբեր ձևերով իրականացվել։ Իրադարձությունը թելադրում է կոնկրետ գործողություններ։ Միջազգային իրավունքը քրեստոմատիա չէ՝ ուսանելու ու սերտելու համար։ Ժողովրդական մասսաների կամքն ու տենդենցները չի կարելի և հնարավոր չէ խցկել պաշտոնական շրջանակների մեջ, նրանց ինչ-որ հիմնադրույթներ պարտադրել։

Այսպիսով, հասարակական հարուստ կապերի միահյուսվող շղթայում պատերազմը բարդ երևույթ է։ Նրա ծագումը պետք է որոնել հասարակության տնտեսական զարգացման և դասակարգային բաժանման մեջ։ Նրա հրահրողներն ու սանձազերծողները շահագործող դասակարգերն են, որոնց սոցիալական դրությունը ծնում է հարստանալու մոլուցք, որը նյութականանում է պատերազմների երկար շարքի մեջ։ Նյութական շահը շահագործողների միլիտարիստական գործողությունների արմատական դրդապատճառն է։

Արտադրության բարձր զարգացած միջոցների նկատմամբ մասնավոր սեփականությունը ուժեղացրեց կապիտալիզմի ագրեսիվ բնույթը։ Իմպերիալիզմը նորանոր պատերազմներ

ծնեց, նա «այնքան է զարգացրել արտադրողական ուժերը, որ մարդկությանը վիճակված է կա՛մ անցնել սոցիալիզմին, կա՛մ տարիներ ու նույնիսկ տասնամյակներ ապրել «մեծ» տերությունների զինված պայքարը գաղութների, մենաշնորհների, արտոնությունների և ամեն տեսակի ազգային ճնշումների միջոցով կապիտալիզմն արհեստականորեն պահպանելու համար»[1]։

---

[1] Վ. Ի. Լենին, *Երկեր, հատ. 21, էջ 382։*

ԳԼՈՒԽ ԵՐՐՈՐԴ

# ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐԻ ՕԲՅԵԿՏԻՎ ՀԻՄՔԵՐՆ ՈՒ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՀԵՏԵՎԱՆՔՆԵՐԸ

## 1. Իմպերիալիստական պատերազմների սոցիալ-տնտեսական պատճառները

Պատերազմն ամեն մի շահագործող դասակարգի պետական իշխանության քաղաքական գործունեության դրսևորումներից մեկն է։ Հասարակական հարաբերությունների զարգացման իմպերիալիստական փուլում պատմականորեն վերջին շահագործող սոցիալական խմբի՝ մոնոպոլիստական բուրժուազիայի ձեռքին այն մնաց որպես դասակարգային պայքարի միջոց։

Եթե մինչ կապիտալիստական դարաշրջաններում շահագործող դասակարգերի սանձազերծած պատերազմները հենվում էին համեմատաբար թույլ տեխնիկական բազայի վրա, ապա կապիտալիզմն ստեղծելով ու զարգացնելով հզոր արտադրողական ուժեր, կատարելագործեց միլիտարիզմի տեխնիկական բազան։ Նա դարձավ մի սարսափելի հրեշ, որ պատրաստ է հոշոտել ու լափել միլիոնավոր մարդկանց։

Արտադրության ավելի հզոր և բազմապիսի միջոցների մասնավոր սեփականությունը, հսկայական հարստություններ կուտակելու հնարավորության աճը բնակչության հիմնական մասի շահագործման ու սննկացման հաշվին փոքրաթիվ կապիտալիստական դասակարգի մեջ ոչ մի բանի առաջ կանգ չառնելու անզուսպ կիրք են ծնում։ Մաքսիմ Գորկու պատկերավոր արտահայտությամբ, ոսկին կապիտալիզմի սիրտն է և դրա ծավալի աճը՝ ամբողջ իմաստը։

Կապիտալիստական էկոնոմիկայի օրինաչափություններն են կյանքի կոչում ժամանակակից պատերազմների

նյութական խթանները։ Իմպերիալիզմի դարաշրջանի բազմատիպ ու տարատեսակ պատերազմները միանական նյութական հողից են ծնվում։ Վ. Ի. Լենինը գրում էր, որ իմպերիալիզմը ներկայացնում է ամենաբազմազան պատերազմների համաշխարհային պատմական մի ժամանակաշրջան. իմպերիալիստական պատերազմների, երկրի ներսում քաղաքացիական պատերազմների, առաջինների և երկրորդների միահյուսման մի ամբողջ դարագլուխ, ազգային պատերազմների, իմպերիալիստներից, իմպերիալիստական տերությունների զանազան կոմբինացիաներից ճզմված ազգությունների ազատագրական պատերազմների մի դարագլուխ, վիթխարի կրախների, մասսայական ռազմական բռնի վճիռների, ճգնաժամերի դարաշրջան։

Մոնոպոլիստական կապիտալը թափանցելով երկրագնդի բոլոր անկյունները, դեռևս մեր դարասկզբին աշխատավոր մասսաների շահագործման համընդհանուր սիստեմ ստեղծեց։ Մոնոպոլիստական բուրժուազիան բուռն ռազմական իրադարձությունների հորձանուտ է ներքաշում տասնյակ երկրներ ու ժողովուրդներ։ Նրան այլևս բնորոշ չեն լոկալ պատերազմները. նա համաշխարհային հրդեհի պատրույգներն է վառում, մարդկության դեմ ուղղելով գիտատեխնիկական նվաճումները։ Իր նեղ դասակարգային շահերի համար նա առատորեն թափում է մարդկային արյունը։ Հզոր տեխնիկայի վրա հենվող ուռճացած ամբողջ ռազմական մեքենան գործի է գցվում, միլիոնավոր աշխատավոր ձեռքեր են մոբիլիզացվում պատերազմի կարիքներն ապահովելու համար։ Վիթխարի նյութական միջոցներ են առանձնացվում, որոնց չափը ճիշտ հաշվել անգամ հնարավոր չէ։ Այսպես, որոշ տվյալներով, առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ մոբիլիզացվեց մոտավորապես 70 միլիոն մարդ կամ կռվող կողմերի չափահաս տղամարդկանց երեքից մեկը։ Երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ բանակ կանչվեց 110 միլիոն մարդ (չհաշված պարտիզաններին) կամ պատերազմող երկրների չափահաս տղամարդկանց երկուսից մեկը։ Բնորոշ է, որ եթե 19-րդ դարում եղած պատերազմները խլում

էին կռվող երկրների ազգային եկամտի 8—13 տոկոսը, ապա առաջին համաշխարհային պատերազմում այն կազմում էր 50, իսկ երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին՝ 60—70 տոկոս։

Առաջին համաշխարհային պատերազմի մեջ ուղղակի և անուղղակի ներքաշվեց 34, իսկ երկրորդում՝ 60 երկիր։

Հիշյալ թվերը հաստատում են այն ճշմարտությունը, որ իմպերիալիզմը ոչ միայն մարդու կողմից մարդուն շահագործելու, այլև մարդու կողմից մարդուն բնաջնջելու սիստեմ է։

Իմպերիալիստական բուրժուազիայի հրեշավոր գործերի հետևանքների պասիվ արձանագրումով, սակայն, հնարավոր չէ բացատրել դրանց դրդապատճառները։ Մարդկանց չարիքներ բերելու երևույթները վերացնելու կամ դրանց դեմ արդյունավետ պայքար ծավալելու համար, անհրաժեշտ է ըմբռնել այդ երևույթների աղբյուրները, հիմքերն ու պատճառները։

* * *

Պատմության մատերիալիստական ըմբռնման համաձայն, հասարակության զարգացման հիմքում ընկած է նյութական արտադրությունը։ Հասարակական հարաբերությունների նյութական հիմքերի ուսումնասիրությունն ու վերլուծությունը սոցիալական երևույթների ծագման ու զարգացման պրոցեսի ըմբռնման նախապայմանն են։

Վ. Ի. Լենինը հանճարեղ խորաթափանցությամբ բացահայտեց իմպերիալիզմի էությունը, դերն ու տեղը և այդ հիման վրա ժամանակակից պատերազմների տնտեսական հիմքերը։

XIX դարի վերջին և հատկապես XX դարի սկզբին կապիտալիզմը վերջնականապես վերաճեց իմպերիալիզմի։

Իմպերիալիզմը կապիտալիզմի զարգացման բարձրագույն փուլն է և բնութագրվում է որակապես նոր գծերով ու առանձնահատկություններով։ Վ. Ի. Լենինի խոսքերով ասած, այդ փուլի ընդհանուր ու հիմնական օրենքը արտադրության հա-

մակենտրոնացումից մոնոպոլիաների առաջացումն է։ Դա նշանակում է, որ կապիտալիստական երկրների էկոնոմիկայի մեջ մոնոպոլիստական միությունները գերիշխող դիրք են գրավում, իրենց ձեռքում պահելով տնտեսական կյանքի կառավարման բոլոր լծակները։ Տեղի է ունենում արտադրության ամենաբազմակողմանի հանրայնացում և կապիտալի համակենտրոնացում, որոնք իրենց զարգացման բարձր աստիճանում մոնոպոլիաների են վերածում։

Վերջինները, իրենց հերթին, արագացնում են համակենտրոնացման պրոցեսը։ Եվ որքան մոնոպոլիաների բազայի վրա ավելի ինտենսիվորեն է կատարվում արտադրության համակենտրոնացման մասշտաբների ընդարձակումը, այնքան ակնհայտորեն է դրսևորվում այն օրինաչափությունը, որ պետական կյանքի բոլոր բնագավառներում ամբողջ իշխանությունն անցնում է մոնոպոլիաներին։

XX դարի սկզբին ԱՄՆ-ի արտադրության մոտավորապես կեսը կենտրոնացած էր ձեռնարկությունների ընդհանուր թվի մեկ հարյուրերորդական մասում։ 1905 թվականին Գերմանիայում կար 355 կարտել։

Իմպերիալիզմին բնորոշ է մոնոպոլացման աստիճանի անընդհատ աճը։ Այսպես, ներկայումս ամերիկյան 500 մոնոպոլիստական ընկերություններ թողարկում են երկրի արդյունաբերական արտադրանքի կեսը, նրանց բաժին է ընկնում արդյունաբերական բոլոր շահույթների 70 տոկոսը։ Մեծ Բրիտանիայում 180 խոշոր մոնոպոլիստական ընկերություններ, որոնց ձեռնարկություններում կենտրոնացված է երկրի արդյունաբերական բանվորական ուժի մեկ երրորդը, անօրինում են ամբողջ արդյունաբերական արտադրանքի ծավալի մոտավորապես երկու հինգերորդը։ ԳՖՀ-ում 10 խոշորագույն ընկերություններ իրենց ձեռքում են կենտրոնացրել սև մետալուրգիայի արտադրանքի 57,8, նավաշինության՝ 69, ավտոմեքենաների՝ 67, քիմիական արդյունաբերության՝ 40,6 և էլեկտրա-տեխնիկական արդյունաբերության՝ 38 տոկոսը[1]։

---

[1] Տե՛ս Мир капитализма (справочник), М., 1965, էջ 157—158։

ԱՄՆ-ում ավտոմեքենաների արտադրության մոտավորապես 67 տոկոսը վերահսկում են «Ջեներալ մոտորս», «Ֆորդ» և «Կրայսլեր» ընկերությունները։ Կապիտալիստական բոլոր պետությունների տնտեսական կյանքում վճռական դեր է խաղում մոնոպոլիստական կապիտալը։ Մոնոպոլացման անընդհատ աճող աստիճանը պայմանավորում է մոնոպոլիստական միությունների դուրս գալն ազգային շրջանակներից և միջազգային մոնոպոլիստական միությունների կազմավորումը, որոնք արտաքին ոլորտներում մանելով, իրականացնում են համաշխարհային արտադրանքի զգալի մասի թողարկումը։ Բավական է նշել, որ ներկայումս միայն ամերիկյան «Ջեներալ մոտորս» մոնոպոլիստական ընկերությանը բաժին է ընկնում ավտոմեքենաների համաշխարհային արտադրության 22,7 տոկոսը։ Այդ ընկերությունն իր մասնաճյուղերն ունի մի շարք երկրներում։ Ներկայումս ամբողջ կապիտալիստական աշխարհի նավթի արդյունահանումն ու վերամշակումը երեք ամերիկյան և երկու անգլիական տրեստների ձեռքում են կենտրոնացած, որոնք միասնական նավթային կարտելի մեջ են մտնում։

Այսպիսով, կապիտալիստական շահագործման ոլորտ են ներքաշվում շատ երկրներ ու ժողովուրդներ, իսկ բարձր շահույթներ ստանալու ձգտումը մոնոպոլիստական բուրժուազիային դրդում է դրանց շրջանակների ընդլայնման։ Համաշխարհային կապիտալիստական արտադրության համարյա մեկ երրորդը 200 խոշորագույն մոնոպոլիստական ընկերություններ են տնօրինում։ Մոնոպոլիաները վիթխարի ծովահրեշների նման իրենց շոշափուկներով թափանցել են շատ երկրների և մայրցամաքների կյանքի մեջ, քամելով ժողովուրդների կենսահյութերը։

Խոշոր արդյունաբերության հանրայնացումը գիտատեխնիկական բուռն առաջընթացի պայմաններում՝ դարաշրջանի օբյեկտիվ տենդենցներից մեկն է։ Սակայն արտադրության միջոցների մասնավոր սեփականության պահպանումը, աշխատավորների նկատմամբ մոնոպոլիաների լուծն անհամեմատ ավելի ծանր ու անտանելի է դարձնում։ Այն հանգամանքը, որ արտադրության հասարակական միջոցները մնում են

ոչ մեծ թվով մարդկանց մասնավոր սեփականություն, ուժեղացնում է արտադրության անարխիան և մրցակցային պայքարը։

Կապիտալիստական հասարակությունը վարձու աշխատանքի վրա է խարսխվում։ Մոնոպոլիստական միավորումների ամբողջ գործունեությունը ծառայում է բարձր շահույթներ դուրս քաշելու խնդիրներին։ Տնտեսապես խոշոր և ուժեղ մոնոպոլիաների միջև անհաշտելի պայքար է ծավալվում՝ մրցակցին ջախջախելու և մենաշնորհ դրության հասնելու համար։ Եվ այսպես. փոխանակության և խոշոր արտադրության զարգացման որոշ աստիճանում, «հենց այն աստիճանում, որը ձեռք է բերվել XIX և XX դարերի սահմանագլխին, փոխանակությունն ստեղծեց տնտեսական հարաբերությունների մի այնպիսի ինտերնացիոնալացում և կապիտալի ինտերնացիոնալացում, խոշոր արտադրությունն այնքան խոշորացավ, որ ազատ կոնկուրենցիային սկսեց փոխարինել մոնոպոլիան։ Երկրի ներսում և երկրների միջև եղած հարաբերություններում տիպիկ էին այլև ոչ թե «ազատ» մրցող ձեռնարկությունները, այլ ձեռնարկատերերի մոնոպոլիստական միությունները, տրեստները[1]»։

Միջնորդի համեստ դերից ամենազոր մոնոպոլիաների են վերածվում բանկերը, որոնք ուժեղացնում և արագացնում են կապիտալի համակենտրոնացման և մոնոպոլիաների առաջացման պրոցեսը։ Իրենց ձեռքում կենտրոնացնելով վարկավորման ամբողջ գործը, բանկերը մասնաճյուղեր են ստեղծում արտասահմանում, գործնականում խթանելով իմպերիալիստական էքսպանսիան գաղութային և կիսագաղութային երկրներում։ Բանկերն արդյունաբերության հետ միաձուլվելու հիման վրա առաջանում է ֆինանսական կապիտալը, որը դարձյալ կենտրոնանում է քչերի ձեռքում։ Դա նշանակում է, որ ֆինանսական կապիտալի մագնատները և՛ գիգանտ բանկերի, և՛ խոշոր արդյունաբերական ֆիրմաների սեփականատերերն են։ Ե՛վ բանկերը, և՛ արդյունաբերական օբյեկտները մոնոպոլիստի կամակատարներն են։

---

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 22, էջ 126—127։

Այսպիսով, կապիտալիզմի օրոք էկոնոմիկան տնօրինում են մասնավոր անձինք, որոնք մոնոպոլիաների մի խումբ տերերն են։ Նրանք իրենց շահերին են ենթարկում տնտեսական հզորությունը։ Ֆինանսական կապիտալի տիրապետությունը դրսևորվում է ֆինանսական օլիգարխիայի՝ բիզնեսի արքաների մոնոպոլիստական ոչ մեծ խմբի անսահման իշխանության մեջ։

ԱՄՆ-ում 120 ընտանիքների տարեկան եկամուտը մեկ միլիոն դոլարից անցնում է։ Ֆինանսա-մոնոպոլիստական 8 խմբեր՝ Մորգանի, Ռոկֆելերի, Մելոնի, Դյուպոնի, Չիկագոյի, Կլիվլենդի խմբերը և «ֆերստ նեյշնլ սիտի բենկ» և «բենկ օֆ Ամերիկա» բանկերի գլխավորած խմբերը ղեկավարում են երկրի ամբողջ տնտեսական կյանքը։ Պորտաբույծների այդ խմբի առանձին անդամներ վիթխարի հարստություն են կուտակել։ Բավական է ասել, որ 1956 թվականին Դյուպոնների ընտանիքի անձնական հարստությունը, 1937 թվականի համեմատությամբ, 8 անգամ ավելացավ, հասնելով 4 միլիարդ 660 միլիոն դոլարի։ Ռոկֆելերների ընտանիքը 3,5 միլիարդ դոլարի հասնող անձնական հարստությամբ, 1955 թվականին տնօրինում էր 30 արդյունաբերական, տրանսպորտային, առևտրական, բանկային և ապահովագրական ընկերության 61,4 միլիարդ դոլարի ակտիվը[1]։ Ժամանակակից Անգլիայում երկրի հարստության 35 տոկոսը կենտրոնացած է բնակչության մեկ տոկոսը կազմող խոշոր սեփականատերերի ձեռքում[2]։

Ֆինանսական կապիտալը գերիշխում է երկրի ներսում և թափանցում է արտաքին ոլորտները։ Տասնյակներեն մի քանի հարյուր միլիոնատերեր իրենց ձեռքում են պահում ամբողջ կապիտալիստական աշխարհի բախտը։

---

[1] Տե՛ս **М. Драгилев, Г. Руденко.** Монополистический капитализм, М., 1961, էջ 99—100 և **Е. Варга.** Капитализм двадцатого века, М., 1961, էջ 58։

[2] Տե՛ս Мир капитализма (справочник), էջ 159։

* * *

Իմպերիալիզմի բնորոշ առանձնահատկություններից մեկը աշխարհի տարբեր մասերում զանազան կապերի և կախվածության խիտ ցանցի ստեղծումն է։ Ֆինանսական կապիտալը, որպես կապիտալիստական աշխարհի տնտեսական ու միջազգային հարաբերություններում գործող վճռական ուժ, անզուսպ կերպով ներխուժում է նոր «տնտեսական տերիտորիաներ»։

Իմպերիալիզմին տիպիկ է կապիտալի արտահանումը։ Իհարկե, դա ապրանքների արտահանման կրճատում չի նշանակում։ Ինչպես Վ. Ի. Լենինն էր գրում, կապիտալի արտահանումը դառնում է ապրանքների արտահանումը խրախուսելու միջոց։ Այսպես, 1900-ից մինչև 1958 թվականն ընկած ժամանակամիջոցում ապրանքների արտահանման ֆիզիկական ծավալը կապիտալիստական աշխարհում ավելացավ ավելի քան երեք անգամ։ Բանն այն է, որ տնտեսապես ուժեղ իմպերիալիստական տերությունների ֆինանսական օլիգարխիան կենսականորեն շահագրգռված է կապիտալներն այնտեղ ներդնել, որտեղից կարելի է բարձր շահույթներ քամել։

Թույլ զարգացած երկրների առկայության պայմաններում այդպիսի հնարավորությունները մեծանում և արտահանողների ախորժակներն աճում են։ Վ. Ի. Լենինը գրում էր, որ կապիտալի արտահանման հնարավորություններն ստեղծվում են այն կապակցությամբ, որ մի շարք ետ մնացած երկրներ ներքաշված են համաշխարհային կապիտալիզմի շրջանառության մեջ, այն ժամանակ, երբ իմպերիալիզմի հիմնական երկրներում շահագործման շնորհիվ, «կապիտալի հսկայական ավելցուկ է» գոյանում։ Հենց արտադրության հասարակական բնույթի և յուրացման մասնավոր կապիտալիստական եղանակի միջև հարաճուն հակասության կոնկրետ դրսևորումներից է կապիտալների ու ապրանքների այսպես կոչված «ավելցուկը», այն ժամանակ, երբ միլիոնավոր մարդիկ կիսաքաղց կյանք են վարում։ Մոնոպոլիստական բուրժուազիան կապիտալներ է արտահանում թույլ զարգացած երկրներ, որովհետև այնտեղ էժան բանվորական ձեռքեր շատ կան, հո-

դի գինը, ինչպես նաև աշխատավարձը ցածր են, հումքը համեմատաբար էժան է։ Դեռևս մեր դարագլխին գաղութներում կապիտալ ներդրումներից մոնոպոլիաների շահույթները 2—3 անգամ գերազանցում էին մետրոպոլիաներում ստացվող շահույթների մեծությանը։ 1955 թվականին «Արամկո» ամերիկյան նավթային ընկերության շահույթները 530 միլիոն դոլար կազմեցին։ Եթե նկատի ունենանք այն հանգամանքը, որ Սաուդյան Արաբիայում նավթային մոնոպոլիաների ընդհանուր կապիտալ ներդրումները 500 միլիոն դոլար են կազմում, ապա շահույթի նորման 100 տոկոսից անցնում է։ Ամերիկյան մամուլը «Արամկո» ընկերությունն անվանում է ժամանակակից հեքիաթային առևտրական ձեռնարկություն։

Բնորոշ է, որ իմպերիալիստական մոնոպոլիաների ուշադրությունն ավելի շատ թույլ զարգացած երկրների վրա է դամված, որոնք եկամտաբեր աղբյուրներ են։ Այսպես, 1953 թվականին ամերիկյան կապիտալ ներդրումների շահույթի նորման կազմեց Կանադայում՝ 8,4, Լատինական Ամերիկայում՝ 12,4, Արևմտյան Եվրոպայում՝ 13,6 և արևմտաեվրոպական այն ժամանակվա գաղութներում՝ 28,5 տոկոս[1]։

Թույլ զարգացած գաղութային երկրներում բանվորական ուժի էժանության մասին է խոսում այն փաստը, որ անենք «Արամկոյի» նավթահանքերում աշխատող միևնույն մասնագիտության արաբ բանվորը 15 անգամ պակաս աշխատավարձ էր ստանում, քան ԱՄՆ-ի նավթահանքերում աշխատող բանվորը։ Ավելացնենք, որ միայն 1957 թվականին ԱՄՆ-ի մոնոպոլիաները երկրի ներսում աշխատավորների շահագործման հաշվին 20,6 միլիարդ դոլար մաքուր շահույթ ստացան։

Այսպիսով, ֆինանսական կապիտալը տարբեր կողմերով տարածելով իր ցանցը, վարձու ստրկության մի սիստեմ է ստեղծում, բացահայտորեն շահագործելով օտար երկրների և իր երկրի միլիոնավոր մասսաների աշխատանքը։

Կապիտալի արտահանման հողի վրա, դրա ոլորտի մեջ ներքաշված ուժերի միջև օբյեկտիվորեն որոշակի սոցիալական հարաբերություններ են գոյանում։ Բնորոշ է, որ ոչ

[1] *Տե՛ս* **Дж. Озер**, Должны ли люди голодать, էջ 277։

միայն գաղութներն ու թույլ զարգացած երկրները, այլև հենց իրենք՝ կապիտալիստական երկրներն են կապիտալ ներդրումների օբյեկտներ դառնում։ Աճող եկամուտներ դուրս կորզելու տենդենցը խորտակում է բոլոր արգելքները։ Այսպես, 1955 թվականին ամերիկյան մոնոպոլիստական միությունները ԱՄՆ-ում ներդրած իրենց կապիտալների համար ստացան միջին հաշվով 10, իսկ Անգլիայում ներդրածի համար՝ 19,5 տոկոս շահույթ[1]։

Գաղութային երկրների ժողովուրդների անողոք շահագործումը, կապիտալներ արտահանելը և այդ երկրների ընդերքը գիշատիչորեն օգտագործելը խցանում են ազգային էկոնոմիկայի զարգացումը, այդ երկրները զրկում տնտեսական ինքնուրույնության ու քաղաքական անկախության հնարավորությունից։ Մյուս կողմից՝ մոնոպոլիստական բուրժուազիայի այդ քաղաքականությունը հակաիմպերիալիստական տրամադրություններ ու պոռթկումներ է ծնում տեղացիների շրջանում։ Ծայր է առնում ազգային-ազատագրական պայքարը՝ օտարերկրյա շահագործողների դեմ։ Իմպերիալիզմն ինքն է ծնում սոցիալական այն հողը, որի վրա բռնկվում են հակաիմպերիալիստական ազգային-ազատագրական պատերազմները։

Կապիտալի և ապրանքների արտահանումը, որպես շահութաբեր կուրս, իրականացնում են բոլոր իմպերիալիստական տերությունները։ Որսի մեծ ու համեղ պատառը ձեռք բերելու ձգտումն առաջացնում է ուրիշ մոնոպոլիաների շահերի անտեսում, բացառելով նրանց միջև համաձայնության հնարավորությունը՝ կոնկրետ ոլորտներ բաժանելու հարցում։ Մինչդեռ բոլոր մոնոպոլիաները շահութաբեր տեղ են փնտրում։ Այստեղից էլ բխում է օտար հողերում նրանց իսկական տերերի աշխատանքը յուրացնելու հաշվին մոնոպոլիստական ընկերությունների հարստանալու ընդհանուր տենչը, որը շահերի սուր ընդհարում և կատաղի պայքար է ծնում՝ մենաշնորհային լավագույն ու շահութաբեր դիրքերի համար։

[1] Տե՛ս М. Драгилев, Г. Руденко, Монополистический капитализм, էջ 143—144:

Կապիտալի ներդրման ոլորտներ ձեռք բերելու անզուսպ ձգտումը միահյուսվում է վաճառահանման շուկաներ նվաճելու նկրտումների հետ։ Հարստանալու անհագ ծարավը խըթանում է կապիտալիստական արտադրությունը, ուժեղացնելով նրա ընդարձակման տենդենցը։

Որպես օրենք, ներքին շուկայում իշխում են մոնոպոլիստական միությունները։ Սակայն այդ շուկան նեղ է, սահմանափակ։ Արտադրությունն ընդլայնելու ձգտումը բախվում է ներքին շուկայի տարողունակության սահմանափակության հետ։ Մոնոպոլիաները կանգնում են ներքին շուկայի շըրջանակներից դուրս գալու և արտաքին շուկաներ տրոնելու անհրաժեշտության առջև։ Դրանց պակասությունը շատ սուր է զգացվում. «Շուկաների ընդլայնումը չի կարող հասնել արտադրության ընդլայնման հետևից։ Ընդհարումը անխուսափելի է դառնում, և քանի որ այն ի վիճակի չէ մինչև այնքան ժամանակ լուծելու կոնֆլիկտը, քանի դեռ չի պայթեցրել կապիտալիստական արտադրաեղանակը, ապա ընդհարումը պարբերական է դառնում»[1]։

Իմպերիալիզմի համար արտաքին շուկաների պրոբլեմը հիմնական ու կենսական խնդիր է։ Ներքին շուկան անխզելիորեն կապված է արտաքինի հետ։ Կապիտալիզմը համաշխարհային շուկա է ստեղծել։ Իմպերիալիստական մոնոպոլիաները, բարձր շահույթներ ստանալու նպատակով, կապիտալներ արտահանելու համար աշխարհի ամենատարբեր շրջաններն են ներխուժում։ Բռնելով մեկը մյուսի կոկորդից, նրանք նետվում են կատաղի ու անզիջում մրցակցային պայքարի։ Բանը հասնում է նրան, որ իրար դեմ պայքարում են ոչ միայն տարբեր երկրների, այլև միևնույն երկրի մոնոպոլիստական ընկերությունները։

Կապիտալիստական շուկայում դրությունն առանձնապես բարդանում է կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի ժամանակաշրջաններում, որ բնութագրվում են կապիտալիզմի սիստեմից ժամանակ առ ժամանակ նորանոր երկրներ անջատվելով և գաղութային սիստեմի փլուզումով։ Դրա հետևանքով

---

[1] К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 20, стр. 287.

կապիտալիստական շուկայի շրջանակները և շահագործման ոլորտները զգալիորեն կրճատվում են, մոնոպոլիաների միջև մրցակցային պայքարն ավելի սուր ձևեր է ընդունում, ներքին շուկայում աճում է մոնոպոլիաների ակտիվությունը, որ կոչված է փոխհատուցելու դժվարությունները արտաքին շուկաներում։ Մոնոպոլիաներին օգնության են հասնում իմպերիալիստական պետությունները, որոնք հատուկ միջոցներ են գործադրում ներքին շուկայում մանր ու միջին ձեռնարկությունների և արտաքին շուկաներում օտարերկրյա մոնոպոլիստական միությունների դեմ ծավալված պայքարում ազգային խոշոր մոնոպոլիստական ընկերությունների հաջողությունն ապահովելու ուղղությամբ։ Հետևանքը լինում է այն, որ մրցակցային գզվռտոցը վերաճում է իմպերիալիստական տերությունների միջև համաշխարհային տիրապետության համար մղվող պայքարի։ Պետությունը ոչ միայն իմպերիալիստական մոնոպոլիաների միջև զարգացող մրցակցային պայքարի գործիք է դառնում, այլև դրա օբյեկտներից մեկը։ Իմպերիալիստական պետությունը միագումար մոնոպոլիստ է, որի ամբողջ գործունեությունը ծառայում է գերհզոր մոնոպոլիաների շահերին։ «Մրցակցությունը ժամանակակից քաղաքացիական հասարակության մեջ իշխող բոլորի դեմ, բոլորի պատերազմի ամենից ավելի լրիվ արտահայտությունն է»[1]։

Խոշոր արդյունաբերական բուրժուազիայի սուբյեկտիվ գործունեության ուղղությունն այն օբյեկտիվ օրենքների գործողության ոլորտի առավելագույն սահմանափակումն է, որոնք տնտեսական ճգնաժամեր, միջիմպերիալիստական ընդհարումներ են առաջացնում, զգալի հարված հասցնելով կապիտալիստների դասակարգային շահերին։

Այդպիսի տենդենցի դրսևորումներից մեկը համաշխարհային շուկաները բաժանող միջազգային մոնոպոլիստական միավորումների ստեղծումն է։ «Դա կապիտալի և արտադրության համաշխարհային համակենտրոնացման նոր աստիճանն է, անհամեմատ ավելի բարձր, քան նախընթացները[2]»։

---

[1] К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 2, стр. 311.
[2] Վ. Ի. Լենին, *Երկեր, հատ. 22, էջ 325*։

Դեռևս մեր դարասկզբին՝ 1908-ից 1912 թվականներն ընկած ժամանակաշրջանում, էլեկտրական արդյունաբերության բոլոր խմբերը միաձուլվեցին «էլեկտրականության համընդհանուր ընկերության» մեջ։ Աշխարհի բոլոր մասերում լայն կապեր, հետախուզություն, ներկայացուցչություն, բաժանմունքներ ունեցող համաշխարհային միասնական տրեստ գոյացավ։ Արդեն 1931 թվականին արտաքին շուկաները բաժանած նմանօրինակ գերմոնոպոլիաների թիվը հասավ 320-ի։ 1929—1933 թթ. համաշխարհային տնտեսական ճգնաժամը կապիտալի աշխարհում ուժեղացրեց շուկաների բաժանման վերաբերյալ համաձայնագրեր ստորագրելու տենդենցը։ Ազգային շրջանակներից մոնոպոլիաների դուրս գալու և կապիտալիստների միությունների միջև աշխարհը բաժանելու պրոցես էր կատարվում։

Սակայն նշանակո՞ւմ է արդյոք, թե գերհզոր մոնոպոլիստական միավորումների կողմից աշխարհի բաժանումը վերացնում կամ թուլացնում է մրցակցային պայքարի և իմպերիալիստական բախումների գրգռիչները։ Ինչպես հայտնի է, Կ. Կաուցկին գտնում էր, թե միջազգային կարտելները, որպես կապիտալի համազգայնացման ամենից ավելի ցայտուն արտահայտություն, խաղաղության հասնելու հնարավորություն են ստեղծում։ Վ. Ի. Լենինը այս կարծիքը որակեց որպես տեսականորեն անհեթեթ և գործնականում սոփեստական դրույթ, պնդելով, որ միջազգային կարտելների ստեղծումը ցույց է տալիս, թե կապիտալիստական մոնոպոլիաներն ինչքան են աճել և ինչի համար է պայքար ծավալվում դրանց միջև։ Այսպես, դեռևս 1904 թվականին Գերմանիայում ստեղծված «Շահերի ընդհանրություն» քիմիական կարտելի բոլոր ֆիրմաները 1925 թվականին միաձուլվեցին միջազգային քիմիական խոշոր կոնցեռնի՝ «Ի. Գ. Ֆարբենինդուստրի» բաժնետիրական ընկերության մեջ, որը ուներ 117 գործարան Գերմանիայում և 200 ձեռնարկություն արտասահմանում։ 1926 թվականին քիմիական նյութեր արտադրող 4 մեծ ընկերությունների միավորման հիման վրա կազմակերպվեց անգլիական «Իմպիրիել քեմիկլ ինդաստրիզ» հզոր քիմիական կոնցեռնը, որն արտասահմանում բազմաթիվ մասնա-

ճյուղեր ունի։ Այս երկու քիմիական «տերությունների» միջև պայքար էր գնում միջազգային ասպարեզում գերիշխող դիրքեր նվաճելու համար։ Արտաքուստ թվում է, թե կապիտալի մագնատների կողմից արտաքին շուկաների և հումքի աղբյուրների «սիրալիր» բաժանման մասին համաձայնությունները կարող են հասցնել կապիտալիստական անարխիայի վերացմանը, աշխարհի վերջնական բաժանմանը, և այսպիսով, մրցակցային պայքարից բխող հասարակական հետևանքների անհետացմանը։ Վ. Ի. Լենինը ցույց տվեց, որ այդպիսի հրնարավորությունն, արտադրության միջոցների մասնավոր կապիտալիստական սեփականության բազայի վրա, վերացական, ձևական բնույթ է կրում։

Հայտնի է, որ կապիտալիզմն անհամաչափորեն է զարգանում, որի հետևանքով պարբերաբար փոխվում է ուժերի հարաբերակցությունը կապիտալիստական սիստեմի ներսում։ Դա իր դրսևորումն է գտնում նրանում, որ մոնոպոլիստների այս կամ այն միության անդամները համապատասխան տեղ են գրավում կարտելում կամ կոնցեռնում։ Ամեն ինչ որոշում է դիրքերի ամուր կամ թույլ լինելը։ Իսկ հենց որ ուժերի հարաբերակցությունը փոխվում է, իրավիճակը բարդանում է. ոմանց դիրքերը խախտվում են, մյուսներինը՝ ամրապնդվում, նոր մրցակիցներ են երևան գալիս։ «Կապիտալիստներն աշխարհը բաժանում են ոչ թե իրենց հատուկ չարության հետևանքով, այլ նրա համար, որ համակենտրոնացման այն աստիճանը, որին հասել են, հարկադրում է նրանց շահույթ ստանալու համար ոտք դնել այս ուղին. ընդսմին նրանք աշխարհը բաժանում են «ըստ կապիտալի», «ըստ ուժի»,— ապրանքային արտադրության և կապիտալիզմի սիստեմում բաժանման այլ եղանակ չի կարող լինել»[1]։

Գիտության ու տեխնիկայի զարգացումը, արտադրողական ուժերի բուռն աճը՝ կյանքի են կոչում արտադրության նոր ճյուղեր, հասցնելով նոր հատուկ շուկաների առաջացմանը։ Հանդես են գալիս նոր մոնոպոլիաներ, որոնք այդ շուկաները բաժանում են իրար միջև։ Ֆինանսական վերնախավը,

---

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 22, էջ 335։

աշխարհը բաժանելու նպատակով, դիմում է գործարքների ամենատարբեր ձևերի։ Մոնոպոլիստների «ընտանիքում» ընդհանուր շահերի նկատմամբ ցուցաբերվող այդ ընդհանուր «հոգատարությունը» բացատրվում է շահույթներն առանց բարդությունների բաշխելու ձգտմամբ։ Սակայն հենց որ որևէ կողմի տնտեսական դիրքերն ամրապնդվում են և ընկրսում գերակշռել մյուսների նկատմամբ, նա աստիճանաբար յուրացնում է եկամուտների մեծ բաժինը։ Այդ ժամանակ «ընտանիքը» քայքայվում է և նորից օրակարգի հարց է դառնում բաժանված շուկաների վերաբաժանումը։ Որոշ հզոր մոնոպոլիաներ այս կամ այն կարտելում մասնակից լինելու մեջ շահագրգռված չեն։ Այդ երևույթը հատկապես դրսևորվում է երկրորդ համաշխարհային պատերազմից հետո. առանձին ամերիկյան մոնոպոլիաներ (ավտոմոբիլային, ալյումինի համաշխարհային շուկայում) ազատ կերպով մանևրում են։

Ուժերի այդպիսի գերակշռությունը մշտական երևույթ չէ։ Մյուս կապիտալիստական տերությունների մոնոպոլիստական ընկերությունների մրցունակության ուժեղացումը նորանոր խոչընդոտներ է առաջացնում ամերիկյան մոնոպոլիաների ճանապարհին, որոնց համար կարտելային համաձայնությունները պայքարի անընդունելի ձև են դառնում։

Այսպես, թե այնպես, իմպերիալիստների բոլոր գործարքները կատարվում են ժողովուրդների թիկունքում և ուղղված են աշխատավորների շահագործման հաշվին մենաշնորհային բարձր շահույթների ապահովմանը։

Իմպերիալիզմն ինքնաբացասման պրոցես է ապրում։ Նրա դեմ ուղղված ժողովուրդների հեղափոխական պայքարը հասցնում է իմպերիալիզմի շահագործման ոլորտների կրճատմանը։ Դրա հետևանքով շուկաների բաժանման մասին իմպերիալիստների միջև կնքված շատ համաձայնագրեր անիրական ու առարկայազուրկ փաստաթղթերի են վերածվում։ Մոնոպոլիաների միջև մղվող մրցակցային պայքարը շահագործման ոլորտների կրճատված պայմաններում նոր ուժով է բորբոքվում։ Կապիտալիստական պետությունն ակտիվորեն մասնակցում է այդ պայքարին, մշակելով ու իրականացնելով

մի շարք մեթոդներ՝ ազգային մոնոպոլիաների շահերը պաշտպանելու համար։ Այսպիսով, միջմոնոպոլային պայքարում իմպերիալիստական պետությունների գործուն միջամտությունն իմպերալիզմի բնորոշ գծերից մեկն է։ Այն սրում է իմպերիալիստների միջև միջպետական պայքարը համաշխարհային շուկայում։

Բարձր շահույթներ դուրս կորզելն ամեն մի մոնոպոլիստական միավորման գլխավոր նպատակն է։ Նրանց շուկաներ են պետք, ինչպես օդն ու ջուրը։ Հենց այս շուկաների համար է տարբեր մոնոպոլիաների միջև գզվռտոց սկսվում, որը զանազան ձևեր է ընդունում. «կռվի ձևը կարող է փոխվել և շարունակ փոխվում է, նայած համեմատաբար մասնավոր ու ժամանակավոր տարբեր պատճառների, սակայն կռվի էությունը, նրա դասակարգային բովանդակությունը ուղղակի չի կարող փոխվել... կապիտալիստների միությունների միջև տեղի ունեցող կռվի և գործարքների բովանդակության հարցը նենգափոխել կռվի և գործարքների ձևի հարցով (մի ձև, որ այսօր խաղաղ բնույթ ունի, վաղը՝ ոչ խաղաղ, մյուս օրը՝ էլի ոչ խաղաղ) այս նշանակում է իջնել մինչև սոփեստի դերը»[1]։

Եվ այսպես, համաշխարհային համակենտրոնացված կապիտալի հիման վրա ծագող հարաբերությունների բազմազան ձևերից անկախ, դրանց բովանդակությունը մնում է պայքարը համաշխարհային տիրապետության համար, որը կոնկրետ պատմական պայմաններում զինված կոնֆլիկտների բնույթ է կրում։

Այսպես կոչված «տնտեսական տերիտորիաներ» նվաճելու համար մոնոպոլիաները օգտագործում են կապիտալիստական պետությունների ամբողջ ռազմական մեքենան, որի ստեղծման մեջ, ի դեպ, ակտիվ մասնակցություն են ունենում։

Հայտնի է, որ անցյալ դարի վերջերին և մեր դարասկզբին խոշոր կապիտալիստական տերությունները աշխարհը բաժանեցին իրար միջև։ Իմպերիալիզմի գաղութային քաղաքականության հետևանքով ավարտվեց չգրավված հողերի զավթու-

---

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 22, էջ 335—336։

մը։ Արդեն 1914 թվականին վեց խոշոր կապիտալիստական տերությունների գաղութային տիրապետությունները կազմում էին 81,5 միլիոն ք.կմ.՝ 960,6 միլիոն բնակչությամբ։ Նկատենք, որ երկրագնդի ամբողջ տերիտորիան 133,9 միլիոն ք.կմ. է, որտեղ 1914 թվականին 1677 միլիոն բնակիչ էր ապրում։

Գաղութներն իմպերիալիստական մոնոպոլիաների համար գործունեության լայն ասպարեզ են բացում, ընդլայնելով այն ուղիները, որոնց միջոցով ոսկին կապիտալի մագնատների գրպաններն է լցվում։ Նախ՝ պետք է ասել, որ գաղութներն իրացման շուկաներ են, ապա՝ այսպես կոչված կապիտալի «ավելցուկների» ներդրման ոլորտներ և, վերջապես՝ հումքի առատ աղբյուրներ։ Համաշխարհային կապիտալիստական արտադրության հիմնական մասը կենտրոնացված է մի քանի խոշոր իմպերիալիստական տերություններում։ Սակայն հումքի հարուստ աղբյուրները նրանց սահմաններից դուրս են գտնվում։ Ուստի այդ երկրների մոնոպոլիստական ընկերություններն անզուսպ կերպով թույլ զարգացած երկրներ են խցկվում, քանի որ առանց հումքի աղբյուրներ զավթելու, մոնոպոլիստական կապիտալի վերարտադրության և մենաշնորհային շահույթների ապահովման ամբողջ սիստեմը վտանգի տակ կգտնվեր։ «Միայն գաղութին տիրելը տալիս է մոնոպոլիայի հաջողության լիակատար երաշխիք հակառակորդի դեմ մղվող պայքարի բոլոր պատահականությունների հանդեպ... Որքան ավելի է զարգացած կապիտալիզմը, որքան ավելի ուժեղ է զգացվում հումքի պակասությունը, որքան ավելի սուր է հումքի աղբյուրների համար մղվող կոնկուրենցիան ու վազքը նրանց հետևից ամբողջ աշխարհում, այնքան ավելի կատաղի է գաղութներ ձեռք բերելու համար մղվող պայքարը[1]»։

Ֆինանսական կապիտալի գործառնությունների օղակներ են դառնում կիսանկախ երկրները։ Առանձին մանր պետություններ խոշոր կապիտալիստական տերությունների էկոնոմիկայի կցորդի են վերածվում։ Այդպիսի հարաբերություն-

---

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 22, էջ 345—346։

ները «դառնում են ընդհանրական սիստեմ, իբրև մասնիկ՝ մտնում են «աշխարհը բաժանելու» հարաբերությունների գումարի մեջ...»[1]։

Դեռևս XX դարի սկզբին իմպերիալիզմը աշխարհի մեծ մասում հրով ու սրով հաստատեց իր դաժան ռեժիմը՝ ստեղծելով գաղութային ստրկության հսկայական բուրգ։ Մոնոպոլիստական բուրժուազիայի ջատագովները բացահայտորեն ընդգծում էին գաղութային տիրապետությունների նշանակությունն իմպերիալիզմի համար։ Սեսիլ Ռոդսը գրում էր, որ աշխարհը համարյա ամբողջովին բաժանված է, իսկ այն, ինչ որ նրանից մնացել է, նվաճվում, գաղութացվում է։ Նա ցավում էր, որ հնարավոր չէ հասնել աստղերին, հակառակ դեպքում դրանք էլ կարելի էր անեքսիայի ենթարկել։ Այս խոսքերի մեջ մարմնավորվում է իմպերիալիզմի հակամարդկային բնույթը։

Կապիտալիստական տերությունների ամբողջ քաղաքական գործունեությունն անմիջապես կապված է իմպերիալիզմի սիստեմի տնտեսական կառուցվածքի հետ։ Վ. Ի. Լենինը բացահայտեց Կաուցկու այն տեսակետի հակագիտական, արատավոր բնույթը, որի համաձայն իմպերիալիզմը ֆինանսական կապիտալի կողմից «գերադասվող» քաղաքականություն է, այլ ոչ թե կապիտալիզմի զարգացման փուլ։ Կաուցկին, ըստ էության կապիտալիստական պետությունների քաղաքականությունն անջատում էր իմպերիալիզմի էկոնոմիկայից։ «Բանից դուրս է գալիս, որ մոնոպոլիաներն էկոնոմիկայում համատեղելի են քաղաքականության ասպարեզում կատարվող գործողությունների ոչ մոնոպոլիստական, ոչ բռնի, ոչ զավթողական եղանակի հետ։ Բանից դուրս է գալիս, որ աշխարհի տերիտորիալ բաժանումը, որն ավարտված է հենց ֆինանսական կապիտալի դարաշրջանում և կազմում է խոշորագույն կապիտալիստական պետությունների միջև տեղի ունեցող մրցման այժմյան ձևերի առանձնահատկության հիմքը, համատեղելի է ոչ-իմպերիալիստական քաղաքականության հետ»[2]։

---

1 Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 22, էջ 351։

2 Նույն տեղում, էջ 359։

Ընդունել, թե իմպերիալիզմը սոսկ արտաքին քաղաքականության սիստեմ է, նշանակում է երևույթները քննարկել սուբյեկտիվիզմի դիրքերից ու մետաֆիզիկորեն։ Իմպերիալիզմի տնտեսական էությունը մոնոպոլիաների տիրապետությունն է, որոնք ձգտում են իրենց մրցակիցներին դուրս մղել ներքին ու արտաքին շուկաներից՝ անընդհատ հսկող շահույթները բազմապատկելու համար։ «...Ե՛վ ներքին, և՛ արտաքին քաղաքականության ամենախորը արմատները որոշվում են տնտեսական շահերով... տիրապետող դասակարգերի տնտեսական դրությամբ։ Այս դրույթները... հանդիսանում են մարքսիստների ամբողջ աշխարհայեցողության հիմքը...»[1]։

Վ. Ի Լենինը բացահայտեց Կաուցկու տեսակետի ռեֆորմիստական և պացիֆիստական էությունը։ Իմպերիալիստական տրեստների և բանկերի քաղաքականության դեմ պայքարով սահմանափակվելը, առանց տնտեսական հիմքերը շոշափելու, Վ. Ի. Լենինը գնահատում էր որպես բարի ու անմեղ ցանկություն, իմպերիալիստական արմատական հակասությունների մթագնում և բթացում։

Իմպերիալիստական տերությունների ագրեսիվ քաղաքականությունը մոնոպոլիստական կապիտալիզմի տնտեսական հիմքերից է բխում։

Կաուցկու տեսակետից սխոլաստիկական դրույթներ են ծնվում։ Նա կապիտալիզմի զարգացման մեջ հնարավոր էր համարում այնպիսի մի փուլ, երբ կիրականացվի «աշխարհի ընդհանուր շահագործումը միջազգայնորեն միավորված ֆինանսական կապիտալի կողմից» և պատերազմները կդադարեն։ Ըստ Կաուցկու, մեկ համաշխարհային մոնոպոլիայի ստեղծումը իմպերիալիզմի զարգացման տենդենցն է, որի հետևանքով հակասությունները կմարեն և վերջ կտրվի պատերազմներին։

Իրականում իրադարձությունները հակառակ ուղղությամբ են զարգանում։ Իմպերիալիզմի պայմաններում իրոք ֆինանսական կապիտալի միավորման տենդենց զգացվում է։ Սակայն վաճառահանման շուկաների, հումքի աղբյուրների և

---

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 27, էջ 446—447։

կապիտալների ներդրման ոլորտների համար մղվող պայքարը բաժանարար ազդակների դրսևորումն է։ Իմպերիալիզմը զարգանում է այդ երկու հակադիր, իրարամերժ տենդենցների բախման պայմաններում։ Հենց իմպերիալիստական տնտեսական միությունների ներսում, ուժերի հարաբերակցության փոփոխության հետևանքով, ընդհարումների սերմեր են հասունանում։

* * *

Մոնոպոլիստական կապիտալիզմի օրոք գերհզոր մոնոպոլիաների միջև ազդեցության ոլորտների համար մղվող միջպետական պայքարի հասարակական հետևանքներն օրգանապես կապված են տնտեսական ու քաղաքական ուժերի անհամաչափ զարգացման օբյեկտիվ օրենքի գործողության հետ։ Այդ օրենքը գործում էր նաև ազատ մրցակցության պայմաններում։ Կապիտալիզմի զարգացման մոնոպոլիստական էտապում դրա գործողության մասշտաբները, բնույթն ու հասարակական հետևանքները որակապես փոխվում են։

Իմպերիալիզմը չվերացրեց արտադրության անարխիան։ Խոշոր մոնոպոլիաների հարստանալու ձգտումը պայմանավորվում է նոր տեխնիկայի բազայի վրա արտադրության աճով։ Բայց այդ աճը մոնոպոլիաների իշխանության պայմաններում, առհասարակ մասնավոր կապիտալիստական հիմքի վրա, հավասարաչափ չի կատարվում։ Անհամաչափ են զարգանում ոչ միայն առանձին ճյուղերը, այլև իմպերիալիզմի սիստեմի մեջ մտնող առանձին երկրները։ Ընդ որում, այդ անհամաչափությունը միայն քանակական ցուցանիշներով չի արտահայտվում, այսինքն՝ չի որոշվում զարգացման տեմպի կամ ուղղության մեջ եղած տարբերությամբ։ Այն դրսևորվում է նաև որակապես նոր գծերով։ Վ. Ի. Լենինը ցույց տվեց, որ իմպերիալիզմի պայմաններում կապիտալիստական տնտեսության մեջ տեղի է ունենում ուժերի արդեն հաստատված հարաբերակցության և անհրաժեշտ կապերի խախտում, այսինքն՝ իր բնույթով անհամաչափ զարգացում։ Ավելին, զարգացումը թռիչքաձև, ընդհատվող բնույթ է կրում, ուղեկց-

վելով տնտեսական, քաղաքական և ռազմական աղետներով։ Վ. Ի. Լենինը գրում էր, որ կար համեմատաբար «խաղաղ» կապիտալիզմի մի դարաշրջան, երբ նա լիովին հաղթահարեց ֆեոդալիզմը Եվրոպայի առաջավոր երկրներում և կարողանում էր զարգանալ առավելապես համեմատաբար հանգիստ ու սահուն, «խաղաղ» կերպով, ծավալվելով չղբաղեցրած հողերի դեռևս հսկայական տարածությունների և վերջնականապես կապիտալիստական հորձանուտի մեջ չներքաշված երկրների վրա։ Այդ դարաշրջանում ևս, որն ընդգրկում է 1871—1914 թվականները, «խաղաղ» կապիտալիզմը ստեղծում էր կյանքի այնպիսի պայմաններ, որոնք շատ ու շատ հեռու էին իսկական «խաղաղությունից», ինչպես ռազմական, այնպես էլ համադասակարգային իմաստով։ Առաջավոր երկրների բնակչության 9/10-ի համար, գաղութների և հետամնաց երկրների հարյուր միլիոնավոր բնակչության համար այդ դարաշրջանը ոչ թե «խաղաղություն» էր, այլ ճնշում, տանջանք, սարսափ, որը թերևս նրանով էր ավելի սարսափելի, որ թվում էր «սարսափ» առանց վախճանի։ «Այդ դարաշրջանն անցավ անվերադարձորեն, նա փոխարինվեց համեմատաբար շատ ավելի թափընթաց, թռիչքաձև, կատաստրոֆիկ, կոնֆլիկտային դարաշրջանով, երբ բնակչության մասսայի համար տիպիկ է դառնում ոչ այնքան «սարսափն առանց վախճանի», որքան «սարսափով վախճանը»[1]։

Վ. Ի. Լենինն այստեղ ընդգծում է անհամաչափության օրենքի գործողության հասարակական հետևանքները։

Ամենից առաջ, իմպերիալիստական զարգացման ուղին համեմատաբար ավելի ուշ ոտք դրած երկրների արտադրության մեջ նորագույն տեխնիկայի ներդրումը զարկ է տալիս բուռն տնտեսական զարգացմանը։ Միաժամանակ, տնտեսական զարգացման տեսակետից ետ մնացած կապիտալիստական երկրներն առաջ են նետվում, հասնելով և անցնելով մյուսներից։ Տնտեսական հզորության ուժեղացման հետ աճում է այդ երկրների քաղաքական դերը։ Տնտեսական վերելքին զուգընթաց, առաջ անցած պետությունների քաղաքա-

---

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 22, էջ 126։

կանության մեջ ուժեղանում են միլիտարիստական տենդենցները։ Այդ քաղաքականությունը էքսպանսիոնիստական ուղղություն է ընդունում։

Այսպիսով, մոնոպոլիաների տիրապետությունը աշխուժացնում և ուժեղացնում է միլիտարիզմի տնտեսական խթանները, իսկ անհամաչափության օրենքի գործողությունը միջիմպերիալիստական հակասություններն իր գագաթնակետին է հասցնում։

Անհամաչափ տնտեսական զարգացումը բարդացնում է դրությունը իմպերիալիստական աշխարհում, հատկապես եթե նկատի առնենք, որ մեր դարասկզբին մի քանի խոշոր կապիտալիստական տերություններ աշխարհը բաժանել էին իրար միջև, և նոր մրցակիցները կապիտալիստական համեմունքների սեղանին մոտեցան այն ժամանակ, երբ բոլոր տեղերն արդեն զբաղված էին։ Օրակարգի հարց է դառնում արդեն բաժանված աշխարհի վերաբաժանումը, որն անհնարին է լուծել առանց զինված միջամտության։ Իմպերիալիստական ոչ մի պետություն իր մրցակցին նվաճված տիրույթներից մի թիզ անգամ չի զիջի, ինչպիսի ընդարձակ տիրույթներ էլ որ ունենա։ Շահույթի տենչը գերակշռում է մյուս բոլոր նըկատառումների հանդեպ։

Ուժերի նոր հարաբերակցության պայմաններում ազդեցության ոլորտների արմատական փոփոխության տենդենց է դրսևորվում։

Ազդեցության ոլորտների հին բաշխման և ուժերի նոր հարաբերակցության միջև առաջացած հակասությամբ է պայմանավորված պայքարն այդ հակասությունը նոր հիմքի վրա լուծելու համար։

Բնորոշ է, որ ավելի ուժեղ իմպերիալիստական տերությունները հարվածն ուղղում են գաղութներ ունեցող այն երկրների դեմ, որոնց դիրքերն զգալիորեն խարխլվում են։

Իմպերիալիստական պատերազմներին սկիզբ դրեց ԱՄՆ-ը։ 1898 թվականի ապրիլին նա Իսպանիային դուրս մղեց Կուբայից, ապա ավելի ուշ՝ Ֆիլիպիններից, Պուերտո-Ռիկոյից և Մարիանյան կղզիների խմբից՝ Գուամ կղզուց։

XX դարի արշալույսին անգլիական իմպերիալիստները բռնությամբ իրենց կայսրությանը միացրին Տրանսվալը և Նարնջագույն հանրապետությունը։

Ազդեցության ոլորտների համար պայքարն առաջացրեց ռուս-ճապոնական պատերազմը։ Չնայած որ նախահարձակ կողմը Ճապոնիան էր, բայց պատերազմը իմպերիալիստական էր։ «Իսպանա-ամերիկյան պատերազմը (1898), անգլո-բուրական (1899—1902), ռուս-ճապոնական (1904—1905) պատերազմները և 1900 թվականի տնտեսական ճգնաժամը Եվրոպայում—ահա՛ համաշխարհային պատմության նոր դարաշրջանի պատմական գլխավոր նշանաձողերը[1]»։

Իմպերիալիզմի ծնած այդ լոկալ ռազմական ընդհարումները պետությունների միջև համաշխարհային պատերազմի նախերգանքն էին։ Իմպերիալիզմի համար տիպիկ են դառնում համաշխարհային պատերազմները։

## 2. Երկու համաշխարհային պատերազմները որպես իմպերիալիստական հակասությունների յուրօրինակ դրսևորում

Իմպերիալիզմը միջպետական հարաբերություններում սուր հակասությունների մի խճճված կծիկ է ստեղծում։ Հիմնականում, իհարկե, պայքարը ծավալվում է իմպերիալիստական աշխարհի խոշոր տերությունների միջև՝ համաշխարհային շուկայում գերիշխող դրության հասնելու համար։ Եվ այդ պայքարում մրցակցող կողմերը ոչ մի միջոցից ու մեթոդից չեն խորշում։ Նրանք մանևրում են, մեկին մյուսի դեմ ուղղում, կոնկրետ հանգամանքներում կա՛մ մեկ, կա՛մ մյուս կողմն են ընտրում։ Նրանք սկզբում կարող են շահագրգռվածություն ցուցաբերել լոկալ պատերազմում մասնակցող կողմերից մեկի ջախջախման մեջ, ապա զգուշանալ հաղթողից և նրա դեմ շրջվել։

Ամբողջովին վերցրած, մասնավոր սեփականատիրական շահերը քաղաքականության մեջ այնպիսի սուբյեկտիվիզմ

---

1 Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 23, էջ 131։

են ծնում, որ այդ քաղաքականության վերջնական արդյունքները հակասում են նախնական դիտավորություններին։ Այսպես, օրինակ, ռուս-ճապոնական պատերազմում անմիջապես արտացոլվեց և՛ պատերազմող և՛ այդ պայքարի մեջ անմիջապես չմասնակցող ուժերի շահերի խաչաձևումը։ Անգլիան դարձավ Ճապոնիայի դաշնակիցը, նպատակադրվելով խարխլել ցարական Ռուսաստանի դիրքերը և ուժեղացնել իր ազդեցությունը Եվրոպայում՝ նոր մրցակից Գերմանիայի դեմ մղվող պայքարում։ ԱՄՆ-ի կառավարող շրջանները հույս ունեին Ճապոնիայի միջոցով թուլացնել Ռուսաստանի դիրքերը Հեռավոր Արևելքում և ուժեղացնել իրենցը Չինաստանում ու Կորեայում։ ԱՄՆ-ի պրեզիդենտ Թեոդոր Ռուզվելտը Ճապոնիան անվանում էր «լավ պահապան շուն» Հեռավոր Արևելքում։ Հեռու գնացող պլաններ էր փայփայում երիտասարդ գիշատիչը՝ Գերմանիան, որը ինչպես Ռուսաստանին, այնպես էլ Ճապոնիային մեկը մյուսի դեմ պատերազմի էր դրդում՝ Ֆրանսիայի և Ռուսաստանի դաշինքը թուլացնելու ու քայքայելու և Մերձավոր Արևելք թափանցելու համար։ Այս տեսակետից յուրահատուկ իրադրություն ստեղծվեց։ Մեկ լոկալ իմպերիալիստական պատերազմում կապիտալիստական տերությունները ձգտում էին իրագործել իրենց թալանչիական ծրագրերի մի մասը։ Բայց հենց որ Ճապոնիան շահող դիրքի հասավ Ռուսաստանի նկատմամբ, պատերազմի ընթացքին ուշադիր հետևող իմպերիալիստների որջում արժեքները վերագնահատելու տենդենց դրսևորվեց։ Անգլիան ու ԱՄՆ-ը շահագրգռվածություն ցուցաբերեցին պատերազմի դադարեցման մեջ։ Գլուխ բարձրացրած գերմանական իմպերիալիզմն այնքան էր անհանգստացնում Անգլիային, որ վերջինս հարկադրված էր նրա դեմ ուժեր կենտրոնացնել Եվրոպայում։

Հայտնի է, որ հետագա իրադարձությունները հասցրին Անտանտայի ստեղծմանը և կապիտալիստական աշխարհի պառակտմանը երկու թշնամական խմբավորման։

Այսպիսով, միջիմպերիալիստական հակասությունների մեջ են ծնվում լոկալ կոնֆլիկտների և համաշխարհային պատերազմների սերմերը։ Վերջիններն այդ հակասությունների կուլմինացիոն կետն են։ «Հակասությունները, կոն-

*ֆլիկտները, պայքարը, կատաղի գոտեմարտը, որը պատերազմի է վերածվում իմպերիալիստական տերությունների միջև, որոնք հնարավորություն չունեն իրենց քաղաքականությամբ կանգնեցնելու այդ պատերազմը, մի ամբողջ շարք տասնամյակների ընթացքում կապիտալիզմի զարգացման տնտեսական պայմանների բերումով հասցրել են այն բանին, որ իրենք՝ իմպերիալիստներն արդեն անզոր են կանգնեցնելու այդ պատերազմը*[1]»։

*Առաջին համաշխարհային պատերազմն սկսվեց այն ժամանակ, երբ աշխարհն արդեն բաժանված էր գլխավոր կապիտալիստական երկրների կողմից և մարդկության կեսը գաղութային ռեժիմի պայմաններում էր ապրում։ Գաղութները կռվախնձոր դարձան իմպերիալիստական տերությունների համար։*

*Վ. Ի. Լենինն ասում էր, որ իմպերիալիզմի օրոք խախտված հավասարակշռության վերականգնման միակ միջոցը բռնությունն է, պատերազմը։*

*Իմպերիալիզմի պայմաններում, առհասարակ, հավասարակշռությունն հարաբերական է, որ անհամաչափության օրենքի գործողության հետ է կապված։ Միջմոնոպոլային մրցակցային պայքարով է համակված տնտեսական ամբողջ կյանքը, որն իր արտահայտությունն է գտնում միջպետական բախումներում։ Ազդեցության ոլորտների համար մղվող կատաղի պայքարի իրավիճակն անհամաչափության օրենքի գործողության ադեկվատ արտացոլումն է։ Հենց այդպիսի իրադրության մեջ է կատարվում համաշխարհային կապիտալիստական տնտեսության զարգացումը, որի օրինաչափությունները քաղաքական բոլոր իրադարձությունների պայմանակն են։ Այդպիսի պայմաններում ամեն մի հավասարակշռություն դառնում է հարաբերական, պայմանական, իսկ պայքարը՝ բացարձակ, մշտական։*

*Արտադրության միջոցների մասնավոր կապիտալիստական սեփականությունը սահմանափակելով կատարելագործվող ու առաջադիմող արտադրողական ուժերի վերելքը, միա-*

---

[1] Վ. Ի. Լենին, *Երկեր, հատ. 27, էջ 447—448։*

ժամանակ կործանարար խթաններ է ծնում, քանի որ նոր արտադրողական ուժերը հակասության մեջ են մտնում դրանց օգտագործման մասնավոր սեփականատիրական ձևի հետ և «այդ հակասության մեջ... սաղմում արդեն ամփոփված են արդիականության բոլոր բախումները»[1]:

Այդ հակասության կործանարար գործողության դրսևորումն են պարբերաբար կրկնվող տնտեսական ճգնաժամերը, որոնք իմպերիալիստական փուլում ավելի խոր ու էական հասարակական հետևանքներ են առաջացնում: 1929—1933 թթ. տնտեսական ճգնաժամը ԱՄՆ-ին 300 միլիոն դոլար նստեց: Կապիտալիստական աշխարհի ամբողջ արտադրանքը 44 տոկոսով իջավ:

Երկու համաշխարհային պատերազմներն ակնառու կերպով ցուցադրեցին անհամաչափության օրենքի գործողության սոցիալական հետևանքները: Իհարկե, այդ օրենքը չի կարելի համաշխարհային պատերազմների հիմնական պատճառը համարել: Իմպերիալիզմը սոցիալ-տնտեսական հարաբերությունների մի ամբողջական սիստեմ է, որի հակասություններից են ծնվում միջազգային ու դասակարգային բախումները: Անհամաչափության օրենքը կապիտալիստական էկոնոմիկայի նյութական կապերի դրսևորումներից մեկն է, որ զարգացման պրոցեսում որոշում է ուժերի դասավորությունը իմպերիալիզմի աշխարհում, կարծես թե լուսարկելով դրանց հարաբերակցությունը: Միաժամանակ, այդ օրենքի գործողությունն ուժեղացնում է միջմոնոպոլային հակամարտությունը, կենտրոնախույս տենդենցներն աստիճանաբար հասցնելով թշնամի, իրար բացառող բևեռների գոյացմանը: «Իսկ երբ ուժի փոխհարաբերությունները փոխվել են, ապա կապիտալիզմի ժամանակ ի՞նչը կարող է լուծել հակասությունը, եթե ոչ ուժը... հարց է ծագում, թե կապիտալիզմի հողի վրա ուրիշ ի՞նչպիսի միջոց կարող էր լինել, բացի պատերազմից, վերացնելու համար այն անհամապատասխանությունը, որ գոյություն ուներ մի կողմից՝ արտադրողական ուժերի զարգացման ու կապիտալի կուտակման և մյուս կողմից՝ ֆինան-

[1] К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 20, стр. 282.

*տական կապիտալի համար գաղութներն ու «ազդեցության ոլորտները բաժանելու միջև»*[1]։

*Վ. Ի. Լենինը գրում էր, որ իմպերիալիզմը գաղութների նկատմամբ մենոպոլ տնօրինություն հաստատելու դարաշրջան է։ Պայքարը իմպերիալիստական տերությունների միջև, ուժերի հարաբերակցության փոփոխման պայմաններում, պայքար է գաղութների ու դրանց վերաբաժանման համար։ Իմպերիալիստական գիշատիչների համար գաղութները և՛ կովախնձոր են և՛ էքսպանսիայի օբյեկտ։ Գոտեմարտը կոալիցիոն բնույթ է կրում, և թշնամի խմբավորումները ոչ թե դիպվածորեն, այլ օրինաչափորեն են կազմավորվում։ Այդ բլոկների առաջացումը և դրանց մեջ կոնկրետ պետությունների մասնակցությունը տարբեր շարժառիթներով ու տենդենցներով են պայմանավորված։ Եվ այս հարցում էլ գերակշռում են տընտեսական ասպեկտները։ Իհարկե, քաղաքական շահերը նույնպես գործոն են։ Այս տեսակետից բնորոշ է երկու համաշխարհային պատերազմների պատմությունը։*

* * *

*Առաջին համաշխարհային պատերազմին նախորդած ժամանակաշրջանում տեղի էր ունենում տնտեսապես առաջ անցնող կապիտալիստական երկրների՝ Գերմանիայի ու Ավստրո-Հունգարիայի մերձեցման պրոցես։ Վ. Ի. Լենինն ասում էր, որ այդ խմբավորումն ավելի գիշատչական, ավելի ավազակային էր։ Նա պայքարի մեջ մտցրեց կապիտալիստական արտադրության զարգացման նոր պրիոմներ, լավագույն տեխնիկա, անհամեմատ կազմակերպվածություն, «որը հին կապիտալիզմը, ազատ կոնկուրենցիայի դարաշրջանի կապիտալիզմը վերածում է վիթխարի տրեստների, սինդիկատների, կարտելների կապիտալիզմի։ Այդ խումբը մտցրեց կապիտալիստական արտադրությունը պետական դարձնելու, կապիտալիզմի հսկայական ուժը պետության հսկայական ուժի հետ այնպիսի մի մեխանիզմի մեջ միացնելու սկզբունքներ, որը*

---

[1] Վ. Ի. Լենին, *Երկեր, հատ. 22, էջ 365—367*։

տասնյակ միլիոնավոր մարդկանց դնում է պետական կապիտալիզմի մեկ կազմակերպության մեջ»[1]։

Ուշագրավ է ԱՄՆ-ի իշխող վերնախավի քաղաքական վարքագիծը՝ վրա հասած առաջին համաշխարհային պատերազմի նկատմամբ։ Որպես անհամաչափության օրենքի գործողության հետևանքով առաջ անցած իմպերիալիստական տերություն, ԱՄՆ-ը իր տնտեսական ու քաղաքական հատուկ շահերն ուներ։ Բնական է, որ դրանք բախվում էին մյուս իմպերիալիստական տերությունների շահերի հետ։ Սակայն ընտրություն կատարելիս ԱՄՆ-ը չէր կարող անտեսել իր շահերը շոշափող մի շարք հանգամանքներ և միջազգային զարգացման հեռանկարներն ապագայում։

Գերմանիայի հաղթանակը կբերեր նրա հեգեմոնիայի հաստատմանը Եվրոպայում, իսկ դա ԱՄՆ-ի համար կլիներ չարիքի մեծագույնը։ ԱՄՆ-ը բավականին լայն տնտեսական կապեր էր պահպանում Անգլիայի հետ, որոնց վիժեցումն զգալի հարված կհասցներ ԱՄՆ-ի էկոնոմիկային։ Բավական է ասել, որ ԱՄՆ-ի արտահանման 2/5-ը բաժին էր ընկնում Անգլիային։ Ապա՝ Անգլիայի դիրքերը ծովերում այնքան ամուր էին, որ ԱՄՆ-ին տակավին ձեռնտու չէր ընդհարվել նրա հետ, հակառակ դեպքում անգլիական նավատորմը կարող էր շրջափակել Եվրոպա, Աֆրիկա, Հարավային Ասիա և Հեռավոր Արևելք տանող ծովային մատույցները։ Հաշվի առնելով հակադիր ռազմական դաշինքների մասնակիցների հետ ունեցած իր փոխհարաբերությունների բարդությունը, ԱՄՆ-ը գերադասեց սպասողական չեզոքությունը։ Նրան ավելի շատ ձեռնտու էր երկու կոալիցիաների ուժերի ջլատումը։

Սակայն այդ չեզոքությունը պայմանական, հարաբերական էր, քանի որ համաշխարհային պատերազմի եռուն շրջանում ԱՄՆ-ը բացահայտ ագրեսիվ ակցիաների էր դիմում լատինաամերիկյան թույլ զարգացած երկրների նկատմամբ, պատերազմական իրադրությունն օգտագործելով որպես հարմար պահ իր էքսպանսիոնիստական ծրագիրն իրականացնելու համար։ 1917 թվականի գարնանը ԱՄՆ-ը պատերազմ

---

[1] Վ. Ի. Լենին, *Երկեր*, *հատ. 24*, *էջ 506—507*։

հայտարարեց Գերմանիային՝ իր դիրքերը Հեռավոր Արևելքում ամրապնդելու համար։ Ընտրված հարմար պահը և ռազմական գործերին նրա ակտիվ միջամտությունը պայմանավորված էին նաև ուրիշ նկատառումներով։ Եվրոպական երկրներում ծավալվում էին հեղափոխական իրադարձությունները (փետրվարյան հեղափոխությունը Ռուսաստանում, հուզումները Գերմանիայում և ուրիշ երկրներում)։ Ամերիկյան իմպերիալիզմը ակտիվորեն ներխուժեց ռազմական իրադարձությունների հորձանուտը՝ միաժամանակ ծայր առնող հակակապիտալիստական շարժումները կանխելու և խեղդելու նպատակով։ ԱՄՆ-ի կառավարության քաղաքականության մեջ լիովին արտացոլվեցին համադասակարգային և նեղ դասակարգային շահերը։

Բնորոշ է, որ իրար հետ կովի բռնված իմպերիալիստական տերությունները միասնական ճակատ ստեղծեցին Ռուսաստանում հաղթանակած հեղափոխության դեմ, որովհետև հեղափոխության հաղթանակը հզոր հարված էր ամբողջ իմպերիալիզմին։ Ֆր. էնգելսը տեղին է նկատել, որ «... պատմության մեջ գործող բազմաթիվ առանձին ձգտումները մեծ մասամբ առաջացնում են ոչ այն հետևանքները, որոնք ցանկալի են, այլ բոլորովին ուրիշ, հաճախ ուղիղ հակառակ նրան, ինչ նկատի էր առնվել...»[1]։

Այսպիսի չնախատեսված սոցիալ-քաղաքական հետևանքները բնորոշ էին միջազգային իմպերիալիզմի սանձազերծած երկու համաշխարհային պատերազմներին։ Իմպերիալիստական բուրժուազիան ընկնում է պատմության օբյեկտիվ օրենքների իշխանության տակ։ Կապիտալիստական սիստեմին ներհատուկ սոցիալ-տնտեսական սուր ու անլուծելի հակասությունները հիպերտրոֆիկ կատակլիզմներ են ծնում, որոնք քայքայում են այդ սիստեմի հիմքերը։ Մոնոպոլիստական բուրժուազիան սուբյեկտիվորեն ձգտում է մի բանի, օբյեկտիվորեն մեկ ուրիշ բան է ստացվում։

Հենց շահասիրական ազդակը որոշեց կապիտալիստների

---

[1] К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 21, стр. 306.

վերնախավի քաղաքական վարքագիծն առաջին համաշխարհային պատերազմի ավարտմանը հաջորդած ժամանակաշրջանում։

Իմպերիալիստական շրջանների գործունեության մեջ դրսևորվեցին մի կողմից՝ ազգային մոնոպոլիաների շահերի և մյուս կողմից՝ համադասակարգային դիրքերի պաշտպանության տենդենցները։ Հատկանշական է, որ 1919 թվականի հունվարին բացված Փարիզի հաշտության կոնֆերանսի աշխատանքներն ընթանում էին գզվռտոցի և սուր հակասությունների մթնոլորտում։ Սակայն հաղթած իմպերիալիստական պետություններն այդ պայմաններում անգամ ջանքեր էին գործադրում հեղափոխական Ռուսաստանի դեմ պայքարի միասնական ճակատ ստեղծելու ուղղությամբ։ Բայց այդ հարցում իմպերիալիստների միջև երկպառակություններ սկսվեցին։ Եղածների վրա նոր հակասություններ ավելացան։ Առանց տիրոջ, թղթի վրա նրանք բաժանում էին Ռուսաստանը. «Նրանք սկսեցին բաժանել արջի մորթին, որին դեռ չէին բռնել և չեն էլ սպանի։ Մինչդեռ, այդ արջի պատճառով նրանց մոտ արդեն երկպառակություններ տեղի ունեն»[1]։

Պատերազմից հետո միջիմպերիալիստական հակասություններն է՛լ ավելի սրվեցին, ավարի ամենամեծ կտորը հափշտակելու իր ծարավը կողմերից ոչ մեկը չհագեցրեց։ Պարտված և պատերազմում ուժասպառ եղած ու բնականաբար ոչինչ ձեռք չբերած երկրները հարկադրված էին հաշտվել հաղթողների թելադրած հաշտության պայմաններին։ Սակայն դա ժամանակավոր, տակտիկական վարքագիծ էր։ Ուժեր հավաքելու համար ժամանակ էր պետք։

Հակասությունները բաժանում էին նախկին դաշնակիցներին, որոնցից յուրաքանչյուրը պատրաստ էր խեղդելու մյուսին, որպես իր մրցակցի։ Եվ հաշտություն կնքելուց անմիջապես հետո, կատաղի պայքար ծավալվեց հակագերմանական կոալիցիայի անդամների միջև՝ կապիտալիստական աշխարհում գերիշխող դրության հասնելու համար։ Իսկ տնտեսապես բավականին հասուն, բայց ռազմական ու քաղաքա-

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 31, էջ 401։

կան տեսակետից զգալիորեն թուլացած Գերմանիան նոր ցատկի, ռևանշի էր նախապատրաստվում։

Սովետական իշխանության հաղթանակը, որպես միանգամայն չնախատեսված հետևանք, ավելացրեց իմպերիալիստների առանց այն էլ շատ հոգսերը։ Հակասությունների նոր խումբ ծնվեց։ Իմպերիալիզմը սանձազերծելով համաշխարհային պատերազմ, ոչ միայն չլուծեց իր հակասություններից որևէ մեկը, այլ օբյեկտիվորեն նոր, ավելի սուր հակասություններ գոյացան, որոնք համաշխարհային հակասությունների սիստեմում սկսեցին առաջատար դեր խաղալ։ Դրանք սոցիալիզմի և կապիտալիզմի միջև ծավալվող հակասություններն են, որոնք իրենց բնույթով հակամարտ դասակարգային հակասություններ են։

Այս փաստի մեջ արտացոլվում է կապիտալիզմի օրինաչափություններից մեկը. իր շարժման ու զարգացման պրոցեսում նա հակադրությունների պայքարի ընթացքում ինքնաբացասման տարրեր է ծնում։ Այդ հակասությունների լուծման հնարավորությունը կապիտալիզմի ընդերքում է գոյանում։ Նա ինքն է օբյեկտիվորեն կյանքի կոչում կապիտալիզմն իր հակասություններով բացասող սոցիալական ուժերը։

* * *

Առաջին համաշխարհային պատերազմից հետո աշխարհը տրոհվեց երկու հակադիր սոցիալ-քաղաքական սիստեմների։ Սակայն կապիտալիզմը տնտեսապես զգալիորեն գերազանցում էր սոցիալիզմին։ Նա իշխում էր մարդկության բացարձակ մեծամասնության վրա և նրա օրենքները համեմատաբար անարգել շարունակում էին հարթել իրենց ճանապարհը, նորանոր բարդություններ առաջացնելով միջազգային հարաբերություններում։ Եվ նորից իրադարձությունների ընթացքըն ու բնույթը որոշեցին միջիմպերիալիստական հակասությունները, կապիտալիզմի տնտեսական ու քաղաքական ուժերի անհամաչափ զարգացման օրենքի գործողությունը։

Չնայած պարտությանը, Գերմանիան պահպանեց իր տնտեսական պոտենցիալը և խուսափեց սեփական տերիտո-

րիայի օկուպացումից։ Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի պայմաններում, որին սկիզբ դրեցին առաջին համաշխարհային պատերազմն ու Հոկտեմբերյան հեղափոխությունը, իմպերիալիզմի աշխարհում տենդագին նախապատրաստություն էր գնում ազդեցության ոլորտների նոր վերաբաժանման համար։ Ինչպես առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակին, Գերմանիան 1938 թվականին արդյունաբերական արտադրանքի ծավալով կապիտալիստական աշխարհում դուրս եկավ երկրորդ տեղը, առաջ անցնելով Անգլիայից ու Ֆրանսիայից։ Գերմանիայի ամբողջ էկոնոմիկան ռազմական ռելսերի վրա դրվեց։ Իշխանության գլուխ անցան մարդիկ, որոնց քաղաքականության անկյունաքարը պատերազմն էր։ Նրանք բացահայտորեն առաջ քաշեցին համաշխարհային տիրապետության հասնելու իրենց ավանտյուրիստական ծրագիրը։ Նրանց ֆինանսապես սնում էին ԱՄՆ-ի, Անգլիայի ու Ֆրանսիայի մոնոպոլիաները։ Բոլորից շուտ ագրեսիվ գործողությունների դիմեց Ճապոնիան։ Ագրեսորները ձեռք մեկնեցին միմյանց։ Ստեղծվեց Բեռլին-Տոկիո-Հռոմ առանցքը. պատերազմի երկու օջախ ծագեց՝ մեկը Եվրոպայում, մյուսը՝ Ասիայում։ Ուղիղ 25 տարի անց սկսվեց երկրորդ համաշխարհային արյունահեղությունը։ Իմպերիալիզմը նորից մարդկությանը ներքաշեց համաշխարհային պատերազմի մսաղացը։ Մոնոպոլիստական բուրժուազիան իր ռազմամոլական ավանդույթներին հարազատ մնաց։

Պատերազմի դիալեկտիկական փոխակերպումներն ըմբռնելու համար անհրաժեշտ է նկատի առնել կոնկրետ պատմական պայմանները, իրադարձությունների զարգացման ընդհանուր տենդենցները, ռազմական գործողությունների ընթացքը և դրանց մեջ մասնակցող կողմերի քաղաքական նպատակները։ Այս տեսակետից, երկրորդ համաշխարհային պատերազմը իրադարձությունների հարստությամբ ու բարդությամբ, զարգացման յուրօրինակությամբ և բնույթով մի շարք բնորոշ գծերով է օժտված։

Երկրորդ համաշխարհային պատերազմն սկսվեց իմպերիալիստական տերությունների կոալիցիաների միջև և իր դասակարգային քաղաքական բովանդակությամբ բացահայտ

իմպերիալիստական բնույթ էր կրում։ Իմպերիալիստական տերությունների երկու խմբավորումներն էլ անարդարացի, թալանչիական նպատակներ էին հետապնդում։ Իհարկե, Գերմանիան ու Ճապոնիան ավելի ագրեսիվ ու նախաձեռնող կողմերն էին։ Որպես արտաքին ազդեցության ոլորտներով ավելի քիչ ապահովված տերություններ, նրանք ավելի մեծ ակտիվություն ցուցաբերեցին պատերազմը սանձազերծելու մեջ, որպեսզի բռնի միջոցներով հասնեն գաղութների ու շուկաների վերաբաժանմանը։ Սակայն, պատերազմը բոլոր դեպքերում ներիմպերիալիստական հակասությունների ծնունդ էր։

Մեկը մյուսի դեմ դուրս եկած իմպերիալիստական տերությունների ագրեսիվ խմբավորումների պլանները հանգում էին աշխարհի նոր վերաբաժանմանը, իրենց ազդեցության ոլորտների ընդարձակմանը, ապա՝ և՛ ներսում, և՛ դրսում իրենց դասակարգային հակասությունների լուծմանը։

Կոմունիստական ինտերնացիոնալի 1939 թվականի հոկտեմբերյան կոչում ասված էր, որ սկսված երկրորդ համաշխարհային պատերազմը կապիտալիզմի լագերի երկարամյա հակասությունների դրսևորում է և ծավալվում է աշխարհը վերաբաժանելու համար։ «Այդպիսին է այդ պատերազմի՝ անարդարացի ռեակցիոն, իմպերիալիստական պատերազմի իսկական իմաստը։ Այդ պատերազմում մեղավոր են բոլոր կապիտալիստական կառավարությունները և առաջին հերթին պատերազմող պետությունների իշխող դասակարգերը։ Բանվոր դասակարգն այդպիսի պատերազմը պաշտպանել չի կարող... ո՛չ մի պաշտպանություն իմպերիալիստական սպանդանոցը շարունակելուն և ընդլայնելուն ուղղված իշխող դասակարգերի քաղաքականությանը[1]»։

Պատերազմի առաջին փուլում Գերմանիան հիմնականում ավարտեց իր հաղթական ագրեսիվ արշավանքները, կարճ ժամանակում զավթելով մի շարք եվրոպական երկրներ։ Գերմանիայի պաշտոնական շրջանները չէին թաքցնում համաշխարհային տիրապետության հասնելու իրենց դիտավորությունները։ Գերմանական ազգը վարակված էր ռասիստական

---

[1] «Коммунистический интернационал», № 8—9, стр. 4—8.

թույնով։ Եվրոպայի ստրկացված ժողովուրդները սեփական փորձով համոզվում էին ֆաշիստական ռեժիմի հակամարդկային, գիշատչական բնույթի մեջ։ Ամենուրեք տարերայնորեն կազմավորվում էր հակաֆաշիստական ճակատ։ Օկուպացված շրջաններում հիտլերիզմի դեմ պայքարը մասսայական դարձավ։ Անգլիայի և ԱՄՆ-ի կառավարությունների վրա ժողովրդական մասսաների ճնշումն ուժեղանում էր։

Սովետական Միության վրա ֆաշիստական Գերմանիայի ուխտադրուժ հարձակումը երկրորդ համաշխարհային պատերազմի նոր էտապի սկիզբը դրեց։ Իր կամքից անկախ բուռն ռազմական իրադարձությունների հորձանուտը ներքաշված Սովետական պետությունը համաժողովրդական հակաֆաշիստական պայքարի էպիկենտրոնը դարձավ։

Ֆաշիստական բլոկի հետ պաշտոնապես պատերազմի վիճակում գտնվող կապիտալիստական երկրների կառավարող ուժերը, ՍՍՀՄ-ի վրա հիտլերյան Գերմանիայի հարձակումից հետո, իրենց դիրքերը չփոխեցին ոչ թե այն պատճառով, որ սովետական ժողովրդի ջանքերի նկատմամբ կարեկցաբար էին վերաբերվում։

Մի շարք գործոններ նախորոշեցին Անգլիայի և ԱՄՆ-ի իշխող շրջանների նման քաղաքական վարքագիծը։

Առաջին, ֆաշիստական Գերմանիան սպառնում էր ոչ միայն իր մրցակիցների տիրապետություններին, այլև նրանց տերիտորիալ ամբողջականությանն ու անձեռնմխելիությանը։ Չերչիլն ասում էր, որ կար ժամանակ, երբ Անգլիան մինչև բերանը ջրի մեջ սուզված մարդու էր նմանվում, որն ամենաաննշան հուզմունքից կարող էր խեղդվել։ Նա գտնում էր, որ 1940 թվականին 150 հազար գերմանական զինվորների ներխուժումը Անգլիա կարող էր երկրում համատարած ավերածություններ առաջացնել։

Երկրորդ, Գերմանիայի ռազմա-տնտեսական հզորության քայքայման մեջ շահագրգռված ԱՄՆ-ն ու Անգլիան ձգտում էին նրան և Ճապոնիային դուրս մղել համաշխարհային շուկայից և անբաժանելի կերպով տնօրինել այնտեղ։ Բայց այս խնդիրը նրանք միայնակ ի վիճակի չէին լուծել։ Նրանք հուսով էին, որ այն կարող է լուծվել Սովետական Միության զին-

ված ուժերի մարտական գործողությունների հաշվին։ Միաժամանակ նրանց դիտավորությունների մեջ մտնում էր ՍՍՀՄ-ն ուժասպառ անելու և իրենց ճանապարհից հեռացնելու խնդիրը։

Տրումենը, որն այն ժամանակ սենատոր էր, առաջարկում էր այնպիսի կուրս, որ պետք է հասցներ պատերազմում Գերմանիայի ու ՍՍՀՄ-ի փոխադարձ հյուծմանը։ Այսպիսով, անգլո-ամերիկյան իշխող վերնախավի քաղաքականության մեջ համադասակարգային և ներտնտեսական շահերը միահյուսվում էին։

Երրորդ, քաղաքականության մեջ շրջադարձը չէր կարող արդարացվել, քանի որ Անգլիան արդեն երկու տարի շարունակ ֆաշիստական խմբավորման հետ պատերազմի մեջ էր։ Լայնորեն ծավալված հակաֆաշիստական շարժման պայմաններում ԱՄՆ-ի և Անգլիայի իշխող շրջանները համոզված չէին, որ Գերմանիայի հետ մի կոալիցիայի մեջ մտնելով, նրանց կհաջողվի հաշվեհարդար տեսնել իրենց դասակարգային թշնամու՝ ՍՍՀՄ-ի հետ։ Նախորդ ռազմական ավանտյուրաների փորձը չէր կարող անտեսվել։

Չորրորդ, որոշակի գործոն էր հասարակական կարծիքը՝ կառավարական շրջանների վրա ժողովրդական մասսաների ճնշումը, մասսաներ, որոնք ֆաշիզմի մեջ տեսնում էին իրենց ոխերիմ թշնամուն և դրա ջախջախման մեջ՝ համաշխարհային արյունահեղությունից դուրս գալու միակ ուղին։ «...Անգլիական և ամերիկյան ժողովուրդների ճնշող մեծամասնությունը ՍՍՀՄ-ի օգտին էր տրամադրված, պահանջելով միավորվել ՍՍՀՄ-ի հետ՝ հիտլերյան Գերմանիայի դեմ հաջողությամբ պայքարելու համար։ Այդ տրամադրությունների արտացոլումը պետք է համարել Մեծ Բրիտանիայի պրեմիեր-մինիստր Չերչիլի հայտարարությունը...»[1], որն, ի դեպ, ասել է. «Վերջին 25 տարիների ընթացքում ոչ մեկը կոմունիզմի այնպիսի ոխերիմ թշնամին չի եղել, ինչպես ես։ Ես ոչ մի խոսք ետ չեմ վերցնում, որ ես երբևիցե այդ մասին ասել եմ։

---

[1] Տե՛ս «Фальсификаторы истории» (Историческая справка), Госполитиздат, 1948, էջ 48:

Բայց այսօր դա ոչ մի դեր չի խաղում... Մենք միայն մեկ նըպատակ ունենք, որից երբեք չենք նահանջի։ Մենք ոչ մի պարագայում Հիտլերի և նրա սերնդի հետ չենք բանակցի... Եթե Հիտլերը գտնում է, թե հարձակումը Սովետական Ռուսաստանի վրա կարող է մեծ նպատակների մեջ փոքր-ինչ փոփոխություն մտցնել և նվազեցնել մեր կողմից գործադրվող ջանքերը նրան ոչնչացնելու համար, ապա չարաչար մոլորվում է»[1]։

Անգլիական պրեմիեր-մինիստրն այստեղ քողարկված ձևով ընդգծում է «հավատարմությունը մեծ նպատակներին», որոնք, անկասկած, ֆաշիստական Գերմանիային ջախջախելու նպատակից այն կողմ էին անցնում։

ՍՍՀՄ-ի վրա հարձակումից հետո ֆաշիզմի դեմ մղվող պայքարի առաջավոր գիծը դարձավ սովետա-գերմանական ռազմաճակատը, ուր նետվեցին ֆաշիզմի հիմնական ուժերը։ Կենաց ու մահու այդ պայքարը սովետական ժողովրդի բոլոր ուժերի մոբիլիզացում և հսկայական ջանքեր պահանջեց։ ԱՄՆ-ի և Անգլիայի պետական գործիչները ենթադրում էին, թե Սովետական Միության ուժերն այնքան կջլատվեն, որ նրան հետպատերազմյան խաղաղության պայմանները ուղղակի կթելադրվեն։

Այսպիսով, ընդհանուր քաղաքական իրադրության մեջ ներիմպերիալիստական հակասություններն ավելի ուժեղ դուրս եկան, քան միջդասակարգային հակասությունները։ Դրան պետք է ավելացնել այնպիսի գործոն, ինչպիսին Սովետական Միության ճկուն, հեռատես և խորաթափանց արտաքին քաղաքականությունն է։ Սովետական կառավարությունն իր վճռական ու սկզբունքային քայլերով կարճ ժամանակամիջոցում կարողացավ մերձենալ ԱՄՆ-ի և Անգլիայի հետ, որոնք հակաֆաշիստական պայքարի նժարի վրա նետեցին իրենց նյութական հզորությունը։

Սովետական Միությունը պատերազմի մեջ մտնելուց հետո փոխվեց դրա բնույթը։ Այն դարձավ հակաֆաշիստական,

---

[1] Տե՛ս К. Типпельскирх, История второй мировой войны, М., 1956, էջ 175։

ազատագրական։ Հենց այդ էտապում ձևավորվեց հակաֆաշիստական կոալիցիան, որի պայքարը պաշտպանեցին բոլոր մայր ցամաքների ժողովուրդները։ Եվ, չնայած այդ կոալիցիայի անդամները հակադիր նպատակներ ունեին, մի բանում նրանք միասնական էին՝ հասնել հիտլերիզմի վերջնական ջախջախմանը։ Դա համապատասխանում էր առաջադեմ մարդկության շահերին և դաշնակիցների գլխավոր ռազմաքաղաքական նպատակին՝ տվյալ պատմական իրադրության մեջ։ Ֆաշիզմի ջախջախումը պատմականորեն առաջադիմական գործ էր և դրան մասնակցած բոլոր ուժերն առաջադեմ դեր կատարեցին։

Հիտլերիզմն ավելի շուտ կջախջախվեր, եթե ՍՍՀՄ-ի վրա ֆաշիստական Գերմանիայի հարձակումից հետո ԱՄՆ-ն ու Անգլիան ակտիվ ռազմական գործողություններ ծավալեին Գերմանիայի դեմ, օգտագործելով իրենց ռազմական հզորությունը։ Այդ դեպքում մարդկությունն անհամեմատ ավելի քիչ կտուժեր։ Սակայն դա չկատարվեց, որովհետև ԱՄՆ-ի ու Անգլիայի կառավարող շրջաններն իրենց նեղ դասակարգային տնտեսա-քաղաքական շահերը մարդկության շահերից բարձր էին դասում։ Այստեղ նորից ակնհայտորեն դրսևորվեց իմպերիալիստական մոնոպոլիաների և համայն առաջադեմ մարդկության շահերի անհամատեղելիությունը։ ԱՄՆ-ի քաղաքական ղեկավարները շահագրգռված էին պատերազմը երկարաձգելու մեջ, որպեսզի մի կողմից՝ Սովետական Միությանը թուլացնեին և մյուս կողմից՝ Անգլիային հյուծելուց հետո, լիկվիդացնեին բրիտանական գաղութային կայսրությունը և իրենց տիրապետությունը հաստատեին այնտեղ։ Միջիմպերիալիստական հակասությունները գործում էին առանց թուլացման նաև միևնույն բլոկի շրջանակներում։

Պատահական չէր, որ սովետական բանակի և վճռական ռազմական գործողություններից հետո միայն, երբ նա դեպի Արևմուտք էր շարժվում, հակահիտլերյան կոալիցիայի արևմըտյան անդամները, սոցիալիստական պետության զինված ուժերի հաղթարշավից ահաբեկված, շտապեցին անցնելու ակտիվ մարտական գործողությունների։ Դասակարգային դիրքերը պահպանելու շահը նորից ակնհայտորեն դրսևորվեց։

Անհրաժեշտ է նշել, որ երկրորդ համաշխարհային պատերազմի քաղաքական նախապատրաստության առանձնահատկություններից մեկը հակակոմունիստական երանգն էր։ Իմպերիալիստական երկու կոալիցիաներն ինքնուրույն կերպով Սովետական Միության ջախջախումը կամ նրան համաշխարհային գործերից հեռացնելն ընդհանուր խնդիր էին համարում։ Ավելին, ֆաշիստական խմբավորումն իր թալանչիական արշավանքներն իրականացնում էր հակակոմունիզմի դրոշի ներքո։ Ֆաշիստական ավազակախմբերի՝ սովետական երկիր ռազմական ներխուժման բացահայտ նպատակն էր բռնի եղանակով տապալել սովետական իշխանությունը։ Անգլիայի, ԱՄՆ-ի ու Ֆրանսիայի իմպերիալիստական ուժերն ավելի խորամանկ խաղերի դիմեցին։

Այդ երկրների մոնոպոլիստական շրջանները նախքան ֆաշիզմի հաղթանակը, առատորեն ֆինանսավորում էին գերմանական կապիտալի մագնատներին, օժանդակելով երկրի ռազմա-տնտեսական պոտենցիալի վերածնմանը։ Այդ տնտեսական սնումը շարունակվում էր նաև Գերմանիայում ֆաշիստական դիկտատուրա հաստատվելուց հետո։ Ալբերտ Նորդենը «Գերմանական պատմության դասերը» գրքում բնորոշ փաստ է բերում։ Գերմանիայի ջախջախումից հետո ամերիկյան բանակի սպա Զիլբերսը մտնում է խոշոր մոնոպոլիստ Շախտի բանտախուցը։ Վերջինս իմանալով, որ գերմանական արդյունաբերողների դեմ դատական մեղադրանք է հարուցվելու, հեգնանքով նկատում է. «Եթե Դուք Գերմանիայի սպառազինմանը նպաստող արդյունաբերողներին ցանկանում եք դատի տալ, ապա Դուք պետք է ձեր սեփական արդյունաբերողներին դատեք։ Չէ՞ որ «Ջեներալ մոտորսին» պատկանող «Օպելի» գործարաններն աշխատում էին միայն պատերազմի համար»։

Տնտեսական օգնությանը հետևեցին հիտլերականների ձեռքերն ազատող քաղաքական գործողությունները։ ԱՄՆ-ը, Անգլիան ու Ֆրանսիան Գերմանիային ու Ճապոնիային «խաղաղեցնելու» իրենց քաղաքական կուրսով լիցքավորում էին ագրեսորներին, նրանց ուղղելով Սովետական Միության դեմ։ Այդպիսի պատերազմը նրանց համար ձեռնտու էր, քանի որ,

ինչպես ասվեց, արևմտյան տերությունները նպատակադրվել էին իրենց համար ցանկալի քաղաքական իրադրության մեջ միանգամից երկու հիմնական խնդիր լուծել։

Այսպիսով, եթե առաջին համաշխարհային պատերազմի նախապատրաստությունն ու սանձազերծումը իրականացվեց իմպերիալիստական բուրժուազիայի անբաժան տիրապետության պայմաններում, և տերությունների տարբեր խմբավորումների միջև պայքար էր ծավալվում կապիտալիստական աշխարհում գերիշխող դրության հասնելու համար, ապա երկրորդ համաշխարհային պատերազմի նախապատրաստությունն ու սանձազերծումը իրականացվեցին սոցիալիստական պետության գոյության պայմաններում, որ իմպերիալիստներին նոր խնդիրների առաջ կանգնեցրեց։

Առանձնահատուկ իրադրություն ստեղծվեց։ Մի կողմից՝ ֆաշիստական տերություններն իրենց ագրեսիվ պլաններն իրականացնում էին հակակոմունիզմի դրոշի ներքո, մյուս կողմից՝ կոմունիզմի նկատմամբ ունեցած դասակարգային ատելությունից կուրացած, ԱՄՆ-ի, Անգլիայի ու Ֆրանսիայի պետական գործիչները ֆաշիստական Գերմանիային պատերազմի էին դրդում ՍՍՀՄ-ի դեմ։ Ամբողջովին վերցրած, երկու կողմերն էլ խաղում էին հակասովետական լարերի վրա, հակակոմունիզմն օգտագործելով որպես գաղափարական զենք իրենց անարդարացի, նվաճողական պլաններն ու գործողությունները արդարացնելու համար։

Բայց հետագա իրադարձություններն այլ ընթացք ստացան։ 1939 թվականի սեպտեմբերին երկրորդ համաշխարհային պատերազմը փաստ դարձավ։ Գերմանիան, Իտալիան, Անգլիան ու Ֆրանսիան պաշտոնական պատերազմի մեջ մտան։ Ներիմպերիալիստական հակասությունները հարթեցին իրենց ճանապարհը, առաջին հարվածը իմպերիալիստներն իրար հասցրին։ ՍՍՀՄ-ի վրա բաց թողնելու նպատակով, ԱՄՆ-ի, Անգլիայի ու Ֆրանսիայի կերակրած կատաղած շունը պոկվեց շղթայից ու նետվեց նրանց վրա, ովքեր իրեն կերակրել էին։ Պատմության տրամաբանությունն ու անողոք ընթացքը մեկ անգամ ևս կապիտալիստական աշխարհի ա-

տանձին քաղաքական գործիչների ու խմբերի սուբյեկտիվ տենդենցներից ու նկատառումներից ուժեղ դուրս եկան։

Ուշագրավ է, որ դեռ մինչև այն կրիտիկական պահը, երբ միջիմպերիալիստական հակասությունները վերաճեցին բացահայտ զինված ընդհարման, հակագերմանական բլոկի երկրների կառավարող շրջանները հեռու էին ֆաշիստական ռեժիմը դատապարտելու մտքից։ Եվ հենց որ պատերազմը սկսվեց, նրանք «գլխի ընկան» և սկսեցին հռչակել հականացիստական երանգավորումներով լի սկզբունքներ ու խնդիրներ։ Դա իրենց հակակոմունիստական քաղաքականության ձախողման խոստովանությունն էր։ Անգլիայի այն ժամանակվա պրեմիեր-մինիստր Չեմբեռլենը, որ Մյունխենյան գործարքը Հիտլերի հետ ստորագրելուց հետո հայտարարեց, թե «Այսուհետև բազմաթիվ սերունդների համար խաղաղությունն ապահովված է», պատերազմն սկսվելուց հետո ասաց. «Ես հավատում եմ, որ կապրեմ մինչև այն օրը, երբ հիտլերիզմը կոչնչացվի և ազատագրված Եվրոպան կվերականգնվի»։ Իսկ անգլիական «Թայմս» թերթը 1939 թվականի սեպտեմբերին գրում էր. «Երրորդ ռայխի հոգևոր վերածնունդն ավարտվում է հեթանոսական նացիոնալիզմի ամենակոպիտ և խաբուսիկ անակնկալումների մեջ։ Հաղթանակի շանսերը կշռադատող ոչ մի մարդ երբեք չի հավատա, որ ապագան այդ ագրեսիվ, այլասերված և սնանկ գաղափարախոսությանն է պատկանում։ Ինքը՝ քաղաքակրթությունն է մոբիլիզացվում դրան ջախջախելու համար։ Այսօրվա թշնամին հիտլերիզմն է»։

Հատկանշական է, որ իրենց գործողությունների հետևանքները որոշ չափով խելքի բերեցին իմպերիալիստների հակահիտլերյան խմբի քաղաքական գործիչներին։ Սակայն նրանց հայտարարությունների մեջ հնչեցին նոտաներ՝ նոր երանգներով։ Պատերազմն սկսվելուց հետո Անգլիան ու Ֆրանսիան, ապա ԱՄՆ-ը, խոսքով նշելով դրա համամարդկային նպատակները հիտլերիզմի դեմ մղվող պայքարում, ձգտում էին քողարկել իրենց դասակարգային նպատակները։

Հարց է ծագում, եթե արևմտյան տերությունները իսկապես հետապնդում էին միայն հիտլերիզմը ջախջախելու քաղաքա-

կան նպատակ, ապա ինչո՞ւ ԱՄՆ-ը հանդես եկավ պասիվ, անտարբեր դերում, երբ ֆաշիստական զորքերը հաշվեհարդար էին տեսնում այնպիսի մեծ տերության հետ, ինչպիսին Ֆրանսիան է։ Այս փաստը արդյոք այդ բանի դրսևորումը չէ՞ր, որ Ֆրանսիայի դիրքերը թուլացնելն ու նրա տեղ մղելը ԱՄՆ-ի իշխող շրջանների նպատակներից մեկն էր։ Հետպատերազմյան տարիներին ամերիկյան մոնոպոլիաների բացահայտ ներխուժումները Ֆրանսիայի տրադիցիոն ազդեցության ոլորտները՝ այդ դատողության հաստատումն են։

Անգլիան նույնպես արդյունավետ չէր օգնում իր ֆրանսիական դաշնակցին։ Պատերազմի սկզբնական էտապում Հիտլերի հաջողությունները պայմանավորված էին ոչ միայն ռազմական տեսակետից Գերմանիայի ժամանակավոր գերազանցությամբ, այլև այն հակասական շահերով, որոնք եթե ոչ բացահայտորեն, ապա ռեալ կերպով հարվածում էին անգլո-ֆրանսիական բլոկի միասնությանը։

Բոլոր երկրների և առաջին հերթին Սովետական Միության կոմունիստները հենց սկզբից հետևողականորեն մերկացնում էին ֆաշիզմը, որը ժողովուրդներին պատերազմ և ողբերգություն էր բերում։ Նրանք բացահայտում էին ֆաշիստական Գերմանիայի հետ արևմտյան տերությունների գործարքների էությունը և համընդհանուր խաղաղությանը սպառնացող այն վտանգը, որ ծնվում էր այդ գործարքներից։ Պատմությունը հաստատեց ֆաշիզմին տրված մարքսիստական գնահատականը։

Երկրորդ համաշխարհային պատերազմի հետևանքով կապիտալիստական առանձին տերությունների մասնակի հաջողությունը, մյուսների դեմ մղված մրցակցական պայքարի տեսակետից, բնավ չի կարող փոխհատուցել այն անուղղելի հարվածը, որ հասավ համաշխարհային իմպերիալիզմին։ Պատերազմի քաղաքական հետևանքներն արդարացի պատիժ էին նրանց նկատմամբ, ովքեր սանձազերծեցին այն։

Իր սոցիալական հետևանքներով երկրորդ համաշխարհային պատերազմը գերազանցեց պատմության մեջ տեղի ունեցած մյուս բոլոր պատերազմներին։ Եթե առաջին համաշ-

խարհային պատերազմի տարիներին իմպերիալիզմի շղթան կտրվեց Ռուսաստանում, ապա երկրորդ համաշխարհային պատերազմից հետո իմպերիալիզմն իր մայրամուտի և կործանման փուլի մեջ մտավ։

* * *

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո տեղի ունեցան խոշոր իրադարձություններ, որոնք սոցիալական հետևանքներով ու զարգացման հեռանկարներով կարևոր նշանակություն ունեն։ Իմպերիալիզմի շղթայի կտրվելը նոր օղակներում և սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորումը դրա լավագույն ապացույցն է։

1939 թվականի օգոստոսի 24-ին «Պրավդան» գրում էր. «Առաջին համաշխարհային պատերազմը ժողովրդին տնտեսական աղետ, աղքատություն և սով բերեց։ Միայն հեղափոխությունը կարող էր վերջ տալ պատերազմին և տնտեսական փլուզմանը... Հիմքեր չկան կասկածելու այն բանում, որ երկրորդ պատերազմը... կավարտվի հեղափոխությամբ և կապիտալիստների իշխանության տապալումով Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրներում»։

Պատմությունը հաստատեց իմպերիալիզմի սանձազերծած համաշխարհային պատերազմների հնարավոր հեռանկարների մարքսիստական վերլուծության ճշտությունը։

Ժամանակի թռիչքի մեջ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորման նշանակությունը գնալով աճում է։ Այդ փաստն այն բանի վկայությունն է, որ կապիտալիզմը փլուզման պրոցես է ապրում ու անդառնալիորեն կորցրել է իր իշխանությունը մարդկության բացարձակ մեծամասնության նկատմամբ։

Երկրորդ համաշխարհային պատերազմը սրեց դասակարգային հակասությունները ու հեղափոխական իրադրությունը կապիտալիստական մի շարք երկրներում, բազմապատկեց մասսաների հեղափոխական հակաիմպերիալիստական ջանքերը։ Նրանք գործնական ակտիվ միջամտությամբ վերացրին անբնական դարձած, իրենց գոյության իրավունքը կորցրած

հասարակական կարգերը։ Ֆաշիզմի ջախջախումը սոցիալական վերափոխությունների համար բարենպաստ ներքաղաքական իրավիճակ ստեղծեց այդ երկրներում։ Վ. Ի. Լենինը գրում էր, որ այնպիսի ճգնաժամը, ինչպիսին պատերազմն է, լուսավորում ու կոփում է հեղափոխական մասսաներին, նըրանց հասցնում սոցիալական վերափոխություններ իրականացնելու անհրաժեշտության ըմբռնմանը։

Համաշխարհային սոցիալիստական սիստեմի առաջացումը պայմանավորված է այն հեղափոխական վերափոխություններով, որոնք հետպատերազմյան շրջանում կատարվեցին Եվրոպայի ու Ասիայի մի շարք երկրներում։ Դրանք նախապատրաստվեցին դեռևս մարտական գործողությունների տարիներին և անմիջականորեն իրականացվեցին պատերազմն ավարտվելուց հետո։

Հոկտեմբերյան հեղափոխությունը հաղթանակեց կապիտալիզմի համապարփակ տիրապետության պայմաններում։ Իսկ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո մի շարք երկրներում սոցիալիստական հեղափոխությունների հաղթանակը կատարվեց միանգամայն այլ պատմական իրադրության մեջ։ Նախ՝ հանձին ՍՍՀՄ-ի, աշխարհում գոյություն ուներ և զարգանում ու ամրապնդվում էր առաջին սոցիալիստական պետությունը, որը և՛ տերիտորիալ, և՛ տնտեսական, և՛ քաղաքական տեսակետից, և՛ բնակչության թվով համաշխարհային զարգացման լուրջ գործոն ներկայացնող հզոր սոցիալական կազմակերպություն էր։

Երկրորդ՝ Սովետական Միությունը հակաիմպերիալիստական, հեղափոխական բոլոր ուժերին բարոյական և բազմապիսի նյութական օգնություն էր ցույց տալիս։

Երրորդ՝ Սովետական պետության վճռական դերը ֆաշիզմի ջախջախման գործում զգալիորեն բարձրացրեց սոցիալիզմի, որպես խաղաղության և հասարակական առաջընթացի գործոնի, հեղինակությունը։ Եվ վերջապես՝ պատերազմի ընթացքում սովետական բանակի մուտքը արևելա-եվրոպական ու ասիական մի շարք երկրներ կաշկանդեց հակահեղափոխական ուժերի գործողությունները, համապատասխանաբար ակտիվացնելով հեղափոխական ուժերին այդ երկրներում։ Այս

հանգամանքը բնավ չէր նշանակում միջամտություն ուրիշ երկրների ներքին գործերին։ Պատերազմին նախորդած տարիներին այդ երկրների բուրժուական կառավարությունների անհետևողականությունն ու ծախվածությունը, վճռական պահերին սկզբունքային, ողջամիտ որոշումներ ընդունելու նրանց անկարողությունը նշանակում էին իշխող դասակարգի քաղաքական ճգնաժամ, որը ճեղքվածք ստեղծեց և որից պոռթկաց աշխատավորների անբավականությունն ու վրդովմունքը։

Պատերազմը դեն նետեց բոլոր քողերն ու պայմանականությունները, ցույց տալով, որ ոչ միայն «ներքնախավերը» չեն ցանկանում ապրել հին ձևով, այլև «վերնախավերը» չեն կարող կառավարել հին ձևով։ Ռազմական ժամանակաշրջանը ցույց տվեց, որ միայն բանվոր դասակարգն ու նրա ավանգարդը՝ կոմունիստներն են իսկական հայրենասերներն ու ամբողջ ազգի շահերի հետևողական պաշտպանները։ Կազմակերպված ժողովրդական ճակատներն իշխանության օրգանների նշանակություն էին ձեռք բերում։ Բանվոր դասակարգը պատրաստ ու ընդունակ էր ինքնուրույն պատմական ելույթի դիմելու և նվաճելու քաղաքական իշխանությունը։ Հեղափոխական վերափոխությունների համար արդեն լրիվին հասունացած երկրների տերիտորիաներում սովետական բանակի գտնվելը բացառեց արտաքին հակահեղափոխական ուժերի միջամտությունը։ Դա բավականին նպաստավոր պայմաններ ստեղծեց ներքին հեղափոխական ուժերի հաղթանակի համար։ Հունաստանի հետ կապված իրադարձությունները համոզիչ կերպով վկայում են հակահեղափոխական միջամտության հնարավորության մասին։ Հունաստանի ԷԱՄ և ԷԼԱՍ հեղափոխական ջոկատները փաստորեն դարձան երկրի միակ օրինական տերերը։ Անգլիական իմպերիալիզմն իր վրա վերցրեց հեղափոխության դահճի ֆունկցիան։ Բացահայտ հակահեղափոխական զինված միջամտությամբ անգլիական իմպերիալիստները հաշվեհարդար տեսան հեղափոխական ուժերի հետ, բռնությամբ պահպանելով բուրժուական կարգը Հունաստանում։ Եվ առհասարակ, եթե անգլո-ամերիկյան իմպերիալիստները զինված հակահեղափոխական միջամտություն չիրականացնեին Հունաստանում, Իտալիայում ու

Ֆրանսիայում, ապա այդ երկրներում կապիտալիստական կարգերի գոյությունը հարցականի տակ կդրվեր։

Միասնական հակահիտլերյան դաշինքի մեջ մտած ոչ իդենտիկ տնտեսական հիմքեր ունեցող պետությունների նպատակների հակադրությունը պատերազմն ավարտվելուց հետո կոնկրետ ձևեր ընդունեց, ցուցադրելով նրանց քաղաքական կոնցեպցիաների էությունը։ ԱՄՆ-ի ու Անգլիայի մոնոպոլիստական շրջաններն ավելի շատ մտահոգված էին այս կամ այն երկրում կապիտալիզմը պահպանելու խնդրով։ Սակայն նրանց բոլոր ճիգերն ի վիճակի չէին խանգարելու սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորմանը։ Պետությունների մեծ խմբի փորձով հաստատվեց կապիտալիզմը սոցիալիզմով փոխարինվելու պատմական անխուսափելիությունը։

Համաշխարհային սոցիալիստական սիստեմը անշեղորեն զարգանում է վերընթաց գծով, իր գերազանցությունը ցուցադրելով կապիտալիզմի հանդեպ։ Մի ամբողջ շարք երկրներում գիտական կոմունիզմի գաղափարների նյութականացումը նշանակում է, որ դեպի սոցիալիզմ տանող մայրուղին հարթված է, որով տարբեր ժամանակ կանցնեն բոլոր ժողովուրդները։

Գիտատեխնիկական վիթխարի նվաճումների արդի պայմաններում կապիտալիզմն իր արդարացումից զուրկ է և ստիպված է աստիճանաբար իր տեղը զիջել հասարակական հարաբերությունների ավելի բարձր աստիճանին։ Սոցիալիստական հեղափոխության հաղթանակը Կուբայում այն օրինաչափության մի նոր դրսևորում էր, որ կապիտալիզմը սեփական ընդերքում ինքնաբացասման պայմաններ ու ուժեր է ծնում։ Սոցիալիզմին բաժին է ընկնում երկրագնդի տերիտորիայի 25,9 տոկոսը, համաշխարհային արդյունաբերական արտադրանքի 38 տոկոսը։ 1966 թվականին սոցիալիստական երկրներում ապրում էր 1 միլիարդ 163 միլիոն մարդ։

* * *

XX դարի պատմական փորձը ցույց տվեց, որ արդի դարաշրջանի հիմնական բովանդակությունը կապիտալիզմից սո-

ցիալիզմին անցումն է։ Այդ պրոցեսն արագանում է ոչ միայն նրանով, որ արտադրողական ուժերի հետագա զարգացմամբ կապիտալիզմի ներսում ծագում են նրա բացասման նյութական պայմաններն ու կոնկրետ գործոնները։ Համաշխարհային զարգացման ընթացքի վրա հարաճուն հեղափոխականացնող ներգործություն է ունենում ռեալ գոյություն ունեցող սոցիալիստական սիստեմը։ Սոցիալիզմը տեսությունից պրակտիկայի վերածվելով, մարդկությանը ցուցադրում է իր մարդասիրական բնույթը և վճռական առավելությունները շահագործողական հասարակարգերի նկատմամբ։ Սոցիալիզմը, որպես որոշակի հասարակական կազմակերպություն, բացառում է այդ հիմքերի վրա զարգացող պետությունների շահերի անտագոնիզմը։ Սոցիալիզմի օրոք վերացվում են պետություններին բաժանող սոցիալ-տնտեսական խթանները։ Սոցիալիզմի սիստեմը շահերի ու նպատակների ընդհանրությամբ, միջազգային սոցիալիստական համերաշխության սերտ կապերով միաձուլված ազատ ու սուվերեն ժողովուրդների սոցիալական, տնտեսական ու քաղաքական համագործակցություն է։ «Եթե կապիտալիզմի համաշխարհային սիստեմը ստեղծվել ու զարգացել է այն կազմող պետությունների կատաղի պայքարով, ուժեղ երկրների կողմից թույլերին ենթարկելու և շահագործելու, հարյուր միլիոնավոր մարդկանց ստրկացնելու և ամբողջ մայրցամաքներ իմպերիալիստական մետրոպոլիաների գաղութային հավելուկների վերածելու միջոցով, ապա համաշխարհային սոցիալիստական սիստեմի առաջացման և զարգացման պրոցեսը տեղի է ունենում սուվերենության, լիակատար կամավորության հիման վրա և այդ սիստեմի բոլոր պետությունների աշխատավորների արմատական կենսական շահերին համապատասխան»[1]։

Սոցիալիզմի երկրների միասնությունը դրա ամրության և նրանցից յուրաքանչյուրի համար հուսալի երաշխիք է իմպերիալիստական ռեակցիայի ոտնձգությունների դեմ։ Սոցիալիզմի կենսունակությունն ու բանական լինելը դրսևորվում է տնտեսական պոտենցիալի անկասելի աճի, կառա-

---

[1] ՍՄԿԿ ծրագիրը, էջ 25։

վարման ձևերի կատարելագործման, սոցիալիստական դեմոկրատիայի ընդլայնման, հասարակության քաղաքական հիմքերի ամրապնդման և ժողովրդի նյութական պայմանների անընդհատ բարելավման մեջ։

Որպես համաշխարհային քաղաքականության հզոր ու ինքնուրույն գործոն, սոցիալիստական սիստեմը դարձել է հակաիմպերիալիստական պայքարի էպիկենտրոնը։ Նա մարդկային հասարակության զարգացման վճռական գործոնի է վերածվում։

Այն փաստը, որ իմպերիալիստական տիրապետության ոլորտները զգալի կրճատվել են և սոցիալիզմը վերընթաց գծով է զարգանում, վկայում են համաշխարհային ասպարեզում դասակարգային ուժերի հարաբերակցության արմատական փոփոխության մասին հօգուտ սոցիալիզմի։

Դա հետպատերազմյան ժամանակաշրջանում համաշխարհային զարգացման գլխավոր արդյունքն է։

Ժամանակակից պայմաններում մարդկային պատմության վերընթաց զարգացման ամբողջ ընթացքը, տենդենցներն ու պրոցեսը կապված են սոցիալիզմի ու կապիտալիզմի միջև ուժեղացող պայքարի հետ, որը համաշխարհային զարգացման հեռանկարների տեսակետից վճռական, որոշիչ նշանակություն ունի։

* * *

Հասարակական առաջադիմությունը պատմության օրենքն է։ Եթե կապիտալիզմը պատմական զարգացման անհրաժեշտ ու անցողիկ աստիճաններից մեկն է և իր արտացոլումն է գտնում այն ժամանակի ու պայմանների մեջ, որոնց պարտական է իր ծագումով, ապա նրա կողմից կյանքի կոչված գաղութատիրության վիճակը երբեք ու ոչ մի պայմաններում անհրաժեշտություն չի եղել և չի կարող արդարացվել ոչ մի փաստարկով։

Հոկտեմբերյան հեղափոխությունն իր պատմական նշանակությամբ հին աշխարհի վերափոխման վճռական գործոնն է նաև այն տեսանկյունից, որ գաղութային երկրների աշխա-

տավոր շերտերին ակտիվ քաղաքական գործունեության արթնացրեց։ Այն գաղութային ժողովուրդների ճնշման դեմ ուղղված շարժման նախերգանքն էր, որ սկիզբ դրեց իմպերիալիզմի գաղութային սիստեմի ճգնաժամին։ Վ. Ի. Լենինը գրում էր, որ սոցիալիստական հեղափոխությունը Ռուսաստանում կոգեշնչի գաղութային ու կիսագաղութային վիճակում ապրող ժողովուրդներին և նրանց պայքարի դուրս կբերի իմպերիալիզմի դեմ։

Ֆաշիզմի ջախջախման և սոցիալիզմի ուղու վրա նորանոր ժողովուրդների ոտք դնելու հետևանքով նպաստավոր պայմաններ ստեղծվեցին մասսայական հակագաղութային, ազգային-ազատագրական շարժման համար։

Հետպատերազմյան ժամանակաշրջանում հակագաղութային պոռթկումները վերածվեցին գաղութային բռնակալության շղթաները փշրող անհաղթահարելի հոսանքի։ Իմպերիալիստական գաղութատիրության սիստեմը փլուզվեց։

Մոնոպոլիստական բուրժուազիայի գաղափարախոսները բազմիցս պնդել են և այժմ նույնպես մեծախոսում են այն մասին, թե կապիտալիզմը թույլ զարգացած երկրներում «քաղաքակրթական միսիա» է կատարել, առաջադիմություն և կուլտուրա է տարածել։ Սակայն այս հնարամտությունները զուրկ են որևէ ռեալ հիմքից և բախվելով փաստերին, հողմացրիվ են լինում։ Պատմությունը փաստերի լեզուն է։ Իմպերիալիստներն անողոքաբար թալանել են գաղութացված ժողովուրդներին։ Ասիայի և Աֆրիկայի երկրների անսպառ բնական հարստությունները, դրանց ժողովուրդների էժան բանվորական ուժը շահութաբեր աղբյուր էին գաղութատերերի համար։ Գաղութային տիրապետության հսկայական բուրգի յուրաքանչյուր աստիճանը մարդկային արյամբ էր շաղախված։ «Քաղաքակրթության» տարածումն ուղեկցվում էր ավերակների կույտով և դիակներով, սովից, համաճարակներից և իմպերիալիստների հրահրած պատերազմներում նահատակված միլիոնավոր մարդկային զոհերով։ Կ. Մարքսը նկատում էր, որ Հնդկաստանում անգլիացիների տիրապետության պատմության էջերը խոսում էին միայն կործան-

ման մասին, նրանց «ստեղծագործական աշխատանքը» երևվում է ավերակների կույտի մեջ։

1952 թվականին Հարավային Աֆրիկայի հանքավայրերում աշխատող սպիտակամորթ հանքագործներն ամսական 30—56 ֆունտ ստեռլինգ էին ստանում (84—156,8 դոլար)։ Դրան գումարած լրացուցիչ վճարումները՝ թանկության պատճառով։ Աֆրիկայի ածխագործներն ամսական 69—172 շիլինգ էին վաստակում (9,66—24,08 դոլար)։ Նավահանգիստներում և երկաթուղիներում աշխատող սպիտակամորթների շաբաթական աշխատավարձը 90—174 շիլինգ էր (12,6—24,36 դոլար)։ Եվ դա այն ժամանակ, երբ տեղացի բանվորներն ստանում էին 29 շիլինգ։ Հարավ-Աֆրիկյան Միությունում կրթության համար ավելի քիչ միջոցներ էին ծախսվում, քան ոստիկանության վրա։ 1950 թվականին Հարավային Ռոդեզիայում գունավոր բնակչությունը 20 անգամ գերազանցում էր սպիտակամորթներին, սակայն ընտրություններին թույլատրվել էր մասնակցել 407 մարդ աբորիգեններից և 52664 սպիտակամորթ։ 1949 թվականին Քենիայում աֆրիկյան բնակչության մեկ շնչին ընկնող տարեկան միջին եկամուտը 6 ֆունտ ստեռլինգ էր (16,8) դոլար։ Մարոկկոյում յուրաքանչյուր 30 հազար բնակիչներին մեկ մասնավոր բժիշկ էր ընկնում։ 1954 թվականին բելգիական Կոնգոյում բացվեց մի կոլեջ, որտեղ կարող էին սովորել 24 ուսանող։ Դա նշանակում է, որ Կոնգոն հասնում էր ԱՄՆ-ի 1636 թվականի մակարդակին[1]։

Այսպիսով, ֆինանսական կապիտալի ջատագովների բոլոր երգերը կապիտալիզմի «քաղաքակրթական միսիայի» մասին գաղութային ժողովուրդների համար հնչում էին որպես թաղման զողանջ։ Առանձին կապիտալիստական երկրների տնտեսական բարեկեցությունը և բարձր կենսամակարդակը պայմանավորված է հենց գաղութային երկրների ժողովուրդների անողոք շահագործմամբ։

Գաղութատիրությունը պետք է պայթեցվեր իր ոչ մարդկային, անբնական էության պատճառով։ Սակայն գաղութային լծի տակ հեծող ժողովուրդները դրա համար բավական-

[1] Տե՛ս Дж. Озер. Должны ли люди голодать, էջ 278—285։

չափ ուժ չունեին։ Եվ միայն այն բանից հետո, երբ սոցիալիզմը վերածվեց համաշխարհային սիստեմի, հակաիմպերիալիստական պայքարի նյութական բազան ամրապնդվեց, պայմանավորելով ազգային-ազատագրական հեղափոխությունների բուռն թափը և աննախադեպ մասշտաբները։ «Աշխարհն ապրում է ազգային-ազատագրական բուռն հեղափոխությունների դարաշրջան։ Եթե իմպերիալիզմը ճնշել է ժողովուրդների մեծամասնության ազգային անկախությունը և ազատությունը, նրանց կաշկանդել է գաղութային դաժան ստրկության շղթաներով, ապա սոցիալիզմի առաջացումը նշանավորում է ճնշված ժողովուրդների ազատագրության դարագլխի սկիզբը»[1]: Դեռ 1939 թվականին գաղութային ու կախյալ երկրներում 1,5 միլիարդ մարդ էր ապրում։ Ազգային-ազատագրական հեղափոխությունների ալիքը գնալով ավելի վեր է բարձրանում, որի հզոր ճնշման տակ խարխլվում և փլվում են գաղութատիրության հիմքերը։ Նախկին գաղութների և կիսագաղութների փոխարեն ծագել և ծագում են երիտասարդ սուվերեն պետություններ, որոնց թիվը ներկայումս 70-ից անցնում է։

Իմպերիալիստական բուրժուազիայի գաղափարախոսներն ու քաղաքական գործիչները գաղութային ժողովուրդների ազատագրական շարժման ժամանակակից պայմաններում բղավում են այն մասին, թե իբր այդ ժողովուրդներին կապիտալիզմի «վերնախավն է» ազատություն ու անկախություն տրամադրել այն կապակցությամբ, որ նրանք մտավոր ու գործնական կողմերով հասունացել են ինքնավարության համար։ Այսպիսի փարիսեցիությունը թելադրված է գաղութատերերին բարեգործներ, մարդասերներ ներկայացնելու ձգտումով։ Կապիտալիզմը չափազանց ծանրաբեռնված է ոսկեմոլությամբ, որպեսզի զբաղվի ֆիլանտրոպությամբ։ Նա երբեք կամովին չի հրաժարվում իր արտոնություններից։ Ռեպրեսիաներով, խոշտանգումներով ու արյամբ է նա պահպանում իր դիրքերը գաղութներում։ Եվ եթե այսօր ստիպված է նահանջել նման դիրքերը, ապա միայն ազգային-ազատա-

---

[1] ՍՄԿԿ ծրագիրը, էջ 52։

գրական հեղափոխությունների հուժկու հարվածների տակ։ Բայց իմպերիալիզմը առիթը բաց չի թողնում կորցրածը վերադարձնելու համար։ Նա գիշատչի կատաղությամբ նոր թռիչքներ է գործում, փորձելով անկախություն նվաճած երկրներին նորից իր սարդոստայնը գցել։ Կապիտալիստական աշխարհի քաղաքական հորիզոնում գաղութարարների ինչ-որ մարդասիրական նկատառումների մասին հնչող կեղծ նոտաները նպատակ ունեն հարկադրված գործողությունը որակել իբրև կամավոր քայլ։

Քաղաքական անկախություն նվաճելը դեռևս լիովին ազատություն և անկախություն չի ապահովում։ Պետության սուվերենությունը պայմանավորված է նաև տնտեսական անկախությամբ։ Չի կարելի անտեսել այն փաստը, որ ազատագրված երկրների ճնշող մեծամասնությունը դեռևս չի ազատվել համաշխարհային կապիտալիզմի տնտեսական տիրապետությունից և շահագործվում է իմպերիալիստական մոնոպոլիաների կողմից։ Ուստի իմպերիալիզմի տնտեսական կախվածությունից այդ երկրների պոկվելը կենսական անհրաժեշտություն է։ Կապիտալիստական մոնոպոլիաները համեմատաբար ամուր տնտեսական դիրքեր ունեն նախկին գաղութներում։

Սեփական էկոնոմիկայի ստեղծումը բարդ ու հակասական պրոցես է։ Տասնամյակների ընթացքում արմատավորված կապիտալիստական կապերը հնարավոր չէ միանգամից վերացնել։ Դա կախված չէ սուբյեկտիվ ցանկություններից ու կամքից, այլ կարող է իրականացվել ազգային էկոնոմիկայի նյութատեխնիկական բազան ստեղծելուն զուգընթաց։ Այս հարցում մեծ է սոցիալիստական սիստեմի դերը, որ ազատագրված երկրներին առանց որևէ քաղաքական պայմանի անշահախնդիր օգնություն է առաջարկում, հնարավորություններ ստեղծելով տնտեսական ինքնուրույնություն ձեռք բերելու համար։

Նախկին գաղութային երկրներն ազգային մեծ խնդիրների առաջ են կանգնած, որոնց լուծումը կախված է ազգի բոլոր առաջադեմ ու հայրենասիրական ուժերի գործողությունների

միասնությունից։ Դա է երկրի հասարակական կյանքի բոլոր ոլորտներից իմպերիալիզմին դուրս մղելու գլխավոր գործոնը։

Միայն սոցիալ-տնտեսական խոր վերափոխություններն ու ազգային վերածննդի կենսական խնդիրների լուծումն են քաղաքական անկախության անհրաժեշտ նախադրյալները։ Իսկ ամուր տնտեսական հիմքով ամրացված քաղաքական անկախությունը միջազգային կյանքում ազատագրված երկրների դերի աճման պայմանն է։ Հարկավոր է ընդգծել նաև այն, որ սոցիալ-տնտեսական վերափոխությունների հիմնավոր լինելը կախված է նաև այնպիսի սուբյեկտիվ գործոնից, թե ո՞ր դասակարգն իր վրա կվերցնի դրանց իրականացումը։ Գաղութային լծից ազատագրված երկրների զարգացման մեջ կարևոր է այն, թե ով կկատարի հեղափոխական վերափոխությունների հեգեմոնի դերը։

Անվիճելի է, որ առայժմ ազատագրված երկրների պրոլետարիատը փոքրաթիվ է և վատ կազմակերպված, որը բացատրվում է սեփական զարգացած արդյունաբերության և հեղափոխական ավանդույթների բացակայությամբ։ Նրա դերը, երկրի հասարակական-քաղաքական կյանքում տեղական արդյունաբերության զարգացմանն ու բանվորների թվի ավելացմանը զուգընթաց, կաճի։ Ինչքան բազմաքանակ ու կազմակերպված լինի բանվոր դասակարգը, այնքան ակտիվորեն ու վճռականորեն նա կմասնակցի երկրի կյանքում իրականացվող միջոցառումներին և այնքան հիմնավոր կլինեն սոցիալական, դեմոկրատական վերափոխությունները։

Նախկին գաղութային երկրներում բնակչության հիմնական մասը իմպերիալիզմի կողմից ծեծկված ու հետամնաց գյուղացիներն են, որոնք զարթոնք են ապրում այն պայմաններում, երբ քաղաքական անկախություն է նվաճվել։ Նրանց բացարձակ մեծամասնությունը շահագրգռված է խորը դեմոկրատական վերափոխությունների մեջ։ Դա այնպիսի հեղափոխական տենդենց է, որ կարող է ծառայել որպես օբյեկտիվ բազա բանվոր դասակարգի և գյուղացիության գործողությունների միասնության համար։ Գյուղացիությունն իր ներկայիս աղքատ ու ընկճված վիճակից կարող է ազատվել միայն այն պայմանով, եթե դաշինքի մեջ մտնի բանվոր դասակարգի

հետ։ Այդ դաշինքը խոր դեմոկրատական վերափոխությունների, տնտեսական ու սոցիալական առաջադիմության հաջող իրականացման գլխավոր պայմանն է։

Քաղաքական կախվածությունից ազատագրված ժողովուրդների զարգացման ընդհանուր ուղղությունն ու հեռանկարներն ըմբռնելու համար անհրաժեշտ է հաշվի առնել նաև ազգային բուրժուազիայի դերը նրանց կյանքում։ Ազգային էկոնոմիկայի զարգացմանը զուգընթաց աճում են տեղական բուրժուազիայի շարքերը, որը ներկա էտապում այդ երկրների կյանքում առաջատար դեր է խաղում։ Բայց ազգային բուրժուազիան իր էությամբ երկակի, հակասական բնույթ ունի։ Նա ձգտում է ձեռք բերել ամուր տնտեսական դիրքեր, որոնցից դեռևս զուրկ է։ Սակայն այդ նպատակին հասնելն անհնարին է առանց սոցիալական կյանքի տնտեսական օղակներից իմպերիալիստական մոնոպոլիաներին դուրս մղելու։ Ազգային բուրժուազիան հակաիմպերիալիստական տենդենց և շահագրգռվածություն է ցուցաբերում հակաիմպերիալիստական և հակաֆեոդալական հեղափոխության հիմնական խնդիրների իրականացման մեջ։ Այս տեսակետից, ազգային բուրժուազիան, մասնակցելով երկրի կենսական խնդիրների լուծմանը, առաջադիմական դեր է խաղում։ Նա միաժամանակ ճնշված ազգի նացիոնալիզմի կրողն է, որի մեջ համադեմոկրատական բովանդակություն կա պատմական այն էտապում, երբ պայքար է ծավալվում իմպերիալիստական գաղութատիրության և նրա նոր ձևերի դեմ հանուն քաղաքական ու տնտեսական սուվերենության, ազգային վերածննդի և սոցիալական առաջադիմության։

Սակայն տեղական բուրժուազիան իր տնտեսական դիրքերի ամրապնդմանը զուգընթաց կարող է խաղալ զարթնող ապրող մասսաների ազգային զգացմունքների հետ, նացիոնալիզմի հետ սիրակատակել, որպեսզի մասսաներին տանի իր ետևից և նացիոնալիզմի դրոշի ներքո սոցիալական կյանքի բոլոր ոլորտներում անբաժան տիրապետության հասնի։

Ազգային բուրժուազիայի դերը գնահատելիս պետք է նկատի առնել, որ թույլ զարգացած երկրներում նրա առաջացումը շաղկապվում է սեփական խոշոր արդյունաբերության

*ստեղծման պրոցեսի հետ, որը միաժամանակ ուղեկցվում է արդյունաբերական պրոլետարիատի գոյացմամբ։ Այս երկըրներում տեղական բուրժուազիան դեռևս փոքրաթիվ ու սակավազոր է, սակայն նա միշտ էլ մնում է որպես շահագործող դասակարգ և ամենատարբեր պայմաններում նրա շահագործողական էությունը չի փոխվում։ Դա առանձնապես ցայտուն կերպով է դրսևորվում ազգային ազատագրությունից հետո։ Ազգային բուրժուազիան վախենում է երկրի ներսում կատարվող արմատական սոցիալական վերափոխություններից, որոնք կարող են իր դեմ ուղղվել։ Դրա համար էլ երկրի ներսում միջդասակարգային հակասությունների աճման և դասակարգային պայքարի սրմանը համեմատ ուժեղանում է իմպերիալիզմի ու ներքին ռեակցիայի հետ համաձայնության գալու և գործարքների մեջ մտնելու նրա հակումը։ Միաժամանակ նա կարող է դիմել մասսաներին շեղելու այնպիսի փորձված մեթոդի, ինչպիսին նացիոնալիզմն է։ Հենց բուրժուազիայի նեղդասակարգային էգոիզմի հետ է կապված նացիոնալիզմը, որից կառչում է նա իր գործունեության տարբեր էտապներում։*

*Ազգային շահերի և սոցիալական առաջադիմության, համընդհանուր բուռն վերելքի և ամբողջ հասարակության աշխատավոր շերտերի արմատական շահերի համար պայքարող ամենահետևողական մարտիկը բանվոր դասակարգն է, որին օտար է նացիոնալիզմը և որը ազատ է «ազգային նախապաշարմունքներից և ազգային սնապարծությունից, այդ փչացած զգացմունքներից, որոնք վերջին հաշվով սոսկ խոշոր մասշտաբի էգոիզմ են»*[1]*։ Թե ո՞ր ուղիով կընթանան և ինչպիսի ապրելակերպ կընտրեն գաղութատիրության լծից ազատագրված ժողովուրդները, վերջին հաշվով կախված է դասակարգային ուժերի հարաբերակցությունից ու դասավորությունից երկրի ներսում, սոցիալիզմի և կապիտալիզմի միջև ծավալվող պայքարի արդյունքներից, համաշխարհային ասպարեզում և միջազգային ամբողջ իրադրության վրա այդ սիստեմների ներգործության ուժից։ Սոցիալիզմի և ազգային-ազա-*

---

[1] К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 3, стр. 236.

տագրական շարժման ուժերի դաշինքը իմպերիալիզմի դեմ, հանուն ազգային անկախության և սոցիալական առաջադիմության մղվող պայքարի հաջողության կարևոր նախադրյալն է։

Սոցիալիզմի գաղափարը արդիականության ամենատարածված գաղափարներից մեկն է, որի նյութականացումը երկրագնդի մի շարք երկրներում նոր ապրելակերպի հաստատման օրինակ է։ Սոցիալիզմը նոր ուղիներ է ցույց տալիս մարդկությանը։ Կոմունիստական կուսակցությունները հետևողականորեն պայքարում են հակաիմպերիալիստական, հակաֆեոդալական դեմոկրատական հեղափոխությունը մինչև վերջ հասցնելու և ազգային դեմոկրատիայի պետություն ստեղծելու համար։ Այդ նպատակները համապատասխանում են ազգի բարձրագույն շահերին։ Այս փաստը չի վրիպում իմպերիալիզմի գաղափարախոսների և քաղաքագետների տեսադաշտից։ Նրանք զրպարտում են կոմունիստներին, հակակոմունիզմը օգտագործում որպես գաղափարական զենք ազգային ճակատը քայքայելու, ազգի առաջադեմ, հեղափոխական ուժերի դիրքերը շլատելու համար։

Ազգային վերածննդի ճանապարհը դուրս եկած երկրների զարգացման հեռանկարները կարևոր են ոչ միայն նրանց ապագա սոցիալական կառուցվածքի, այլև այն հասարակական-քաղաքական ուժերի հարաբերակցության տեսակետից, որոնց միջև ծավալվող պայքարի վախճանից է կախված համայն մարդկության ապագան։

Ներկայումս մի բան անառարկելի է. գաղութային սիստեմի փլուզումը հակաիմպերիալիստական, հեղափոխական իրադարձություն է։ «...Միլիոններ ու հարյուրավոր միլիոններ,— փաստորեն երկրագնդի բնակչության վիթխարի մեծամասնությունը,— հանդես են գալիս իբրև ինքնուրույն ակտիվ հեղափոխական գործոններ։ Եվ կատարելապես պարզ է, որ համաշխարհային հեղափոխության ապագա վճռական ճակատամարտերում երկրագնդի բնակչության մեծամասնության շարժումը, որ սկզբում ուղղված էր ազգային ազատագրության նպատակին, կշրջվի կապիտալիզմի ու իմպերիալիզմի դեմ, և

*դուցե շատ ավելի մեծ հեղափոխական դեր խաղա, քան մենք սպասում ենք»*[1]։

*Եվ այն հանգամանքը, որ գաղութային լուծը թոթափած երկրների աշխատավոր մասսաները վերածվում են համաշխարհային քաղաքականության և իմպերիալիզմի հեղափոխական խորտակման ակտիվ գործոնի, վկայում է վերընթաց գծով համաշխարհային զարգացման վիթխարի արագացման մասին։*

*Իմպերիալիզմի գաղութային կայսրության փլուզման նշանակությունը ճիշտ գնահատելու համար անհրաժեշտ է հաշվի առնել քաղաքական այն օգուտները, որոնք ստանում էին իմպերիալիստները գաղութների շահագործումից։ Արտաքին ոլորտներում յուրացրած եկամուտները իմպերիալիստներն օգտագործում են ներքին շատ պրոբլեմներ լուծելու համար։ Վ. Ի. Լենինը գրում էր, որ բարձր մենաշնորհային շահույթները իմպերիալիստներին տնտեսական հնարավորություն են ստեղծում բանվորների առանձին միջնաշերտերին կաշառելու և բուրժուազիայի կողմը քաշելու համար։ Եվ իմպերիալիստական պետությունների աճող հակամարտությունը ուժեղացնում է այդ տենդենցը։ Այսպես է ստեղծվում կապը իմպերիալիզմի և օպորտունիզմի, ինչպես նաև գաղութատիրության ու իմպերիալիստական շովինիզմի միջև։*

*Թույլ զարգացած երկրներում կապիտալիզմի «քաղաքակրթական միսիայի» մասին պրոպագանդիստական հնարանքները ռասիզմի երանգներից մեկն են, որի հակառակ կողմը շովինիզմն է։ Իսկ շովինիստական գաղափարների տարածումը տարբեր ուղիներով ներգործում է աշխատավոր մասսաների վրա, շեղում նրանց սոցիալական և ազգային ազատագրության խնդիրների լուծումից։ Գաղութային սիստեմը ընդարձակեց մոնոպոլիստական կապիտալիզմի տիրապետության ոլորտը։ Այն իմպերիալիստներին հնարավորություն տվեց գաղութների հաշվին ժամանակավորապես թուլացնել ներկապիտալիստական հակասությունները։ Միաժամանակ հումքի մատակարարման շնորհիվ մետրոպոլիաներում ապա-*

---

[1] Վ. Ի. Լենին, *Երկեր, հատ. 32, էջ 622։*

հովվում էր կապիտալի վերարտադրությունն ու կուտակումը, ձգձգվում կապիտալիզմի կործանման պայմանների հասունացումը։

Այս դրությունն անցյալի գիրկն է անցնում։ Գաղութատիրության կրախը անհաղթահարելի ու անդառնալի պրոցես է։ Այդ պատմական իրադարձությունն արմատապես փոխում է աշխարհի տեսքը, իմպերիալիզմին կանգնեցնելով այնպիսի պայմանների առջև, որոնց մեջ բազմապատկվում են նրա ներտնտեսական և քաղաքական հոգսերը։ Ազատագրված թույլ զարգացած երկրներում իմպերիալիստական մոնոպոլիաների տնտեսական դիրքերը նույնպես անցողիկ, ոչ կայուն վիճակ են։ Բնորոշ է հետևյալ փաստը. գաղութատիրության խորտակման սկզբնական էտապում գաղութային և կախյալ երկրներին, որտեղ ապրում էր երկրագնդի բնակչության երկու երրորդը, բաժին էր ընկնում կապիտալիստական աշխարհի արդյունաբերական արտադրության 5 տոկոսը։ Ազատագրումից հետո սկսված տնտեսական առաջընթացը ժամանակի օրինաչափությունն է։ Վաղ, թե ուշ, նայած, թե որ ուղիով կընթանան այդ երկրները, «թույլ զարգացած» հասկացությունը այլևս չի կիրառվի նրանց նկատմամբ նույնիսկ այն պարագայում, եթե այդ երկրների մի մասը հասնի տնտեսական զարգացման միջին աստիճանին։ Կապիտալիստական մոնոպոլիաները հարկադրված կլինեն ժամանակի ընթացքում աստիճանաբար նահանջելու իրենց ելման դիրքերը։ Այդ հանգամանքն է՛լ ավելի կխճճի ներկապիտալիստական հակասությունները։ Մոնոպոլիաներնստիպված կլինեն տեղ որոնելու և՛ մետրոպոլիաներում, և՛ առհասարակ կապիտալիստական աշխարհում։ Թույլ զարգացած երկրների ժողովուրդների և նրանց բնական հարստությունների շահագործման հաշվին ստացվող բարձր շահույթների մասշտաբներն ու հնարավորությունները զգալիորեն կկրճատվեն։ Մոնոպոլիաները կփորձեն այդ կորուստը փոխհատուցել իրենց երկրների ժողովուրդների շահագործման ուժեղացման հաշվին։ Դա կսրի ներքաղաքական հակասությունները և այսպիսով կթուլացնի կապիտալիստական տիրապետության հիմքերը։ Այդ ֆոնի վրա օբյեկտիվորեն կգծագրվի ազատագրված ժողովուրդների հա-

*րանուն դերը աշխարհի քաղաքական կյանքում, իմպերիալիզմի կործանումն արագացնելու գործում։*

«Ազգային-ազատագրական շարժման գրոհի տակ գաղութային ստրկության սիստեմի կործանումը սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորումից հետո, իր պատմական նշանակությամբ երկրորդ երևույթն է»[1]:

*Այսպիսով, սոցիալիզմի վերածումը համաշխարհային սիստեմի և իմպերիալիզմի գաղութային կայսրության կործանումը համաշխարհային պատմության երկու ամենից ավելի նշանակալից իրադարձություններն են ժամանակակից աշխարհում։*

*Սակայն այդ իրադարձություններով չի սպառվում պատմական այն իրադրության բովանդակությունը, որ օբյեկտիվորեն առաջացավ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո։*

* * *

*Մեր դարաշրջանում հասարակական ամբողջ առաջընթացը կապված է իմպերիալիզմի դեմ մղվող պայքարի հետ։ Հակաիմպերիալիստական շարժումը ներկայումս համընդհանուր պրոցես է, որ ծավալվում է խորությամբ ու լայնությամբ։ Ժամանակակից դարաշրջանի պահանջների հետ իմպերիալիզմի անհամատեղելիության գաղափարն ավելի ու ավելի է թափանցում մարդկության բազմապիսի շերտերի և ամենից առաջ աշխատավորների գիտակցության մեջ։ Իսկ որքան ավելի գիտակցաբար է ծավալվում պայքարը, այնքան ավելի ռեալ է դառնում դրա հաջողությունը։ Ամեն մի շարժման ուժն ու հեռանկարները մեծ մասամբ կախված են այն բանից, թե ինչ չափով է այն արտահայտում համամարդկային առաջընթաց զարգացման շահերն ամբողջովին վերցրած։*

*Կոմունիստական շարժումը արդիականության ամենաազդեցիկ շարժումն է, որի խնդիրներն ու նպատակները լիովին*

---

*[1] «Կոմունիստական և բանվորական կուսակցությունների ներկայացուցիչների խորհրդակցության հայտարարությունը», Հայպետհրատ, 1960, էջ 41։*

համապատասխանում են համամարդկային առաջընթացի շահերին։ Այդ շարժման վերջնական նպատակը իսկական մարդկային հարաբերությունների հաղթանակն է, որոնց մեջ «յուրաքանչյուրի ազատ զարգացումը բոլորի ազատ զարգացման պայմանն է»[1]։

Կոմունիստներն իրենց պայքարում ռադիկալ և հումանիստական նպատակներ են հետապնդում։ Հենց դրանք էլ պայմանավորում են այդ պայքարի հակաիմպերիալիստական բովանդակությունը։ Համաշխարհային կոմունիստական շարժումը, որպես մեր ժամանակի ամենաազդեցիկ քաղաքական ուժը, դարձել է հասարակական առաջընթացի վճռական գործոնը։ Պրոլետարիատի միջազգային հեղափոխական շարժման գլխավոր նվաճումը համաշխարհային սոցիալիստական սիստեմի կազմավորումն է։ Դա նշանակում է, որ աշխարհի մի շարք երկրներում պրոլետարիատը պետականորեն ձևակերպված դասակարգ է դարձել և կապիտալիզմին հակադրում է իր պետական կազմակերպությունը։ Եթե բուրժուազիայի համապարփակ տիրապետության պայմաններում այս կամ այն երկրի բանվորներն իրենց համարձակ հեղափոխական գործողություններով էին իմպերիալիզմի դեմ պայքարի օրինակ ցույց տալիս, ապա ներկայումս 14 երկրներում հաղթանակած սոցիալիզմն իր գոյությամբ է հեղափոխականացնող ներգործություն ունենում կապիտալիստական աշխարհի աշխատավորների վրա, նրանց հակաիմպերիալիստական պայքարի ոգեշնչելով։ Սոցիալիզմի գոյությունն ու վերընթաց շարժումը մեծ չափով թեթևացնում է կապիտալիստական երկրների աշխատավորների հեղափոխական պայքարի պայմանները։ Մյուս կողմից՝ կապիտալիստական երկրների ներսում մոնոպոլիստական բուրժուազիայի տիրապետության դեմ ուղղված պրոլետարիատի դասակարգային պայքարը նպաստում է սոցիալիստական երկրների գիտականորեն մշակված պատմական խնդիրների իրագործմանը, որոնք համամարդկային բովանդակություն ունեն։

---

[1] **К. Маркс и Ф. Энгельс,** Соч., т. 4, стр. 447.

Կոմունիզմը միակ քաղաքական շարժումն է աշխարհում, որը զինված է հասարակական զարգացման գիտական տեսությամբ և բացահայտում է մարդկության զարգացման պատմական հեռանկարները։ Ներկայումս բոլոր մայրցամաքներում գործող 88 կոմունիստական կուսակցություններում 50 միլիոն անդամներ կան։ Այսպիսի կտրուկ քանակական աճը օրինաչափորեն նախապատրաստվեց իրադարձությունների զարգացման ամբողջ ընթացքով՝ պատերազմի տարիներին, և պատերազմից հետո աշխարհն ընդգրկած արմատական փոփոխությունների բաղադրիչ մասերից մեկն է։

Երկրորդ համաշխարհային պատերազմը լուրջ քննություն էր քաղաքական բոլոր ուժերի համար։ Այն մերկացրեց իմպերիալիզմը, միաժամանակ ցուցադրելով սոցիալիզմի կենսունակությունը, կոմունիստական շարժման ուժն ու լիիրավությունը։ Ժողովուրդների ազատության ու անկախության համար ֆաշիզմի դեմ ծավալված կատաղի գոտեմարտերում թափած արյամբ կոմունիստները նվաճեցին մասսաների վստահությունը։ Գործով նրանք ապացուցեցին իրենց իսկական հայրենասիրությունը։ Ֆաշիստական մղձավանջի տարիներին նրանք ակտիվորեն մասնակցում էին կապիտալիստական երկրների քաղաքական կյանքին, բացահայտում կապիտալիզմի հակաժողովրդական բնույթը։ Զինված միջամտությամբ, տեռորով, խաբեությամբ, մեքենայություններով և բանսարկությամբ մոնոպոլիստական բուրժուազիային հաջողվեց Եվրոպայի մի շարք երկրներում պահպանել կապիտալիստական կարգերը։ Բայց եթե որոշ ժամանակով մի կերպ կարելի է պահպանել հին իշխանությունը, ապա հնարավոր չէ փակել հեղափոխական գաղափարների ճանապարհը, մասսաներին հեռու պահել այդ գաղափարների բարերար ներգործությունից։ Գիտական կոմունիզմի գաղափարները տարածելու և կապիտալիստական իրականության արատներն ու խոցերը մերկացնելու ուղղությամբ աշխատավորների շրջանում հետևողական, համբերատար աշխատանքն արագացնում է կապիտալիզմի կործանման պրոցեսը։ «Իմպերիալիստական ռեակցիայի դեմ, բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների շահերի համար, խաղաղության, ազգային անկախության, դեմոկրա-

տիալի և սոցիալիզմի համար մղվող կատաղի պայքարում կոմունիստական շարժումն անշեղորեն ընթանում է առաջ, համախմբվում է և կոփվում»[1]։

Իմպերիալիզմի վերջնական խորտակումը կհանդիսանա տարատեսակ հակաիմպերիալիստական շարժումների հետևվանքը։ «...Կարծել, թե սոցիալական հեղափոխությունը հնարավոր է առանց փոքր ազգերի ապստամբության գաղութներում ու Եվրոպայում առանց մանր բուրժուազիայի մի մասի հեղափոխական պոռթկումների՝ նրա բոլոր նախապաշարումներով հանդերձ, առանց անգիտակից պրոլետարական ու կիսապրոլետարական մասսաների շարժման՝ ընդդեմ կալվածատիրական, եկեղեցական, միապետական, ազգային ու այլ ճնշման,—կարծել այսպես՝ նշանակում է հրաժարվել սոցիալական հեղափոխությունից... Ով «մաքուր» սոցիալական հեղափոխություն է սպասում, նա երբեք այն չի տեսնի։ Խոսքով է հեղափոխական նա, ով չի հասկանում իսկական հեղափոխությունը»[2]։

Սակայն անկասկած, ամենահզոր հակաիմպերիալիստական գործոնը համաշխարհային կոմունիստական շարժումն է, որը հուշակում է հասարակության կազմակերպման բարձրագույն ձևի հաղթանակը։

Կոմունիստական շարժումը կապիտալիստական երկրներում պոտենցիալ հեղափոխական գործոն է, որ հարկ եղած դեպքում ներսից կհարվածի իմպերիալիզմին։ Պատմությունը չգիտե նման օրինակներ, երբ որևէ քաղաքական շարժում կարճ ժամանակամիջոցում այնպիսի լայն ինտերնացիոնալ տարածում ստանա, ինչպես դա հատուկ է կոմունիստական շարժմանը։ Դրա վերջնական հաղթանակի ռեալ հնարավորությունն ու օբյեկտիվ անհրաժեշտությունը բխում է հասարակության զարգացման օրինաչափություններից, իր արտացոլումը գտնում գիտական կոմունիզմի տեսության մեջ և հաստատվում է պատմական փաստերով։

Հետպատերազմյան ժամանակաշրջանի պատմական մեծ

---

[1] «Կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ներկայացուցիչների խորհրդակցության հայտարարությունը», էջ 62։

[2] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 22, էջ 479։

իրադարձությունները՝ համաշխարհային սոցիալիստական սիստեմի կազմավորումն ու աճը, իմպերիալիզմի գաղութային սիստեմի փլուզումը, համաշխարհային կոմունիստական շարժման վերածումը մեր ժամանակի ամենաազդեցիկ ուժի արմատապես փոխեցին դասակարգային և հասարակական-քաղաքական ուժերի հարաբերակցությունը միջազգային ասպարեզում՝ հօգուտ սոցիալիզմի, դեմոկրատիայի և համամարդկային առաջադիմության։ Հակաիմպերիալիստական պայքարի հզոր հոսանքի մեջ միահյուսվում են սոցիալիստական, ազգային-ազատագրական, համադեմոկրատական շարժումները, որոնք խարխլում ու քայքայում են իմպերիալիզմի հիմքերը։ «Արդի դարաշրջանը, որի հիմնական բովանդակությունը անցումն է կապիտալիզմից սոցիալիզմին, երկու հակադիր հասարակական սիստեմների պայքարի դարաշրջանն է, սոցիալիստական և ազգային-ազատագրական հեղափոխությունների դարաշրջանը, իմպերիալիզմի կործանման, գաղութային սիստեմի վերացման դարաշրջանը, նորանոր ժողովուրդների՝ սոցիալիզմի ուղին անցնելու, համաշխարհային մասշտաբով սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակի դարաշրջանը... Մարդկության պատմական զարգացման գլխավոր բովանդակությունը, նրա գլխավոր ուղղությունն ու գլխավոր առանձնահատկությունները որոշում են համաշխարհային սոցիալիստական սիստեմը, իմպերիալիզմի դեմ հասարակության սոցիալիստական վերակառուցման համար պայքարող ուժերը»[1]։

* * *

Կապիտալիստական սիստեմի ընդհանուր ճգնաժամի երկու էտապների դրսևորումներն էին համաշխարհային պատերազմները և այդ իրադարձությունների պայմաններում տեղի ունեցած սոցիալիստական հեղափոխությունները։

Կապիտալիզմի վերջնական կործանումը որոշակի ժամանակ ընդգրկող պատմական պրոցես է։ Եվ ինչպես կյանքն է ցույց տալիս, այդ պրոցեսը զարգանում է էտապներով ու

---

[1] ՍՄԿԿ ծրագիրը, էջ 5, 29։

համեմատաբար արագընթաց։ Եթե ֆեոդալիզմից հազարամյակներ պահանջվեց հասարակությունն առաջ մղելու համար, իսկ կապիտալիզմը երկու հարյուր տարվա ընթացքում ավելի հզոր արտադրողական ուժեր ստեղծեց, քան նախորդ հասարակարգերը միասին վերցրած, ապա սոցիալիզմի հաղթանակը պայմանավորեց պատմության վերընթաց զարգացման տեմպերի անօրինակ արագացում։

Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամը բնութագրվում է նրա բոլոր հակասությունների աննախադեպ սրումով։ Այդ հակասությունների գործողությունը չէր կարող չանդրադառնալ կապիտալիստական տերությունների ներտնտեսական և ներքաղաքական դրության վրա։ «Համաշխարհային պատերազմներն ու տնտեսական ճգնաժամերը, միլիտարիզմը և քաղաքական ցնցումները արագացրին մոնոպոլիստական կապիտալիզմի վերաճումը պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի»[1]։ Իմպերիալիստները կապիտալիզմի օբյեկտիվ օրենքների անտրտունջ ստրուկները չեն։ Իհարկե, նրանց սուբյեկտիվ ձգտումներն անկարող են փոխել կապիտալիստական հարաբերությունների ընդհանուր օրենքները, սակայն ամեն մի նոր անհաջողություն նրանց ստիպում է միջոցներ որոնել այդ օրենքների գործողությունը սահմանափակելու համար։ Այստեղ մեզ հետաքրքրում է ոչ թե պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի բոլոր տարրերի նկարագրությունը, այլ այն անմիջական կապը, որ գոյություն ունի իմպերիալիզմի զարգացման այդ էտապի և միլիտարիստական տենդենցների ուժեղացման հետ։

Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի պայմաններում ուժեղանում է բուրժուական պետության միջամտությունը ներտնտեսական ոլորտում։ Մոնոպոլիստական ընկերությունների շահերը պաշտպանելու նպատակով, բուրժուական պետությունն իր ձեռքում է կենտրոնացնում առանձին ձեռնարկություններ և նույնիսկ ամբողջ ճյուղեր, բազմապիսի միջոցառումներ իրականացնելով տնտեսական կյանքի կարևորագույն ոլորտները կարգավորելու համար։ Արդեն հենց

1 ՍՄԿԿ ծրագիրը, էջ 30։

համաշխարհային պատերազմներում հրամայական էր դառնում ռազմական էկոնոմիկայի կենտրոնացված ղեկավարությունը։ Պետական ֆինանսները և բյուջեն, որպես պետականմոնոպոլիստական կապիտալիզմի դրսևորումներից մեկը, անմիջապես կապված են պատերազմների ու միլիտարիզմի հետ։ Պետական ապարատ են թափանցում տիրապետող մոնոպոլիաների ներկայացուցիչները, որի հետևանքով հասարակության բոլոր լծակներն անցնում են մոնոպոլիաների իշխանության տակ։ Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո տեղի ունեցավ արտադրության համակենտրոնացման է՛լ ավելի ուժեղ աճ և մոնոպոլիաների տիրապետությունն է՛լ ավելի շոշափելի դարձավ։ Պետությունը վերածել է մոնոպոլիստական բուրժուազիայի գործերի կառավարման կոմիտեի։ Միլիարդատերերի և միլիոնատերերի մի խումբ տնօրինում է կապիտալիստական աշխարհի ամբողջ հարստությունը և քաղաքական իշխանությունն օգտագործում է նրանց դեմ պայքարելու համար, ովքեր փորձում են դիմակայել նրան։ «Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմը մոնոպոլիաների ուժը և պետության ուժը միավորում է միասնական մեխանիզմի մեջ՝ մոնոպոլիաները հարստացնելու, բանվորական շարժումը և ազգային-ազատագրական պայքարը ճնշելու, կապիտալիստական հասարակարգը փրկելու, ագրեսիվ պատերազմներ սանձազերծելու նպատակով»[1]։

Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմը մոնոպոլիաների գերիշխանության համակենտրոնացված արտահայտությունն է։ Ֆինանսական կապիտալի այսպես կոչված «էլիտան» իր ձեռքում է կենտրոնացնում երկրի ղեկավարման սանձերը, իր ամբողջ գործունեությունն ուղղելով իմպերիալիստական մասնավոր ձեռնարկատիրության շահերի պաշտպանությանը։ Մյուս կողմից՝ գեներալները, դիվանագետները, մինիստրները պաշտոններ են ստանում մոնոպոլիստական ընկերություններում։ Դա նշանակում է, որ տնտեսական ու քաղաքական ընդհանուր շահերով շաղկապված կապիտալի մագնատներն ու պետական չինովնիկները միաձուլվում են

---

[1] ՍՄԿԿ ծրագիրը, էջ 31։

միասնական շերտի մեջ։ Պատերազմների և էկոնոմիկայի ռազմականացման պայմաններում պետական պատվերների հիմնական մասը խոշոր մոնոպոլիաներն են ստանում, որոնց բուրժուական պետությունն առատ սուբսիդիաներ և հարկային արտոնություններ է տրամադրում։ Այստեղից հետևում է, որ ռազմամոլությունը մտրակում է պետական-մոնոպոլիստական նկրտումները։ Այսպիսով, իշխանության օրգանների և մասնավոր ձեռնարկատերերի գործողությունները կոորդինացվում են։

Ժամանակակից պայմաններում հեղափոխական վերափոխությունների հետևանքով կատարված իմպերիալիստական տիրապետության ոլորտների խիստ կրճատումը կապիտալիզմը կանգնեցրել է բարդ խնդիրների առջև։ Առանց շուկաների, սնանկացումն անխուսափելի է։ Այնպիսի օրինաչափության գործողությունը, ինչպիսին բնակչության վճարունակության ետ մնալն է արտադրության աճից, բացառում է այդ խնդիրը լուծելու հնարավորությունը։ Կապիտալիստները դիմում են միջազգային պետական-մոնոպոլիստական կազմակերպությունների ստեղծմանը՝ «ինտեգրացիայի» լոզունգների ներքո, որի նպատակն է փոխհատուցել կապիտալիզմի տիրապետության տերիտորիալ ոլորտների նվազումը։

Հայտնի է, որ դեռ 1957 թվականին Եվրոպայում ծնվեց «ընդհանուր շուկան», ուր մտան Ֆրանսիան, Արևմտյան Գերմանիան, Իտալիան, Բելգիան, Հոլանդիան և Լյուքսեմբուրգը։ Ավելի ուշ Անգլիայի նախաձեռնությամբ կազմակերպվեց «յոթի» տնտեսական բլոկը։ Միջմոնոպոլային այդ դաշինքները հյուսված են մրցակցող կապիտալիստական պետությունների միջև եղած հակամարտությունը թուլացնելու նպատակով, տրադիցիոն շուկաների կորստյան պայմաններում։ Սակայն, բնական է, որ սուբյեկտիվ այդ միջոցառումներն անկարող են փոխելու կապիտալիզմի օբյեկտիվ օրենքների գործողությունը։ Իրականում այդ բլոկները կապիտալիստների խոշորագույն միությունների միջև համաշխարհային կապիտալիստական շուկան բաժանելու, իրենց թույլ պարտնյորների էկոնոմիկայի մեջ առավել ուժեղ մոնոպոլիաների ներթափանցելու նոր ձևեր են, որոնք է՛լ ավելի են սրում

հակասություններն ու պայքարը իմպերիալիստական տերությունների միջև։

«Ինտեգրացիան» ունի ոչ միայն նեղ ազգային տնտեսական ասպեկտներ։ Այն թափանցում է քաղաքական և ռազմական հարաբերությունների բնագավառը։ Միավորելով իրենց տնտեսական ուժերը, իմպերիալիստները միաժամանակ ձգտում են միավորել իրենց ռազմա-քաղաքական ուժերը։ Այդ դասակարգային ընդհանուր խնդրի իրականացման հիմնական նախադրյալներից մեկը տնտեսական ոլորտում միաբանության հասնելն է, այդ հողի վրա ծնվող թշնամանքի ու կոնֆլիկտների տարրերի հաղթահարումը։ Բոլոր կապիտալիստական տերությունները դրան են ձգտում։ Սակայն հակասական է իմպերիալիզմի էությունը։ Հենց միասնության հասնելու նպատակով ստեղծված տնտեսական միություններում մասնակիցների միջև բացահայտ մրցակցային պայքար է ծավալվում։ Ուժեղը դուրս է մղում թույլին։ Մրցակցային պայքարը կապիտալիստական աշխարհում բաժանարար տենդենց է ծնում, իսկ համադասակարգային շահերը՝ միավորիչ։ Իմպերիալիզմի զարգացումն ընթանում է այդ երկու հակադիր տենդենցների փոխգործողության ու պայքարի պայմաններում։

Սակայն իրենց նշանակությամբ և քաղաքական հետևանքներով այդ ձգտումները համարժեք չեն։ Կապիտալիստական պետությունների միջև գործող տնտեսա-քաղաքական հակասությունները չեն բացառում նրանց միջև միասնության հնարավորությունը սոցիալիզմի և բոլոր հեղափոխական ուժերի դեմ պայքարելու համար։ Ավելին, այդ տենդենցը ներկայումս գերակշռող է։

Մոնոպոլիստական կապիտալիզմի վերաճումը պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի մի կողմից՝ իմպերիալիզմը ծվատող բազմապիսի հակասությունների հետևանք է, մյուս կողմից՝ ավելի խոր և սուր հակասությունների աղբյուր։ Այստեղ որոշակի օրինաչափություն է դրսևորվում՝ մասնավոր սեփականատիրական կապիտալիստական հարաբերությունների մեջ ծնված սոցիալական հակասությունները մասնավոր սեփականության հիմքի վրա անհնարին է հաղթահարել։

«Այսպիսով, համաշխարհային իմպերիալիստական սիստեմը բզկտվում է խոր ու սուր հակասություններից։ *Աշխատանքի և կապիտալի հակամարտությունը, ժողովրդի և մոնոպոլիաների հակասությունները, աճող միլիտարիզմը, գաղութային սիստեմի տրոհվելը, իմպերիալիստական երկրների միջև եղած հակասությունները, երիտասարդ ազգային պետությունների և հին գաղութարար տերությունների միջև եղած կոնֆլիկտներն ու հակասությունները և ամենագլխավորը՝ համաշխարհային սոցիալիզմի շեշտակի աճը, քայքայում ու խարխլում են իմպերիալիզմը, տանում են դեպի նրա թուլացումն ու կործանումը»*[1]։

*Հետպատերազմյան ժամանակաշրջանում աշխարհում ստեղծված իրադրությունը բավականաչափ ծանրակշիռ փաստարկ է իմպերիալիզմի դեմ։ Փոխվել են ժամանակները, փոխվել է ուժերի հարաբերակցությունը, բայց անփոփոխ է մնացել իմպերիալիզմի ագրեսիվ էությունը։ Ինքնապաշտպանությունն ու ինքնափրկությունը դարձել են կապիտալիստների ամբողջ դասակարգի գլոբալ խնդիրը։*

*Պատմության օրինաչափությունները իմպերիալիզմի դեմ են գործում։ Դրանք իրենց մարմնավորումն են գտնում հակաիմպերիալիստական ուժերի գործունեության մեջ։ Մոնոպոլիստական բուրժուազիան դատապարտվածի մոլեգնությամբ ստիպված է մարտնչել այդ երկու գործոնների դեմ։ Նա սոցիալական առաջընթացին հակադրում է իր սուբյեկտիվ կամքը, որ նյութականանում է բռնության՝ միլիտարիզմի մեջ։ Ֆիզիկական հարկադրանքի օգնությամբ իմպերիալիզմը փորձում է կասեցնել հեղափոխական շարժումը։ Նա այլևս անկարող է վերադարձնել կորցրածը։ Իմպերիալիզմը պայքարում է ունեցածը պահպանելու համար։ Ներկայումս խոշոր իմպերիալիստական տերություններին բաժին է ընկնում երկրագնդի բնակչության 16 և տերիտորիայի 8 տոկոսը։ Սակայն դրանք օժտված են մեծ ռազմա-տնտեսական հզորությամբ, որը տրամադրում են իրենց դասակարգային տիրապետությունը պահպանելու համար։ Գ. Վ. Պլեխանովի արտահայ-*

---

[1] *ՍՄԿԿ ծրագիրը, էջ 40։*

տությամբ, որքան փոքր են տվյալ հասարակական դասակարգի՝ իր իշխանությունը պահպանելու շանսերը, այնքան բռնի միջոցառումներին դիմելու հակումներ է դրսևորում նա։ Իմպերիալիզմը կատաղի պայքարի մեջ է նետվել և՛ ներքին, և՛ արտաքին հեղափոխական ուժերի դեմ։ Միլիտարիզմը սրում է դասակարգային պայքարը երկրի ներսում և լարվածություն ծնում միջպետական հարաբերություններում։

Հակաիմպերիալիստական շարժման ամենագործուն ուժը սոցիալիզմն է՝ կապիտալիզմին անխուսափելիորեն փոխարինող հասարակության կազմակերպման առաջավոր պատմական ձևը։ Այդ է պատճառը, որ իմպերիալիստական աշխարհում մոլեգնող միլիտարիզմի վակխանալիան ունի հիմնականում հակակոմունիստական ուղղություն։

Դեռ նոր էին լռել երկրորդ համաշխարհային պատերազմի վերջին համազարկերը, երբ միջազգային իմպերիալիզմը ձեռնամուխ եղավ նոր համաշխարհային պատերազմի նախապատրաստությանը։

Շահագործող դասակարգերի տրամադրությունը արտահայտել է ֆրանսիական թագավոր Լյուդովիկոս 15-ը, հետևյալ ասույթի մեջ. «Ինձանից հետո թեկուզ ջրհեղեղ»։ Իմպերիալիզմը բոլոր շահագործողական հասարակարգերին հատուկ բոլոր արատների հանրագումարն ու մզվածքն է, բացահայտ հակամարդկային բովանդակությամբ։ Ամեն մի առաջադիմականի նկատմամբ թշնամությամբ համակված իմպերիալիստական բուրժուազիայի դասակարգային շահերը նրան նորից մղում են ռազմական ավանտյուրաների։

## ԳԼՈՒԽ ՉՈՐՐՈՐԴ

# ԻՄՊԵՐԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԻԼԻՏԱՐԻԶՄԸ ՈՐՊԵՍ ԴԱՍԱԿԱՐԳԱՅԻՆ ՊԱՅՔԱՐԻ ԳՈՐԾԻՔ

## 1. Միլիտարիզմը և նոր համաշխարհային պատերազմի սպառնալիքը

*Ինչպես նշվեց, իմպերիալիստական տիրապետության հիմքերը խարխլող և հետպատերազմյան աշխարհի սոցիալական ստրուկտուրան վերափոխող մեծագույն հեղափոխական իրադարձությունները անընդհատ կերպով ուժեղացրին մոնոպոլիստական կապիտալիզմի ագրեսիվ բնույթը։ Մոնոպոլիստական բուրժուազիան, հանուն իր հարստությունների պահպանման պատրաստ է ամենաչարանենգ գործողությունների։ Վ. Ի. Լենինը գրում էր, որ աշխարհը դեռևս բարի կապիտալիստներ չի ծնել, աշխարհում այնպիսի շահագործող դասակարգ չի եղել, որ իր տեղը զիջի առանց պայքարի։*

*Մեռնող, շահագործող դասակարգը բացի այն նյութական պայմաններից, որ ինքն է ստեղծել, երբեք չի գիտակցել և չի ճանաչել հասարակական հարաբերությունների ավելի բարձր գոյապայմաններ։ Նա մոլեգնորեն դիմադրել է նորին։ Բուրժուազիան իր նյութական կեցության ստրուկն է և դրա շրջանակներով սահմանափակված նրա գիտակցությունը ծառայում է այդ կեցությանը։*

*Կապիտալիստական աշխարհը փրկելու միսիան իր վրա է վերցրել ԱՄՆ-ը։*

*ԱՄՆ-ի զարգացումը, հատկապես մեր դարաշրջանում, ընթանում էր յուրատեսակ պայմաններում։ Երկու համաշխարհային պատերազմներին նա մասնակցեց երկրի սահմաններից դուրս և ոչ այնքան ակտիվորեն։ Ամերիկյան մոնոպոլիստները հարստանում էին ռազմական արտադրության*

և ռազմական մատակարարումների հաշվին։ Երկու համաշխարհային պատերազմներից ԱՄՆ-ը դուրս եկավ հարստացած և ուժեղացած։ Իսկ ֆաշիզմի ջախջախումից հետո, երբ Անգլիայի դիրքերն զգալիորեն խարխլվել էին և Ֆրանսիան էապես տուժել էր, միակ կապիտալիստական տերությունը, որ օժտված էր ռազմա-տնտեսական գործուն հնարավորություններով, ԱՄՆ-ն էր։

Սոցիալիզմի ու դեմոկրատիայի ուժերի հաջողություններից սարսափած, միջազգային իմպերիալիզմը, ԱՄՆ-ի գլխավորությամբ, սկսեց եռանդագին նախապատրաստվել նոր համաշխարհային պատերազմի։ Ճապոնական Հիրոսիմա և Նագասակի քաղաքների վրա նետված ատոմային ռումբերն ստրատեգիական և ռազմական անհրաժեշտություն չէին։

Այս փաստը իմպերիալիզմի աճած ագրեսիվության մի նոր վկայություն էր։ Անգլիական գիտնական Բլեկետը նկատում էր, որ ճապոնական երկու քաղաքների խաղաղ բնակիչների դեմ ատոմային ռումբերի օգտագործումը ոչ այնքան երկրորդ համաշխարհային պատերազմի վերջին ռազմական գործողությունն էր, որքան Սովետական Միության դեմ ուղղված սառը դիվանագիտական պատերազմի առաջին գործողությունը։

Այդ օրերից սկսած ամերիկյան իմպերիալիզմի գործունեության առանցքը դարձավ ուժի դիրքերից ելնող քաղաքական կուրսը։

Իմպերիալիզմի գերռազմատենչ ձգտումները մարմնավորվեցին խոշոր կապիտալիստական տերությունների կառավարությունների քաղաքականության մեջ։ Սկսվեց այսպես կոչված «սառը պատերազմը»՝ պատերազմի և խաղաղության միջև ընկած միջին վիճակը։

«Սառը պատերազմից» դեպի «տաք պատերազմը» և «տաքից» դեպի «սառը»՝ համաշխարհային կապիտալիզմի զարգացման ցիկլն է։

Ժամանակակից պայմաններում «սառը պատերազմը» իր կոնկրետ դրսևորումն է գտնում իմպերիալիզմի կողմից ձեռնարկվող այնպիսի միջոցառումներում, որոնք աշխարհը համաշխարհային պատերազմի եզրին պահեին։ «Սառը

պատերազմը» իմպերիալիստական գործողությունների այնպիսի մի կոմպլեքս է, որ լարված թշնամական իրավիճակ է ստեղծում պետությունների միջև, խախտում տնտեսական, քաղաքական և կուլտուրական կապերը։ Ինչպես ասված է սոցիալիստական երկրների կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ներկայացուցիչների 1957 թվականի Մոսկվայի խորհրդակցության Դեկլարացիայում, «ԱՄՆ-ի ագրեսիվ իմպերիալիստական շրջանները, վարելով այսպես կոչված ուժի դիրքերի քաղաքականություն, ձգտում են տիրապետության հասնել աշխարհի երկրների մեծ մասում և ճգնում են թույլ չտալ, որ մարդկությունը հաղթականորեն առաջ գնա հասարակության զարգացման օրենքներին համապատասխան... Քանի դեռ պահպանվում է իմպերիալիզմը, հող կլինի նաև ագրեսիվ պատերազմների համար»։

Այսպիսով, իմպերիալիզմը նորից մարդկությանը սպառնում է նոր համաշխարհային աղետով։ Ժամանակակից կապիտալիզմի գլխավոր տնտեսական, ֆինանսական և ռազմական ուժը և համաշխարհային նոր պատերազմի հիմնական աղբյուրը ԱՄՆ-ն է։

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմը հասարակության կազմակերպման բարձրագույն ձևի կոնկրետ դրսևորումն է։ Սոցիալիզմը կապիտալիզմի անտիպոդն է։ Սրանց միջև գործող հակասությունները դասակարգային անտագոնիստական հակասություններ են։ Մեր ժամանակաշրջանում դրանք աննախընթաց սրության են հասել և դրսևորվում են երկու հասարակական սիստեմների, համաշխարհային մասշտաբով երկու պետականորեն ձևակերպված դասակարգերի միջև ծավալվող սկզբունքային պայքարի մեջ։ Իմպերիալիզմն իր դասակարգային տիրապետությունը փորձում է պահպանել մարդկության շարժումը դեպի սոցիալիզմ կասեցնելու միջոցով։ Նա ճիգեր է գործադրում, այդ խնդիրը լուծել բռնի միջոցներով։ Բնական է, որ նոր համաշխարհային պատերազմի նախապատրաստության իմպերիալիստական քաղաքականությունը տոգորված է բացահայտ հակակոմունիստական բովանդակությամբ։ Դա իմպերիալիստական տերությունների արտաքին քաղաքական գործունեության հիմնական ուղղությունն է։ Այն

անմիջապես միաձուլվում է ներքաղաքական ռեակցիայի հետ։ Մյուս կողմից՝ իմպերիալիստները հակակոմունիզմն օգտագործում են որպես մի քող իրենց տիրապետությանն ավելի ու ավելի մեծ թվով երկրներ ենթարկելու, դեմոկրատական ազատությունները ոչնչացնելու, սոցիալիստական և ազատագրված երկրների դեմ թշնամական քայքայիչ գործունեություն ծավալելու համար։

* * *

Նոր պատերազմի նախապատրաստության բաղադրիչ մասերից մեկը իմպերիալիստական տերությունների կողմից իրականացվող անզուսպ միլիտարիզմն է։ Այն կապիտալիստական իրականության անհրաժեշտ տարրն է։ Բոլոր շահագործող դասակարգերը զենքը դիտել են որպես իրենց տիրապետությունը պահպանելու միջոց։ Բուրժուազիան կատարելագործեց այդ միջոցը։ Նա միլիտարիզմը վերածեց իր կեցության բնական վիճակի, ընդլայնեց դրա շրջանակներն ու մասշտաբները։ Միլիտարիզմը մի առանցք է, որի շուրջը պըտտվում է կապիտալիստական հասարակության ամբողջ սոցիալական, տնտեսական ու քաղաքական կյանքը։ «Իմպերիալիզմը չգիտե պետությունների այլ հարաբերություններ, բացի տիրապետության և ենթարկման հարաբերություններից, ուժեղի կողմից թույլին ճնշելուց։ Միջազգային հարաբերությունները նա կառուցում է թելադրանքի ու սպառնալիքների, բռնության և կամայականության վրա։ Նա ագրեսիվ պատերազմները դիտում է որպես միջազգային հարցերը լուծելու բնական միջոց։ Իմպերիալիստական պետությունների համար դիվանագիտությունը եղել և մնում է որպես իրենց կամքը ուրիշ ժողովուրդների պարտադրելու գործիք, պատերազմներ նախապատրաստելու միջոց»[1]։

Իմպերիալիստական տերությունները ռազմաոստիկանական պետությունների են վերածվում։ Առանց այն էլ ուռճացած ռազմական մեքենան ուժեղացնելու միջոցով իմպերիա-

---

[1] ՍՄԿԿ ծրագիրը, էջ 67։

լիզմը փորձում է վիժեցնել առաջադեմ, հեղափոխական ուժերի հակաիմպերիալիստական գործողությունները։

Միջիմպերիալիստական հակասություններից ծնված երկու համաշխարհային պատերազմները շատ թանկ նստեցին իմպերիալիզմին։ Կապիտալիզմի օրինաչափությունները շարունակում են դրսևորվել և այսօր։ Անշեղորեն գործում է կապիտալիստական երկրների տնտեսական և քաղաքական զարգացման անհամաչափության օրենքը, սրվում են հակասությունները կապիտալիստական պետությունների միջև՝ պետական-մոնոպոլիստական միավորումների ներսում։

Պետական մոնոպոլիստական կապիտալիզմի բազայի վրա աճում է սուբյեկտիվ գործոնի դերը իմպերիալիստական պետությունների քաղաքականության մեջ։ Խոշոր կապիտալիստական տերությունների և առաջին հերթին ԱՄՆ-ի իշխող շրջանների բոլոր ջանքերն ուղղված են առավել ռեակցիոն հակակոմունիստական տարրերի կոնսոլիդացմանն ու ինտեգրացմանը։ Մարդկությունը երկրորդ համաշխարհային պատերազմի ավարտից հետո մտել է իր զարգացման երրորդ տասնամյակը, և իմպերիալիզմի այդ կուրսն անփոփոխ է մնում։ Այդ տենդենցը կապիտալիստական աշխարհում գերակշռում է մյուս բոլոր տենդենցների նկատմամբ։

Իրավացի է Ե. Վարգան, ասելով, որ երկրորդ համաշխարհային պատերազմում «ներիմպերիալիստական հակասությունները, հավանաբար վերջին անգամ, մարդկության պատմության մեջ ավելի ուժեղ դուրս եկան, քան երկու սիստեմների միջև եղած հակասությունները»[1]։

Անգլո-սաքսոնական երկրների քաղաքականության մեջ հակասովետական, հակակոմունիստական գծերը դրսևորվում էին դեռևս պատերազմի տարիներին։ Ռազմական գործողություններն ավարտվելուց հետո այդ գծերը որոշիչ նշանակություն ձեռք բերեցին։ Եթե երկու համաշխարհային պատերազմներին նախորդած ժամանակաշրջաններում իմպերիալիստական պետությունների՝ մեկը մյուսի դեմ ուղղված տարբեր ռազմա-քաղաքական կոալիցիաներ էին ստեղծվում, ապա

---

[1] Е. **Варга**, Капитализм двадцатого века, стр. 41—42.

մեր ժամանակներում իմպերիալիստական ագրեսիվ ռազմա-քաղաքական դաշինքները բացառապես ուղղված են սոցիալիստական երկրների և ազգային-ազատագրական շարժումների դեմ։ Հետպատերազմյան տարիներին ԱՄՆ-ի նախաձեռնությամբ ստեղծված ռազմական խմբավորումների բարդ ու ընդարձակ սիստեմը 44 պետություն է ընդգրկում։ 1949 թվականին ԱՄՆ-ի գլխավորությամբ ծնվեց «Հյուսիս-ատլանտյան պայմանագրի կազմակերպությունը»՝ ՆԱՏՕ-ն, որը հակակոմունիստական ուժերի միջուկն է։

Հետագայում ծագեցին ռեգիոնալ բնույթի ռազմա-քաղաքական նոր խմբավորումներ։ ԱՄՆ-ը հանդես եկավ որպես գլխավոր ուժ այսպես կոչված «Հարավ-արևելյան Ասիայի պաշտպանության պայմանագիր», ՍԵԱՏՕ-ն կնքելու գործում։ Միլիտարիստական մսաղաց են ներքաշվում թույլ զարգացած շատ երկրներ, որոնք ի դեպ, տնտեսական լուրջ պրոբլեմներ ունեն լուծելու։ Այսպես, ՍԵԱՏՕ-ի մեջ ընդգրկված են Նոր Զելանդիան, Պակիստանը, Ֆիլիպինները, Տաիլանդը։ Մերձավոր ու Միջին Արևելքի մի շարք երկրներ ներգրավված են ՍԵՆՏՕ-ի ագրեսիվ խմբավորման մեջ։ Երկկողմանի ագրեսիվ բնույթի ռազմական պայմանագրեր են ստորագրված Ճապոնիայի, Տայվանի, Հարավային Կորեայի և Հարավային Վիետնամի միջև։

Հյուսիս-ամերիկյան իմպերիալիզմի անմիջական նախաձեռնությամբ, համարյա ամբողջ կապիտալիստական աշխարհը ռազմական ճամբարի է վերածվել։ Միջազգային իմպերիալիզմի գլխավոր հարվածող ուժը, ռազմական սպառազինման և պահապան շունը Հյուսիսատլանտյան բլոկն է, որն ուղղված է նաև կապիտալիստական աշխարհի ներսում գործող հեղափոխական ուժերի և տենդենցների դեմ։

Հանդես գալով համաշխարհային ժանդարմի դերում, ամերիկյան իմպերիալիզմը միջամտում է Աֆրիկայի, Ասիայի և Լատինական Ամերիկայի շատ երկրների ներքին գործերին, ոտնահարում նրանց սուվերենությունը, ձգտում է բռնությամբ խեղդել ազգային-ազատագրական շարժումը։ Ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիվ բնույթն առանձնապես

ակնհայտորեն է դրսևորվում Վիետնամի ժողովրդի դեմ ուղղված պատերազմում։

ԱՄՆ-ը վարելով կապիտալիզմի ուժերի առավելագույն համակենտրոնացման կուրս, ձգտում է ստեղծել կոլեկտիվ ռազմական հզորություն՝ արդիականության հեղափոխական ուժերի առաջընթացը կանգնեցնելու և կապիտալիզմը փրկելու համար։

Ամերիկյան ռազմական տեսաբան դոկտոր Գ. Կիսինգերը խոստովանում է ստեղծված իմպերիալիստական ռազմական խմբավորումների իսկական նպատակները։ Նա գրում է. «Այդ բարդ կառուցվածքի գլխավոր նպատակը՝ սովետական բլոկի երկրները դաշինքների սիստեմով շրջապատելն է... անվտանգության մասին մեր բոլոր համաձայնագրերը ռեգիոնալ բնույթ են կրում, բայց այնուամենայնիվ դրանց գլոբալ նշանակություն է տրվում (ընդգծումը մերն է—Ս. Ք.), քանի որ և՛ դոկտրինայի, և՛ տեխնիկայի իմաստով մենք մեծ հույսեր ենք կապում հենց համընդհանուր պատերազմի հետ»[1]։

Ինչպես երևում է, միլիտարիզմը դասակարգային պայքարի գործիք է իմպերիալիզմի ձեռքին, իր դասակարգային տիրապետությունը պահպանելու միջոց։

Պատմության փորձը վկայում է, որ իմպերիալիզմի օրոք կապիտալիստական պետությունների ամեն մի ռազմական խմբավորման ծագումը նոր համաշխարհային պատերազմի նախապատրաստական փուլի բաղկացուցիչ մասերից մեկն է։ Իմպերիալիստական ռազմա-քաղաքական բլոկները բացառապես ագրեսիվ բնույթ ունեն։ Ժամանակակից պայմաններում, երբ մոնոպոլիստական բուրժուազիայի նեղ դասակարգային շահն է ընկած արդեն գոյություն ունեցող ռազմական բլոկների հիմքում, այդ ագրեսիվությունն անօրինակ աճել է, առաջացնելով նոր համաշխարհային պատերազմի ռեալ բռպառնալիք։

---

[1] **Г. Киссингер**, Ядерное оружие и внешняя политика, М., 1959, стр. 329—330.

* * *

Երկու համաշխարհային պատերազմները ցույց տվեցին, որ ագրեսիվ իմպերիալիզմի ամենաավազակային ջոկատը գերմանական միլիտարիզմն էր։ Ներկայումս դերերը փոխվել են։ Այդ հարցում առաջնությունն անցել է ԱՄՆ-ին։ Սակայն ամերիկյան իմպերիալիստները լայնորեն բացել են դռներն այն ուժերի առջև, որոնք ոչ հեռու անցյալում տրորում էին իրենց «այժմյան դաշնակիցների» հողերը։ Ռազմական արշավանքների մեջ վարժված գերմանական իմպերիալիզմի համար նոր զարթոնքի նպաստավոր պայմաններ են ստեղծվել, նա անարգել կերպով միլիտարիստական գործունեություն է ծավալել։

Ճիշտ է, երկրորդ համաշխարհային պատերազմում ֆաշիզմը ջախջախվեց, բայց Գերմանիայի արևմտյան, ընդ որում արդյունաբերական տեսակետից զարգացած և համեմատաբար սակավ տուժած մասում, ֆաշիզմը ծնած տնտեսական բազան պահպանվեց։ Սոցիալական կառուցվածքի և համադասակարգային խնդիրների ընդհանրությունը պայմանավորեցին ԱՄՆ-ի և Արևմտյան Գերմանիայի միլիտարիստական շրջանների միասնական գործողություններն արդիականության հեղափոխական ուժերի դեմ մղվող պայքարում։ Արևմտյան Գերմանիայի ռազմա-տնտեսական պոտենցիալը վերականգնվեց։ Պատերազմն ավարտվելուց մի քանի տարի անց ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի ակտիվ մասնակցությամբ և աջակցությամբ Գերմանիայի արևմտյան մասում ծնվեց իմպերիալիստական պետության նոր ձև՝ Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետությունը, որի մեջ միասնական մեխանիզմում երկրի տնտեսական և քաղաքական ուժերի միաձուլումն այնպիսի փաստ դարձավ, ինչպես իմպերիալիստական մյուս տերություններում։

Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետության քաղաքական դեմքը որոշում են արդյունաբերական և ֆինանսական այն մոնոպոլիաները, որոնք ժամանակին պաշտպանում և սնում էին հիտլերիզմը, երրորդ ռայխի դպրոցով անցած գեներալները, նացիստական դատավորներն ու դիվանագետները,

խոշոր շինովնիկությունն ու քաղաքական գործամոլները։ ԳՖՀ-ի քաղաքական քրեդոն ռևանշիզմն է։ Արդեն 1955 թվականին ԳՖՀ-ն դարձավ ՆԱՏՕ-ի իրավահավասար անդամը։ Նրա տնտեսական զարգացումն ընթացավ արագ տեմպերով։ 1962 թվականին Արևմտյան Գերմանիան դուրս եկավ երկրորդ տեղը համաշխարհային կապիտալիստական արտադրության մեջ։ 1964 թվականին նրա բաժինը գերազանցում էր Ֆրանսիայինը՝ ավելի քան 2, Իտալիայինը՝ 2,8, Նիդեռլանդներինը՝ 8,5, Բելգիայինը՝ 9,5 անգամ»[1]։

Այս ֆոնի վրա պարզորոշ կերպով է դրսևորվում այն կարծիքի պատրանքային բնույթը, որի համաձայն իբր Արևմտյան Գերմանիայի միաձուլումը ՆԱՏՕ-ի հետ նրան վերահսկողության տակ կդնի։ Միթե հնարավոր է վերահսկողության տակ պահել կապիտալիստական Եվրոպայի ամենաուժեղ տերությունը։ Արևմտյան Գերմանիայի բավականաչափ հզոր տընտեսական բազան պայմանավորում է նրա ռազմա-քաղաքական կշիռը Հյուսիսատլանտյան ագրեսիվ դաշինքում։ ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի միլիտարիստական շրջանները ԳՖՀ-ի զինումն իրենց ընդհանուր գործն են համարում։ Միայն ԱՄՆ-ը հետպատերազմյան տասը տարիների ընթացքում մոտ 900 միլիոն դոլարի հասնող ռազմական օգնություն է ցույց տվել արևմտագերմանական «դաշնակիցներին»։ ՆԱՏՕ-ի ղեկավար օրգաններում հիտլերյան նախկին գեներալներին ու սպաներին հատուկ տեղ է հատկացված։ Արևմտագերմանական ռևանշիստները չեն թաքցնում իրենց դիտավորությունները՝ վերանայելու երկրորդ համաշխարհային պատերազմից հետո հաստատված սահմանները, հաճախ հանդես գալով ռազմաշունչ ճառերով և հայտարարություններով։ Նրանց պլաններում սոցիալիզմի դեմ մղվող պայքարի խընդիրները միահյուսվում են «դաշնակիցներին» տրադիցիոն շուկաներից դուրս մղելու հաշվին իրենց ազդեցության ոլորտներն ընդարձակելու նեղ ազգային խնդիրների հետ։ Արևմըտյան տերությունները ձգտում են ԳՖՀ-ն վերածել Եվրոպայում ՆԱՏՕ-ի հիմնական ռազմական պլացդարմի և հակասո-

[1] Мир капитализма (справочник), стр. 29.

վետական ֆորպոստի։ Ինչպես արձանագրում է կոմունիզմի ուղղափառ թշնամիներից մեկը՝ Ֆինլետերը, «...Գերմանիայի տեղը (նկատի ունի նրա արևմտյան մասը—Ս. Ք.) Արևմուտքի հետ է՝ կոմունիզմի դեմ մղվող պայքարում»[1]։

Եվրոպայի կապիտալիստական տերություններից Արևմտյան Գերմանիան ամենից ավելի լրիվ է իր մեջ մարմնավորում ռազմատենչությունն ու ռեակցիան։ Այստեղ արգելված է համարյա բոլոր դեմոկրատական կազմակերպությունների գործունեությունը։ Նորից հրապարակ է հանվել «Արևմտյան քաղաքակրթությունը» պաշտպանելու գործում Գերմանիայի «հատուկ դերի» հիտլերյան լոզունգը։ Շովինիզմն ու նեոնացիզմը նորից բարձրացնում են իրենց գլուխը։ Հակակոմունիստական ակցիաները դարձել են Բոննի կառավարության ֆունկցիան։

1964 թ. նոյեմբերին նախկին հիտլերականների նախաձեռնությամբ ստեղծվեց այսպես կոչված «նացիոնալ-դեմոկրատական կուսակցությունը», որի ծրագիրը պրոֆաշիստական բովանդակություն ունի։ Նրա արտաքին քաղաքական ծրագրի գլխավոր կետը 1937 թվականի սահմաններով երրորդ ռայխի վերաստեղծումն է, հիտլերականների կողմից հետագայում զավթած հողերի ընդգրկումով։ Արևմտագերմանական քաղաքական վերնախավի էքսպանսիոնիստական գծի դրըսևորումն է 1968 թ. կեսերին ընդունված «արտակարգ օրենսդրությունը», որ իրավաբանորեն հնարավորություն է ընձեռում ռևանշիստական պատերազմ նախապատրաստելու և սանձազերծելու համար։

Անհամաչափության օրենքի գործողության հետևանքով Արևմտյան Գերմանիան զգալի տնտեսական գերազանցության հասավ իր եվրոպական «դաշնակիցների» նկատմամբ։ ԱՄՆ-ը շոշափելի ռազմա-տնտեսական գերակշռություն ունենալով մյուս կապիտալիստական տերությունների հանդեպ, մտահոգված չէ արևմտագերմանական տնտեսական պոտենցիալի և ռազմական հզորության աճի վտանգով։ Ընդհակառակը, ի դեմս ԳՖՀ-ի նախապատրաստվող պատերազմում նա տես-

---

[1] Т. К. Финлеттер, Сила и политика, М., 1956, стр. 74.

նում է արժանի պարտնյորի, որին երկրորդ չութակն է տրամադրվում։ Գերմանական միլիտարիստները նորից սկսում են ցույց տալ իրենց գիշատիչ դեմքը։ Ֆաշիստական գլխավոր հանցագործների նյուրնբերգյան դատավարությունում ամերիկյան մեղադրող, գեներալ Թեյլորը հայտարարեց. «Գերմանական միլիտարիստներն իրենց բախտը կկապեն յուրաքանչյուր մարդու կամ յուրաքանչյուր կուսակցության հետ, որոնք կհենվեն գերմանական ռազմական հզորության վերականգնման վրա։ Նրանք ամեն ինչ նախօրոք և սառնասրտորեն հաշվի են առնում»։

Իրականությունը հաստատում է Թեյլորի կանխատեսումը։ Հմտորեն օգտագործելով ԱՄՆ-ի և ՍՍՀՄ-ի միջև ծավալվող դասակարգային հակասությունները, Արևմտյան Գերմանիայի կառավարող խումբն արագացնում է երկրի ռազմականացումը։ Հյուսիսամերիկյան իմպերիալիզմն արևմտագերմանական ռևանշիստների ագրեսիվ ձգտումները ՆԱՏՕ-ի շրջանակների մեջ է խցկում՝ հակակոմունիստական նկրտումները մեկ հանգույցի մեջ միահյուսելու նպատակով։ Ինչպես ասված է ՍՄԿԿ ծրագրում, այժմ հակակոմունիզմի դրոշի ներքո միավորվել են սոցիալական առաջադիմության բոլոր թշնամիները՝ ֆինանսական օլիգարխիան և զինվորականությունը, ֆաշիստները և ռեակցիոն կղերականները, գաղութարարներն ու կալվածատերերը, իմպերիալիստական ռեակցիայի բոլոր գաղափարական ու քաղաքական աջակիցները։

Պատմությունը վկայում է, որ գերմանական միլիտարիստներն ընդունակ են շատ կարճ ժամանակամիջոցում ստեղծելու հզոր ռազմական մեքենա։ Եթե 1933 թվականին Գերմանիան ուներ 100 հազարանոց բանակ, ապա հինգ տարի անց այն հասավ 2 միլիոն 366 հազարի, իսկ 1940 թվականին ֆաշիստական բանակի թիվը 5 միլիոն 200 հազար էր։

Ներկայումս ԳՖՀ-ն ունի մոտավորապես 500 հազարանոց բանակ։ Երկրի ռազմականացումն ավելի արագ տեմպերով է ընթանում, քան պատերազմից առաջ։ Հիտլերը համընդհանուր ռազմական ծառայություն մտցրեց առաջին համաշխար-

հային պատերազմից 16 տարի անց, մինչդեռ Ադենաուերը երկրորդ համաշխարհային պատերազմից 11 տարի անց։ 1933-ից մինչև 1939 թվականներն ընկած ժամանակաշրջանում ֆաշիստական Գերմանիան ռազմական նպատակներով ծախսեց 90 միլիարդ մարկ, իսկ 1955-ից մինչև 1961 թվականն ընկած ժամանակաշրջանում Ադենաուերի կառավարության ռազմական ծախսերը կազմեցին 120 միլիարդ մարկ։ Բունդեսվերում հրամանատարական պաշտոններ են զբաղեցնում հարյուրավոր հիտլերյան գեներալներ և ծովակալներ, իսկ երկրում 1200 ռևանշիստական «զինվորական միություն» կա, որոնցից 45-ը նախկին էսէսականներից բաղկացած։ Ֆլիկի, Սիմենսի, ԱԵԳ գերմանական բանկի, ԻԳ Ֆարբենինդուստրիի և ուրիշ կոնցեռներ սնում են միլիտարիստական մեքենան։

Արևմտյան Գերմանիայի ռևանշիստները ձեռք են մեկնում միջուկային զենքին և դժվար չէ կռահել, թե որքան կըսրվի իրադրությունը, եթե Բունդեսվերի մատը իջեցվի ջերմամիջուկային զենքի հրահանին։ Դա միանգամայն ռեալ հընարավորություն է, որ կապված է ոչ միայն Բունդեսվերը ատոմային զենքով զինելու ԳՖՀ-ի դաշնակիցների հնարավոր որոշման հետ։ Ժամանակակից գիտատեխնիկական հայտնագործությունները չեն կարող երկար ժամանակ գաղտնի պահվել։ Անզուսպ միլիտարիզմի այն կուրսը, որ վերցրել են արևմտա-գերմանական կառավարող շրջանները, ի վերջո, կարող է հասցնել Արևմտյան Գերմանիայի կողմից սեփական միջուկային զենքի ստեղծմանը։

Իսկ երբ այդ մռայլ հեռանկարը կիրականացվի, ապա այն ժամանակ դժվար կլինի որոշել, թե ՆԱՏՕ-ում ո՞վ ո՞ւմ է վերահսկում։

Էռնստ Հենրին ճիշտ է նկատում, որ ամենակարճ ժամկետում վերածնված հիտլերյան գլխավոր շտաբը կգրավի ՆԱՏՕ-ի բոլոր հրամանատարական բարձունքները։ Բացառված չէ նաև այն հնարավորությունը, որ վերածնվող գերմանական միլիտարիզմը կարող է փորձանք դառնալ այն հովանավորողների գլխին։ Գերմանական միլիտարիստները առիթը բաց չեն թողնում, որպեսզի օգտագործեն երկու սիս-

տեմների միջև եղած հակասությունները, շաղակրատելով «կոմունիստական վտանգից» պաշտպանվելու և ՆԱՏՕ-ի զերքերն ամրապնդելու աղաղակներով։ Առաջադեմ ուժերի նկատմամբ ատելություն տածող գերմանական միլիտարիզմը բազմիցս ապացուցել է արկածախնդրական գործողությունների դիմելու իր ընդունակությունը։ Ժամանակակից միջազգային պայմաններում, երբ ատլանտյան տերություն-ների քաղաքականությունը կերտողները ոգեշնչում են արև-մրտագերմանական ռևանշիստներին, ինչպես նշված է ՍՄԿԿ XXIII համագումարի բանաձևում, «միջազգային լարվածու-թյան վտանգավոր օջախ է դարձել Արևմտյան Գերմանիան, որտեղ աճում են ռևանշիզմի և միլիտարիզմի ուժերը, որոնց խրախուսում են Միացյալ Նահանգների իմպերիաները»[1]։

Ռազմական հզորության աճմանն ու ուժեղացմանը համեմատ, Արևմտյան Գերմանիան կարող է ինքնուրույն որոշումներ ընդունել, առանց դրանք համաձայնեցնելու իր «դաշնակիցների» հետ։ Այդ հեռանկարը, որի սկզբնաղ-բյուրը հակակոմունիզմի իմպերիալիստական քաղաքա-կանությունն է, ընդունում են նաև բուրժուական առանձին սոցիոլոգներ։ «Տոտալ պատերազմը կարող է ծագել Միացյալ Նահանգների և Սովետական Միության կողմից վերահսկողու-թյան չենթարկվող պատճառներից, հատկապես ուրիշ պետու-թյունների գործողությունների հետևանքով... Կարելի է ենթա-դրել, որ մոտակա տարիներին, չնայած սառը պատերազմին, ռազմական կոնֆլիկտի ծագման վտանգը... կուժեղանա երրորդ տերությունների քաղաքականության հետևանքով[2]», գրում է Չիկագոյի համալսարանի դոցենտ Օսգուդը։

Այսպիսով, Արևմտյան Գերմանիայի վերածումը ռազմա-ստիկանական միլիտարիստական պետության, որտեղ ռևանշիզմն ու հակակոմունիզմը դարձել են կառավարող վերնախավի քաղաքական գործունեության առանցքը, զգալիորեն ավելացնում է համընդհանուր, համաշխարհային հրդեհի լիցքերը։

---

[1] «ՍՄԿԿ XXIII համագումարի բանաձևը», «Հայաստան» հրատ., 1966, էջ 10։

[2] Р. Осгуд, Ограниченная война, М., 1960, стр. 161, 177.

* * *

Նախապատրաստվող պատերազմի էական տարրերից մեկը սոցիալիստական երկրների շուրջը բազմաթիվ ռազմական բազաների ստեղծումն է։ Ամերիկյան զինվորականությունը կատարելով և մարմնավորելով մոնոպոլիստական բուրժուազիայի կամքը, աշխարհը պատել է ռազմական բազաների խիտ ցանցով։ 1963 թվականի սկզբներին արտասահմանում ավելի քան 1 միլիոն ամերիկյան զինծառայողներ էին տեղավորված։ Երկրագնդի 90 երկրներում 2230 ռազմական բազաներ են ստեղծված, որոնցից 130-ը կարող են միջուկային զենք օգտագործել։

Այդ երկրների տերիտորիաները հրթիռային սարքավորումների համար ստարտային հրապարակներ են։ Դրանք միաժամանակ ռազմական գործողությունների թատերաբեմ են։ Հանգամանքների որոշակի զարգացման դեպքում, ռազմական գործողությունների տրամաբանությամբ, այդ բազաները պատասխան հարվածների օբյեկտներ կդառնան։ Դրանք վառոդի տակառներ են, որոնք կարող են ցանկացած րոպեին հօդս ցնդել։ Բռնությամբ միլիտարիզմի շղթափոկների մեջ ներքաշելով շատ երկրներ, ամերիկյան իմպերիալիզմը նրանց սուվերենությունը զոհաբերում է իր դասակարգային շահերին։ Չի կարելի չտեսնել խաղաղությանն սպառնացող այն լուրջ վտանգը, որ ներկայացնում է ամբողջ աշխարհով մեկ ցրված իմպերիալիստական զինվորականությունը։ Անկասկած, իմպերիալիզմի պայմաններում, առանձնապես մեր օրերին, երբ ինչպես երբեք կապիտալի երկրներում ուժն ու քաղաքականությունն օրգանապես միահյուսվում են, միլիտարիզմը կառավարական չինովնիկների՝ կապիտալիստների դասակարգի սպասարկուների վերահսկողությունից դուրս գտնվող ինքնակամ, անկախ ինստիտուտ չէ։ Սակայն չպետք է բացառել իրադարձությունների այնպիսի ընթացքը, երբ երկրագնդի տարբեր մասերում տեղավորված իմպերիալիստական զինվորականությունը փոքրագույն հաշվեսխալի դեպքում անգամ կարող է ինքնուրույն որոշում կայացնել,

դրանով իսկ իր կառավարությանը և ամբողջ աշխարհը կանգնեցնել հանկարծակի պայթյունի փաստի առջև։ Այն ժամանակ, հիրավի, Վիլհելմ Լիբկնեխտի խոսքերով ասած, կապիտալի շահերը ներկայացնող զինվորականները լարը ձգող այն դերասանների դերում կգտնվեն, որի վրա ստիպված կլինեն պարել կապիտալիստական տիկնիկային թատրոնի քաղաքագետները։

Վերևում նշված հնարավորությունը կախված է այն առանձնահատուկ պայմաններից, որոնց մեջ զարգանում է իմպերիալիզմն իրեն ներհատուկ աճող միլիտարիզմի ժամանակաշրջանում։ Իմպերիալիզմի ռազմական կազմակերպությունը կապիտալիստական մասնավոր սեփականության պաշտպանությանն է ուղղված։ Ղեկավարվելով դասակարգային շահերով և պաշտպանելով հասարակության սահմանափակ մասի արտոնությունները, զինվորականությունը, մոնոպոլիստական կապիտալիզմի պայմաններում, գնալով աճող ուժով ներգործում է քաղաքականության վրա, այն իրեն ենթարկելու բացահայտ տենդենցով։ Բնորոշ են Օսգուդի դատողությունները. «Քանի որ ազգային անվտանգությունն սկսում է ավելի ու ավելի կախման մեջ ընկնել զինված ուժից, «աշխատանքի բաժանման» տեսությունը (խոսքը զինվորականների և քաղաքագետների միջև ֆունկցիաների բաշխման մասին է—Ս. Ք.), ոչ միայն ուժեղացնում է քաղաքական կուրսի և ռազմական քաղաքականության փոխադարձ մեկուսացման վտանգը, այլև տենդենց ունի այնքան բարձրացնելու վերջինիս նշանակությունը, որ ազգային քաղաքականությունը կարող է ենթարկվել ռազմական քաղաքականությանը։ Քաղաքական լիդերների հարգալից վերաբերմունքը զինվորականների կարծիքների նկատմամբ քաղաքական ղեկավարության ցուցումներին ունկնդրելու պատասխան ձըգտում չի առաջացնում»[1]։

Յուրատեսակ պարադոքս է ստացվում։ Խոշոր կապիտալիստական տերությունների զինվորական շրջանները

---

[1] **Р. Осгуд**, Ограниченная война, стр. 73.

կարող են առանց հաշվի առնելու քաղաքական ղեկավարության կարծիքը, ինքնուրույն որոշումներ կայացնել, որոնք քաղաքական լուրջ հետևանքների կհասցնեն։ Սակայն այս երկու գործոնների փոխհարաբերությունը չպետք է ուղղագծորեն, միակողմանի հասկանալ։ Միլիտարիզմը նույնպես քաղաքականություն է, որն իր գերաճի պայմաններում հակադարձ ներգործություն է ունենում քաղաքականության վրա, է՛լ ավելի սրելով նրա ռազմամոլ բնույթը։ Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի օրոք, երբ, ինչպես հայտնի է, մոնոպոլիաների և պետության ուժը միաձուլվում են միասնական մեխանիզմի մեջ, չի կարելի զինվորականությունը սահմանազատել քաղաքական շրջաններից։ Անվիճելի է, որ իմպերիալիզմի պայմաններում ռազմաարդյունաբերական դաշինքը որոշակիորեն ներգործում է քաղաքականության վրա։ Խոշոր կապիտալի և ռազմամոլության դաշինքը դրսևորվում է հզոր «ռազմա-արդյունաբերական կոմպլեքսի մեջ»։ Ռազմամոլությունն ու մեծ բիզնեսը միավորվում են։ Նրանց անխզելիորեն շաղկապում են հսկայական գումարների հասնող այն կոնտրակտները, որոնց կատարումը մի կողմից՝ ուժեղացնում է ռազմական մեքենան, մյուս կողմից՝ լցնում մոնոպոլիաների գրպանները։ Այսպես, օրինակ, ԱՄՆ-ում 1961 թվականի ֆինանսական տարվա համար նախատեսված ռազմական բյուջեի ընդհանուր գումարից 21 միլիարդ դոլար ծախսվեց զանազան ռազմական պատվերների վրա։ Տիպիկ է այն, որ և՛ պատվիրատուները, և՛ կատարողները միևնույն օրգանիզմի երակներն են։ Զինվորականությունը կառավարական ապարատ է քարշ տալիս իր մարդկանց։ 1957 թվականին ԱՄՆ-ի կառավարական օրգաններում, միջազգային և միջգերատեսչական կազմակերպություններում պաշտոններ էին զբաղեցնում 200 գեներալ և ծովակալ, 1300 գնդապետ և համապատասխան կարգ ունեցող ռազմածովային սպա, ինչպես նաև ավելի ցածր կարգ ունեցող 6000 սպա[1]։ Ազատ արձակված զինվորականները քաղաքացիական չինովնիկներին դուրս են մղում իրենց պաշտոններից։ 1947-ից

[1] Տե՛ս Фрэд Кук, Государство войны, М., 1962, էջ 74, 81.

մինչև 1958 թվականն ընկած ժամանակաշրջանում, օրինակ, ԱՄՆ-ի պաշտպանության մինիստրությունում 30 ղեկավար պաշտոններ ռազմա-արդյունաբերական մոնոպոլիաների ներկայացուցիչներն էին զբաղեցնում։ Առհասարակ, հետպատերազմյան տարիներին ԱՄՆ-ի պաշտպանության մինիստրությունը խոշոր բանկիրների և ռազմական արդյունաբերողների ձեռքում է գտնվում։ Ջեյմս Ֆորեստոլը «Դիլոն ռիդ էնդ կ°» բանկի ղեկավարն էր, Չարլզ Վիլսոնը «Ջեներալ մոտորս» ընկերության պրեզիդենտն էր, Մակելրոյը «Ջեներալ էլեկտրիկ» և «Կռայսլեր» ռազմական կոնցեռների դիրեկտորներից մեկն է, Հեյտսը՝ խոշոր ֆինանսիստ է, իսկ Ռոբերտ Մակնամարան ԱՄՆ-ի հրթիռա-ավիացիոն արքաների դրածոն էր։

Ռազմական գործիչների՝ դիվանագիտության ոլորտը թափանցելու հետևանքով, ավելի է աճում արտաքին քաղաքականության միլիտարիստական բնույթը։ ԱՄՆ-ում ռազմական բիզնեսը դարձել է մի ութոտնուկ, որի շոշափուկները տարածվել են երկրի բոլոր անկյունները։ «Մեր արտաքին քաղաքականությունը,—գրում է ամերիկյան ժուռնալիստ Ֆրեդ Կուկը,—«Մաժինոյի գծի» է վերածվել, որտեղ ամրապնդվել է... մեր արդյունաբերական մագնատների և մեր մամուլի կողմից ոգեշնչվող ռազմամոլությունը»[1]։

Այսպիսով, ռազմա-արդյունաբերական կոմպլեքսը կամ զինվորականության և մեծ բիզնեսի դաշինքը փաստորեն որոշում է ԱՄՆ-ի ամբողջ ներքին և արտաքին քաղաքականությունը, երկիրն ուղղելով դեպի պատերազմ։ ԱՄՆ-ի նախկին պրեզիդենտ Էյզենհաուերը 1961 թվականի հունվարի 17-ին հայտարարեց, որ հարկավոր է զգուշանալ այդ ռազմա-արդյունաբերական կոմպլեքսի ձեռք բերած ազդեցությունից, որ զգացվում է պետության բոլոր ոլորտներում։ Նա գրել է. «Մեր աշխատանքը, ռեսուրսներն ու գոյամիջոցները՝ ամեն ինչ այդ կոմպլեքսի ազդեցության տակ են գտնվում, դրա ազդեցության տակ է գտնվում և ինքը՝ մեր հասարակության կառուցվածքը»[2]։

---

[1] **Фрэд Кук.** Государство войны, стр. 87.

[2] «За рубежом», 1962, № 46, стр. 28.

Այսպիսի իրավիճակը պատահականորեն կամ ռազմական խմբավորման մեկուսացված գործողությունների հետևանքով չի առաջացել։ Այն կապիտալիստական իրականության օբյեկտիվ օրինաչափությունների գործողության դրսևորումն է։

Շահույթ կորզելու մոլուցքով համակված մոնոպոլիաները խոշոր մասնավոր սեփականատիրական կապիտալիստական ձեռնարկություններ են։ Դերիշխելով տնտեսական կյանքում, քաղաքականությունը նրանց համար ածանցյալ գործոն է։ Այդ քաղաքականության կերտողներն իշխանության ղեկի մոտ կանգնած խոշոր բիզնեսմեններն ու մասնավոր ձեռնարկատերերն են, որոնց պրակտիկ գործունեությունում ադեկվատորեն արտացոլվում են մոնոպոլիստական վերնախավի կամքն ու շահերը։ Ինչպիսի անհատական տվյալներով օժտված պետական գործիչ էլ որ լինի, կապիտալիստական աշխարհում նա չի կարող անտեսել այն շահերը, որոնք ղեկավարում և ուղղություն են տալիս մոնոպոլիաների նպատակասլաց գործողություններին։ Դիրքը նրան պարտավորեցնում է իր վրա վերցնել մոնոպոլիաների շահերը լայնորեն և բազմակողմանիորեն պաշտպանելու նախաձեռնությունը։ Բանականորեն, կոնկրետ իրադրության հաշվառումով գործելու ամենաերկչոտ փորձն անգամ անհապաղ պատժվում է, եթե այն փոքր ինչ հակասում է մոնոպոլիստական վերնախավի շահերին։ ԱՄՆ-ի նախկին պաշտպանության մինիստր Չարլզ Վիլսոնը գտնում էր, որ ինչ լավ է «Ջեներալ մոտորսի» համար, լավ է երկրի համար։

Այսպիսով, հազիվ թե հնարավոր լինի ինչ-որ էական տարբերիչ գծեր գտնել զինվորականության և քաղաքական ղեկավարության միջև։ Այն կարծիքը, թե զինվորականները վատ են կողմնորոշվում քաղաքականության հարցերում, իսկ քաղաքագետները զգուշանում են զինվորականներից՝ մոլորություն է։ Խոսքը նախաձեռնության մասին է։ Հասարակության բոլոր ծակոտիներում բույն դրած միլիտարիզմը քաղաքական կյանքի լծակն է դառնում։ Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի պայմաններում ռազմամոլության և խոշոր կապիտալի դաշինքը ապահովվում է միասնական քաղաքական վարքագծի։ «Կապիտալիստական մոնո-

պոլիաներն իրենց բնույթով, ինչպես դա արդեն եղավ երկու անգամ 20-րդ դարում,—գրել է Ջ. Բեռնալը,—անխուսափելիորեն ռազմական նախապատրաստությունների և անմիջապես պատերազմի են մղում այն պետությունների կառավարություններին, որտեղ իրենք գործում են»[1]։

Այսպիսով, ԱՄՆ-ն ընթանում է իմպերիալիստական ռազմականացված պետության կլասիկ ուղիով։

Գլխավոր կապիտալիստական տերությունների կառավարությունները, երկրորդ համաշխարհային պատերազմն ավարտվելուց հետո, մոլեգին հակակոմունիստական կամպանիա ծավալեցին և հակասովետական պսիխոզի այդ հեղձուցիչ մթնոլորտում սոցիալական կյանքի բոլոր կողմերի ռազմականացումը պետք է կատարվեր բնական անհրաժեշտությամբ։

Քաղաքականից բացի միլիտարիզմն ունի նաև տնտեսական ասպեկտներ։ Միլիտարիզմը շահութաբեր կուրս է իմպերիալիստական մոնոպոլիաների համար։ Մանիակային կիրք տածելով հարստություն դիզելու նկատմամբ, մոնոպոլիստական միությունները միլիտարիզմը դիտում են իբրև սիստեմատիկաբար բարձր շահույթներ ձեռք բերելու, տնտեսական կոնյունկտուրան ապահովելու և ներտնտեսական դժվարությունները հաղթահարելու միջոց։ Այն հանգամանքը, որ ժամանակակից պայմաններում խիստ աճել է լայն մասսաների ակտիվությունը քաղաքական կյանքում, իմպերիալիստներին ստիպում է պատճառաբանություններ գտնել միլիտարիստական քաղաքականությունը տեսականորեն արդարացնելու և հիմնավորելու համար։ Իմպերիալիզմի գաղափարախոսները պնդում են, թե իբր միլիտարիզմն ապահովում է զբաղվածությունը, հնարավորություն է տալիս խուսափելու դեպրեսիայից, նպաստում է մարդկանց բարեկեցությանը։ Մասսաներին այն միտքն են ներշնչում, թե «սառը պատերազմը» կենսապայմանները բարելավելու միջոց է։ Պարադոքսային է. վիթխարի նյութական արժեքները զոհաբերվում են ամեն ինչ լափող միլիտարիզմին՝ «բարեգործական նպատակներով»։

---

[1] Дж. Бернал, Мир без войны, М., 1960, стр. 9.

Տրամաբանական է, որ «միլիտարիզմի բարեգործական» դերի, պերմանենտ ռազմական էկոնոմիկայի կենսական անհրաժեշտության մասին հորինված կոնցեպցիաները ձեռնտու են ռազմամոլության և բիզնեսի կոալիցիային։ Դրանք կույր ֆանատիկների մոտ առաջացնում են ճակատագրական որոշումների հավանություն, հանուն «մարդկանց բարեկեցության»։ Ահա նման սրբապղծության նմուշներից մեկը։ Ամերիկյան սոցիոլոգ Բիվերիջը գտնում է, որ «գործազրկությունը վերացնելու այժմ միակ հայտնի... առավել գործուն միջոցը՝ տոտալ պատերազմն է»[1]։

Ձևական տրամաբանության կանոնների համաձայն, այս դատողությունը համանշանակ է «դեպի բարգավաճում՝ պատերազմի միջոցով» թեզին, որն իրականում նշանակում է՝ «երջանիկ կյանք գերեզմանում»։

Բիվերիջի բարբաջանքները վկայում են այն մասին, որ իմպերիալիզմն այնպիսի դաժան, բարոյապես այլանդակ մարդկանց կաստա է ստեղծել, որն ընդունակ է անվրդով նայելու տասնյակ միլիոնավոր մարդկանց համար սպանիչ համաշխարհային ռազմական սպանդին։ Դիպուկ է նկատում Ֆրեդ Կուկը, որ ԱՄՆ-ում «խելացի մարդու համբավ ունի նա, ով գտնում է, թե միակ ելքը պատերազմն է»։

Իհարկե, ռազմական արտադրության մեջ բանվորական ձեռքեր են պետք, թեպետև նրանց էներգիան վատնվում է անիմաստ։ Ամերիկայի Միացյալ Նահանգներում ռազմական արտադրության ոլորտ են ներքաշված 7,5 միլիոն ամերիկացիներ կամ երկրի ամբողջ բանվորական ուժի մեկ տասներորդը[2]։ Սակայն մի՞թե այդ փաստից այն հետևությունն է բխում, թե միլիտարիզմը զբաղվածության պրոբլեմը լուծելու եղանակներից մեկն է։ Այդ կարծիքի համաձայն ստացվում է, որ ծանր հիվանդին կարելի է բուժել թմրադեղով կամ հին չարիքների դեմ պայքարել նոր չարիքներով։

Միլիտարիզմը զբաղվածության անհամամասնային աճ է առաջացնում արդյունաբերության տարբեր ճյուղերում։ Արտադրությունը զարգանում է միակողմանիորեն։ Ռազմական

[1] Տե՛ս **Х. Люмер**, Военная экономика и кризис, М., 1955, էջ 65:

[2] Տե՛ս **Фрэд Кук**, Государство войны, էջ 35:

արդյունաբերության արագորեն ընդլայնվող ճյուղերում դրաղվածությունն աճում է քաղաքացիական ճյուղերում զբաղվածությունը կրճատելու հաշվին։ Դրա հետևանքով կատարվում է տնտեսական ցիկլի դեֆորմացիա՝ տնտեսության որոշ ճյուղերի անընդհատ անկման հաշվին մյուսների արհեստական աշխուժացման և խթանման շնորհիվ։ Բացի դրանից, արտադրության քաղաքացիական ճյուղերը ձեռք են բերում ռազմական արտադրության գծեր։

Միլիտարիզմը չի կարող կասեցնել կապիտալիզմի օբյեկտիվ տնտեսական օրենքների գործողությունը։ Նա ինքն այդ օրենքների գործողության ադեկվատ դրսևորումն է։ Մշտական միլիտարիստական լիցքավորումը կապիտալիզմի զարգացման ժամանակակից փուլի օրինաչափությունն է։ Ջոն Բեռնալի խոսքերով ասած, «ժամանակակից աշխարհի շատ չարիքներ, այնպես, ինչպես դեպի պատերազմ տանող լարվածությունը, ծնվել են կապիտալիստական արտադրության ծայրաստիճան անկայունությունից, ճգնաժամերի և գործազրկության վտանգից, որոնք կարող են հաղթահարվել միայն վերացվինվելու բումը արդարացնող պարբերաբար կրկնվող պատերազմներով կամ պատերազմի նախապատրաստությամբ»[1]։

Պետք է նկատել, որ միլիտարիստական լիցքավորման օգնությամբ տնտեսական կյանքի արհեստական աշխուժացումը բումման միայն կեղծ ու կարճատև պատրանք է առաջացնում։ Այդ դրությունը պատկերավոր է նկարագրել ամերիկյան առաջադեմ տնտեսագետ Լյումերը։ Ռազմական արտադրությունը համարելով տնտեսական ճգնաժամերի դեմ հակաթույն, գրել է նա, մոնոպոլիստական բուրժուազիան հիշեցնում է նարկոմանի, որին թմրադեղի դոզան սկզբում բարեհաջողության զգացություն է հաղորդում. սակայն դրան հետևում են հիվանդագին հետևանքները, որոնցից հնարավոր է ազատվել, դիմելով միայն թմրադեղի նոր, ավելի մեծ դոզայի։ Եվ յուրաքանչյուր նոր դոզան թուլացնում է բարեհաջողության զգացությունը, այն ժամանակ, երբ հետևանքները գնալով ավելի հիվանդագին են դառնում, մինչև որ վերջապես,

---

[1] **Дж. Бернал,** Мир без войны, стр. 17.

նարկմանը իր օրգանիզմը չի քայքայում Թույնի ավելի հաճախակի և խոշոր դոզաներով։ «Այդպիսին է ... ռազմական ծախսերի «ներարկումների» հաջորդականությունը։ Յուրաքանչյուր «ներարկում» շատ փոքր ժամանակահատվածում կանխում է ճգնաժամի բռնկումը, բայց այդ անում է միայն ճըգնաժամ ծնող գործոնների ուժեղացման հաշվին, ընդ որում, ամեն մի հաջորդ «ներարկումը» պակաս արդյունավետ է, քան նախորդը։ Վերջին հաշվով այդ սիստեմատիկ «ներարկումը» կարող է ավարտվել միայն աղետով՝ կա՛մ տնտեսական կրախով, կա՛մ երրորդ համաշխարհային պատերազմով»[1]։

Միլիտարիզմը բարեկերտ ասպեկտով ներկայացնելու մոնոպոլիստական կապիտալի պաշտպանների բոլոր մտախաղերը մասսաներին խաբելու, հիմարացնելու և ռազմամոլության ու մոնոպոլիաների հակաազգային գործունեությունը արդարացնելու միջոց է։

Միլիտարիզմը ոչ թե բարեգործական ձեռնարկություն է, այլ սոցիալական օրգանիզմի նորմալ կենսագործունեությունը խախտող չարորակ ուռուցք։ Նրա մոլոքը հսկայական նյութական միջոցներ է լափում, մոնոպոլիստների նեղ խմբավորման հարստացման գնով սնանկացնելով աշխատավորական լայն շերտերին։ Հենց այն հանգամանքը, որ մասսայական գործազրկության պրոբլեմի լուծումը բուրժուազիան կապում է միլիտարիզմի հետ, ակնհայտորեն վկայում է իմպերիալիզմի արատավորության և խորը դեգրադացման մասին։

Միլիտարիզմը հասցնում է բանվորական ուժի շահագործման ուժեղացմանը, բնակչությունից գանձվող հարկերի անչափ ավելացմանը, ինֆլյացիայի և թանկության աճմանը։ Այն մի հրեշ է, որ խժռում է հասարակ աշխատավորների ստեղծած անհաշիվ նյութական արժեքները։ Նա իր լրիվ դըրսևորումն է գտնում սպառազինությունների մրցավազքում, որը դարձել է մոնոպոլիստական բուրժուազիայի կեցության բնական վիճակը։ Սպառազինությունների բումը անկուշտ հրեշի նման անընդհատ աճող դոզաներով վիթխարի միջոցներ է կուլ տալիս, որոնք ճշգրիտ հաշվարկի անգամ չեն ենթարկ-

---

[1] Х. Люмер, Военная экономика и кризис, стр. 171.

վում։ Կապիտալիստական աշխարհը համակած սպառազինությունների անզուսպ մրցավազքը իմպերիալիզմի աճած ագրեսիվության դրսևորումներից մեկն է։ Այսպես, եթե 1929 թվականին, երկու համաշխարհային պատերազմների միջև ընկած համեմատաբար խաղաղ ժամանակաշրջանում, ուղղակի ռազմական ծախսերը համեմատական վալյուտայով մոտավորապես 4 միլիարդ դոլար էին կազմում, ապա 1963 թվականին դրանք 120 միլիարդ դոլար կազմեցին, որոնց 80 տոկոսից ավելին բաժին է ընկնում Հյուսիս-ատլանտյան իմպերիալիստական կոալիցիայի մեջ մտնող պետություններին։ ՆԱՏՕ-ի գոյության 15 տարիների ընթացքում դրա մեջ մտնող երկրների ռազմական ծախսերը կազմեցին ավելի քան 1000 միլիարդ դոլար։ Հետպատերազմյան 20 տարիների ընթացքում ԱՄՆ-ի ռազմական ծախսերը 40 անգամ գերազանցեցին երկրորդ համաշխարհային պատերազմից առաջ երկու տասնամյակների ընթացքում կատարված երկրի ռազմական ծախսերին։ Ներկայումս ԱՄՆ-ի ֆեդերալ բյուջեով նախատեսված բոլոր ծախսերի երկու երրորդը կատարվում է ռազմական նպատակներով։

Այժմ պատերազմի նախապատրաստության նպատակին ծառայում է 100 միլիոն մարդ, որոնք զբաղված են անարտադրողական աշխատանքով։ Իսկ զենքի ժամանակակից տեսակների կատարելագործումն ուղիղ համեմատական է դրա արժեքին։ Ամերիկյան «Բուլետին օֆ Վաշինգտոն» ամսագիրը հաշվել է, որ միջմայրցամաքային հրթիռների համար Օմախում կառուցված ստարտային հրապարակը 250 միլիոն դոլար է նստել։ Վ—70 «Վալկիրիա» ռեակտիվ ռմբակոծիչը 150 միլիոն դոլար արժե։ «Պոլարիս» ատոմային սուզանավի արժեքը 100 միլիոն դոլար է։ Որոշ ռմբակոծիչներ արժեն այնքան ոսկի, որքան իրենց քաշն է։ Իսկ գիտատեխնիկական առաջընթացի ժամանակակից բարձր տեմպերի պայմաններում զենքի յուրաքանչյուր տեսակ սկսում է հնանալ արտադրության մեջ նրա թողարկումն իրականացնելուց հետո։ Եթե երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակաշրջանի ամերիկյան «Թռչող ամրոց» (Վ—17) ռմբակոծիչները 10 տարի շարունակ մնացին զինված ուժերի տրամադրության տակ,

ապա Վ—36 ամերիկյան միջմայրցամաքային ռմբակոծիչը հնացավ մոտ 7 տարի հետո։ Եվ, եթե երկրորդ համաշխարհային պատերազմի եզրափակիչ փուլում գործողության մեջ դրըված Ց—51 ամերիկյան կործանիչի կառուցումը պահանջեց 154 հազար մարդ-ժամ և այն 21 հազար դոլարարժեր, ապա 1957 թվականին Ց—100 կործանիչի կառուցման վրա 404 հազար մարդ-ժամ ծախսվեց և այն 486 հազար դոլար նստեց[1]։

1959/60 ֆինանսական տարում ԱՄՆ-ի հետևակային, ծովային և օդային ուժերի մատակարարումից 5 միլիարդ 590 միլիոն դոլարի արժողությամբ հնացած զենք հանվեց։ Այդ գումարը հավասար էր Ճապոնիայի տարեկան ազգային եկամտի քառորդ բաժնին[2]։

Ներկա դարաշրջանում համընդհանուր սոցիալական առաջընթացը օրգանապես կապված է նորանոր ժողովուրդների սոցիալիզմին անցնելու և նյութական ու հոգևոր կյանքի բնագավառներում բարձունքներ նվաճող սոցիալիզմի համաշխարհային սիստեմի պետությունների տնտեսա-քաղաքական բուռն վերելքի հետ։ Սոցիալիստական երկրների անվտանգությունն ապահովելու հրամայական խնդիրը նրանց պարտավորեցնում է որոշ զոհաբերություններ կատարել, որոնք արտահայտվում են պաշտպանական նպատակներով նյութական միջոցներ առանձնացնելու մեջ։ Եվ, ահա իմպերիալիստական տերությունների քաղաքական շրջաններում ծնվեց այն գաղափարը, որ անհրաժեշտ է տարեցտարի ավելացնել ռազմական ծախսերի ծավալը, նպատակ ունենալով ստիպել սոցիալիստական պետություններին համապատասխանաբար նույնն անելու և դրանով իսկ կասեցնելու նրանց տնտեսական վերելքը։ Այս կոնցեպցիայում նոր երանգով են արտացոլվում իմպերիալիզմի ռեակցիոն բնույթն ու չարանենգ էությունը։ Ողջամտությունից զուրկ այս տեսակետի իմաստը մոտավորապես այսպիսին է. սնանկացնել ուրիշներին՝ սեփական սնանկացման պայմանով, հանուն մասնավոր սեփականության պահպանման՝ սպառազինությունների մրցավազքին զոհաբերել տնտեսական և սոցիալական առաջադիմությունը։ Մյուս կողմից՝

---

[1] Տե՛ս Г. Киссингер, Ядерное оружие и внешняя политика, էջ 23։

[2] Տե՛ս «В защиту мира», 1960, № 1, էջ 23։

այս քաղաքական խաղերը ցույց են տալիս, որ իմպերիալիզմը առաջադեմ մարդկությանը ոչինչ չի կարող առաջարկել, բացի սպառազինությունների մրցավազքի անընական ոլորտում մրցությունից։

Իսկ որքա՞ն են տուժում թույլ զարգացած երկրները, որտեղ հասարակական կյանքի բոլոր ոլորտներում իրենց լուծումը պահանջող հրատապ պրոբլեմներ կան։ Մինչդեռ աշխարհում միջազգային իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականությունից ծնված լարվածությունը այդ երկրներին ստիպում է առանց այն էլ աղքատիկ ազգային եկամտից մեծ գումարներ առանձնացնել ինքնապաշտպանության նպատակներին։ Դրա հետևանքով այդ երկրների համեմատաբար արագ զարգացման հնարավորությունները նվազում են, հասունացած սոցիալական պրոբլեմների լուծման ժամկետները հետաձգվում են։

Կապիտալիստական տերությունների զինված ուժերի թըռվական աննախադեպ աճի մեջ ևս գործնականում հաստատվում է այն ճշմարտությունը, որ մոնոպոլիստական բուրժուազիան բռնության մեջ է տեսնում իր փրկությունը։ Բավական է ասել, որ 1962 թվականի կեսերին ԱՄՆ-ի զինված ուժերը, 1939 թվականի համեմատությամբ, ավելացան ավելի քան 8 անգամ։

Այսպիսով, սեփական հոգեվարքը երկարաձգելու նպատակով, իմպերիալիզմն արտադրության խաղցիոնալ, անարդյունավետ ոլորտների և ռազմական միջոցների զարգացմանն է ուղղում վիթխարի նյութական արժեքներ, որոնք ռացիոնալ և ճիշտ օգտագործման դեպքում կապահովեին թույլ զարգացած շատ երկրների ընդհանուր տնտեսական և սոցիալական բարգավաճումը։ Սակայն դա հնարավոր է միայն արտադրության միջոցների հանրային սեփականության պայմաններում։ Մինչդեռ իմպերիալիզմի օրոք բիզնեսի շահերը համամարդկային առաջադիմության շահերից բարձր են դասվում։

* * *

Արդի դարաշրջանի առանձնահատկություններից մեկն այն է, որ գիտությունը վերածվելով հզոր արտադրողական

ուժի, խթանում է հասարակական առաջադիմությունը, մարդկանց նյութական բարեկեցությունը։ Սակայն չի կարելի անտեսել կոնկրետ սոցիալական պայմաններում գիտական նվաճումների գործնական կիրառման բնույթը։

Ժամանակակից աշխարհում իմացության մակարդակը անդրադառնում է ռեակցիայի և առաջադեմ ուժերի, սոցիալիզմի և կապիտալիզմի միջև մղվող պայքարի բնույթի վրա։ Բուրժուազիան գիտությունը միշտ ենթարկել է բռնությանը, այն վերածելով պատերազմի գործիքի։

Պատմությունը ցույց է տալիս, որ շահագործողական հասարակություններում գիտությունը չի կարող ռացիոնալ և լիարժեք ձևով օգտագործվել, ծառայել հասարակության լայն խավերի շահերին։ Բուրժուազիայի կողմից գիտության զարգացումը խթանելը միշտ բացասական հետևանքներ է բերել աշխատավոր լայն զանգվածներին։ Այդ կատարվել է կամ բարձր շահույթ կորզելու, կամ էլ մարդկանց բնաջնջելու միջոցները կատարելագործելու համար։ «Տեխնիկայի և գիտության առաջընթացը կապիտալիստական հասարակության մեջ,— նշել է Վ. Ի. Լենինը,— նշանակում է առաջընթաց՝ քրտինք քամելու արվեստի մեջ»[1]։

Շահագործող ոչ մի դասակարգ այնպիսի մոլուցքով գիտությունը չի վերածել պատերազմի գործիքի, ինչպես դա այժմ անում է իմպերիալիստական բուրժուազիան։

Իմպերիալիզմի օրոք մոլեգնող միլիտարիզմը ներխուժել է նաև գիտության բնագավառը։ Իմպերիալիստական բուրժուազիան այն հզոր ստեղծագործական արտադրողական ուժից կույր կործանարար ուժի է վերածել։ «Գիտությունը երկսայր ամենազոր գործիք է, որ, նայած թե ում ձեռքում է գտնվում, կարող է կամ ծառայել մարդկանց երջանկությանն ու բարգավաճմանը, կամ նրանց կործանմանը[2]», նշել է Ս. Ի. Վավիլովը։

Որպես մարդկային հոգևոր կուլտուրայի կարևորագույն տարր և գիտելիքների բարձրագույն ձև, գիտությունը

---

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 18, էջ 750։

[2] С. И. Вавилов. Соч., т. 3, стр. 607.

կոչված է ծառայելու մարդկանց, բավարարելու հասարակական կյանքի պահանջմունքները։ Գիտության նվաճումների օգտագործման վրա ներգործում են հասարակական այնպիսի գործոններ, ինչպիսիք են նյութական արտադրության կարիքները, սոցիալ-քաղաքական պրակտիկան, հասարակության տնտեսակարգը, տիրապետող աշխարհայացքի բնույթը և այլն։

Իմպերիալիզմն աղավաղում, այլանդակում է գիտության դերը։ Իմացության արդյունքները նա նյութականացնում է սպառազինությունների մեջ, մարտահրավեր նետելով ամբողջ քաղաքակրթությանը։ Իմպերիալիզմը կազմալուծում է մարդկանց նախաձեռնությունն ու եռանդը, սարսափ ու հուսահատություն, ապագայի նկատմամբ անվստահություն առաջացնում։ Ժոլիո-Կյուրին հայտարարում էր. «Մենք առաջվա պես անխորտակելի հավատ ենք պահպանում մարդկության համար գիտության անգնահատելի նշանակության հանդեպ։ Բայց միևնույն ժամանակ մենք գիտենք, որ հանցագործներին, որոնք ձգտում են պատերազմ սանձազերծել, գիտությունն ավելի ու ավելի ավերիչ զենք է տրամադրում[1]»։

Իմպերիալիզմը մարդկային բանականության և աշխատանքի պտուղները մարդկանց դեմ է ուղղում. «Գիտնականները գիտեն, թե ինչքան օգուտ է բերել գիտությունը մարդկությանը. նրանք գիտեն նաև այն, թե ինչին կարող էր նա հասնել, եթե ամբողջ երկրագնդի վրա գահակալեր խաղաղությունը։ Նրանք չեն ուզում, որպեսզի երբևիցե արտասանվեն այսպիսի բառեր. «Գիտությունը հասցրեց մեր կործանմանը— ատոմային և ջրածնային ռումբերից»։ Գիտնականները գիտեն, որ գիտությունը չի կարող մեղավոր լինել։ Մեղավոր են միայն այն մարդիկ, որոնք վատ են օգտագործում նրա նվաճումները[2]»։

Իմպերիալիստական մոնոպոլիաներն առատորեն ֆինանսավորում են պատերազմի կարիքներին ծառայող հետազոտական աշխատանքները, նրանց մեջ ներգրավելով հազա-

---

[1] **Фрэдерик Жолио-Кюри,** Пять лет борьбы за мир, М., 1955, стр. 161.

[2] Նույն տեղում, էջ 190։

բավոր գիտնականների և տարբեր մասնագետների։ Միլիտարիզմի և գիտության փոխներթափանցումը իմպերիալիզմի ագրեսիվ էության անվիճելի հաստատումներից մեկն է։

Խոշոր կապիտալիստական տերություններում գիտության ռազմականացումն այնքան հեռու է գնացել, որ բոլոր ջանքերն ուղղվում են ռազմական նպատակների իրականացմանը։ ԱՄՆ-ի Մասաչուսետսի տեխնոլոգիական ինստիտուտի դոկտոր Հիլլը այսպես է գնահատում իրադրությունը երկրում. «Մեր աշխատանքը ոչ թե գիտություն, այլ ռազմական գործ զարգացնելն է»։

Տեղին է հիշել Կ. Մարքսի խոսքերը, որ կապիտալիզմի պայմաններում ամեն ինչ վերածվում է փոխանակային արժեքի՝ աշխատուժը, խիղճը, պատիվն ու արժանապատվությունը, սերն ու գեղեցկությունը, նկարչի տաղանդը և պոետի ոգևորությունը, գիտնականի հանճարը և տերտերի քարոզը։ Գիտնականը կորցնում է անկախությունը, սոցիալական հարաբերությունների զոհը դառնում։ Մի անգամ հրապարակայնորեն Ալբերտ Էյնշտեյնն այն միտքը հայտնեց, որ եթե ինքը նորից սկսեր կյանքը, բնավ գիտնական չեր դառնա, այլ ավելի շուտ այնպիսի մասնագիտություն կընտրեր, որ իրեն անկախություն կապահովեր։

1940-ից մինչև 1958 թվականն ընկած ժամանակաշրջանում ԱՄՆ-ում ռազմական հետազոտությունների համար ծախսերն աճեցին 53,4 անգամ։ Ներկայումս ռազմական բնույթի գիտական հետազոտությունների վրա ԱՄՆ-ում տարեկան 6,2—8 միլիարդ դոլար է ծախսվում[1]։ Գիտության վրա ծախսվող պետական միջոցների մոտավորապես 90 տոկոսն ընկնում է ռազմական նպատակներին։ Ամերիկյան գիտաշխատողների կեսից ավելին զբաղված է ռազմական պրոբլեմների լուծմամբ[2]։ Արդեն 1947 թվականին ԱՄՆ-ի ռազմական մինիստրությունը հայտարարեց, որ նոր մշակված ծրագրի համաձայն, Ամերիկայի Միացյալ Նահանգներում յուրաքանչյուր գիտնական և ինժեներ պետք է օգտագործվի հարյուր տոկոսով։

---

[1] Տե՛ս «В защиту мира», 1960, № 1, էջ 25—26։

[2] Տե՛ս «Проблемы современного капитализма», М., 1959, էջ 24։

Ամերիկյան 92 բարձրագույն ուսումնական հաստատություն-ներ կոնտրակտներ են ստորագրել հրթիռաշինության ասպա-րեզում հետազոտական և կոնստրուկտորական աշխատանքներ կատարելու համար։ Ռոկֆելլերների ֆինանսական դինաս-տիան իր կապիտալի զգալի մասը ներդրել է հրթիռային ար-դյունաբերության և նրա հետ կապված միջուկային զենքի արտադրության մեջ։

Բազմաթիվ մոնոպոլիաներ կռվում են իրար դեմ՝ կառա-վարական ռազմական պատվերներն իրենց հանձնելու համար։ Նախկին գեներալները վերածվում են ռազմա-հետազոտական ընկերությունների խոշոր տուզերի, է՛լ ավելի բորբոքելով մի-լիտարիստական կրքերը։

Մարքսն ու Էնգելսը ընդգծում էին, որ կապիտալիզմի շարժումը օրինաչափորեն հասցնում է նրան, որ արտադրո-ղական ուժերը զարգանալով միակողմանիորեն կործանա-րար ուժերի են վերածվում։ Վ. Ի. Լենինի խոսքերով ասած, արտադրության և գիտության բոլոր նվաճումները ժամանակա-կից կապիտալիզմը չի կարող գործադրել այլ կերպ, քան մաս-սայական մասշտաբներով արկեր, պայթուցիկ նյութեր և «մարդկանց խեղանդամ դարձնելու արտադրության» և արտա-դրողական ուժերի ոչնչացման ուրիշ գործիքներ պատրաստե-լով։ Եվ նման իրավիճակն անհաղթահարելի է, քանի դեռ ար-տադրողական ուժերը զարգանում են մասնավոր սեփականա-տիրական կապիտալիստական արտադրահարաբերությունների կեղևում։ Ժամանակակից արտադրողական ուժերի և արտա-դրության միջոցների սեփականության կապիտալիստական ստրուկտուրայի միջև խիստ սրված հակասության դրսևորում-ներից մեկը հենց այն հակաբնական դաշինքն է, որ ստեղծվել է գիտության և ռազմամոլների միջև և որն ուղղված է քաղա-քակիրթ մարդկության դեմ։

Որտեղ և ինչպիսի սոցիալական պայմաններում էլ որ ապ-րի գիտնականը, չի կարող բարոյական գնահատական չտալ իր վարքագծին։ Գիտական փորձերն ու հետազոտություններն ինքնանպատակ չեն։

«Գիտությունը գիտության համար» սկզբունքը արատավոր է այնպես, ինչպես «արվեստը արվեստի համար» սկզբունքը։

Գիտությունը հաճույքի առարկա չէ, այն նպատակասլաց գործունեություն է, մարդկանց ծառայող միջոց։

Ատոմագետ Ռոբերտ Օպենհայմերը գտնում էր, որ պետք է տարբերել գիտնականի և քաղաքական գործիչի պատասխանատվությունը։ Նրա կարծիքով գիտնականը չպետք է պատասխանատվություն կրի հասարակության կողմից իր աշխատանքների արդյունքները օգտակար կամ վնասակար ձևով օգտագործելու համար։ Գիտնականը պատասխանատու է միայն իր աշխատանքների գիտական արժեքավորության համար։

Այս իմաստով կարելի է համաձայնել ֆրանսիական հրապարակախոս Միշել Ռուզեի կարծիքին, որ այն ենթադրությունը, թե գիտնականները, իբրև մեկուսացված կոլեկտիվ, կարող են պետական հարցերի լուծման վրա վճռական ազդեցություն թողնել՝ ցնորամտություն է, քանի դեռ գիտնականների մասնագիտական գործունեությունը, ինչպես նաև մյուս բոլոր աշխատավորների գործունեությունը օրգանապես մտնում է հասարակության կառուցվածքի մեջ և քաղաքական ուժի ղեկավարության տակ է գտնվում։ Սակայն գիտնականին չի կարելի դիտել որպես քաղաքականության կույր գործիք։ Իհարկե, նրա գործունեությունը ծավալվում է սոցիալական կոնկրետ պայմաններում, որոնք անդրադառնում են նրա վրա։ Կապիտալիստական մոնոպոլիաներն իրենց ցանցի մեջ են ներքաշում գիտնականներին, գիտության զարգացումն ուղղելով իրենց համար ցանկալի հունով։ Վ. Ի. Լենինն ասում էր, որ տասնյակ, հարյուրավոր տաղանդավոր մարդիկ է այլանդակում կապիտալիզմը՝ այդ հանցագործ աշխարհը։

Գիտությունն անխզելիորեն կապված է մարդկության ճակատագրի հետ և գիտնականը չի կարող անտարբերություն ցուցաբերել, երբ իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականությունը ճնշում է գործադրում գիտության վրա, նրանից պահանջելով իր համար ստեղծել անհրաժեշտ իրեր։ Գիտնականը պետք է որոշակի դիրք գրավի հասարակության տնտեսական կառուցվածքի և նրա քաղաքական դրսևորման նկատմամբ, հաշվի առնի քաղաքական ուժի բնույթը։ Նրա կապը իմացության պրոցեսի հետ նպաստում է խոր գիտական փիլիսոփայական աշխարհայացքի ձևավորմանը

սոցիալական հարաբերությունների և դիրքերի վերջնական ընտրության գործում։ Անկասկած, այս գործում իրենց դերն են խաղում անհատական հակումներն ու տենդենցները։

Ֆրեդերիկ Ժոլիո-Կյուրին, որպես կոմունիստ գիտնական, ապրելով կապիտալիզմի պայմաններում, օրինական ու նորմալ էր համարում խաղաղ նպատակներին և մարդկանց երջանկությանը ծառայող գիտության կիրառումը, հրեշավոր և այլասերված երևույթ՝ գիտության օգտագործումն ավերիչ նպատակներով։ Ահա թե ինչու նա կտրականապես հրաժարվեց աշխատել ատոմային ռումբ ստեղծելու վրա, որը կարող էր միլիտարիստների ձեռքն ընկնել։

Ինչ վերաբերում է ատոմային ռումբի ստեղծմանն անմիջապես մասնակցած ամերիկյան գիտնականներին, ապա, ինչպես իրավացիորեն նկատում է Ռուզեն, «օրինաչափ է ենթադրել, որ քաղաքական իշխանությունն իր համար խորհրդատուներ ընտրեց հենց այնպիսի գիտնականների, որոնք պետք է Վաշինգտոնի քաղաքականության ուղղությանն ամենից ավելի համապատասխանող կարծիք հայտնեին... Հասարակության հետ նրանց (այսինքն՝ գիտնականների — Ս. Ք.) փոխհարաբերությունների պրոբլեմը հանգում է հետևյալ երկու հարցերին տրվող պատասխանին. ո՞ր իշխանության հետ գնալ, հանուն ինչպիսի՞ ապագայի աշխատել»[1]։

Գիտնականի պատասխանատվությունն աճում է ռեակցիայի և առաջադիմության ուժերի միջև ծավալվող պայքարի սրման համեմատ այն դարաշրջանում, երբ աննախընթաց աճել է մարդու իշխանությունը շրջապատող բնության նկատմամբ։ «Իմպերիալիզմը տեխնիկական առաջադիմությունն օգտագործում է գերազանցապես ռազմական նպատակներով։ Նա մարդկային բանականության նվաճումներն ուղղում է հենց մարդկության դեմ։ Քանի գոյություն ունի իմպերիալիզմը, մարդկությունը չի կարող հանգիստ լինել իր ապագայի համար[2]»։

---

[1] **М. Рузе**, Роберт Оппенгеймер и атомная бомба, М., 1965, стр. 115—116.

[2] *ՍՄԿԿ ծրագիրը, էջ 32։*

## 2. Արդիականության հիմնական հարցի էությունը

Ներկայումս երկու հակադիր սոցիալական սիստեմների միջև մղվող պայքարն իր վճռական փուլի մեջ է մտել, որը համընկել է գիտական իմացության զարգացման այն էտապի հետ, երբ մարդու հայցախույզ միտքը թափանցել է միկրոաշխարհի խորքերը։ Պարզվեց, որ ատոմային միջուկի ճեղքումը ուղեկցվում է անսպառ էներգիայի անջատումով, որը կարող է համընդհանուր բարեկեցությանը ծառայող գերհզոր միջոց դառնալ։

Այդ հայտնագործությունը կատարվեց այնպիսի պայմաններում, երբ կապիտալիզմն անկում է ապրում։ Իմպերիալիստներին այդ էներգիան «աստվածային պարգև» թվաց։ Նրանք շտապեցին այն խցկել միլիտարիզմի երկաթե ճիրանների մեջ՝ հեղափոխական վերափոխությունների պրոցեսը կասեցնելու համար։ Գիտական հետազոտությունների արդյունքներն իմպերիալիզմն սկսեց օգտագործել դասակարգային և չարամիտ նպատակներով։

1945 թվականի օգոստոսին մարդկությունն իմացավ իմպերիալիզմի մի նոր ոճրագործության մասին, որը գիտությունը վերածեց կործանարար ուժի։ Ճապոնական երկու քաղաքների սարսափահար բնակիչները մահաբեր ատոմային ռումբերի տակ ընկան։ Մեծ գիտնականներն ակամա իմպերիալիստական տերությունների կառավարող շրջանների գործակիցները դարձան։

ԱՄՆ-ի այն ժամանակվա պրեզիդենտ Հարրի Տրումենը իր հիշողություններում գրում է. «Ես, իհարկե, հասկանում էի, որ ատոմային պայթյունը հսկառակորդին հսկայական նյութական վնաս և չտեսնված մարդկային զոհեր կպատճառի... Ես ատոմային ռումբը պատերազմելու միջոց էի համարում և երբեք չէի տարակուսում այն գործադրելու անհրաժեշտության մեջ[1]»։

Ատոմային ռումբերի պայթյունը նշանավորեց ջերմամիջուկային զենքի հայտնագործությունը՝ այստեղից բխող

---

[1] Տե՛ս Р. Лепп, Атомы и люди, М., 1959, էջ 85—87։

հետևանքներով։ Արտադրության ու գիտության զարգացումն առաջացրեցին այնպիսի վիճակ, երբ պատերազմի և դրա հետևանքների մասին նախկին բոլոր պատկերացումները հնացան։

Պոլ Լանժևենը գրում էր, որ գիտությունը հնարավոր է դարձնում մարդու նյութական ազատագրությունը, որը նրա հոգևոր ու բարոյական ազատագրության անհրաժեշտ պայմանն է։ Սակայն իմպերիալիզմը բացահայտորեն խեղաթյուրում է գիտության այդ դերը, այն վերածելով ագրեսիվ քաղաքականության գործիքի։ Գիտության և քաղաքականության միահյուսումը իմպերիալիզմի օրոք կատարվեց միլիտարիզմի հիման վրա։

Պատմության բոլոր ժամանակաշրջաններում տեղի ունեցած պատերազմներում սպառազինությունը, բանակի կազմը և այլ գործոններ կախված էին արտադրության և գիտության զարգացման մակարդակից։ Ինչպես Էնգելսն էր գրում, զենքի արտադրությունը «...հիմնված է ընդհանրապես արտադրության վրա, հետևապես՝ «տնտեսական հզորության» վրա, «տնտեսական դրության» վրա, նյութական այն միջոցների վրա, որոնք գտնվում են բռնության տնօրինության տակ... Սպառազինումը, բանակի կազմը, կազմակերպությունը, տակտիկան ու ստրատեգիան ամենից առաջ կախված են արտադրության տվյալ աստիճանից և հաղորդակցության միջոցներից։ Ոչ թե հանճարեղ զորավարների «մտքի ազատ ստեղծագործությունն է» հեղաշրջող դեր կատարել այս ասպարեզում, այլ ավելի լավ զենքի գյուտը և զինվորների կենդանի կազմի փոփոխությունը. հանճարեղ զորավարների ազդեցությունը լավագույն դեպքում սահմանափակվել է նրանով, որ պայքարելու եղանակը նրանք հարմարեցրել են նոր զենքերին և նոր մարտիկներին»[1]։

Էնգելսն այստեղ նշում է ռազմական գործոնի վրա զենքի նոր տեսակների հեղափոխականացնող ազդեցությունը։

Արդեն 14-րդ դարի սկզբներին վառոդն ու տաք զենքը

---

[1] Ֆ. Էնգելս, Անտի-Դյուրինգ, Հայպետհրատ, 1952, էջ 212—213։

հեղաշրջում մտցրին ռազմական բնագավառում։ Հրազենը գործադրելը ոչ միայն էական ներգործություն ունեցավ պատերազմը վարելու, այլև պետությունների քաղաքական հարաբերությունների վրա։ Բայց քիչ թե շատ լիարժեք հրազեն գործադրվեց ավելի ուշ, մոտավորապես անցյալ դարի կեսերին։ Վառոդի գործածության հետևանքով զինված պայքարի տեխնիկայի մեջ առաջացած հեղաշրջումն ավարտվեց միայն առաջին անգամ պատերազմում վառոդ գործածելուց հինգ հարյուրամյակ հետո։

Այսպիսով, նիզակը, նետը, աղեղն ու սուրը վերջնականապես դուրս մղվեցին հրազենի կողմից։ Բայց հրազենը նույնպես մնաց որպես տակտիկական միջոց։ Նոր փոփոխված պայմաններին հարմարվելը մեծ դժվարություն չէր ներկայացնում։ Անցյալի փորձը չէր կորցնում իր արժեքը ներկան գնահատելու ժամանակ։ Հրազենի ստեղծումը չէր նշանակում, թե զենքի տեսակների զարգացման դարաշրջանն ավարտված է։

Սպառազինությունների սրընթաց աճը, հատկապես այն բանից հետո, երբ կապիտալիզմը մտավ իր զարգացման իմպերիալիստական փուլը, հաճախակի ու լայնածավալ դարձած պատերազմները խթանեցին ռազմական զենքի հետագա կատարելագործումը։ Արդեն առաջին համաշխարհային պատերազմում սկսեցին կիրառվել շարժիչներ, որոնք հաջորդ համաշխարհային կոնֆլիկտի ժամանակ ամենուրեք տարածում գտան և վճռական դեր էին խաղում մարտադաշտում։ Երկու համաշխարհային պատերազմներում ավիացիան, հրետանին և տանկերը ռազմական գործողությունների ամբողջ ընթացքի բաղադրիչ մասերն էին։

Մինչմիջուկային զենքի գոյության պայմաններում ոչնչացման միջոցների անընդհատ կատարելագործումը օրինաչափորեն ընդլայնում էր պատերազմների մասշտաբներն ու թափը, խիստ շոշափելի հետևանքներ առաջացնելով դրանց մեջ ներքաշված երկրների համար։ Սակայն նույնիսկ այն նոր զենքի ավելի կատարյալ տեսակները, որոնք հեղափոխականացնող ներգործություն էին ունենում պատերազմ վարելու

եղանակների վրա, օժտված չէին այնպիսի հատկություններով, որոնք արմատական փոփոխություններ մտցնեին պատերազմի բնույթի մեջ։

Ատոմային էներգիայի հայտնագործության և բնագիտության մյուս ճյուղերի բուռն առաջընթացի շնորհիվ կատարվեց գիտատեխնիկական մեծագույն հեղաշրջում, որի հետևանքով պատմության մեջ առաջին անգամ պատերազմը որակապես փոխեց իր բնույթը։

* * *

Ֆիզիկայի հետազոտությունները պարզաբանեցին, որ նյութի մասսան կարելի է վերածել համարժեք քանակության էներգիայի և հակառակը։ Ատոմային ռումբի պայթյունը այդ դիալեկտիկական փոխակերպման դրսևորումն է, որի ընթացքում շատ փոքր քանակություն ունեցող մասսան շատ մեծ քանակության էներգիայի է վերածվում։ Մեկ գրամից էլ պակաս մասսան բավական է քսան կիլոտոնն ատոմային ռումբ ստեղծելու համար։

Հայտնի է, որ որակն հայտնաբերվում է իրեն ներհատուկ հատկությունների միասնության մեջ։ Ինչպես Հեգելն էր ասում, որակը հատկություն է նախ և առաջ ու գերազանցապես այն իմաստով, քանի որ այն իրեն հայտնաբերում է արտաքին հարաբերությամբ որպես իմանենտ սահմանում։ Նշանակում է՝ յուրաքանչյուր առարկայի հատկությունը որակի դրսևորման եղանակն է, այն արտահայտում է իմանենտ որոշություն մյուս առարկաների նկատմամբ, որոնց հետ փոխգործողության մեջ է մտնում։ Զենքի այնպիսի տեսակի որակական որոշակիությունը, ինչպիսին ատոմայինն է, դրսևորվում է այնպիսի էական հատկությունների մեջ, որոնք սահմանազատում են նրան նախկին, այսպես կոչված, սովորական զենքի տեսակներից։

Միջուկային զենքի էական հատկություններից մեկը աննախադեպ էներգետիկ հզորությունն է և մասսայական հարվածը։ Եթե Հիրոսիմա քաղաքի վրա նետված ատոմային ռումբը (որն այժմ ոչ մեծ տրոտիլային համարժեքությամբ

օժտված պրիմիտիվ ռումբ է համարվում) համեմատենք նախորդ համաշխարհային պատերազմում օգտագործված ամենամեծ տրամաչափի ռումբերի հետ, ապա այդ ճշմարտությունը կդրսևորվի ցայտունորեն։ Այսպես, սովորական ռումբերի օգնությամբ նույն արդյունքին հասնելու խնդիրը կպահանջեր առնվազն հազար ծանր ռմբակոծիչներ՝ միայն այդ ռումբերը տեղափոխելու համար։ Քսան կիլոտոննանոց ատոմային ռումբը հազար անգամ հզոր է երկրորդ համաշխարհային պատերազմում օգտագործված ամենախոշոր ռումբերից։ Պայթյունի արդյունավետությունը գերազանցում է 100 անգամ[1]։

Հզորագույն էներգիայի աղբյուրը հայտնագործելու և առաջին ատոմային ռումբերը ստեղծելու պահից սկսած միջուկային զենքի կատարելագործումը ընթանում էր աճող համառությամբ։ Ծանր ջրածնի (դեյտերիում) երկու ատոմի և թթվածնի մեկ ատոմի միացման միջոցով կատարվեց ջերմամիջուկային սինթեզ։ Այսպիսի միացությունը մատերիայի ավելի մեծ ճեղքում է առաջացնում, քան բաժանումը, և, հետևապես, ավելի մեծ քանակության էներգիա է անջատվում։ Ատոմային լիցքի պայթյունի հետևանքով դեյտերիումի և տրիտիումի խառնուրդի (ջերմամիջուկային լիցքի) ջերմաստիճանն ակընթարթորեն բարձրանում է մինչև մի քանի տասնյակ միլիոնի, որը պայմաններ է ստեղծում հելիումի սինթեզի ռեակցիան ավելի արդյունավետ ընթանալու համար։ Հետաքրքիր է, որ բաժանման ժամանակ էներգիայի է վերածվում շփման մեջ մտնող նյութական մասսայի 1/1000-ից էլ պակաս, մինչդեռ սինթեզի ժամանակ՝ մոտավորապես 1/100։ «Բաժանում-սինթեզ-բաժանում» պրոցեսի հիման վրա ջերմամիջուկային զենքի ստեղծումը նոր էտապ էր միջուկային ռումբերի հարվածող հնարավորությունների զարգացման մեջ։

Ջերմամիջուկային ռումբի հզորությունը 1—2,5 հազար անգամ գերազանցում է Հիրոսիմայի վրա նետած ռումբի հզորությանը։ Այդ ռումբերի էներգետիկ հզորությունը համազոր

[1] Տե՛ս **Ангелос Ангелопулос.** Объединит ли атом мир? М., 1957, էջ 46։

է մի քանի տասնյակ միլիոն տոննա տրինիտրոտոլուոլի (ուժեղ պայթուցիկ նյութ) հզորությանը։ Այսպես, օրինակ, երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին Գերմանիայի վրա կատարված բոլոր օդային թռիչքների հետևանքով սպանվեց մոտավորապես 350 հազար մարդ։ Տասը մեգատոննանոց միջուկային ռումբը կարող է մի քանի անգամ ավելի շատ մարդ բնաջնջել, եթե նետվի խիտ բնակեցված խոշոր քաղաքների վրա։ Այդ ռումբն իր ավերիչ ուժով 2,2 անգամ գերազանցում է 1939—1945 թվականներին Գերմանիայի վրա նետված բոլոր ռումբերի հզորությանը։ Քսան մեգատոննանոց միջուկային ռումբի նետման հետևանքով լրիվ ավերման գոտու տարածությունը հավասար է 123 ք. կմ-ի։ Այդ տերիտորիայի վրա կարող է բնաջնջվել բնակչության 75 տոկոսը և ծանր կվիրավորվեն մյուսները։ Մասնագետների կարծիքով ջրածնային ռումբերի պայթուցիկ ուժը տեսականորեն անսահման է։ Ներկայումս շատ են խոսում այնպիսի ռումբերի ստեղծման մասին, որի պայթուցիկ հզորությունը կհավասարվի մեկ միլիարդ տոննա տրինիտրոտոլուոլի էներգետիկ հզորությանը։ Դա կլինի սուպերռումբ, որը երկրի երեսից կարող է ջնջել խիտ բնակեցված ոչ մեծ մի պետություն[1]։

Միջուկային զենքի սպեցիֆիկ հատկություններից մեկն այն է, որ ի տարբերություն սովորական ռումբերի, որոնք խոցում են միայն որոշակի օբյեկտներ, առանց մյուսներին հարվածելու, այն առանց ընտրության խոցում է մեծ տարածություններ, միաժամանակ պայթյունի էպիկենտրոնից շատ հեռու ընկած բնակավայրերում առաջացնելով ռադիոակտիվ մահաբեր տեղումներ։ Հաստատված է, որ եթե մեկ մեգատոննանոց ռումբի պայթյունի ժամանակ առաջացած հրագունդը շփվի երկրի մակերեսին, ապա այն իր մեջ կհավաքի հողի մասնիկներն, ավերված շենքերի բեկորները և կցրի դրանք մեծ տերիտորիայի վրա՝ ռադիոակտիվ տեղումների ձևով։ Օդերևութաբանական կոնկրետ պայմաններին համապատասխան, այդ տեղումները կարող են ծածկել մինչև 25 հազար քառա-

[1] Տվյալներն ըստ Г. Киссингер, «Ядерное оружие и внешняя политика» գրքի։

կուսի կիլոմետր տարածություն։ Հաստատված է, որ ռադիացիայի «մի փոքր փամփուշտ» թափանցելով նյութափոխանակություն, բջջի վարքագիծն ու բաժանումը որոշող ԴՆԹ մոլեկուլի մեջ կամ խոցելով ժառանգականության նրբագույն խրոմոսոմային մեխանիզմը, ընդունակ է առաջացնելու օրգանիզմի չարորակ վերափոխում։ Լրացուցիչ ռադիացիայի ամենաաննշան դոզան սպառնում է մարդու գենետիկ ապագային։ Ռադիոկենսաբանները նկատել են, որ օրգանիզմները ընդունակ են կուտակելու շրջապատող միջավայրում երևացող ռադիոակտիվ նյութերը։ Ռադիոակտիվության կուտակումը օրգանիզմում կարող է նույնիսկ մեկ միլիոն անգամ գերազանցել շրջապատի ռադիացիան, որ ճակատագրական վտանգ է ներկայացնում երիտասարդությանը և ապագա սերունդներին։ Այստեղից բխում է այն հետևությունը, որ «Միջուկային զենքի կիրառմամբ մեծ պատերազմի ծագման դեպքում մարդկային գեների մուտացիաների հաճախականությունը կարող է երկու, երեք և տասն անգամ աճել։ Հնարավոր է, որ նույնիսկ այդպիսի պատերազմից հետո կենդանի մնացածների թիվը բավական չի լինի այն բանի համար, որպեսզի մարդկանց հետագա սերունդներ առաջանան, հնարավոր են նույնիսկ այնպիսի փոփոխություններ մարդկային սաղմային պլազմայում, որ այդ ապագա սերունդները հազիվ թե հնարավոր լինի մարդիկ համարել[1]»։

1965 թ. սեպտեմբերին գիտաշխատողների համաշխարհային ֆեդերացիայի ընդունած բանաձևում ասված է, որ համընդհանուր միջուկային պատերազմը կնշանակեր հարյուր միլիոնավոր մարդկանց կործանում, իսկ ռադիոակտիվ տեղումների հետևանքները վտանգի տակ կդնեին ամբողջ մարդկության գոյությունը։ Անգլիական գիտնականները գտնում են, որ եթե Լոնդոնի, Բիրմինհամի, Լան-Կաշիրի և Յորքշիրի վրա մեկական մեգատոննանոց ռումբեր նետվեն, կբնաջնջվի առնվազն 20 միլիոն մարդ։ Սովետական և օտարերկրյա մասնագետները հաշվել են, որ երկուական մեգատոնն հզորությամբ մոտավորապես 100 միջուկային լիցք 300—500 հազ.

[1] **Лайнус Полинг.** Не бывать войне. М., 1960, стр. 70.

ք. կմ. տարածությամբ երկրի վրա նետելու դեպքում նրա բոլոր արդյունաբերական շրջաններն ու վարչա-քաղաքական կենտրոններն ավերակների կույտի, իսկ տերիտորիան՝ ռադիոակտիվ մահաբեր նյութերով վարակված մեռնող անապատի կվերածվեն։ Ժյուլ Մոկի հաշիվներով Ֆրանսիայի բոլոր կենսական կենտրոնները ոչնչացնելու համար բավական է 15 ջրածնային ռումբ։ Ամերիկյան մասնագետների կարծիքով, եթե պատերազմի սկզբնական ժամանակաշրջանում ԱՄՆ-ի կարևորագույն օբյեկտներից յուրաքանչյուրին 5 միլիոն տոննա միջին տրոտիլային համարժեքով 263 ջերմամիջուկային հարված հասցվի, ապա կավերվեն 132 խոշոր ռազմական օբյեկտ, բազմաթիվ արդյունաբերական ձեռնարկություններ և 71 խոշոր քաղաք։ Ռադիոակտիվ վարակը կընդգրկի երկրի տերիտորիայի կեսից ավելին, բնակչության կեսը հարվածի տակ կընկնի։ Նկատի առնելով այն, որ երկու կողմերն էլ օժտված են բավականաչափ միջուկային լիցքերով, միայն առաջին հարվածի հետևանքով կզոհվեր 700—800 միլիոն մարդ, կավերվեին շատ երկրների բոլոր խոշոր քաղաքները[1]։

Եթե զենքի սովորական տեսակներով ռմբակոծելուց հետո անվնաս մնացած մարդիկ կարող էին արդեն չանհանգստանալ իրենց հետագա ճակատագրի համար, ապա միջուկային ռումբերի պայթյունների դեպքում, արտաքուստ առողջ մարդիկ իրականում, ռադիացիայի ենթարկվելով, դատապարտվում են ծանր տանջանքների։

Միջուկային ռումբերն օժտված են հակադարձ գործողության հատկությամբ։ Պայթյուններից առաջացած ռադիոակտիվ տեղումները կարող են հարվածել նաև հարձակվող կողմին։ Բնորոշ է, որ ռադիոակտիվ տեղումները տարածվում են ամբողջ երկրագնդով մեկ։ 1958 թվականին մի գիտական էքսպեդիցիա Անտարկտիդայում հայտնաբերեց ստրոնցիում։ Հաստատված է, որ մի քանի գերռումբի օգտագործման դեպքում ռադիոակտիվ տեղումների տարածման շրջանը 200 միլիոն քառակուսի մղոն է կազմում[2]։ Այստեղից հետևում է,

---

[1] Տե՛ս «Военная стратегия», М., 1963, էջ 243—244:

[2] Տե՛ս **Р. Лепп.** Атомы и люди, էջ 147.

որ միջուկային պատերազմի դեպքում կողմերից ոչ մեկը, ոչ մի ժողովուրդ չի կարող խուսափել նոր զենքի հարվածող գործողություններից։ Պատերազմն այնպիսի թափ կընդունի, որ կարճ ժամանակամիջոցում ռազմական գործողությունների ոլորտ կներքաշվեն համարյա բոլոր մայրցամաքները, և ոչ ոք ապահով տեղ չի գտնի։

Ջերմամիջուկային զենքի առանձնահատկություններից մեկն էլ նրա մենամարտային բնույթն է։ Եթե նախկինում հարձակողական և պաշտպանական միջոցների միջև որոշ հավասարակշռություն գոյություն ուներ, ապա ներկայումս այդ հարաբերական համապատասխանությունը խախտված է։ Բացառապես ամեն ինչ մահվան միասնական կրակագծում կլինի։ Հարվածի օբյեկտներ կդառնան ոչ միայն զինված ուժերը, այլև խորը թիկունքը, վարչա-քաղաքական կենտրոններն ու արդյունաբերական ձեռնարկությունները։ Ռազմաճակատի ու թիկունքի, զինված ուժերի և քաղաքացիական բնակչության միջև ընկած սահմանները կջնջվեն։ Հատկանշական է, որ երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին, երբ բացակայում էին մասսայական ոչնչացման զենքի տեսակները, քաղաքացիական բնակչությունից զոհվածների թիվն, առաջին համաշխարհային պատերազմի համեմատությամբ, 50 անգամ աճեց, համարյա հավասարվելով զորքերի կորուստների թվին։

Դժվար չէ կռահել, որ հրթիռա-միջուկային պատերազմը հիրավի գլոբալ, համընդհանուր բնույթ կկրի։ Լուծվել է նաև միջմայրցամաքային հրթիռների օգնությամբ երկրագնդի ուզած կետը միջուկային լիցքերը հասցնելու պրոբլեմը։

Կարևոր դեր է խաղում նաև այնպիսի ռազմա-քաղաքական գործոն, ինչպիսին ռազմական ռադիոէլեկտրոնիկայի միջոցներն են—այսինքն՝ ամբողջովին վերցրած, զորքերի և մարտական միջոցների ղեկավարման պրոցեսների ավտոմատացման և մեքենայացման միջոցները։ Էլեկտրոնային հաշվիչ մեքենաների և կիբեռնետիկայի մյուս նվաճումների ներդրումն ու զարգացումն ընդլայնում են զորքերի մարտական կարողությունները։ Համապատասխանաբար դա հասցնում է ռազմական գործողությունների եղանակների ու բնույթի փոփոխու-

*թյանը և զորքերի մանևրականության ու շարժունության տարրերի ավելացմանը։*

*Ռադիոէլեկտրոնային տեխնիկայի միջոցները հրթիռային զենքի ղեկավարման սիստեմի բաղկացուցիչ մասն են։ Ներկայումս կոճակը սեղմելով, ամբողջ քաղաքներ կարող են ավերակների կույտի վերածվել։ Իսկ այդպիսի «կոճակներ» են ռադիոէլեկտրոնային սարքավորումները։*

*Ասածից հետևում է, որ ջերմամիջուկային զենքի և դրա ավտոմատ ղեկավարման սարքավորումների հանդես գալուց հետո, արդյունաբերական կամ վարչա-քաղաքական օբյեկտների սիստեմից կոնկրետ նպատակների ընտրության մեթոդը կորցրել է իր իմաստը։ Չէ որ այս կամ այն քաղաքի վրա ընկած ռումբը կոչնչացնի այնտեղ գործող բոլոր արդյունաբերական ու վարչա-քաղաքական օբյեկտները։*

*Հրթիռա-միջուկային զենքի առկայության պայմաններում հատուկ նշանակություն է ձեռք բերում հանկարծակիության գործոնը։ Դրան պետք է ավելացնել այն, որ հակառակորդը չի կարող նախօրոք գուշակել, թե որ օբյեկտներին կհասցվեն հարվածները։*

*Պետք է ընդգծել նաև այն փաստը, որ հրթիռային զենքն օժտված է գործողության անսահման հեռահարությամբ, հրսկայական արագությամբ և թռիչքի բարձրությամբ, նպատակակետին խփելու ճշտությամբ, կրակի բարձր մանևրականությամբ և ցանկացած հզորություն ունեցող միջուկային լիցք կրելու կարողությամբ։ Հրթիռներն օժտված են հանկարծակի հարվածներ հասցնելու, միաժամանակ և՛ խորը թիկունքում, և՛ ռազմաճակատում մեծ թվով օբյեկտներ արագորեն ու հուսալի կերպով խոցելու հատկությամբ։*

*Այս հատկությունների մեջ դրսևորվում է հրթիռային զենքի նոր, որակական որոշակիությունը։*

*Ստրատեգիական, օպերատիվ և տակտիկական նշանակման հրթիռները գնալով էլ ավելի են կատարելագործվում։ Դա անչափ մեծացնում է զենքի ժամանակակից տեսակների մարտական հնարավորությունները, պատերազմին հաղորդելով աշխարհավեր բնույթ։*

*1940–1945 թվականներին անգլո-ամերիկյան ավիացիան*

Գերմանիայի և նրա կողմից օկուպացված երկրների վրա նետեց 2 միլիոն տոննա ռումբ։ Ներկայումս ստրատեգիական նշանակման մեկ հրթիռն ընդունակ է նպատակին հասցնելու տասնյակ անգամ հզոր միջուկային լիցք, քան այդ երկու միլիոն տոննա ռումբերի մեջ պարունակվող սովորական պայթուցիկ նյութի գումարային ուժն է։

Այսպիսով, ժամանակակից պայմաններում զինված պայքարի նյութական միջոցների զարգացման և կատարելագործման ասպարեզում ձեռք բերված մակարդակի վերլուծությունը ցույց է տալիս, որ հրթիռա-միջուկային զենքի ստեղծման հետևանքով ոչնչացման տեխնիկայի մեջ կատարված հեղաշրջումն անհամեմատ գերազանցում է այդ ասպարեզում վառոդի կիրառման հետևանքով առաջացած հեղաշրջման նշանակությունը։

Նույնիսկ երկու համաշխարհային պատերազմները, որ ամենաթանկ արժողություն ունեցող զինված բախումներն էին, ընդունակ չէին ամենակուլ դեր խաղալու։ Շատ պետություններ կարող էին անվտանգ ապրել, հեռու մնալ ռազմական գործողություններից։ Կռվող կողմերն հետապնդում էին հակառակորդի զինված ուժերը ռազմաճակատում ջախջախելու նպատակը, միաժամանակ լուծելով այս կամ այն տերիտորիան պահպանելու կամ նվաճելու խնդիրը։ Նախկինում պատերազմի բախտը հիմնականում որոշվում էր զինված պայքարի ցամաքային ոլորտներում։ Ռազմական գործողությունները համեմատաբար դանդաղ էին ծավալվում և սովորական զենքով թիկունքին հասցվող հարվածները պատերազմի բախտի վրա էական ներգործություն ունենալ չէին կարող։ Քաղաքացիական պաշտպանությունը ռեալ խնդիր էր, որ պայմանավորված էր գործադրվող զենքի սահմանափակ հնարավորություններով։ Մարդկային զոհերը և նյութական կորուստները, ժամանակակից մասշտաբների իմաստով, համեմատաբար սահմանափակ էին։ Պատերազմ վարելու եղանակները սովորաբար համատեղվում էին կռվող բանակի և քաղաքացիական բնակչության միջև ընկած տարբերության պահպանման հետ։

Հրթիռա-միջուկային զենքի և այն ցանկացած վայրը հասցնելու արդյունավետ միջոցների առկայությունը նախորոշում է պատերազմի կարճատևությունն ու համապարփակ բնույթը։

Ընդգծելով միջուկային զենքի նշանակությունը և ստրատեգիական նշանակման հրթիռային զորքերի անսահման հնարավորությունները, չի կարելի անտեսել պատերազմելու այնպիսի միջոցները, ինչպիսիք են հետևակային և հակաօդային պաշտպանության զորքերը, ռազմա-օդային ուժերը և ռազմածովային նավատորմը։ Կասկածից վեր է, որ ջերմամիջուկային պատերազմում զինված ուժերի քանակական մեծությունը որոշիչ գործոն չէ։ Օպերատիվ և տակտիկական նշանակման միջուկային լիցքեր կրող հրթիռներով հետևակային զորքերի զինումը նրանց նոր մարտական հատկություններով է օժտում, ավելացնում է նրանց հնարավորությունները հակառակորդի ջախջախումը ցամաքային մարտադաշտերում ավարտելու համար, բացառում հետևակի մեծ, հոծ մասսաներով մարտական գործողություններ վարելու անհրաժեշտությունը։

Միջուկային լիցքերը, որպես զենքի վճռական տեսակներ, չեն բացառում սովորական զենքի մարտունակությունը։ Անվիճելի է, որ ժամանակակից պայմաններում, հետևակային զորքերի հիմնական կրակամիջոցը նրանց հրթիռային միավորումներն են և անսահման հեռավորության վրա հարվածելու հատկություն ունեցող միջուկային ու այլ հրթիռներով զինված օպերատիվ-տակտիկական նշանակման զորամասերը։ Սակայն ժամանակակից ռազմական ստրատեգիայի մեջ նախատեսվում է, որ հրթիռա-միջուկային պատերազմի պայմաններում սովորական զենքի տեսակները պետք է հմտորեն կիրառվեն միջուկային զենքի հետ միասին, լրացնեն դրան։ Այստեղից հետևում է, որ ժամանակակից պատերազմում սովորական զենքի դերը չի նսեմանում։ Բուրժուական ռազմական տեսաբանները, որոնց հատուկ է միջուկային զենքի դերի ուռճացումը, խոստովանում են այդ. «Չի կարելի այլևս տարբերություն դնել, մի կողմից՝ նոր զենքի և մյուս կողմից՝ «մարտադաշտում փորձված կամ վստահելի և փորձված» զենքի միջև, քանի որ նոր աշխարհում փորձված և ստուգված

զենք գոյություն չունի։ Հրացանը, դաշտային հրետանին և տանկը, համապատասխանաբար և այդ զենքն օգտագործող հետևակային դիվիզիան կամ մարտական խումբը ստուգման են ենթարկվում ատոմային պատերազմի դարում առնվազն այն չափով, իսկ իրականում նույնիսկ ավելի շատ, քան ինքը՝ ատոմային ռումբը»[1], գրում է ամերիկյան հրապարակախոս պրոֆեսոր Բրոդին։

Սակայն անառարկելի է այն դրույթը, որ նոր համաշխարհային պատերազմում միջուկային զենքը իշխող ստրատեգիական գործոն է։ Ջերմամիջուկային զենքը երևան գալուց հետո, որն օժտված է հարվածելու համապարփակ հզորությամբ, նախկին բոլոր պատկերացումները պատերազմի և նրա հնարավոր հետևանքների մասին հնացել են։ Այդ հեղաշրջումը որոշվում է ոչ թե քանակական մեծությունների դինամիկայով, այլ քանակական փոփոխությունները որակականի վերաճելու դիալեկտիկայով։ Զենքը հարձակման կամ պաշտպանության միջոցից վերածվել է կույր, համընդհանուր ոչնչացման միջոցի՝ անխուսափելի հատուցումով։ Ինչպես Ջոն Բեռնալն է գրում, միջուկային պատերազմի դեպքում «...ամենուրեք այնպիսի սարսափ կտիրի, որը կգերազանցի միջին դարերի բոլոր պատկերացումները դժոխքի մասին. պայթող և այրող ռումբեր, հոշոտված և վառված մարմիններ և այն քչերի ապաքինման ավելի երկարատև սարսափ, որոնք կենդանի են մնացել... Միջուկային պատերազմը ... կլինի տանջալից սահում եւ դեպի մարդկության խոշտանգված և խելացնոր մնացորդների կյանքի ինչ-որ ձևը... Միջուկային պատերազմը այնպիսի ողբերգություն կլիներ, որ դուրս կգար մահվան և տառապանքների մասին մարդկության հայտնի սահմաններից»[2]։

Հին հունական դիցաբանության համաձայն Պրոմեթեոսը աստվածներից հափշտակեց կրակը և մարդկանց սովորեցրեց օգտվել դրանից։ Մեր ժամանակներում մարդկային հանճարը բացահայտեց բնության ամենախորհրդավոր գաղտնիքներից

---

[1] Дж. Броди, Стратегия в век ракетного оружия, М., 1961, стр. 176.

[2] Дж. Бернал, Мир без войны, стр. 26.

մենկը՝ նյութի խորը ընդերքում թաքնված անսպառ էներգիան և դրա օգտագործման եղանակները։ Ոչ թե դիցաբանության մեջ, այլ ռեալ նյութական աշխարհում մարդու բանականության ուժը հափշտակեց բնության կրակը։ Եվ դա կատարվեց պատմական այն դարաշրջանում, երբ մարդկությունը անցում է կատարում հասարակական կեցության կոմունիստական ձևին։ Սակայն ամեն մի հայտնագործություն, ունենալով իր ստեղծագործական և բարերար կողմը, միաժամանակ չարիք է դառնում պատմության կողմից դատապարտված ուժերի ձեռքում, որոնք փորձում են իրենց գոյությունն ու դիրքերը պահպանել բռնության օգնությամբ. «...ամեն մի բան կարծես թե հղի է իր հակադրությամբ։ Մենք տեսնում ենք, որ մարդկային աշխատանքը կրճատելու և ավելի արդյունավետ դարձնելու հրաշագործ ուժով օժտված մեքենան տանում է դեպի սով ու ուժասպառում։ Հարստության նորահնար աղբյուրները շնորհիվ ինչ-որ ճակատագրական կախարդանքի, զրկանքների աղբյուր են դառնում... Թվում է, որ գիտության մաքուր լույսն անգամ չի կարող այլ կերպ փայլել, քան միայն տգիտության մռայլ ֆոնի վրա։ Մեր բոլոր գյուտերը և մեր ամբողջ առաջադիմությունը կարծես թե տանում են դեպի այն, որ նյութական ուժերը հոգեկան կյանք են ստանում, իսկ մարդկային կյանքը իջնում է մինչև բութ նյութական ուժի աստիճանը»[1]։

Այդ ուժերի համակենտրոնացված արտահայտությունը իմպերիալիստական բուրժուազիան է, որ ջերմամիջուկային պատերազմի սպառնալիքով ջանում է ահաբեկել ժողովուրդներին, բթացնել նրանց հեղափոխական գիտակցությունը, ներշնչել համաշխարհային քաղաքակրթության կործանման գաղափարը, հանգցնել լավագույն ապագայի նկատմամբ եղած հավատը։ Միջուկային զենք ճոճելով, մոնոպոլիստական բուրժուազիան ցանկանում է լուծել իր գլխավոր դասակարգային խնդիրը՝ խափանել կապիտալիզմի դեմ մարտնչող հեղափոխական ուժերի պայքարը, պահպանել իր դասակարգային տիրապետությունը։

---

[1] Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հատ. 1, Հայպետհրատ, 1950, էջ 423։

* * *

Սպառազինությունների կատաղի մրցավազքը, որ իրականացնում է իմպերիալիզմը, առաջին հերթին և գլխավորապես ուղղված է կոմունիզմի դեմ։

Առաջին պլանի վրա է դրված միջպետական դասակարգային պայքարը։ Միջազգային իմպերիալիզմի ամբողջ ռազմաստրատեգիական կոնցեպցիան տոգորված է հակակոմունիստական, հակասովետական բովանդակությամբ։ Դասակարգային դիրքերը պահպանելու խնդիրն ընկած է իմպերալիստական տերությունների ստրատեգիական կուրսի հիմքում։

Այստեղ հստակորեն դրսևորվում է այն կապը, որ գոյություն ունի քաղաքական նպատակի և ռազմական դոկտրինայի միջև։ Բուրժուական սոցիոլոգները ճիգեր են գործադրում, որպեսզի քաղաքականությունն ու ռազմական ստրատեգիան ներկայացնեն որպես մեկուսացված երևույթներ։ Իրականում դրանց միջև եղած անխզելի կապն ակներև է։ Կլաուզևիցը ճիշտ էր նկատում, երբ ասում էր, որ «քաղաքականության ծոցում է հասունանում պատերազմը, քաղաքականության մեջ թաքնված ձևով ամփոփված են պատերազմի հիմնական ուրվագծերը, ինչպես կենդանի էակի կերպարը սաղմի մեջ»[1]։

Ռազմական ստրատեգիան չի մշակվում ռազմական մասնագետների նեղ կաստայի կողմից և դասակարգային նպատակներից ու խնդիրներից կտրված չէ։ Քաղաքականությունն ու ռազմական դոկտրինան փոխկապակցված են և հանդես են գալիս դիալեկտիկական միասնության մեջ։ Ռազմական ստրատեգիան դասակարգային բնույթ ունի և ծառայում է դասակարգային, քաղաքական խնդիրներին։

Դեռ նախապատերազմյան տարիներին, երբ պատերազմի ու խաղաղության հարցը լուծվում էր ֆինանսա-արդյունաբերական օլիգարխիայի կողմից և ներիմպերիալիստական հակասություններն էին վերջին հաշվով նախորոշում իրադարձությունների ընթացքը, իմպերիալիստական տերությունները մշակում էին, եթե կարելի է այսպես ասել, իրենց ազգային

[1] К. Клаузевиц, О войне, стр. 91.

ստրատեգիան, որի մեջ արտացոլվում էին մոնոպոլիստների սահմանափակ խմբի նեղ եսասիրական շահերը։ Ներկայումս դրությունն արմատապես փոխվել է։

Միջազգային իմպերիալիզմի ռեակցիոն շրջաններն իրենց արտաքին քաղաքական խնդիրները իրագործելու համար որոշակի տենդենց են դրսևորում միանական, գլոբալ ստրատեգիա մշակելու ուղղությամբ։ Ռազմական դոկտրինան անհնարին է առանձնացած պատկերացնել։ Այս կամ այն զենքի կիրառումն անգամ քաղաքական որոշման արդյունք է։ Ստրատեգիական բոլոր նպատակները քաղաքական նպատակներից են ծնվում։ Ժամանակակից պատերազմն է՛լ ավելի ցցուն քաղաքական բնույթ կկրի։ Բուրժուական ռազմական տեսաբաններից ոմանք ակամա նշում են այդ հանգամանքը։ Ամերիկյան ռազմական տեսաբան Կիսինգերը գրում է, որ իմպերիալիստական ռազմական դաշինքներ հյուսելու քաղաքականությունը պետք է լինի ամեն մի հակասովետական ստրատեգիայի առանձնահատուկ արտահայտությունը։ «Միացյալ Նահանգների ստրատեգիական դոկտրինայի բնորոշ գիծը նրա նոր լինելը չէ, այլ ուղղափառությունը»[1], ասում է նա։

Հիրավի, Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից սկսած այդ օրթոդոքսալությունը դրսևորվում է իմպերիալիզմի ռազմական ստրատեգիայի բացահայտ հակակոմունիստական էության մեջ։

Քաղաքական գիծը վճռականորեն ներգործում է ռազմաստրատեգիական դոկտրինայի վրա։ Համաշխարհային տիրապետության հասնելու ավանտյուրիստական, ավազակային քաղաքականությունից էր բխում հիտլերյան ռազմական գլխավոր շտաբում մշակված կայծակնային պատերազմի ստրատեգիան։ Փորձը հաստատեց, որ արկածախնդրական քաղաքական նպատակը ծնում է պատրանքային ստրատեգիական կոնցեպցիա, որը անխուսափելիորեն ձախողման է դատապարտված։

Ժամանակակից պայմաններում ամերիկյան իմպերիալիզմը պայքար ծավալելով կոմունիզմի դեմ, միաժամանակ

[1] Г. Киссингер, Ядерное оружие и внешняя политика, стр. 102.

նպատակադրվել է հասնել իր գլխավոր քաղաքական նպատակին՝ համաշխարհային տիրապետության: Սա ավանտյուրիստական քաղաքական նպատակ է, որ հիշեցնում է հիտլերյան կլիկի քաղաքականությունը: Ամերիկյան իմպերիալիզմի համար գլխավոր թշնամին կոմունիզմն է: Բնական է, որ դասակարգային հակառակորդի հետ հաշիվները մաքրելու դեպքում իր «դաշնակիցներին» ծնկի բերելը դժվարություն չի ներկայացնի: Այսպես թե այնպես քաղաքական այդ խելացնոր նպատակներին հասնելու միակ միջոցը ամերիկյան իմպերիալիստների համար բռնությունն է, պատերազմը:

Իմպերիալիզմի գաղափարախոսները կամայականորեն այդ ավանտյուրիստական քաղաքական նպատակի տակ ձգտում են տեսական ֆունդամենտ դնել: Սպիկմենը պատերազմը որակում է որպես ժամանակակից պետությունների արտաքին քաղաքականության բնորոշ և նպատակահարմար դրսևորում, որոնց կյանքի հիմքն ուժն է: «Ամերիկյան ստրատեգիան համաշխարհային պատերազմում» գրքում նա գրում էր, որ «միջազգային կյանքում թույլատրելի են բռնության բոլոր ձևերը, ներառյալ կործանարար պատերազմները: Դա նշանակում է, որ ուժի համար մղվող պայքարը, որը նույնական է կենդանի մնալու և հարաբերական հզորության դիրքերի բարելավման համար մղվող պայքարի հետ, դառնում է պետությունների ներքին և արտաքին քաղաքականության առաջնակարգ նպատակը: Մյուս բոլորը երկրորդական է, որովհետև, վերջին հաշվով, միայն ուժի օգնությամբ կարելի է հասնել արտաքին քաղաքականության նպատակներին: Ուժը կենդանի մնալու, ուրիշների վզին քո կամքը փաթաթելու, նրանց թելադրելու կարողություն է: Այնտեղ, որտեղ կոնֆլիկտի վերջնական ձևը պատերազմն է, պայքարը ուժի համար դառնում է պայքար հանուն ռազմական ուժի, պատերազմի նախապատրաստության»: Սպիկմենի մտքերին ներդաշնակ է հնչում Դյուիի թեզը՝ ֆիզիկական կոպիտ ուժը, վերջին հաշվով, լավագույն հենարանն է, սոցիալական պրոբլեմների լուծման միակ մեթոդը:

Այս գաղափարների մեջ ցայտուն կերպով դրսևորվում է

իմպերիալիստական ստրատեգիայի քաղաքական քրեդոն՝ ֆիզիկական ուժի օգնությամբ փրկել կապիտալիզմը։ Իսկ երբ առկա են հարկադրանքի ավելի կատարյալ միջոցներ, ապա մնում է միայն մշակել դրանց գործադրման եղանակները։

Կապիտալիստական աշխարհում առաջատար տեղ գրավող ամերիկյան իմպերիալիզմը երկրորդ համաշխարհային պատերազմից անմիջապես հետո իր բոլոր ուժերը ենթարկեց մեկ գլխավոր նպատակի՝ կասեցնել իմպերիալիզմի կործանման պրոցեսը։ Քաղաքական, դասակարգային այդ անլուծելի խնդիրը կյանքի կոչեց ստրատեգիական բազմապիսի դոկտրինաներ, որոնք խարսխվում են միջուկային զենքի վրա։

Նախ պետք է ընդգծել, որ ԱՄՆ-ի ռազմական դոկտրինայի գլխավոր քաղաքական նպատակը սոցիալիզմի սիստեմի ոչնչացումն է, ազգային ազատագրական շարժումների ճնշումը և գաղութատիրության վերականգնումը նոր ձևերով։

Սկզբնական շրջանում ծնունդ առավ այսպես կոչված «զսպողական» ստրատեգիան։ Այդ ժամանակ ԱՄՆ-ը պահպանում էր դեռ իր մենաշնորհը ատոմային զենքի նկատմամբ և որոշակի ռազմական գերազանցություն ուներ։ Այդ գերազանցությունը նա փորձեց օգտագործել որպես նիզակ՝ հեղափոխական շարժումների դեմ։

Բուրժուական գաղափարախոսներն ու քաղաքագետները ստրատեգիական դոկտրինայի խնդիրը միշտ էլ ռազմական հզորությունը քաղաքականության վերածելն են համարել։ Սակայն, եթե ժամանակավոր ռազմական գերազանցության վրա կառուցված ստրատեգիական դոկտրինան արդարացվում է որոշ պայմաններում, ապա դա չի նշանակում, թե այն կարող է դիմանալ կյանքի քննությանը բոլոր պայմաններում։

Հենց որ ԱՄՆ-ը կորցրեց իր մենաշնորհն ատոմային զենքի նկատմամբ, «զսպողական» ստրատեգիայի հեղինակները հարկադրված էին վերանայել իրենց հիմնադրույթները։ Կիսինջերը գտնում է, որ կորեական պատերազմը «զսպողական» ստրատեգիայի գործնական կիրառման օրինակ էր։

կարելի է ավելացնել, որ այն միաժամանակ այդ դոկտրինայի գործնական կրախի օրինակ էր։ Ամերիկյան իմպերիալիստներն ստիպված էին հաշվի նստել փաստերի հետ։ Ջոն Ֆոստեր Դալեսը բացահայտորեն խոստովանեց «զսպողական» ստրատեգիայի ձախողումը, հայտարարելով. «Վերջ տալով մեր մենաշնորհին, Սովետական Միությունն այսպիսով արմատապես իր օգտին փոխեց ստրատեգիական դրությունը»[1]։

«Զսպողական» ստրատեգիան չզսպեց հեղափոխական մասսաների պայքարն հանուն նոր կյանքի։ Պրակտիկան մեկ անգամ ևս հաստատեց այն ճշմարտությունը, որ արդարացի գործն անպարտելի է։ Արատավոր «զսպողական» ստրատեգիայի անհաջողություններն ու ձախողումն է՛լ ավելի կատաղեցրին իմպերիալիստներին։ Նրանք առաջ քաշեցին ավելի ռեակցիոն, պատրանքային արտաքին քաղաքական կուրս՝ «ազատագրության» քաղաքականությունը և դրան համապատասխան՝ «կենտրոնացված հատուցման» ստրատեգիան։ Դա կոմունիզմի դեմ ուղղված հարձակողական գործողությունների մի ծրագիր էր, որ նշանակում էր բռնի ուժի օգնությամբ հակահեղափոխության արտահանում։

Այդ քաղաքականության և ստրատեգիայի վոլյունտարիստական էությունը, որ հակասում էր սոցիալական կյանքի օբյեկտիվ օրինաչափություններին, նախօրոք նրանց դատապարտել էր ձախողման։ Դրանց ստեղծողները գործնականում ոչ մի դրական արդյունքի չհասան։ Սովետական Միության գիտա-տեխնիկական նվաճումներն իմպերիալիստներին կանգնեցրին նոր դժվարությունների առջև։

Ամերիկյան իմպերիալիզմի ռազմա-ստրատեգիական կոնցեպցիաների հաճախակի ձախողումներն արդյունաբերական կապիտալիստների դասակարգի պատմական դատապարտվածության դրսևորումներից մեկն են։ Տեղին է Կիսինջերի խոստովանությունը. «Պատմական մեծ շարժումը, որի մեջ միաձուլվում են կոմունիզմն ու հակագաղութային հեղա-

---

[1] Տե՛ս Б. Дмитриев, Пентагон и внешняя политика США, М., 1961, էջ 117:

փոխումը,— ասում է նա,— չի կարելի հաղթահարել, ղեկավարվելով նեգատիվ դիտավորություններով»[1]։

Ինչպես երևում է, Կիսինգերը հասկանում է, որ հեղափոխական շարժումների դեմ կիրառվող բռնի միջոցներն անկարող են կասեցնելու հասարակության առաջընթացը։ Օբյեկտիվ իրականությունն արտացոլվում է Կիսինգերի աշխարհըմբռնման մեջ, բայց քանի որ այն դասակարգը, որին նա ծառայում է, դիմակայում է այդ իրականության օրինաչափություններին, ողջախոհ վերլուծության առանձին կայծերն հանգչում են նրա բուրժուական աշխարհայացքի ընդհանուր ֆոնի վրա։

Իմպերիալիզմի տեսաբաններն ու քաղաքագետներն իրենց ստրատեգիական դոկտրինաների մի շարք ձախողումներից հետո ձգտում են մշակել ավելի ճկուն և գործուն ստրատեգիա։ Նրանք հաճախակի են գործածում «ուժերի հավասարակշռություն», «համընդհանուր միջուկային պատերազմի անշահավետություն», «փոխադարձ աղետաբեր հարվածների անբանականություն» բառերը։ Ընդգծելով միջուկային պատերազմի աղետաբերությունը, իմպերիալիզմի այդ ծառաները մարդասիրական խրատաբանություններով չեն զբաղվում։ Սոցիալիստական լագերի հզորությունն է սթափեցնող ներգործություն ունենում նրանց վրա, ստիպելով ռեալիստորեն գնահատել ուժերի հարաբերակցությունը։ Միաժամանակ իմպերիալիստները հասկանում են, որ համընդհանուր միջուկային պատերազմի գաղափարը չի կարող բացասական վերաբերմունք չառաջացնել ժողովրդական լայն զանգվածների շրջանում։ Բնական է, որ այնպիսի պայմաններում, երբ պետության արտաքին քաղաքականության անկյունաքարը պատերազմի նախապատրաստությունն է, մեկը մյուսին հաջորդում են ռազմական ստրատեգիայի ձևափոխված օրինակներ։

1959—1960 թվականներին հրապարակ հանվեց այսպես կոչված «ճկուն վերաբերմունքի» ստրատեգիական դոկտրինան, որի հեղինակն էր ԱՄՆ-ի շտաբների պետերի կոմիտեի նախկին նախագահ Մաքսուել Թեյլորը։

---

[1] Г. Киссингер, Ядерное оружие и внешняя политика, стр. 495.

Այդ դոկտրինայի համաձայն ԱՄՆ-ի զինված ուժերը պետք է պատրաստ լինեն վարելու և՛ գլոբալ, և՛ լոկալ պատերազմներ, ընդ որում, ինչպես միջուկային զենք կիրառելով, այնպես էլ առանց դրա կիրառման։

Այս դոկտրինան միահյուսվում է այսպես կոչված «սահմանափակ պատերազմի» ստրատեգիայի հետ։ «...Դա մեր ամենից արդյունավետ ստրատեգիան է,— ասում է Կիսինջերը,— ինչպես միջուկային տերությունների, այնպես էլ տեխնիկայի պակասը մարդկային ուժով փոխհատուցելու ընդունակ որևէ խոշոր տերության դեմ»[1]։

Այդ ստրատեգիայի հիմնական բովանդակությունն այն է, որ պատերազմական գործողությունները պետք է ծավալվեն սահմանափակ միջոցներով, իհարկե, ոչ առանց միջուկային զենքի կիրառման, և սահմանափակ նպատակներով։ Արտաքուստ այստեղ մինչհամաշխարհային պատերազմների պրակտիկային վերադառնալու տենդենց է նկատվում։ Սակայն, ըստ էության, միանգամայն այլ բան է ստացվում։ Անցյալում տեղի ունեցած սահմանափակ պատերազմների տեխնիկական բազան համեմատաբար թույլ էր, եղած միջոցներն ու դրանց հարվածող հնարավորությունները բավական չէին լայն մասշտաբի մարտական գործողությունների համար։ Ժամանակակից պայմաններում սահմանափակ պատերազմների մասին թեզիսը զուրկ է տրամանաբանությունից, վերացական դրույթ է։ Մի՞թե կարելի է սահմանափակել պատերազմը, երբ հակառակորդին հարվածելու պոտենցիալ հնարավորություններն անսահմանափակ են։ Սոցիալիզմի և կապիտալիզմի միջև ծավալվող պայքարի մեջ սահմանափակ քաղաքական և ստրատեգիական նպատակներ չեն կարող լինել։ Ամենասահմանափակ, լոկալ ռազմական ընդհարումը, երբ բախվում են դասակարգային շահերը, բովանդակում է համընդհանուր, անսահմանափակ պատերազմի հնարավորություն։ Եթե նույնիսկ ենթադրել, որ հնարավոր է լոկալ, սահմանափակ միջուկային պատերազմ, ապա այդ պատերազմում միջուկային զենք օգտագործելու իրավունքը միայն մի

[1] Г. Киссингер, Ядерное оружие и внешняя политика, стр. 283.

կողմին չի պատկանի, ագրեսորը կկանգնի անխուսափելի հատուցման փաստի առջև։ Հետևապես, ամեն մի լոկալ ռազմական կոնֆլիկտ կարող է համընդհանուր տոտալ պատերազմի վերաճել։ Միաժամանակ միամտություն կլիներ կարծել, թե այսպես կոչված սահմանափակ ռազմական կոնֆլիկտում կպայթեն սահմանափակ էներգետիկ հզորություն ունեցող միջուկային ռումբեր, այն ժամանակ, երբ տոտալ միջմայրցամաքային գոտեմարտի ռազմական մեքենան լրիվ մարտական պատրաստության վիճակում է գտնվում։ Ժամանակակից ռազմական տեխնիկայի պայմաններում համեմատաբար սակավահզոր և գերհզոր միջուկային ռումբերի միջև ընկած սահմանները խիստ առաձգական են, որպեսզի հույսը դնել լոկալ պատերազմների սահմանափակ մասշտաբների վրա։ Սահմանափակ միջուկային պատերազմը, ըստ էության, համապարփակ միջսիստեմային, միջմայրցամաքային պատերազմի նախերգանքն է, իմպերիալիստական ագրեսորների գործողությունների սկիզբը։ Եթե լոկալ պատերազմները ծավալվեն առանց միջուկային զենքի օգտագործման, ապա տրամաբանական է ենթադրել, որ որևէ էտապում, պայքարի սրման համեմատ, այդ զենքի կիրառումը կհանդիսանա ռազմական գործողությունների անհրաժեշտ հետևանքը։ «Սահմանափակ պատերազմի» ստրատեգիական դոկտրինայի հեղինակ Կիսինգերն ակամա խոստովանում է, որ «Ատոմային դարաշրջանում... համընդհանուր միջուկային պատերազմի սպառնալիքը մշտապես հետին պլանի վրա կերևա՝ որպես ծայրահեղ միջոց ինչպես այս, այնպես էլ այն կողմի համար»[1]։

Դժվար է հավատալ, որ «սահմանափակ պատերազմի» և «ճկուն վերաբերմունքի» ստրատեգիական կոնցեպցիաների հեղինակները չեն պատկերացնում դրանց գործնական իրականացման սոցիալական հետևանքները։ Այսպես, օրինակ, Բեռնարդ Բրոդին գրում է. «Մենք պետք է լուրջ մտածենք սահմանափակ պատերազմի մասին այն պատճառով, որ գոյություն ունի տոտալ պատերազմի որոշակի և լուրջ վտանգ»[2]։

---

[1] **Г. Киссингер,** Ядерное оружие и внешняя политика, стр. 250.

[2] **Бернард Броди,** Стратегия в век ракетного оружия, стр. 374.

*Այսպիսով, լոկալ պատերազմի ստրատեգիական դոկտրինայի իմաստը ոչ թե համընդհանուր ջերմամիջուկային պատերազմից հրաժարվելն է, այլ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը թուլացնելու նպատակով, անընդհատ կոնֆլիկտներ հրահրելը, որպեսզի հետագայում իրականացվի ջերմամիջուկային հարվածը։*

*Միջուկային պատերազմին համընդհանուր եռանդագին նախապատրաստությունը, ծագող արտաքին քաղաքական պրոբլեմների՝ զենքի ուժով լուծումը դարձել են ամերիկյան իմպերիալիզմի պետական քաղաքականության անկյունաքարը։ Երկիրը դեպի պատերազմ կողմնորոշող բազմապիսի ստրատեգիական դոկտրինների մշակումն ու պրոպագանդումը ներդաշնակվում են իմպերիալիզմի կողմից վարվող «ուժի դիրքերից» ելնող քաղաքականության հետ։ «Ռազմական մեքենան պետք է լրիվ մարտական պատրաստության մեջ լինի» գաղափարը տիրապետող հիմնադրույթ է իմպերիալիստական աշխարհում։*

*«Ուժի դիրքերից» ելնող քաղաքականությունն իմպերիալիզմի բոլոր ստրատեգիական կոնցեպցիաների սկզբնաղբյուրն է։ Սեփական հակասությունների մեջ խճճված իմպերիալիզմն իր գործողություններն ու տեսական սպասարկուների ամբողջ մտավոր պաշարը ենթարկում է միասնական խնդրին՝ նոր կործանարար պատերազմի մոլեռանդ նախապատրաստությանը։ Իմպերիալիստական բուրժուազիան միջուկային զենք ճոճելով, այն պատրանքով է համակվում, որ այդ զենքը սեփական աղետի ալտերնատիվն է։ «Ես գտնում եմ,—ասում է Լեպպը,—որ եթե մենք չկարողանանք գործել ուժի դիրքերից, մենք աղետի կենթարկվենք»[1]։ Ավելի պարզորոշ է արտահայտվում Կիսինգերը, ասելով, թե «եթե մենք հրաժարվենք ուժ գործադրելուց և միաժամանակ վերացնենք պատիժը անհաշտելիության համար, աշխարհը կարող է տրվել առավել անողոք կամ առավել անպատասխանատու անդամի ողորմածությանը»[2]։*

---

[1] **Р. Лепп**, Атомы и люди, стр. 181.

[2] **Г. Киссингер**, Ядерное оружие и внешняя политика, стр. 47.

* * *

Մի հանգամանք ևս համոզում է, որ իմպերիալիզմն ամեն ինչ պատերազմի նախապատրաստությանն է ենթարկում։ Իմպերիալիզմի քաղաքական գործիչների և գաղափարական պաշտպանների բոլոր պաշտոնական փաստաթղթերը, հայտարարությունները և ելույթները բովանդակում են «անվտանգություն», «խաղաղություն», «արևմտյան քաղաքակրթության պաշտպանություն» հասկացությունները։ Այս իմաստով նրանց լեզուն կամուֆլյաժի մի ունիկալ օրինակ է, երբ գործածվող տերմինները վարագուրում են դրանց իսկական իմաստը։ Բուրժուական դիվանագիտության մեջ անխախտ գործում է այն կանոնը, որ լեզուն մարդուն է տրըվում իր մտքերը թաքցնելու համար։

Պատմության մեջ ոչ մի խոշոր ագրեսոր և պատերազմի սանձազերծման մեջ շահագրգռված դասակարգ իր միլիտարիստական գործողությունները չի իրականացրել իր իսկական ձգտումների լոզունգների ներքո։ 11—13-րդ դարերում արևմտաեվրոպական ֆեոդալների գաղութացման արշավանքները Մերձավոր Արևելքում քողարկվում էին «անհավատների» դեմ «սուրբ հողի» ազատագրման համար կրոնական լոզունգներով։

Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին իմպերիալիստական ագրեսորներն իրենց զավթողական դիտավորությունները իրականացնում էին «հայրենիքի պաշտպանության» կեղծ լոզունգով։ Արյունարբու Հիտլերն անգամ «խաղաղություն» և «նոր կարգ» սահմանելու լոզունգներով մարդկությանը նետեց համաշխարհային պատերազմի հորձանուտը։

Սակայն պատմության մեջ դեռ երբեք այնպես ակնհայտորեն և պարզորոշ չի դրսևորվել իմպերիալիստների խոսքերի ու գործերի միջև եղած խզումը և դեռ երբեք բուրժուազիան այնպես ուղղագծորեն չի քողարկել իր իսկական ձգտումները, ինչպես այժմ։

«Ազգային անվտանգության» և «խաղաղության պահպանման» լոզունգների ներքո մոնոպոլիստական բուրժուա-

զիան ուժեղացնում է սպառազինությունների մրցավազքը, «արևմտյան քաղաքակրթությունը պաշտպանելու» քողի տակ իր ռազմական մեքենան ուղղում է արդիականության հեղափոխական ուժերի դեմ, հակակոմունիզմի լոզունգի ներքո հալածում ու հետապնդում է առաջադիմականն ու հեղափոխականը, իր շուրջը համախմբելով սոցիալական առաջընթացի բոլոր թշնամիներին։

Իմպերիալիստական բուրժուազիան մի կողմից՝ «խաղաղասիրական» մերկապարանոց, ապրիորի հայտարարություններով աշխատում է քողարկել իր դասակարգային նպատակները, մյուս կողմից՝ փորձում է խեղաթյուրել սոցիալիստական պետությունների արտաքին քաղաքական կուրսը, կոմունիստական կուսակցության քաղաքականությունն ու նպատակները, մարքսիզմ-լենինիզմի ուսմունքը։ Հեղափոխական ուժերի ու գաղափարների դեմ պայքարելու համար չգտնելով ավելի հուսալի միջոց, նա գաղափարական պայքարի միակ եղանակը համարում է պատերազմը։ Սոցիալիստական պետությունների քաղաքականության սուբյեկտիվ և վոլյունտարիստական մեկնաբանությունները, միլիտարիստական գործողությունների պաշտպանական նպատակների մասին կեղծավոր դարձվածքները կարող են միայն միրաժ ստեղծել, որը ցրվում է իմպերիալիստների գործնական քայլերի հայեցողական գնահատման դեպքում անգամ։

Վերլուծությունը հնարավորություն է տալիս մտորսալու «անվտանգություն» և «պաշտպանություն» հասկացությունների բուն իմաստը։ Իմպերիալիզմի քաղաքագետների ու տեսաբանների առաջ քաշած այսպես կոչված «ազգային անվտանգության» գաղափարը կամայական է, քանի որ մոնոպոլիստական կապիտալի վերնախավին ղեկավարում են դասակարգային տիրապետության շահերը, որոնք չի կարելի նույնացնել դասակարգային և սոցիալական տեսակետից ոչ միատարր կապիտալիստական հասարակության բոլոր շերտերի շահերի հետ։

«Զսպողական», «կենտրոնացված հատուցման», «սահմանափակ պատերազմների» և «ճկուն վերաբերմունքի» ստրատեգիական դոկտրինները կոմունիզմի, առաջադեմ հեղափո-

խական ուժերի դեմ ուղղված իմպերիալիստական պրևենտիվ պատերազմի ընդհանուր ռազմավարգային ծրագրի բաղադրիչ մասերն են։

Իմպերիալիզմի ամբողջ ուռճացած ռազմական մեքենան իր սուր ծայրով ուղղված է ոչ միայն արտաքին, այլև ներքին հեղափոխական ուժերի դեմ։ Համընդհանուր միջուկային պատերազմի նախապատրաստություն, լոկալ պատերազմներ հրահրելու, ագրեսիվ ռազմատենչ կուրս վարելու միջոցով իմպերիալիզմը փորձում է կանգնեցնել հասարակության առաջընթացը։ Հենց այսպես պետք է հասկանալ մոնոպոլիստական բուրժուազիայի ջատագովների կողմից հրապարակորեն պրոպագանդվող «պաշտպանության» և «անվտանգության» հասկացությունների իսկական իմաստը։ Պետք է նկատի առնել նաև այն հանգամանքը, որ միջուկային զենքի ամենակուլ հատկություններն իմպերիալիստներն օգտագործում են հեղափոխական ուժերի կամքը թուլացնելու համար։ Կոմունիստական վտանգի մասին ստերեոտիպ ֆրազներով իմպերիալիստները ձգտում են ծխածածկույթ ստեղծել, որի տակ ագրեսիա կատարել։ Նրանք ղեկավարվում են մաշված կանոնով՝ վարկաբեկիր հակառակորդիդ, եթե ուզում ես արդարացնել քեզ։ Դեռևս 18-րդ դարում պրուսական միապետներից մեկն ասում էր. «Եթե մեր զինվորները հասկանային, թե ինչի համար ենք մենք պատերազմում, հնարավոր չէր լինի վարել և ոչ մի պատերազմ»։

Բուրժուական դիվանագիտության՝ «նպատակը իշխում է միջոցների վրա» սկզբունքը ներկայումս իր դրսևորումն է գտնում միլիտարիստական գործողությունների և հակակոմունիստական գաղափարական կամպանիայի միահյուսման մեջ։ Վ. Ի. Լենինը գրում էր. «Հիմար մարդիկ կան, որոնք աղաղակում են կարմիր միլիտարիզմի մասին. դրանք քաղաքական սրիկաներ են, որոնք ձևացնում են, որ իբր թե իրենք այդ հիմարությանը հավատում են և աջ ու ձախ շպրտում են նման մեղադրանքներ, դրա համար օգտվելով կեղծ փաստարկներ սարքելու և մասսաների աչքը թոզ փչելու իրենց փաստաբանական հմտությունից»։ «Կարմիր միլիտարիզմի» մասին բուրժուազիայի քաղաքագետների սրբապիղծ մտամարզանք-

ները բացատրվում են նրանով, որ «այդ պարոնները, միլիոնատերերը և միլիարդատերերը գիտեն, որ այստեղ նրանց ճակատագիրն է որոշվում...»[1]։

Պատմության փորձը չի կորցնում իր արժեքը նոր պայմաններում։ Այն քամհարեց իմպերիալիզմի քաղաքագետների և գաղափարախոսների միլիտարիստական կուրսի պացիֆիստական բնույթի մասին՝ տեսական հորինվածքները։ Սակայն չի կարելի անտեսել նման գաղափարական աշխատանքի վտանգը։ Չնայած որ այդ պրոպագանդան իր հիմքից արատավոր, կեղծ ու հակագիտական է, բայց դատարկ կրակոց չէ։ Ռազմական տենդի, միլիտարիստական վայնասունի ընդհանուր իրադրության մեջ իմպերիալիստական երկրներում ապրող բնակչության մի մասին խաբելու հնարավորությունը բացառված չէ։ Այդ հանգամանքը կարող է ջուր լցնել պատերազմի հրձիգների ջրաղացին և ավելացնել պատերազմի ծագման հնարավորությունները։

Չի կարելի անտեսել նաև այն վտանգը, որ բխում է այնպիսի հայտարարություններից, թե իբր միջուկային սպառազինության մրցավազքը բարեգործական կողմ ունի, խաղաղության երաշխիք է։

Իմպերիալիզմի պաշտպանները թեզիսներ են հորինում այն մասին, որ իբր ինչքան հզոր է դառնում զենքը, այնքան մեծանում է այն կիրառելուց հրաժարվելու ձգտումը, որ իբր միջուկային պաշարների կրճատումը միայն կխորացնի միջազգային հարաբերություններում եղած լարվածությունը և կհասցնի այն բանին, որ գալիք պատերազմը աղետաբեր ձևեր կընդունի։ Գաղափարներ են հրապարակ գալիս «սարսափի հավասարակշռության», «փոխադարձ ահաբեկման» մասին։ Ռ. Լեպն այդ մտքերն ամփոփում է հետևյալ խոսքերում. «Ազգային անվտանգության անկյունաքարը գերումբի դարում դարձել է փոխադարձ բնաջնջման հնարավորությունը»[2]։

Ըստ էության, այս ֆորմուլան Չերչիլլի «խաղաղության

---

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 29, էջ 61—62։

[2] Р. Лепп, Атомы и люди, стр. 166.

փոխադարձ սարսափի միջոցով» դարձվածքի ձևափոխված արտահայտությունն է։

Այսպիսով, ստացվում է, որ անզուսպ միլիտարիզմն իբրև խաղաղությունն ապահովելու գործոն է, և միջուկային զենքի առկայությունը երաշխիք է պատերազմից խուսափելու համար, քանի որ հակառակորդներից յուրաքանչյուրը կարող է սպանել մյուսին՝ սեփական կյանքի գնով։ Այստեղից այն հետևությունն է բխեցվում, որ ջերմամիջուկային զենքի առկայությունը բացառում է համաշխարհային կոնֆլիկտը, որ համընդհանուր պատերազմից խուսափելու ամենագործուն միջոցն այդ պատերազմը սանձազերծելու սպառնալիքն է։

Այս կոնցեպցիան տառապում է ներքին հակասականությամբ։ Այն շրջանցում է միլիտարիզմի օրենքները, աղավաղելով դրա սոցիալական հետևանքների բուն էությունը։ Այն չի համատեղվում միլիտարիստական բովանդակությամբ օժտված իմպերիալիզմի ստրատեգիական դոկտրինների հետ։ Աշխարհը պատերազմի եզրին պահելու, լոկալ պատերազմներ հրահրելու իմպերիալիստական արտաքին քաղաքական կուրսը և, ամբողջովին վերցրած, իմպերիալիզմի ստեղծած սառը պատերազմի սիստեմն իրենից ներկայացնում է եղած բոլոր միջոցներով անընդհատ պայքար՝ հանուն ուժի տիրապետության, որի տրամաբանական վախճանը կարող է ջերմամիջուկային պատերազմը լինել։ Միլիտարիզմի մունետիկներից մեկը՝ Օսգուդը, հենց այդպես էլ դատում է. «Սառը պատերազմը չի կարելի վճռական վախճանի հասցնել, առանց համընդհանուր պատերազմ սանձազերծելու»[1]։

Սպառազինությունների անզուսպ մրցավազքի, իմպերիալիստական միլիտարիզմի արդյունքը կարող է պատերազմը լինել, այլ ոչ թե խաղաղությունը։ Միլիտարիզմի օրենքները շատ ուժեղ են, որպեսզի սուբյեկտիվ զգացությունը կարողանա փոխել դրանց գործողությունների բնույթը։ Կայծից բոց է բռնկվում և ոչ թե կրակմարիչ։ Այն կարծիքը, թե սպառազինությունների մրցավազքը խաղաղություն է բերում, հակասում է ողջամտության տարրական նորմաներին։ Միանգամայն

---

[1] Р. Осгуд, Ограниченная война, М., 1960, стр. 78.

պարզ է, որ եթե պետությունների միջև մրցակցություն է տեղի ունենում ռազմական հզորությունը բազմապատկելու բնագավառում, ապա պատերազմի վտանգը չի նվազում, այլ աճում է։

Ջերմամիջուկային զենքը և ժամանակակից այլ հարվածող ռազմատեխնիկական միջոցներն այնպիսի առանձնահատկություններով են օժտված, որ գնալով պատերազմի պատահական բռնկման հավանականությունն անգամ աճում է։ Այնպիսի իրավիճակ է զոյացել, երբ որևէ հաշվեսխալ կամ դժբախտ պատահար կարող են աղետաբեր հետևանքներ առաջացնել։ Մասնագետների կարծիքով, միջուկային պատերազմի ծագման հնարավորությունն աճում է զենքի կատարելագործման, առաջացման, պաշարների կուտակման ու համընդհանուր տարածման համեմատ։ Մեծ թվերի օրենքի համաձայն, հրթիռամիջուկային պատերազմի պատահական բռնկման մաթեմատիկական հավանականությունն աճում է միջուկային զենքի միավորների քանակին համապատասխան։

Սովետական գիտնականներ Ն. Ն. Սեմյոնովն ու Ի. Ե. Տամմը գտնում են, որ այդ հավանականության աճը ֆունկցիոնալ կախվածության մեջ է գտնվում սպառազինությունների մրցավազքը շարունակվելու ժամանակից։ Այդ հնարավորությունը բխում է այնպիսի երևույթներից, ինչպես միջուկային զենք կրող ինքնաթիռի օդաչուի կողմից հրամանը ոչ ճիշտ հասկանալը, աֆֆեկտի վիճակը, այդ ռումբը պայթյունի վտանգից ապահովող շարժիչների կամ սիստեմների աշխատանքի խափանումը, ռադիոլոկատորների էկրանների վրա հակառակորդի ինքնաթիռներ կամ հրթիռներ հիշեցնող պատկերներ երևալը, մետեորիտներ ընկնելը, ռադարային կայանների հաշվեսխալները։

ԱՄՆ-ի հանգուցյալ պրեզիդենտ Ջոն Քեննեդին խոստովանում էր, որ ներկայումս մարդկանց վրա միջուկային դամոկլյան սուրն է կախվել նրբագույն թելից, որը կարող է ամեն րոպե կտրվել պատահականության, վատ հաշվարկի կամ խելացնորության հետևանքով և մի փոքր սխալն անգամ կարող է համընդհանուր պայթյուն առաջացնել։

Հիրավի, աշխարհում այնքան դյուրավառ նյութ է կուտակ-

վել, որ բավական է մի կայծ, որպեսզի բռնկի համաշխարհային պատերազմի հրդեհը։ Իսկ այդ կայծը կարող է առաջացնել մի նորահայտ Հերոստրատ։ Կապիտալիստների դասակարգի օբյեկտիվ դրությունը, նրա պատմական դատապարտվածությունը կարող է հուսահատության այնպիսի սուբյեկտիվ վիճակ ստեղծել, որը մարդկությանը միջուկային մսաղացը ներքաշելու չար կամք կծնի։ Կիսինգերը սկսում է գիտակցել իր դասակարգի վիճակը, ասելով, որ համընդհանուր պատերազմը անխուսափելի, հուսահատության գործողության հետեվանք կլինի։

Ինչպես երևում է, իմպերիալիզմի ջատագովներն ուրիշ գաղափարներ չեն կարող առաջարկել մարդկությանը, բացի անհուսալիության և հոռետեսության փիլիսոփայությունից, առաջադրելով այսպիսի սխեմա՝ «ավելի լավ է մեռնել կապիտալիզմի օրոք, քան ապրել կոմունիզմի պայմաններում»։

Մահամերձ վիճակում գտնվող շահագործող դասակարգը դառնում է ավելի ագրեսիվ և ընդունակ է խելացնոր գործեր կատարելու։ Միջուկային զենքի հանդես գալը, հեղափոխական ցնցումների արդի դարաշրջանում է՛լ ավելի ուժեղացրեց իմպերիալիզմի ագրեսիվ բնույթը։ Կարելի է ենթադրել, որ իմպերիալիզմի ագրեսիվ տենդենցները գնալով կաճեն, քանի որ նրա տիրապետության շրջանակները շարունակում են կրճատվել։ Քանի դեռ պահպանվում է իմպերիալիզմը, կպահպանվի ռազմական արյունահեղությունների վտանգը։ «Պատերազմական վտանգի միակ աղբյուրը իմպերիալիզմն է։ Իմպերիալիստական լագերը նախապատրաստում է մարդկության դեմ ամենասարսափելի ոճրագործություն՝ համաշխարհային ջերմամիջուկային պատերազմ, որը կարող է չտեսնված ավերումներ պատճառել ամբողջ երկրների, բնաջնջել ամբողջ ժողովուրդներ»[1]։

* * *

Իմպերիալիզմի կողմից նախապատրաստվող երրորդ համաշխարհային պատերազմը, եթե այն բռնկի, օժտված կլինի

[1] ՍՄԿԿ ծրագիրը, էջ 68։

տարբերիչ գծերով։ Միջիմպերիալիստական անհաշտելի հակասություններից ծնված առաջին համաշխարհային պատերազմում բախվեցին միատիպ պետությունների երկու կոալիցիաներ։ Երկրորդ համաշխարհային պատերազմը նույնպես իմպերիալիզմի ագրեսիվ էությունից ծնվեց և կոալիցիոն բնույթ էր կրում, բայց կոալիցիաներից մեկի մեջ հետագայում ոչ միատիպ պետություններ մտան։ Երրորդ համաշխարհային պատերազմը, եթե այն բռնկի, նույնպես կոալիցիոն պատերազմ կլինի, բայց այս դեպքում կբախվեն ոչ միատիպ պետությունների կոալիցիաները։ Մի կողմում հանդես կգա իմպերիալիստական պետությունների ռազմական կոալիցիան, մյուս կողմում՝ սոցիալիստական պետությունների ռազմական կոալիցիան։ Այստեղ կբախվեն ոչ թե սոսկ բանակներ և տարբեր զենքի տեսակներ, այլ պետականորեն ձևակերպված հակամարտ դասակարգեր, երկու իրարամերժ սոցիալ-տնտեսական սիստեմներ, երկու հակադիր քաղաքական գծեր։ Այդ պատերազմի բովանդակությունը կորոշվի կոնֆլիկտի մեջ մտած դասակարգերի քաղաքականությամբ։

Պատերազմի նպատակները, մասշտաբներն ու լարվածությունը փոխկապակցված են։ Որքան ավելի մեծանշանակ է պատերազմի նպատակը, այնքան շատ ուժեր են ներգրավվում հակառակորդի դեմ պայքարելու համար։ Իր սոցիալ-քաղաքական էությամբ երրորդ համաշխարհային պատերազմը վճռական անզիջում զինված գոտեմարտի բնույթ կկրի սոցիալիզմի և կապիտալիզմի միջև։ Երկու կողմերն էլ կձգտեն հասնել իրենց հակառակորդի լրիվ ու վերջնական ջախջախմանը։ Այս պատերազմի դասակարգային բնույթը կպայմանավորի նրա աննախադեպ մասշտաբները, պատմության մինչև հիմա անհայտ տարածական թափը։ Դա նշանակում է, որ զինված պայքարի ծանրության կենտրոնը կողմերի մարտական ընդհարման գոտուց, ինչպես նախորդ պատերազմների ժամանակ է եղել, կտեղափոխվի հակառակորդի դասավորության խորքը, ամենահեռավոր շրջանները ներառյալ։

Եվ, ինչպես արդեն նշվեց վերևում, զինված պայքարի միջոցների տեսանկյունից այն կլինի հրթիռա-միջուկային

միջմայրցամաքային պատերազմ, որը կկրի կործանարար, ավերիչ, բնաջնջող բնույթ։

Առանձին գիտնականների, քաղաքական և հասարակական գործիչների կարծիքով ջերմամիջուկային պատերազմը ճակատագրական անխուսափելիությամբ մարդկությանը ինքնաբնաջնջման կդատապարտի։ Միջուկային պայթող ռումբերի բոցերի մեջ քաղաքակրթությունը մոխրի կվերածվի։

Միջսիստեմային գոտեմարտի վախճանի վերաբերյալ արված այս դատողությունները զուրկ են գիտա-իմացաբանական տարրերից և անալիտիկ գնահատականից։ Ջերմամիջուկային պատերազմի վախճանը կանխորոշելու համար անհրաժեշտ է փոխկապակցված և փոխգործող նյութական և բարոյական գործոնների հաշվառում։

Ռազմական տեխնիկան կարող է փոխել պատերազմ վարելու եղանակներն ու պատերազմի բնույթը, բայց նա անկարող է փոխել սոցիալական կյանքի օրինաչափությունները, իշխելու պատմության վրա։

Պատերազմը սոցիալիզմի և կապիտալիզմի միջև դասակարգային պայքար է առաջադեմ կոմունիստական հասարակական-տնտեսական ֆորմացիայի և ռեակցիոն, կործանման դատապարտված կապիտալիստական հասարակական տնտեսական ֆորմացիայի միջև։ Սոցիալիստական պետությունների ռազմական կոալիցիայի քաղաքական նպատակն արդարացի, առաջադեմ բնույթ ունի, իսկ կապիտալիստական պետությունների ռազմական բլոկի քաղաքական նպատակը՝ ռեակցիոն, հակահեղափոխական։ Արդարացի քաղաքական նպատակի միաձուլումը ռազմական հզորության հետ՝ նյութական և բարոյական գործոնների միասնության դրսևորումն է հակաիմպերիալիստական պայքարում։ Այս հանգամանքը համաշխարհային պատերազմում իմպերիալիստական կոալիցիայի նկատմամբ հաղթանակի հասնելու նախադրյալներից մեկն է։

Սակայն դրանով չի սպառվում նյութական և բարոյական գործոնների ամբողջ բովանդակությունը, որոնց մեջ դրսևորվում է սոցիալիզմի վճռական առավելություններից մեկը կապիտալիզմի հանդեպ՝ ջերմամիջուկային պատերազմում, եթե

իմպերիալիստները սանձազերծեն այն։ Հաշվի առնելով ռազմական տեխնիկայի ժամանակակից միջոցները, կարելի է ենթադրել, որ պատերազմն արագընթաց բնույթ կկրի, թեպետև չի բացառված, որ կարող է ձգձգվել։ Այսպես թե այնպես պատերազմը ջանքերի առավելագույն լարում կպահանջի և՛ զինված ուժերից, և՛ քաղաքացիական բնակչությունից։ «...Միայն հիանալի կազմակերպության պայմանով մեր բարոյական ուժը կարող է վերածվել նյութական ուժի»[1]։

Արտադրության և սպառման հասարակական բնույթը, տնտեսության պլանային կազմակերպությունը ապահովում են էկոնոմիկայի անխափան ու կայուն զարգացում սոցիալիստական երկրներում։ Սոցիալիստական էկոնոմիկան ռազմական շրջանի ամեն մի փորձության դիմանալու կարողությամբ է օժտված։

Ուշադրության է արժանի ժամանակակից պատերազմի բնորոշ առանձնահատկություններից մեկը։ Կասկածից վեր է, որ նոր զենքի անչափ աճած կրակային հզորության պայմաններում պատերազմի բախտը զինված ուժերի քանակական մեծությամբ չի որոշվում։ Սակայն այստեղից չի բխում, թե զինված ուժերի թիվը կորցրել է իր դերը։ Եթե նկատի ունենանք նոր պատերազմի տարածական թափը, երկրի պաշտպանության խնդիրները, հնարավոր կորուստների չափերը բանակի անձնակազմում և դրանք փոխհատուցելու անհրաժեշտությունը, ապա այստեղից անխուսափելիորեն այն հետեվությունն է բխում, որ հրթիռա-միջուկային պատերազմը պետք է մղեն մասսայական բանակները։

Բարձր զարգացած ռազմական տեխնիկայի պայմաններում համապատասխան բարձրորակ մարդկային ռեզերվներ պատրաստելը լուրջ պրոբլեմ է։ Այսպես, եթե նախկինում միջին հաշվով 30—50 զինվորին մեկ սպա էր ընկնում, ապա ներկայումս օտարերկրյա բանակներում 8—9 զինվորին է մեկ սպա ընկնում։ 1961 թվականին սովետական հրթիռային զորքերում յուրաքանչյուր 100 սպային 72 ինժեներ էր ընկնում[2]։

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 8, էջ 170։

[2] Տե՛ս С. Н. Крупнов, Диалектика и военная наука, М., 1963, էջ 118։

Այստեղից հետևում է, որ ռազմական տեխնիկայի զարգացման ամեն մի աստիճան համապատասխան զինվոր ու սպա է պահանջում։ Եվ որքան կատարյալ է այդ տեխնիկան, այնքան բարձր պետք է լինի նրա հետ կապված մարդկանց մասնագիտական որակավորման աստիճանը։ Ժամանակակից պատերազմը պահանջում է նոր տիպի մարտիկ, որը կարողանա վարպետորեն օգտագործել զենքը, որպես մասնագետ վարվել նրա հետ։ Զինված ուժերի մեջ բարձր էֆեկտիվությամբ օժտված և բարդ մարտական տեխնիկայի ներդրումն ուղեկցվում է տեխնիկապես լավ հագեցված զորամասերի տեսակների աճով։

Պատերազմի ծանրությունը կընկնի ոչ միայն անմիջական ռազմական գործողություններում մասնակցող զինված ուժերի, այլև նրանց սպասարկող տարատեսակ զորախմբերի և ամբողջ բնակչության վրա։ Միամտություն կլիներ կարծել, թե պատերազմի բախտը բացառապես կվճռեն մոդեռնացված մարտական տեխնիկան գործողության մեջ դնող ռազմական մասնագետների սահմանափակ խմբեր, իսկ բնակչության մյուս շերտերը կախարդվածների պես պասիվ կընկալեն իրենց շուրջը կատարվող իրադարձությունները։ Պատերազմի ելքի վրա որոշակի ազդեցություն կթողնի նրա նկատմամբ ժողովրդական մասսաների վերաբերմունքը, քանի որ զինված ուժերի մարտական գործողությունները կպահանջեն բնակչության բազմամիլիոն մասսաների ներգրավվում պատերազմի կարիքները բավարարելու համար, լարված աշխատանք ժողովրդական տնտեսության մեջ։ Այդ տեսակետից կողմերի հնարավորությունները տարբեր են։

Մասսաների վերաբերմունքը պատերազմի նկատմամբ որոշվում է վերջինիս բնույթով ու նպատակներով։ Կարելի է ասել, որ պատերազմում ժողովրդական լայն մասսաների մասնակցությունն ապահովելու անհրաժեշտության ուժեղացման համեմատ իմպերիալիստական կոալիցիայի հնարավորությունները կկրճատվեն։ Ինչպես Վ. Ի. Լենինն էր նշում, անարդարացի, ռեակցիոն պատերազմների ժամանակ դասակարգային հակասությունների հետևանքը եղել է և կլինի իմպերիալիստական պետությունների ներսում միասնության բացա-

կայունությունը, այդ պատերազմը ժողովրդի կողմից պաշտպանելու անհնարինությունը։

Որոշակի հակաիմպերիալիստական գործոն է կոմունիստական և բանվորական կուսակցությունների, բոլոր առաջադեմ դեմոկրատական ուժերի ակտիվ գործունեությունը կապիտալիստական երկրներում, իմպերիալիզմի ագրեսիվ բնույթը մերկացնելու և աշխատավոր մասսաների քաղաքական հասունությունը բարձրացնելու ուղղությամբ։ Անկասկած, վճռական պահին այդ ուժերը պայքար կծավալեն իմպերիալիզմի դեմ, ներսից կհարվածեն նրան։

Մյուս կողմից՝ հակաիմպերիալիստական համաշխարհային պատերազմի արդարացի քաղաքական նպատակը կառաջացնի սոցիալիստական երկրների բնակչության բոլոր շերտերի գործողությունների միասնություն և իմպերիալիզմի վերջնական ջախջախումն իրականացնող քաղաքականության միահամուռ պաշտպանություն։

Այսպիսով, երկրի մարդկային ռեզերվների ռացիոնալ տեղաբաշխումն ու օգտագործումը, մոբիլիզացիոն հնարավորությունները և զինված ուժերի անձնակազմի տեխնիկաբարոյական մակարդակը, այդ ուժերի առավելագույն հզորությունն ապահովող էկոնոմիկայի կարողությունները՝ ագրեսորին պատերազմի սկզբնական էտապում ոչնչացնող հարվածներ հասցնելու համար, ամբողջ բնակչության՝ փորձություններին դիմանալու պատրաստակամությունը, ժողովրդի բարոյամարտական ոգին՝ (եթե պատերազմը ձգձգվի), կախված են հասարակական ու պետական կարգի բնույթից։

Սովետական պետության պատմական փորձը ցույց տվեց, որ այդ տեսակետից սոցիալիստական հասարակարգը վճռական առավելություններ ունի կապիտալիզմի նկատմամբ։ Իսկ անցյալի փորձը օգնում է մեզ ճանաչելու նորը և կանխատեսելու հեռանկարը։ Սոցիալիստական հասարակության սոցիալ-տնտեսական և քաղաքական կառուցվածքի վրա է խարսխվում գիտականորեն մշակված սովետական ռազմական դոկտրինան, որ ագրեսորներին գլխովին ջախջախելու անհրաժեշտ գործոններից մեկն է։

Սովետական ռազմական դոկտրինան օժտված է էկս-

նոմիկայի, ուժերի քաղաքական հարաբերակցության և զենքի տեսակների մեջ կատարվող փոփոխությունների դիալեկտիկական ըմբռնմամբ։ Նրա համար մեթոդոլոգիական հիմք է ծառայում մարքսիզմ-լենինիզմը։ Սովետական ռազմական դոկտրինան ելնում է այն հիմնադրույթից, որ ջերմամիջուկային պատերազմն անխուսափելի չէ։

Սակայն, սովետական ռազմական դոկտրինայում զգաստ ու ռեալիստորեն արտացոլված են իրավիճակը, իմպերիալիզմի կողմից պատերազմ սանձազերծելու հնարավորությունը և սոցիալիզմի լագերի պաշտպանունակությունն ամրապնդելու կենսական անհրաժեշտությունը։

Պատերազմը խորթ է սոցիալիզմին։ Սակայն առանց պատերազմելու հզոր միջոցների, անհնարին է զսպել իմպերիալիզմը և ջախջախիչ հարված հասցնել նրան, եթե փորձի պատերազմ սկսել։ Այս տեսակետից էլ սովետական ռազմական դոկտրինան խարսխվում է ժամանակակից ամենահզոր տեխնիկական միջոցների ավելացման վրա։ Այն գիտականորեն մշակված հայացքների մի կուռ սիստեմ է սոցիալիզմը ագրեսիայից, իմպերիալիստական ոտնձգություններից պաշտպանելու միջոցների ու եղանակների մասին, որ որոշում է ռազմական շինարարության գլխավոր ուղղությունը։ Սովետական զինված ուժերի անցած հաղթանակների փառապանծ ուղին սոցիալիստական տնտեսա-քաղաքական կարգի տրիումֆն է, սովետական ռազմական ստրատեգիայի վճռական գերազանցության դրսևորումը կապիտալիստական ռազմական ստրատեգիայի նկատմամբ։

Ժամանակակից պայմաններում սովետական ռազմական ստրատեգիան արտացոլում է զենքի ու պայքարի միջոցների մեջ կատարված հեղաշրջումը և դրանից բխող՝ բանակին ու նավատորմին ներկայացվող պահանջները։ Այն հաշվի է առնում պատերազմի բնույթը, քաղաքական նպատակները, մասշտաբները և հասարակական հետևանքները։

Սովետական ռազմական դոկտրինան չի բացառում և՛ լոկալ, և՛ սահմանափակ պատերազմների հնարավորությունը, մշակելով անհրաժեշտ ուղիներ ու եղանակներ դրանց մեջ ագրեսորին կրախի մատնելու ուղղությամբ։

Ինչպես արդեն ասվեց, նոր համաշխարհային պատերազմին բնորոշ կլինեն կայուն ռազմաճակատների բացակայությունը, մարտական գործողությունների մանևրականությունը, հակառակորդի զորամասերին և թիկունքին հանկարծակի հարվածները։ Ժամանակակից զենքի բնույթն այնպիսին է, որ իմպերիալիստները կարող են հրապուրվել հանկարծակի հարձակման որոշումով։ Այս իմաստով պատերազմի սկզբնական շրջանի նշանակությունը փոխվում է։ Առաջին հարվածը կարող է որոշել իրադարձությունների հետագա ընթացքը, ներգործել պատերազմի վախճանի վրա։ Ուստի, սովետական ռազմական դոկտրինան ամենաառաջնահերթ ու ամենակարևոր խնդիրն է համարում սովետական զինված ուժերը մշտապես մարտական պատրաստության մեջ պահելը՝ թշնամու հանկարծակի հարձակումը վիժեցնելու և նրան անհապաղ ջախջախելու նպատակով։ Պաշտպանության լավագույն միջոց է նաև թշնամուն նախազգուշացնելը սոցիալիստական լագերի ռազմական հզորության մասին։

Սովետական ռազմական դոկտրինան, իհարկե, հաշվի է առնում իրադարձությունների ամեն մի չնախատեսված ընթացք։ Նրան հատուկ է իրականության արտացոլումն իր ամբողջ դինամիզմով։

Ջերմամիջուկային միջկոալիցիոն պատերազմը կուղեկցվի ամբողջ աշխարհի համար ծանր հետևանքներով։ Ոչ մի ժողովուրդ իրադարձությունների թիկունքում չի կարող մնալ։ Եթե մինչև պատերազմը հնարավոր է չեզոքություն պահպանելը, ապա դրա ծագումից հետո այն կկորցնի իր նշանակությունն ու գործունությունը։ Օբյեկտիվ իրադրությունն այս կամ այն կոալիցիայի մեջ չմտնող բոլոր երկրներին կկանգնեցնի ընտրություն կատարելու անհրաժեշտության առջև։ Անկարելի է չեզոք դիրք ընդունել, երբ վճռվում է քաղաքակրթության բախտը։ Կարելի է ենթադրել, որ ջերմամիջուկային պատերազմի ծագումն ուժերի բևեռացում կառաջացնի։ Մի բևեռում սոցիալիզմի հետ համատեղ կկանգնեն արդիականության բոլոր հեղափոխական առաջադեմ ուժերը, իսկ մյուսում՝ բոլոր հակահեղափոխական ռեակցիոն ուժերը։ Ազատագրված ժողովուրդների գիտակցության մեջ իմպերիալիզմը հանդես է

գալիս որպես ազատություն, ինքնուրույնություն, անկախություն և բարեկեցության ախերիմ թշնամի։ Քաղաքական հատունության դեպքում, օբյեկտիվ կոնկրետ իրադրության մեջ այդ ժողովուրդներն անխուսափելիորեն կկանգնեն սոցիալիզմի կողմը։ «Մոնոպոլիստական բուրժուազիան նույնիսկ միջուկային զենքով չի կարող խույս տալ պատմական զարգացման անկասելի ընթացքից։ Մարդկությունը ճանաչել է կապիտալիզմի իսկական դեմքը։ Հարյուր միլիոնավոր մարդիկ տեսնում են, որ կապիտալիզմը տնտեսական անարխիայի և պարբերական ճգնաժամերի, խրոնիկական գործազրկության և մասսաների աղքատության, արտադրողական ուժերի գիշատիչ վատնման համակարգն է, մի համակարգ, որը մշտապես բերում է պատերազմների սպառնալիք։ Մարդկությունը չի ուզում հաշտվել և չի հաշտվի կապիտալիզմի սիստեմի հետ, որը պատմականորեն իր դարն ապրել է»[1]։

Ինչպես արդեն ընդգծվեց, համաշխարհային հեղափոխական պրոցեսի բնույթն ու բովանդակությունը ժամանակակից դարաշրջանում որոշվում է նրանով, որ մեկ միասնական հոսանքի մեջ միաձուլվում են սոցիալիզմ և կոմունիզմ կառուցող ժողովուրդների պայքարը, կապիտալիստական երկրներում բանվոր դասակարգի հեղափոխական շարժումը, ճնշված ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարը և համադեմոկրատական շարժումները։ Հեղափոխական, հակաիմպերիալիստական ուժերի այդ դաշինքում վճռական դերը պատկանում է բանվոր դասակարգին և նրա գլխավոր ծնունդ սոցիալիզմի համաշխարհային սիստեմին։ Այստեղից հետևում է, որ եթե միջազգային իմպերիալիզմը սանձազերծի նոր համաշխարհային պատերազմ, նրա դեմ միասնական ճակատով հանդես կգան արդիականության բոլոր հեղափոխական ուժերը: Իմպերիալիզմի խորտակման գործում վճռական դեր կխաղա սոցիալիստական պետությունների կոալիցիան, որն իր տրամադրության տակ ունի նյութական բոլոր միջոցները։

---

[1] ՍՄԿԿ ծրագիրը, էջ 40—41։

Այն հանգամանքը, որ բուրժուական ստրատեգները շեշտը լոկալ պատերազմների վրա են դնում, բացատրվում է համընդհանուր ընդհարման անխուսափելի հեռանկարի ըմբռնումից առաջացած սարսափով։

Բուրժուական մտածողների դատողություններում նկատվում է նոր համաշխարհային պատերազմի հնարավոր, կապիտալիզմի համար անհեռանկար հետևանքների ըմբռնումը։ Այսպես, Կիսինգերը գտնում է, որ այնպիսի դեպքերում, երբ մարդկային տառապանքների համբերության բաժակը լցվում է, տարբեր քաղաքական կամ սոցիալական վերափոխությունները անխուսափելի են դառնում։ Ջերմամիջուկային պատերազմը «կարող է դառնալ Եվրոպայի սոցիալական սիստեմի լրիվ կրախի պատճառը»։

Օբյեկտիվորեն առաջացած իրադրության մեջ պայքարող սոցիալական ուժերի հարաբերակցության վերլուծությունը ցույց է տալիս, որ հրթիռա-միջուկային պատերազմի սանձազերծման դեպքում սոցիալիզմի հաղթանակն ու կապիտալիզմի վերջնական կործանումն անխուսափելի է։

Սակայն ռազմական գործողությունների այդպիսի վախճանից անկախ, կոմունիստները սոցիալիզմի հաղթանակը միջազգային մասշտաբով բնավ համաշխարհային պատերազմի հետ չեն կապում, նրանք միայն գիտականորեն հիմնավորում են դրա հետևանքները, եթե իմպերիալիստները փորձեն սանձազերծել համաշխարհային պատերազմ։

Օբյեկտիվորեն առաջացած պատմական այնպիսի պայմաններում, երբ ծայրաստիճան սրվել է իմպերիալիզմի ագրեսիվությունը և ստեղծվել է վիթխարի ավերիչ ուժի զենք, կոմունիստները ղեկավարվելով համամարդկային առաջադիմության շահերով և հումանիստական սկզբունքներով, գտնում են, որ ներկա դարաշրջանում հակաիմպերիալիստական ուժերի առջև կանգնած բոլոր խնդիրների մեջ կենտրոնական տեղ է գրավում համաշխարհային պատերազմը կանխելու համար մղվող պայքարը։ Կոմունիստական կուսակցությունների համար խաղաղասեր բոլոր ուժերի համախմբումը՝ խաղաղությունը պահ-

*պանելու, մարդկությանը միջուկային պատերազմի մղձավանջից փրկելու առաջնակարգ խնդիր է։*

«Արդիականության հիմնական հարցը պատերազմի և խաղաղության հարցն է... *խաղաղության և պատերազմի պրոբլեմը դարձել է հարյուր միլիոնավոր մարդկանց կենաց ու մահու պրոբլեմը*»[1]։

---

[1] *ՍՄԿԿ ծրագիրը, էջ 68։*

ԳԼՈՒԽ ՀԻՆԳԵՐՈՐԴ

# ՕԲՅԵԿՏԻՎ ԵՎ ՍՈՒԲՅԵԿՏԻՎ ԳՈՐԾՈՆՆԵՐԻ ՀԱՐԱԲԵՐԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐՈՒՄ

## 1. Պայքար խաղաղության համար, որպես պրոլետարական շարժման բաղկացուցիչ մաս

*Խաղաղության պրոբլեմի գիտական լուծումն հնարավոր դարձավ պրոլետարիատի քաղաքական պայքարի ընթացքում, երբ նա իր համադասակարգային շահերի ըմբռնման պրոցեսն էր ապրում։ Արդեն չարտիստական շարժման մեջ, պրոլետարական պայքարի մյուս խնդիրների հետ մեկտեղ, ընդհանուր գծերով մշակվում էր պատերազմի և խաղաղության հարցերում բանվոր դասակարգի միջազգային ծրագիրը։ Այդ շարժման ականավոր գործիչներից մեկը՝ Գառնին, հանդես գալով Լոնդոնում կազմակերպված բանվորական միտինգում, որը նվիրված էր 1792 թվականի սեպտեմբերի 22-ին Ֆրանսիական հանրապետության հռչակման տարեդարձին, հայտարարեց. «Մենք ատում էինք բոլոր պատերազմները, բացի այն պատերազմներից, որոնք ժողովուրդը հարկադրված էր մղելու ճնշման կամ օտարերկրյա ներխուժման դեմ»։ Այդ նույն միտինգում Վեյտլինգը կապիտալիստական վերնախավին ագահ գիշատիչներ անվանեց, որոնք «...մեզ սովորեցնում են տիրապետել զենքին, ով հանուն իր արտոնությունների պահպանման մեզ գրգռում է մեկը մյուսի դեմ և դեպի պատերազմ քշում»[1]։*

*Մարքսիզմ-լենինիզմն սպառիչ լուծում տվեց պատերազմի և խաղաղության հարցերին, քննադատաբար մշակելով նախորդ դեմոկրատական ծրագրերն ու հումանիստական գաղափարները։*

[1] *Տե՛ս* К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 2, *էջ* 597։

Համընդհանուր խաղաղության հասնելու հնարավորության հարցը ծագում է կոնկրետ պատմական պայմաններում։ Այն իր լուծումն է գտնում պրոլետարիատի համադասակարգային, համադեմոկրատական շարժման իրականացվող խնդիրների կոմպլեքսում։

Խաղաղությունը մարդկության բացարձակ մեծամասնության կենսական պահանջն ու ձգտումն է։ Պրոլետարական շարժումը մեծամասնության ինքնուրույն շարժումն է հանուն հսկայական մեծամասնության շահերի։ Այն առաջին հերթին ուղղված է կապիտալիստների գոյապայմանների, հասարակական բոլոր շարիքների և արատների սկզբնաղբյուր արտադրության միջոցների մասնավոր սեփականության դեմ։

Արդյունաբերության առաջընթացը, բանվորների միատեսակ կենսապայմանները կապիտալիզմի օրոք բոլոր երկրների պրոլետարների միավորման տենդենց են առաջացնում։ Բանվոր դասակարգի պայքարն ինտերնացիոնալ բնույթ է ստանում և ծավալվում է հանուն իսկական մարդկային հարաբերությունների հաղթանակի։ Իսկ այդ հարաբերությունների բաղադրիչ մասերից մեկը խաղաղությունն է։

Առաջին ինտերնացիոնալի Սահմանադիր մանիֆեստում մերկացնելով իշխող, շահագործող դասակարգերի սանձազերծվող թալանչիական պատերազմները, Կ. Մարքսը գրում էր, որ բանվորները պարտավոր են «բացահայտել միջազգային քաղաքականության գաղտնիքները, հետևել իրենց կառավարությունների դիվանագիտական գործունեությանը և անհրաժեշտության դեպքում դիմակայել նրան իրենց տրամադրության տակ եղած բոլոր միջոցներով, իսկ եթե անհնարին լինի կանխել այդ գործողությունը՝ միավորվել այն միաժամանակ մերկացնելու համար և հասնել նրան, որպեսզի բարոյականության ու արդարության հասարակ օրենքները, որոնցով պետք է ղեկավարվեն մասնավոր անձինք իրենց փոխհարաբերություններում, դառնան բարձրագույն օրենքներ ժողովուրդների միջև եղած հարաբերություններում նույնպես»[1]։ Կ. Մարքսը հռչակում է այն սկզբունքը, որ խաղաղության հա-

[1] К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 16, стр. 11.

մար պայքարը բանվոր դասակարգի ազատագրության պայքարի բաղկացուցիչ մասն է, որ նշանակում է պրոլետարիատի դասակարգային պայքարում սոցիալիստական և համադեմոկրատական խնդիրների միահյուսում։

4. Մարքսը չէր բացառում պրոլետարիատի՝ խաղաղության համար մղվող պայքարի անհաջողության հնարավորությունը, քանի դեռ նա պետականորեն ձևակերպված դասակարգ չէ։ Բայց դա կարող է փոխհատուցվել բոլոր երկրների բանվորների համախմբումով, նրանց ինտերնացիոնալ համերաշխությամբ, որը հզոր հակապատերազմական գործոն է։ Այդ դեպքում ագրեսիայի, միլիտարիզմի և պատերազմի ճանապարհը կարող է փակվել. տարբեր երկրների բանվոր դասակարգի միավորումը վերջին հաշվով անհնարին կդարձնի պատերազմները ժողովուրդների միջև, «...բոլոր երկրների բանվորների դաշինքը... արմատախիլ կանի ամեն տեսակի պատերազմները»[1]։

Պրոլետարիատը, որպես աշխատավոր դասակարգ, իր բնությամբ խաղաղասեր է։ Խաղաղությունը միջազգային սկզբունք է դառնում այնտեղ, որտեղ միակ տիրակալը աշխատանքն է։ Սակայն կապիտալիզմի համապարփակ տիրապետության պայմաններում համաշխարհային մասշտաբով բանվորների համաձայնեցված միասնական գործողություններն ապահովելը շատ բարդ խնդիր էր, նույնիսկ այնպիսի հարցում, ինչպիսին է խաղաղության պահպանումը։ Ինչպես ցույց տվեց պրակտիկան, առաջին և երկրորդ համաշխարհային պատերազմների նախօրյակին չհաջողվեց ստեղծել բոլոր երկրների բանվորների հակամիլիտարիստական միասնական, ընդհանուր ճակատ։

Առաջին համաշխարհային պատերազմը ոչ միայն տնտեսական, այլև քաղաքական տեսակետից նախապատրաստվում էր մի շարք տարիների ընթացքում։ Արդեն անցյալ դարավերջին իրականացվում էր պատերազմի ռազմա-քաղաքական եռանդուն նախապատրաստություն։ Ձևավորվում էին ագրեսիվ դաշինքներ։ Այդ շրջանը նշանավորվում էր նաև պրոլետարիա-

[1] К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 17, стр. 5.

կան շարժման ուժեղացումով և մի շարք երկրներում սոցիալիստական կուսակցությունների ստեղծումով։

1889 թվականին հիմնադրվեց բանվորների երկրորդ միջազգային ընկերությունը, որ նշանակում էր հակապատերազմական կազմակերպության ստեղծում։ Մարքսիզմը, որպես քաղաքական մտքի հոսանք, դառնում էր ազդեցիկ ուժ։ Ռուսաստանում, Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ ու գլխավորությամբ, ձևավորվում էր մարքսիստական քաղաքական կուսակցություն։

Ռազմական վտանգը երկրորդ ինտերնացիոնալի տեսադաշտից դուրս չէր մնում։ Արդեն 1891 թվականին Բրյուսելի կոնգրեսը բանվորներին առաջարկում էր վճռականորեն բողոքել պատերազմի նախապատրաստության դեմ և ամրապնդել պրոլետարիատի միջազգային համերաշխությունը։ Հետագա կոնգրեսներում նույնպես սոցիալիստները բանավիճում էին վրա հասնող ռազմական փոթորկի դեմ ուղղված պայքարի միջոցների շուրջը։ Դա սկզբունքային նշանակություն ուներ։ Անհրաժեշտ էր գործուն միջոցներ գտնել միլիտարիզմի դեմ արդյունավետ պայքար ծավալելու համար։ Երկրորդ ինտերնացիոնալի Ցյուրիխի և Լոնդոնի կոնգրեսներում ձևակերպվեցին պրոլետարիատի խնդիրները՝ նրա հակամիլիտարիստական պայքարում։ Առաջարկվում էր ամեն կերպ ամրապնդել համերաշխության կապերը բոլոր երկրների բանվորների միջև, պայքարել հանուն համընդհանուր զինաթափման և մշտական բանակների վերացման, կազմակերպել ժողովրդական հանրաքվեներ պատերազմի հարցի շուրջը։ Պառլամենտներում, բյուջեների քննարկման ժամանակ, սոցիալիստ-դեպուտատները պետք է քվեարկեին ռազմական վարկերի դեմ։ Այս կոնգրեսներում առաջարկություններ արվեցին, պատերազմի ծագման դեպքում, կազմակերպել համընդհանուր գործադուլներ։ Սակայն դրանք մերժվեցին, քանի որ այդ միջոցը գնահատվեց իբրև պատրանքային և անարդյունավետ։

1900 թվականին միլիտարիզմի հարաճուն վտանգի հարցին անդրադարձավ Երկրորդ ինտերնացիոնալի Փարիզի կոնգրեսը։ Այն պատերազմը կանխելու համար առաջարկեց երեք հիմնական միջոց։ Դրանք էին՝ երիտասարդության դաստիա-

րակությունն ու կազմակերպումը, պառլամենտի սոցիալիստ անդամների՝ ռազմական վարկերի դեմ քվեարկությունը և միջազգային բարդությունների ժամանակ հակապատերազմական միացյալ ցույցերի կազմակերպումը։ Կոնգրեսում Պլեխանովն ու Սեն Կատայաման միմյանց ձեռք սեղմեցին, որն ըստ էության, խորհրդանշում էր համերաշխության մասին նրանց հանդիսավոր երդումը վրա հասնող ռուս-ճապոնական պատերազմի դեմ մղվող ընդհանուր պայքարում։

1907 թվականի օգոստոսին հրավիրված Շտուտգարտի կոնգրեսում ներկա էր Վ. Ի. Լենինը։ Այդ հանգամանքն իր կնիքը դրեց կոնգրեսի աշխատանքների վրա։ Հարաճուն ռազմական վտանգի հարցը քննարկելիս Վ. Ի. Լենինը հետևողականորեն, մարքսիստական դիրքերից մերկացրեց Էրվեի կիսաանարխիստական տեսակետը, որն առաջարկում էր ամեն մի պատերազմի «պատասխանել» գործադուլներով և ապստամբությամբ։ Վ. Ի. Լենինը ընդգծում էր պայքարի հեղափոխական պրիոմների և միջոցների ընտրության գործում պատերազմից առաջացած ճգնաժամի սպեցիֆիկ պայմանների հաշվառման անհրաժեշտությունը։ Արդեն այն ժամանակ նա միլիտարիզմի դեմ մղվող պայքարը շաղկապում էր սոցիալիզմի համար մղվող պայքարի հետ։ «...պետք է պայքարել ոչ միայն պատերազմներ ծագելու դեմ կամ արդեն սկսված պատերազմները շուտափույթ դադարեցնելու համար,— նշում էր Վ. Ի. Լենինը,— այլև պայքարել, որպեսզի պատերազմի շնորհիվ ստեղծվող ճգնաժամն օգտագործվի բուրժուազիայի տապալումն արագացնելու համար»[1]։

Հատկանշական է, որ դեռ այն ժամանակ արևմտյան երկրների սոցիալ-դեմոկրատական առաջնորդների շարքերում դրսևորվում էին պարտվողական տրամադրություններ։ Այսպես, գերմանական սոցիալ-դեմոկրատ Ֆոլմարը կոնգրեսում հայտարարում էր, թե քանի որ պատերազմը կապիտալիզմի անհրաժեշտ ուղեկիցն է, ուստի պետք է հրաժարվել հակամիլիտարիստական պայքարից։ Այս դրույթը փաստորեն համաշխարհային պատերազմների ճակատագրական անխուսափելիության գաղափարի ընդունումն էր։

---

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 13, էջ 89։

Վ. Ի. Լենինը վճռականորեն դատապարտեց Ցոլմարի այդ «շաբլոն պառլամենտարիզմը» և «անզորության հռետեսական ավետարանը», ցույց տալով նրա կոնցեպցիայի «չորությունն ու նեղությունը» և օպորտունիստական էությունը։

Երկրորդ ինտերնացիոնալի աջ սոցիալիստական թևում հաճախ էին զգացվում օպորտունիստական հովեր։ Միաժամանակ ավելի ուժեղ էր փչում պատերազմի հոտը։ Ինտերնացիոնալի օպորտունիստական թևն ավելի ու ավելի էր դրսևորում իմպերիալիստական բուրժուազիայի հետ համաձայնության մեջ մտնելու հակումներ։ 1907 թվականին գերմանական սոցիալ-դեմոկրատ Նոսկեն ռայխստագում ժոնգլյորություն անելով «պաշտպանական պատերազմ» բառով, հավաստիացնում էր, թե պատերազմի ժամանակ «սոցիալ-դեմոկրատները բուրժուական կուսակցություններից ետ չեն մնա և հրացանն ուսերին կգցեն...»[1]։ Նմանօրինակ հայտարարություններով հանդես եկան Անգլիայի և Իտալիայի սոցիալ-դեմոկրատական կուսակցությունների որոշ ղեկավարներ։ Պատերազմի ծագման հնարավորությունը թերագնահատում էին արևմտյան առանձին մարքսիստներ, այդ թվում Ավգուստ Բեբելը և Պոլ Լաֆարգը։

Ռազմական հարցերը քննարկման առարկա դարձան 1910 և 1912 թթ. Կոպենհագենի և Բազելի կոնգրեսներում։ Պատերազմի վտանգը սոցիալ-դեմոկրատներին պարտադրեց մշակել գործողությունների ծրագիր։ Բազելի կոնգրեսն ընդգծեց պատերազմին նախապատրաստվող երկրների սոցիալիստական կուսակցությունների ու արհմիությունների՝ պատերազմի դեմ մղվող պայքարում լիակատար միաբանությունը։ Կոնգրեսի մանիֆեստում ասված էր, որ համընդհանուր պատերազմի հետևանքը կարող է լինել պրոլետարական հեղափոխությունը և իշխող դասակարգերի՝ այդ հեռանկարից վախեցածությունը խաղաղության ամուր հենարանն է. «Թող կառավարությունները լավ հիշեն, որ Եվրոպայի և բանվոր դասակարգի շրջանում եղած մտավոր տրամադրությունների արդի վիճակում նրանք չեն կարող պատերազմ սանձազերծել, իրենք

---

[1] Տե՛ս «Всемирная история», т. VII, էջ 488:

իրենց վտանգի չենթարկելով։ Թող նրանք վերհիշեն, որ ֆրանս-պրուսական պատերազմն առաջացրեց Կոմունայի հեղափոխական պայթյունը, որ ռուս-ճապոնական պատերազմը գործողության մեջ դրեց Ռուսական կայսրության ժողովուրդների հեղափոխական ուժերը... Պետք է խելագար լինել չհասկանալու համար, որ սարսափելի համաշխարհային պատերազմի մասին միտքն անգամ բոլոր երկրների բանվոր դասակարգի մոտ ցասման ու զայրույթի զգացմունք է բորբոքում։ Բանվորները հանցագործություն են համարում մեկը մյուսի դեմ կրակելը՝ հանուն կապիտալիստական շահերի, դինաստիայի կամ գաղտնի դիվանագիտության առավելագույն փառքի»[1]։

Ինչպես երևում է, մանիֆեստը խոր լավատեսությամբ էր տոգորված։ Նա բանվորներին ուղղված համերաշխության մի կրքոտ կոչ էր միլիտարիզմի դեմ մղվող համադասակարգային պայքարում։ Բանաձևի օգտին քվեարկեցին նաև աջ օպորտունիստները։ Եվ դա հասկանալի է։ Հակապատերազմական տրամադրություններով համակված բոլոր երկրների բանվորների ակտիվության պայմաններում նրանք վախեցան մեկուսանալուց։ Հետագա իրադարձությունները ցույց տվեցին, որ աջ սոցիալիստների վարքագիծը խաբուսիկ էր, տեսանելիության քողով ծածկված, որի հետևում թաքնված էր իսկական էությունը։ Հենց որ լսվեցին հրանոթային առաջին համազարկերը, արևմտյան երկրների սոցիալ-դեմոկրատները քողարկվելով «հայրենիքի պաշտպանության» կեղծ լոզունգով, հայտարարեցին, թե պաշտպանում են պատերազմը։

Այդ գործում առաջնությունը պատկանում է գերմանական սոցիալ-դեմոկրատներին։ Ֆոլմարը հայտարարեց. «Ներկայումս գերմանական ամբողջ ժողովուրդը համակված է մի ձգտումով՝ պաշտպանել հայրենիքը, նրա անկախությունն ու կուլտուրական կազմակերպությունը իրեն շրջապատող թշնամիներից և չհանգստանալ այնքան ժամանակ, մինչև որ այդ թշնամիները չջախջախվեն»[2]։

---

[1] Տե՛ս У. Фостер, История трех интернационалов, М., 1959, էջ 224—225:

[2] Տե՛ս նույն տեղում, էջ 238։

Գերմանական սոցիալ-դեմոկրատների օրինակին հետևեցին Անգլիայի, Ֆրանսիայի, Բելգիայի սոցիալիստները և Ռուսաստանի մենշևիկները։

Այսպիսով, պրոլետարիատի գործին բացահայտորեն դավաճանած սոցիալ-դեմոկրատների նախաձեռնությամբ, իմպերիալիստական պատերազմում հրապարակ հանվեց «հայրենիքի պաշտպանության» ռեակցիոն լոզունգը։ Երկրորդ ինտերնացիոնալը կրախի մատնվեց, բանվոր դասակարգն ապակազմակերպվեց և պառակտվեց։ Իմպերիալիստական բուրժուազիայի առջև կանաչ ճանապարհ բացվեց, որի հետ սոցիալ-դեմոկրատները դասակարգային համագործակցության մեջ մտան։ Սոցիալ-դեմոկրատիան դարձավ իմպերիալիզմի գործակիցը նրա թալանչիական գործողություններում։ Շովինիզմով արբեցած, նա ստանձնեց բանվորական շարժման տրոյական ձիու դերը։ Ռոզա Լյուքսեմբուրգի պատկերավոր արտահայտությամբ, սոցիալ-դեմոկրատիան «գարշահոտ դիակի» վերածվեց։

Հատկանշական է, որ Շտուտգարտի կոնգրեսի ընդունած բանաձևում ասված էր. «Պատերազմներին նպաստում են նացիոնալիստական այն նախապաշարմունքները, որոնք պարբերաբար արմատավորվում են քաղաքակրթված երկրներում, տիրապետող դասակարգերի օգտին պրոլետարական մասսաներին սեփական դասակարգային խնդիրներից շեղելու և ... միջազգային դասակարգային պարտականությունը նրանց կողմից մոռանալու նպատակով»։

Այս բանաձևի տակ իրենց ստորագրությունները դրեցին սոցիալ-դեմոկրատները, որոնք ուղիղ յոթ տարի անց հրաժարվեցին սեփական կոչերից և գործնականորեն կատարեցին այն, ինչ տեսականորեն մի ժամանակ դատապարտում էին։ Նրանք անցան իրենց երկրների բուրժուազիայի կողմը՝ ընդդեմ պրոլետարիատի, մեկ երկրի բանվորներին ուղղելով մյուս երկրների բանվորների դեմ։

Ամբողջովին վերցրած, երկրորդ ինտերնացիոնալի հակապատերազմական կոչերն ու դիմումները կրում էին դեկլարատիվ, անարդյունավետ բնույթ։ Դրանք ավելի շատ բարոյական, պրոպագանդիստական երանգավորում ունեին։ Առանձին

գործադուլներն ու բողոքները, հակամիլիտարիստական պոռթկումները իրադարձությունների ընթացքի վրա էական ներգործություն ունենալ չէին կարող։

Այսպես, օրինակ, 1909 թվականի հուլիսին Բարսելոնայի բանվորները Մարոկկոյում Իսպանիայի կողմից մղվող անարդարացի զավթողական պատերազմի դեմ բողոքի համընդհանուր գործադուլ հայտարարեցին։ Հնգօրյա այդ ելույթին, որը տարածվեց նաև երկրի մյուս քաղաքները, մասնակցեցին 300 հազար բանվորներ։ Սակայն օգոստոսի 2-ին նշանակված երկրորդ համազգային գործադուլը, ոստիկանական տեռորի հետևանքով, ձախողվեց։

Երկրորդ ինտերնացիոնալի սոցիալ-դեմոկրատական վերնախավը մեկ միասնական լագերի մեջ մտավ իմպերիալիզմի հետ։ Եթե սոցիալ-դեմոկրատիան հավատարիմ մնար սոցիալիզմի ու խաղաղության իդեալներին և պրոլետարիատին մոբիլիզացներ ընդդեմ պատերազմի հրձիգների, իմպերիալիստների ռազմատենչ դիտավորությունների ճանապարհին մի լուրջ պատնեշ կգոյանար, որն հաղթահարելն այնքան էլ հեշտ գործ չէր լինի։ Սակայն իր բացահայտ դավաճանությամբ սոցիալ-դեմոկրատիան անգնահատելի ծառայություն մատուցեց ռազմամոլ բուրժուազիային։ Վ. Ի. Լենինը գիտականորեն բացահայտեց սոցիալ-դեմոկրատական լիդերների դավաճանական պառակտիչ գործունեության սոցիալական արմատները։

Իմպերիալիզմի օրոք պրոլետարիատին շահագործելու և գաղութները թալանելու հաշվին ճարպակալած խոշոր արդյունաբերական բուրժուազիան մանրում է։ Գործի դնելով նյութական ազդակներ, նա գնում է բանվոր դասակարգի որոշ շերտեր։ Երևան է գալիս բանվորական արիստոկրատիան։ Հենց այդ հիման վրա ծագող, կապիտալի փշրանքներից և ողորմությունից օգտվող պրոլետարիատի սակավաթիվ վերին շերտերի և քաղքենիության դաշինքը դառնում է շովինիզմի ու օպորտունիզմի տնտեսական հիմքը՝ բանվորական շարժման մեջ։ «...Այսպես կոչված խաղաղ դարաշրջանի տասնամյակները,— գրել է Վ. Ի. Լենինը,— Եվրոպայի բոլոր երկրներում կուտակել են մանրբուրժուական օպորտունիստա-

կան հսկայական զոմաղբ սոցիալիստական կուսակցություն-ների ներսում»[1]։

Վ. Ի. Լենինը գրում էր նաև, որ պատերազմը կապիտա-լիստներին բերում է ոչ միայն տնտեսական, այլ քաղաքական օգուտներ, պառակտելով և այլասերելով պրոլետարիատին։

Բանվոր դասակարգի գործողությունների միասնությունը, սոցիալ-դեմոկրատական լիդերների դավաճանության, սրբա-պղծության հետևանքով, զոհաբերվեց համեմատաբար ապա-հովված աննշան թվով բանվորների ժամանակավոր շահերին։ Ոտնահարվեցին մասսաների, աշխատավոր մեծամասնության արմատական շահերը. ստացվեց բանվորների մի մասի միու-թյուն բուրժուազիայի հետ՝ ընդդեմ պրոլետարական մասսա-յի։ «Պատերազմը դարձնում է այդպիսի միությունն առանձ-նապես ակնբախ և հարկադրական»[2]։

Այդ վտանգի հետ պետք է ամենալրջորեն հաշվի նստել, քանի որ կապիտալիզմը հետևողականորեն վարում է բան-վորների առանձին շերտերը կաշառելու կուրս, այդ նպա-տակին տրամադրելով ազգային կապիտալի որոշ մասը։ Բուրժուազիայի համար դա մի միջոց է բանվոր դասակարգին հեղափոխական գործողություններից հեռու պահելու համար։

«Իմպերիալիստական պատերազմն իրերի այդպիսի դրու-թյան ուղղակի շարունակությունն ու ավարտումն է, քանի որ այդ մի պատերազմ է մեծապետական ազգերի արտոնու-թյունների համար...»[3]։

Այստեղից բխում է, որ բանվոր դասակարգի ավանգարդ կոմունիստական կուսակցությունները, ղեկավարվելով դա-սակարգի արմատական շահերով, պետք է անխնա կերպով մերկացնեն շովինիզմն ու օպորտունիզմը՝ պրոլետարական շարժման միասնությունն ապահովելու համար մղվող պայքա-րում։

Ինչպես հայտնի է, բոլշևիկյան կուսակցությունը, բուլ-ղարական տեսնյակները, սերբական սոցիալ-դեմոկրատները և մի շարք այլ սոցիալիստական կուսակցությունների ձախ

---

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 21, էջ 126։

[2] Նույն տեղում, էջ 301։

[3] Նույն տեղում։

ինտերնացիոնալիստական ուժերը դատապարտեցին իմպերիալիստական պատերազմը՝ պրոլետարական համերաշխության դիրքերից։ Բայց այդ ուժերը բավական չէին բոլոր երկրների բանվորների գործողությունների միասնությունն ապահովելու և խաղաղությունը պաշտպանելու համար։ Կյանքը հաստատեց Կ. Մարքսի տեսական այն դրույթի ճշմարտացիությունը, որ առանց համաշխարհային պրոլետարիատի ինտերնացիոնալ համերաշխության և գործողությունների միասնության, անհնարին է կանխել պատերազմը։

* * *

Խաղաղությունն ապահովելու պրոբլեմը մարքսիզմը լուծում է կոնկրետ պատմական պայմանների դիալեկտիկական իմաստավորման հիման վրա, երկու իրադրության՝ նախապատրաստվող պատերազմը խափանելու մեթոդների ու միջոցների և արդեն սկսված պատերազմի պայմաններում խաղաղության համար պայքարի հաշվառումով։ Երկու դեպքում էլ նա ելնում է պրոլետարիատի դասակարգային և ժողովրդական լայն մասսաների շահերից։ Ընդ որում, մարքսիզմը չի ղեկավարվում մեկընդմիշտ տրված հիմնադրություններով, այլ ադեկվատորեն արտացոլում է այն պայմանները, որոնց մեջ տեղծագործաբար զարգացվում և ձևակերպվում են նոր դրույթներ։

Կապիտալիզմի համապարփակ սիստեմի պայմաններում խաղաղության պրոբլեմը լուծվում է մեկ տեսանկյունից, իսկ աշխարհը երկու հակադիր սիստեմների տրոհվելու պայմաններում՝ մեկ այլ։

Այս առումով, հարցի մարքսիստական մեկնաբանությունն արմատապես տարբերվում է բուրժուա-պացիֆիստական ըմբռնումից, որն աբստրակտ-մետաֆիզիկական սահմանափակությամբ է տառապում։ Ըստ Վ. Ի. Լենինի, բուրժուական պացիֆիզմի էությունը դրսևորվում է «ինչ գնով էլ որ լինի խաղաղության» հասնելու մասին տերտերասենտիմենտալ և հիմար հառաչանքների մեջ։ Խաղաղության այսպիսի վերացական քարոզը և պատերազմը ողբալը ոչ այնքան

միամիտ բարեմաղթություն է, որքան բանվոր դասակարգին հիմարացնելու և այլասերելու ձևերից մեկը, նրան այն կեղծ համոզմունքը ներշնչելով, թե իբր բուրժուազիան հումանիստ է և կապիտալիզմի օրոք խաղաղությունը հնարավոր է։ Վ. Ի. Լենինը գրում էր. «Հաշտության լոզունգը կարելի է դնել կա՛մ հաշտության որոշակի պայմանների կապակցությամբ, կա՛մ առանց որևէ պայմանների, որպես պայքար ոչ թե որոշակի հաշտության համար, այլ ընդհանրապես հաշտության համար (Frieden ohne weiters)։ Պարզ է, որ վերջին դեպքում մեր առջև ծառացած է ոչ միայն ոչ սոցիալիստական լոզունգ, այլև ընդհանրապես միանգամայն բովանդակազուրկ, անիմաստ մի լոզունգ»[1]։

Իմպերիալիստական պատերազմից ծնված իմպերիալիստական անարդարացի «խաղաղությունը» ոտնահարում է ժողովուրդների իրավունքներն ու ազգային ինքնապաշտպանությունը, ամրացնում մի փոքր խումբ պետությունների տիրապետությունը մյուսների նկատմամբ։ Այդ «խաղաղությունն» այնպիսի վիճակ է, երբ մրցակիցների նկատմամբ հաղթանակի հասած իմպերիալիստական տերությունները բռնությամբ իրենց իշխանությունն են հաստատում զավթած տերիտորիաների վրա, դրանց բնակիչներին պարտադրելով ստրկական պայմաններ։ Այդպիսի «խաղաղությունը» բացահայտ և ուղղակի զինված բախումների բացակայության, թվացող տեսանելի վիճակ է, մինչդեռ իրականում իրենց տիրապետությունները պատերազմի հետևանքով կորցրած տերությունները նախապատրաստվում են ազդեցության ոլորտների նոր, բռնի բաժանման։ Այստեղից հետևում է, որ իմպերիալիստական «խաղաղությունը» պատերազմների միջև ընկած ժամանակավոր դադար է և ծնվում է սոցիալական այն նույն հողից, որից իմպերիալիստական պատերազմն է ծնվում։ Այդպիսի «խաղաղության» կոնկրետ դրսևորումն էր առաջին համաշխարհային պատերազմից հետո ծնված Վերսալյան սիստեմը, որը Վ. Ի. Լենինը բնութագրեց որպես բռնի խաղաղություն՝ թալանի շահերի օգտին։

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 21, էջ 366—367։

Փարիզի հաշտության կոնֆերանսի ամբողջ ընթացքն ու Վերսալյան սիստեմի ստեղծումն արտացոլեցին իմպերիալիստական տերությունների միջև գործող հակամարտ հակասությունները։ Վերսալյան պայմանագիրը ներդաշնակվում էր համաշխարհային պատերազմի բնույթի և սոցիալական բովանդակության հետ, հանդիսանալով նրա շարունակությունը։ Վ. Ի. Լենինը գրում էր, որ պատերազմի եզրափակիչ փուլում, հնչող պացիֆիստական հայտարարությունների ու կոչերի նպատակն էր բաժանել իմպերիալիստական ավարը։ «...Տվյալ պատերազմի առնչությամբ,— ասում էր նա,— անհնար է դեմոկրատական հաշտությունը, եթե պրոլետարիատը «զենքը չդարձնի» իր կառավարությունների դեմ»[1]։

Վ. Ի. Լենինը պատերազմի ու խաղաղության բնույթն ըմբռնելու համար պահանջում էր կոնկրետ դիալեկտիկական մոտեցում։ Այն դրույթը, թե «պատերազմը խաղաղ քաղաքականության շարունակությունն է» իսկ «խաղաղությունը՝ պատերազմական քաղաքականության շարունակությունը», տվյալ իմպերիալիստական պատերազմի նկատմամբ կիրառելու դեպքում նշանակում էր, «որ 1914—1917 թվականների իմպերիալիստական պատերազմը 1898—1914 թվականների... իմպերիալիստական քաղաքականության շարունակությունն է... հաշտությունը... կարող է իմպերիալիստական պատերազմը շարունակող իմպերիալիստական հաշտություն լինել...»[2]։

Իրականում Վերսալյան պայմանագիրն արձանագրեց իմպերիալիստական պատերազմի ավարտը և բացահայտեց այն խոր անտագոնիզմը, որ բաժանում էր կապիտալիստական աշխարհը։ Վերսալյան ամբողջ սիստեմը մինչև հիմքը արատավոր էր, պահվում էր հրաբխի վրա և պատրաստ էր պայթելու ամեն րոպե։ Վերսալյան հաշտությունն ավազակների համաձայնագիր էր, թալանչիական հաշտություն, քանի որ այն, Վ. Ի. Լենինի արտահայտությամբ, տասնյակ միլիոնավոր մարդկանց ստրկական վիճակի մեջ դրեց։ Վերսալյան

---

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 23, էջ 239։

[2] Նույն տեղում, էջ 249—250։

պայմանագիրը ձևակերպեց կապիտալիստական աշխարհի վերաբաժանումն հօգուտ հաղթած տերությունների, արձանագրելով պատերազմի ավարտն ու գերմանական բլոկի պարտությունը։ Ժամանակավորապես պարտված Գերմանիան զրկվեց իր տիրույթներից ու ետ շպրտվեց, սակայն հարմար պահ էր որոնում ոտքի կանգնելու և ռևանշ վերցնելու համար։ Այդ պայմանագիրն ապացուցեց, որ «...Անտանտը եղել է և մնում է հենց նույնպիսի արյունոտ և կեղտոտ իմպերիալիստական գիշատիչ, ինչպես և Գերմանիան»[1]։

Արդարացի դեմոկրատական խաղաղությունն ապահովում է ժողովուրդների սուվերեն իրավունքներն ու ազգային անկախությունը, փոխձեռնտու հիման վրա բոլոր պետությունների միջև բարիդրացիական հարաբերությունների նորմալ զարգացումը։ Արդարացի դեմոկրատական խաղաղության պայմաններում ընդլայնվում են պետությունների միջև ծագած բոլոր վիճելի հարցերի և տարաձայնությունների գործարար լուծման հնարավորությունները՝ համագործակցող կողմերի շահերի հաշվառումով։

Համաշխարհային կապիտալիստական տնտեսության համապարփակ սիստեմի և իմպերիալիզմի անբաժան տիրապետության օրոք աշխատավոր լայն զանգվածների խաղաղասեր կամքը նյութական հենարան չուներ։ Այդ իսկ պատճառով, արդարացի դեմոկրատական խաղաղության կարելի էր հասնել միայն իմպերիալիստական տիրակալության դեմ ուղղված դասակարգային հեղափոխական պայքարի միջոցով։ Ինչպես Վ. Ի. Լենինն էր նշում, պրոլետարիատի դասակարգային պայքարի շրջանակներից դուրս խաղաղության համար պայքարը ժողովրդին խաբող բուրժուաների սենտիմենտալ պացիֆիստական դարձվածք է։ Խաղաղության մասին երազանքներն առանց հեղափոխական գործողությունների դիմելու, ոչ այլ ինչ են, եթե միայն երկյուղ՝ պատերազմից, որը ոչ մի ընդհանուր բան չունի սոցիալիզմի հետ։

Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին առաջացած օբյեկտիվ իրադրությունը մարքսիստներից պա-

[1] Վ. Ի. Լենին, *Երկեր, հատ. 29, էջ 618։*

հանջում էր ժամանակի պայմաններին ու խնդիրներին լիովին համապատասխանող ճկուն տակտիկական դիրքորոշում։ Բոլշևիկներն առաջ քաշեցին այն դրույթը, որ դեմոկրատական արդարացի խաղաղության հասնելու միակ հնարավոր ուղին իմպերիալիստական պատերազմը քաղաքացիականի վերածելն է։ Այս լոզունգը հեղափոխական բովանդակություն ուներ։ Դրա մեջ ընդգծվում էր պատերազմող բոլոր երկրների պրոլետարների հայրենասիրական և միջազգային պարտքը։ Իմպերիալիստական պատերազմի դեմ պայքարն առանց բուրժուազիայի տիրապետությունը տապալելու պայքարի, կապիտալի համընդհանուր իշխանության պայմաններում, կլիներ հաշտվողական, հեղափոխական բովանդակությունից զուրկ քաղաքականություն, դատարկ պացիֆիստական պատրանք խաղաղության մասին։

«Պատերազմի ժամանակ հեղափոխությունը քաղաքացիական պատերազմ է, իսկ կառավարությունների պատերազմը քաղաքացիական պատերազմի վերածելը մի կողմից՝ հեշտանում է կառավարությունների ռազմական անհաջողություններով («պարտությամբ»), իսկ, մյուս կողմից՝ անհնարին է իրականում ձգտել այդպիսի վերածման, դրանով իսկ չաջակցելով պարտությանը»[1]։

Վ. Ի. Լենինը գրում էր, որ «ո՛չ հաղթանակ, ո՛չ պարտություն» օպորտունիստական լոզունգների իմաստը «քաղաքացիական հաշտությունն էր», դասակարգային պայքարից հրաժարվելը։ Ով կայուն և դեմոկրատական խաղաղություն է ցանկանում, նա պետք է կողմնակից լինի բուրժուազիայի դեմ քաղաքացիական պատերազմ ծավալելուն։ «Իսկ առանց այդպիսի գործողությունների կոտրած գրոշ չարժեն միլիոնավոր ամենահեղափոխակա՛ն ֆրազները պատերազմի մասին...»[2]։

Աշխատավոր մասսաներին սթափեցնող, նրանց վրա հեղափոխականացնող ազդեցություն թողնող օբյեկտիվ գործոն էին ռազմական իրադարձություններն իրենց ամբողջ

---

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 21, էջ 343։

[2] Նույն տեղում։

բովանդակությամբ։ Իմպերիալիզմը իրեն գործնականորեն մերկացնում էր ժողովրդական մասսաների աչքում։ Պատերազմը ծանրակշիռ փաստարկ էր իմպերիալիզմի դեմ։ Սոցիալ-դեմոկրատների պարտքն էր զարգացնել մասսաների հեղափոխական, հակամիլիտարիստական տրամադրությունները, համախմբել ինտերնացիոնալ պայքարում, պաշտպանել և առաջ մղել պատերազմի և իմպերիալիզմի դեմ ուղղված ամեն մի հեղափոխական ելույթ։ «Պրոլետարիատի սոցիալական հեղափոխությունն է միայն ճանապարհ հարթում դեպի խաղաղությունը և ազգերի ազատությունը»[1]։

Պատերազմի ժամանակ իմպերիալիստական բուրժուազիայի տիրապետության դեմ մղվող պայքարն ուղղված է այդ պատերազմի աղբյուրների և պատճառների դեմ, քանի որ միայն կապիտալիստական հարաբերությունների վերացումով են չքանում պատերազմների սոցիալական պատճառներն ու օբյեկտիվ ազդակները։ Իսկ սոցիալիստական հասարակական հարաբերությունների հաստատումը նշանակում է հակամիլիտարիզմի նյութական բազայի առաջացում։ Իմպերիալիզմի սանձազերծած համաշխարհային պատերազմի ժամանակ ծավալված քաղաքացիական պատերազմն ըստ էության ուղղվում է իմպերիալիստական պատերազմի օբյեկտիվ հիմքերի, դրա դասակարգային կրողների դեմ։ Բուրժուազիայի իշխանությունը պահպանվելու դեպքում պահպանվում են զավթողական անարդարացի պատերազմների աղբյուրները։ Իմպերիալիզմի շղթան պատռելը դրա առանձին օղակներում և պետական իշխանությունը բանվոր դասակարգի ձեռքն անցնելը սկիզբ է դնում մի նոր իրադրության։ Պետականորեն ձևակերպված պրոլետարիատը նյութական ներգործություն է ունենում իմպերիալիզմի վրա։ Բանվորագյուղացիական պետության ստեղծումը հնարավորություն կտար «...ձեռք բերել **հաշտություն**, այն էլ ո՛չ թե իմպերիալիստական հաշտություն, ո՛չ թե գործարք իմպերիալիստական տերությունների միջև՝ կապիտալիստների և իրենց կառավարությունների թալանած ավարը բաժանելու շուրջը, այլ

[1] Վ. Ի. Լենին, *Երկեր, հատ. 21, էջ 441։*

խսկապես հաստատուն և դեմոկրատական հաշտություն, որն անհնարին է առանց պրոլետարական հեղափոխության մի շարք երկրներում»[1]։

* * *

Վ. Ի. Լենինը բազմիցս ընդգծում էր, որ համաշխարհային մասշտաբով, իմպերիալիզմի տիրապետության պայմաններում, պատերազմներն անխուսափելի են և դրանք վերացնելու հնարավորությունը ծագում է միայն կապիտալիզմի տիրապետությունն այս կամ այն երկրում խորտակելուց հետո։ Հիրավի, միամտություն կլիներ հույս դնել խաղաղության վրա, երբ բացակայում էր իմպերիալիզմի ռազմատենչ ձգտումներին հակազդող նյութական գործոնը։

Սոցիալիստական հեղափոխության ճանապարհով կոմունիստական կուսակցությունը Ռուսաստանը դուրս բերեց պատերազմից, այն վերածելով խաղաղության և համամարդկային առաջընթացի հզոր գործոնի։ Աշխարհում առաջին սոցիալիստական պետության երևան գալը արմատական շրջադարձ էր համաշխարհային քաղաքականության մեջ՝ իմպերիալիստական անարդարացի «խաղաղությունից» և դրանից ծնվող պատերազմներից դեպի արդարացի դեմոկրատական խաղաղություն, որի պայմաններում դրվում են պատերազմներն առհավետ հասարակության կյանքից բացառելու հիմքերը։ Խաղաղությունը, որպես սոցիալիզմի իդեալ, հասարակական այն հարաբերությունների անհրաժեշտ արդյունքն է, որոնք ազատ են պատերազմների ու միջպետական երկպառակությունների նյութական ազդակներից և դասակարգային արմատներից։ «Միջազգային ասպարեզում առաջին անգամ երևան եկավ մի պետություն, որն առաջ քաշեց խաղաղության մեծ լոզունգը և սկսեց նոր սկզբունքներ իրագործել ժողովուրդների ու երկրների հարաբերություններում։ Մարդկությունը հուսալի պատվար ստացավ զավթողական պատե-

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 23, էջ 455։

րազմների դեմ, խաղաղության և ժողովուրդների անվտանգության համար իր պայքարում»[1]։

Սովետական պետության ծագման առաջին իսկ օրը նոր իշխանությունն ազդարարեց իր արտաքին քաղաքական գործունեության ծրագիրը։ Նոր հասարակարգի հաստատումը մի երկրում, որտեղ իրենց բախտի վճիռը տերը դարձան աշխատավոր մասսաները, նշանակում էր նոր քաղաքականության, նոր դիվանագիտության ծնունդ։ Խաղաղության մասին Դեկրետում հրապարակվեցին սոցիալիստական հեղափոխությունից ծնված սովետական պետության արտաքին քաղաքական սկզբունքները։ Արդարացի դեմոկրատական հաշտությունն, առանց անեքսիաների, օտար հողեր զավթելու, կոնտրիբուցիաների, սովետական նորածին պետության առաջնահերթ խնդիրը դարձավ։

Սովետական կառավարությունն առաջարկեց հրաժարվել պատերազմից, որպես միջպետական տարաձայնությունների լուծման միջոցի, և պատրաստակամություն հայտնեց բանակցություններ վարել բոլոր երկրների հետ, վերացնել օտար հողեր զավթելուն ուղղված անիրահավասար պայմանագրերը, պաշտպանել ազգային իրավահավասարությունն ու ազգերի ինքնորոշումը։ Նա պատրաստակամություն հայտնեց նաև բարիդրացիական հարաբերությունների մեջ մտնել բոլոր պետությունների հետ և զարգացնել տնտեսական կապերը։ Սովետական պետությունը դիմեց բոլոր երկրների աշխատավոր և շահագործվող մասսաներին՝ ակտիվորեն միջամտել համաշխարհային քաղաքականության հարցերին և համատեղ լուծել պատերազմների սարսափներից և արհավիրքներից մարդկությանը ազատելու խնդիրը։

Այսպիսով, Ռուսաստանում բուրժուազիայի և կալվածատերերի իշխանության տապալումը իմպերիալիստական պատերազմի թեժ պահին պատմության անիվը շուռ տվեց դասակարգային հասարակությունից՝ անդասակարգ կոմունիստական հասարակություն, իրար հերթափոխող, բազմա-

[1] ՍՄԿԿ ծրագիրը, էջ 13։

պիսի պատերազմներ ծնող սոցիալական պայմաններից՝ ժողովուրդների միջև խաղաղության հաստատում։

Կարճ ժամանակամիջոցում դառնալով հզոր միջազգային գործոն, սովետական պետությունը հանդես եկավ որպես ժողովուրդների միջև խաղաղության մունետիկ։ 1923 թվականին Սովետական պետության արտաքին գործերի ժողովրդական կոմիսար Գ. Վ. Չիչերինը գրում էր, որ սովետական քաղաքականության հիմնադրույթները բավականաչափ համոզիչ կերպով ցուցադրված են սովետական դիվանագիտության գործողությունների մեջ։ «Այն ամենուրեք և միշտ պաշտպանում է համընդհանուր խաղաղության շահերը, քանի որ դրանք համաշխարհային աղետների անչափ տառապանքների կանխման կարիքն զգացող բոլոր երկրների աշխատավոր մասսաների շահերն են, և միաժամանակ դրանք նոր հիմքերի վրա Ռուսաստանի ու նրա դաշնակիցների տնտեսական վերականգնման շահերն են։ Սովետական դիվանագիտությունը միշտ և ամեն ինչում պաշտպանում է այն ամենը, ինչ որ նպաստում է համընդհանուր խաղաղությանը, սպառազինությունների և հարկային բեռի կրճատմանը, համաշխարհային անտագոնիզմների ու բախումների կարգավորմանը, բոլոր երկրների աշխատավոր մասսաների հրատապ շահերի բավարարմանը... ձգտում բոլոր պետությունների հետ զարգացնել խաղաղ, նորմալ, բարեկամական հարաբերություններ՝ հանուն համընդհանուր խաղաղության, տնտեսական զարգացման շահերի»[1]։

Այսպիսով, առաջին համաշխարհային պատերազմից հետո պատմական իրադրությունը որոշակիորեն փոխվեց։ Ի դեմս Սովետական Միության համաշխարհային պրոլետարիատը ձեռք բերեց հակապատերազմական հզոր նյութական ուժ։ Իմպերիալիզմի և ռազմամոլության դեմ մղվող պայքարի պայմաններն ավելի նպաստավոր դարձան։

Սովետական պետությունը երկու համաշխարհային պատերազմների միջև ընկած ժամանակաշրջանում անդուլ պայքար ծավալեց համամարդկային նոր աղետը կանխելու

---

[1] Г. В. Чичерин, Статьи и речи, М., 1961, стр. 243—244.

ուղղությամբ։ Նրա հետ միասին խաղաղության համար մարտնչում էին կապիտալիստական երկրների կոմունիստական կուսակցությունները, դեմոկրատական ուժերը։ Կոմունիստական երրորդ ինտերնացիոնալը լայն հակաֆաշիստական ճակատ ստեղծելու ուղղությամբ եռանդուն գործունեություն ծավալեց։ Այդ պայմաններում խաղաղության համար մղվող պայքարն օրգանապես միահյուսվում էր ֆաշիզմի դեմ մղվող պայքարի հետ, որովհետև վերջինս ամենից լրիվ և ամբողջական կերպով էր իր մեջ մարմնավորում պատերազմը։ Ֆաշիզմն իմպերիալիզմի ավազակային ջոկատն էր, ֆինանսական կապիտալի ամենառեակցիոն, շովինիստական տարրերի բացահայտ տեռորիստական դիկտատուրան։ Նրա մեջ մարմնավորվում էր անզուսպ շովինիզմի և կատաղի ռևանշիզմի թունավոր խառնուրդը, որն այն դարձնում էր քաղաքակրթության գոյությանն սպառնացող ամենաագրեսիվ քաղաքական ռեժիմը։

Հիտլերիզմի պետական մեքենայի բոլոր մասերը ծառայում էին համաշխարհային տիրապետության հասնելու, ժողովուրդներին ստրկացնելու նպատակին։ Ֆաշիզմն իմպերիալիզմի ագրեսիվության վառ դրսևորումն էր։

Կոմունիստական երրորդ ինտերնացիոնալը մեծ նշանակություն էր տալիս աշխատավորների միասնությանը։ Առաջ քաշվեց հակաֆաշիստական միասնական ժողովրդական ճակատներ ստեղծելու գաղափարը։ «Պրոլետարիատի գործողությունների միասնությունն ազգային և միջազգային մասշտաբով՝ ահա այն հզոր զենքը, որ բանվոր դասակարգին ընդունակ է դարձնում ոչ միայն հաջողությամբ պաշտպանվելու, այլև հաջողությամբ հակահարձակման անցնելու ֆաշիզմի դեմ»[1]։

Սակայն որոշ կապիտալիստական երկրներում կազմակերպված ժողովրդական ճակատները սակավազոր դուրս եկան և անկարողություն ցուցաբերեցին խաղաղության համար մղվող ընդհանուր պայքարում։ Դասակարգային շահերի հակասականությունը, աջ սոցիալիստների համաձայնողական,

---

[1] Г. Димитров, Избранные произведения, т. 1, стр. 394.

հակակոմունիստական վարքագիծը վիժեցրին այդ ճակատների աշխատանքը, ինչպես դա կատարվեց Ֆրանսիայում։

Պետք է նշել, որ սովետական պետության ստեղծումից հետո մոնոպոլիստական բուրժուազիան բազմապատկեց իր ջանքերը կապիտալիստական երկրների պրոլետարներին բազմապիսի միջոցներով պառակտելու և ապակողմնորոշելու համար։ Բանվորական շարժման շահերի պաշտպանության դիրքերում հետևողականորեն կանգնած բոլոր կազմակերպությունների նկատմամբ կիրառվող կատաղի հալածանքները նա զուգորդում էր բանվորների այս կամ այն շերտերը կաշառելու և նացիոնալիստական ու շովինիստական գաղափարների պրոպագանդումն ուժեղացնելու հետ։ Այդ կուրսն առանձնապես ակնհայտորեն դրսևորվեց Գերմանիայում, որտեղ ֆաշիստական ճիվաղները, ֆինանսական և արդյունաբերական կապիտալի խոշոր մագնատների անմիջական աջակցությամբ, օգտվելով ձախ ուժերի միասնական ճակատի բացակայությունից և սոցիալ-դեմոկրատական կուսակցության անատամ, անվճռական վարքագծից, զավթեցին իշխանությունը։ Ալբերտ Նորդենը հետևյալ կերպ է գնահատում սոցիալ-դեմոկրատների քաղաքական վարքագիծը Գերմանիայում. «Եթե սոցիալ-դեմոկրատիայի ղեկավար շրջաններում հավատում էին մոնոպոլիստական կապիտալը խաղաղասեր դարձնելու հնարավորությանը, ապա նրանք աչքաթող էին անում այն, որ հենց այդ նույն մոնոպոլիստական կապիտալը, որը դրանից տասը տարի առաջ սոցիալ-դեմոկրատիան դիտում էր որպես պաշտպանական պատնեշ կոմունիստական վտանգի դեմ և դրա համար էլ այն համարում էր իր համար ընդունելի, այժմ ամենևին էլ ոչ պաշտպանական, այլ լայն հարձակողական նպատակներ էր հետապնդում, որոնց հասնելու համար պետք էր ոչ թե սոցիալ-դեմոկրատիա, այլ երկրի ներսում ամեն մի առաջընթացն ու բոլոր դեմոկրատական տարրերը ոչնչացնող և արտաքին քաղաքականության մեջ անզուսպ շովինիզմ դրսևորող ագրեսիվ կուսակցություն»[1]։

---

[1] **А. Норден**, Уроки германской истории, М., 1948, стр. 104—105.

Նորդենը գտնում է, որ Գերմանական կոմունիստները նույնպես այդ ժամանակ չհասկացան փոփոխված իրադրությունը։ Դեմոկրատիայի դեմ ֆաշիզմի սկսած կատաղի հարձակման շրջանում ուտոպիա էր ֆաշիզմի վտանգին որպես ալտերնատիվ պրոլետարիատի դիկտատուրայի և սոցիալիզմի լոզունգն առաջադրելը, քանի որ պրոլետարիատի մեծամասնությունը դեռևս նախապատրաստված չէր այդ լոզունգն իրականացնելուն։ Խնդիրը դեմոկրատիան ապահովելու համար բոլոր ուժերը համախմբելու մեջ էր, որն իր անկատարյալ վիճակում անգամ, այնուամենայնիվ, որոշակի շրջանակներում բանվորներին ապահովում էր լեգալ գործունեություն, միավորումների, ժողովների ու մամուլի ազատություն։ Մինչդեռ իրենց ամենօրյա պրոպագանդայի ծանրության կենտրոնը տեղափոխելով վերջնական նպատակների վրա, գերմանական կոմունիստները ոչ ճկուն, դոգմատիկ դիրք գրավեցին, որով արգելակվեց սոցիալ-դեմոկրատների հետ համատեղ գործողություններ ծավալելը, մի բան, որին ձգտում էին։

Սոցիալ-դեմոկրատական լիդերների վարքագծից գրգռված նրանք հարձակում սկսեցին սոցիալ-դեմոկրատիայի դեմ ընդհանրապես, շատ ուշ հասկանալով, որ սոցիալ-դեմոկրատական մասսան նրա պարագլուխների հետ չպետք է նույնացնել։ Գերմանական կոմունիստները չփորձեցին բոլոր միջոցները, ձախ ուժերի հետ միասնական ճակատ ստեղծելու համար։ Այս բոլորը ցույց են տալիս սուբյեկտիվ գործոնի աճող դերը ամենատարբեր պարագաներում։ Վ. Ի. Լենինը գրում էր. «Հեղափոխական ֆրազը հեղափոխական լոզունգների կրկնումն է՝ առանց հաշվի առնելու տեղի ունեցող իրադարձությունների տվյալ բեկման, իրերի տվյալ դրության օբյեկտիվ հանգամանքները։ Հիանալի, հրապուրիչ, արբեցուցիչ լոզունգներ,— բայց նրանց տակ հող չկա,— ահա հեղափոխական ֆրազի էությունը»[1]։

Ֆաշիզմի դեմ ծավալված պայքարի հաջողությունը կախված էր ոչ միայն մյուս երկրների բանվորների, այլև հենց գերմանական պրոլետարիատի գործողությունների միասնու-

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 27, էջ 1։

թյունից։ Իսկ դրան հասնելու համար անհրաժեշտ էր երկրի ներսում միասնական վարքագիծ մշակել բոլոր հակաֆաշիստական, դեմոկրատական ուժերի համար։ Քանի որ այդ չկատարվեց, գերմանական պրոլետարիատի մեծ մասը հետագայում ռասիստական անզուսպ պրոպագանդայի զոհը դարձավ և թնդանոթի մսի վերածվեց հիտլերյան ռայխի միլիտարիստական մեքենայի համար։

Համաշխարհային իրադարձությունների ընթացքի վրա գործուն ազդեցություն չունեցան նաև աշխարհի առաջադեմ մտավորականության ներկայացուցիչների հակապատերազմական ժողովները։

Ներիմպերիալիստական հակասությունները հարթեցին իրենց ճանապարհը, որոշելով իրադարձությունների ընթացքն ու բնույթը։ Կապիտալիզմի տնտեսական-քաղաքական ուժերը զգալիորեն գերազանցում էին հակապատերազմական ուժերին։ Պատմական այդ շատ բարդ պայմաններում, երբ պատերազմն անխուսափելիորեն վրա էր հասնում, կապիտալիստական շրջապատման մեջ գտնվող սովետական պետությունն իրականացնում էր դինամիկ, հեռատես և ճկուն արտաքին քաղաքականություն, ղեկավարվելով հեղափոխության նվաճումները պաշտպանելու շահերով։ Եվ եթե Սովետական Միությունը առաջ քաշեց կոլեկտիվ անվտանգության գաղափարը և երկար ժամանակ պայքարում էր այն իրականացնելու համար, դա բնավ չէր նշանակում, թե նա ձգտում էր դաշինքի մեջ մտնել մի խումբ կապիտալիստական երկրների հետ՝ մյուս կոալիցիայի դեմ պայքարելու համար, մեկի դիրքերն ամրապնդելու նպատակով։ Անհրաժեշտ էր ստեղծել հակաֆաշիստական բլոկ, որին եթե նույնիսկ չհաջողվեր կանխել պատերազմը, ապա անպայման դրա ծագումը կհետաձգվեր։ Ժամանակ կշահվեր, որը սովետական պետությանը հնարավորություն կտար ամրապնդել իր պաշտպանունակությունը և ավելի լավ նախապատրաստվել իրադարձությունների ընթացքին։

Այսպիսով, երկու համաշխարհային պատերազմները ծագեցին անխուսափելիորեն որպես մոնոպոլիստական կապի-

տալիզմի օրինաչափությունների կոնկրետ դրսևորումներ։ Դրանց բունկմանը որոշակիորեն նպաստեցին միջազգային բանվոր դասակարգի և հակաիմպերիալիստական բոլոր ուժերի մասնատվածությունն ու անջատվածությունը։

## 2. Սուբյեկտիվ գործոնի հարաճուն դերը նոր համաշխարհային պատերազմը կանխելու գործում

Հասարակական-քաղաքական ուժերի գործողությունների բնույթն ու հնարավոր հետևանքները նախանշելու համար անհրաժեշտ է հաշվի առնել օբյեկտիվ իրադրությունը։ Օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոնները փոխկապակցված են, փոխպայմանավորված, նրանցից ոչ մեկի նշանակությունը չպետք է գերագնահատել ի հաշիվ մյուսի թերագնահատման։ Եվ, վերջապես, այդ գործոնների դերը կարելի է բացահայտել միայն կոնկրետ պատմական պայմանների մեջ։

Իմպերիալիզմի բուն էությունը և մոնոպոլիստական բուրժուազիայի գործնական վարքագծի օբյեկտիվ գնահատականը ցույց են տալիս, որ ներկայումս դեռևս գոյություն ունի երրորդ համաշխարհային պատերազմի սանձազերծման ռեալ հնարավորություն։ Այն բխում է կապիտալիստական արտադրեղանակի օրինաչափություններից։ Բայց միևնույն երևույթն անգամ, որ սկզբում որպես հնարավորություն է հանդես գալիս, տարբեր պայմաններում իրականության վերածվելու ոչ միատեսակ շանսեր ունի։

Հասարակական կյանքը բազմերանգ ու հակասական է և ամեն մի երևույթի ծագման նախադրյալները կոնկրետ պայմաններում են առաջանում։ Երրորդ համաշխարհային պատերազմի հնարավորությունը միակ գործող տենդենցը չէ ժամանակակից աշխարհում։ Այն կլիներ գերիշխող և անխափան, եթե երկու սոցիալական սիստեմներն էլ ագրեսիվ բնույթ ունենային։ Իմպերիալիզմի անբաժան տիրապետության պայմաններում կապիտալիզմը տրոհվում էր երկու ագրեսիվ ռազմական կոալիցիաների, որոնք բռնում էին մեկը մյուսի կոկորդից։ Մյուս կողմից՝ պատերազմի մեջ չշահագրգռված հասարակական-քաղաքական ուժերը թույլ էին, ոչ բավականա-

չափ կազմակերպված և նրանց ճնշումը չէր կարող էական դեր խաղալ ագրեսորներին զսպելու գործում։

Ներկայումս իրադրությունն արմատապես փոխվել է։ Ագրեսիվ իմպերիալիզմի դեմ կանգնած է խաղաղասեր սոցիալիզմը։ Աշխարհը երկու իրարամերժ սիստեմների է բաժանվել։ Եթե իմպերիալիզմը շարունակում է ռազմական վտանգ ծնել, ապա սոցիալիզմին խորթ է պատերազմը։ Սոցիալիզմի ու կապիտալիզմի իրար բացասող տնտեսական հիմքերըն ու քաղաքական կոնցեպցիաները հակադիր տենդենցներ են առաջացնում համաշխարհային քաղաքականության մեջ։ Կապիտալիստական արտադրաեղանակի օրինաչափությունները կյանքի են կոչում նոր համաշխարհային պատերազմի ռեալ սպառնալիք, իսկ սոցիալիստական էկոնոմիկայի օրինաչափությունները՝ խաղաղությունը պահպանելու և պատերազմը կանխելու ռեալ հնարավորություն։ Այդ երկու հակասական տենդենցների միջև ծավալվող պայքարը ժամանակակից դարաշրջանի բովանդակության էական տարրերից մեկն է։ Երկու հակադիր ռազմաքաղաքական կոալիցիաների առկայությունն այդ տենդենցների ակնառու դրսևորումն է։

Այսպիսով, ժամանակակից միջազգային իրադրության մեջ երկու իրարամերժ ռեալ հնարավորություններ են ծագել՝ նոր պատերազմի բռնկման և համընդհանուր խաղաղությունը պահպանելու հնարավորություն։ Թվյալ դեպքում, ո՞ր հնարավորությունը իրականության կվերածվի, կախված է կոնկրետ պայմաններից, օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոններից։

* * *

Պատերազմի անխուսափելիության վերաբերյալ դրույթը մշակվել և ճիշտ էր արտացոլում իրերի վիճակին այն ժամանակաշրջանում, երբ իմպերիալիզմը պահպանում էր իր անբաժան իշխանությունը, և խաղաղությամբ շահագրգռված սոցիալական ուժերը վատ էին կազմակերպված, թույլ էին, նյութական անհրաժեշտ միջոցներ չունեին ագրեսորներին զսպելու համար։

Քանի դեռ պահպանվում է իմպերիալիզմը, կգործի նաև միջպետական ռազմական ընդհարումների տենդենցը։ Սակայն պատերազմը տնտեսական հիմքերի անխուսափելի ինքնածնունդը չէ։ Պատերազմ լինելու, թե չլինելու հարցում էական դեր են խաղում դասակարգային, հասարակական քաղաքական ուժերի հարաբերակցությունը, մարդկանց կազմակերպվածությունն ու գիտակցական կամքը։ Որոշակի պայմաններում այդ ուժերի հակապատերազմական պայքարը կարող է վճռել իրադարձությունների ընթացքը։

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո լուրջ տեղաշարժեր կատարվեցին դասակարգային և սոցիալական ուժերի հարաբերակցության մեջ։ Սոցիալիզմի վերածումը համաշխարհային սիստեմի նշանակալիորեն ընդլայնեց հակամիլիտարիստական պայքարի նյութական և բարոյական բազան։ Ի դեմս սոցիալիստական սիստեմի խաղաղասեր ուժերն ունեն անհրաժեշտ միջոցներ ագրեսորներին հակահարված տալու համար։ Միաժամանակ սոցիալիզմի ամբողջ սիստեմը համաշխարհային հեղափոխական շարժման հենարանն ու բազան է և, բնականաբար, համամարդկային առաջընթացի և համընդհանուր խաղաղության ուղղությամբ համաշխարհային պատմության ընթացքի վրա նրա ներգործությունն անկասելիորեն աճում է։ Հենց սոցիալիզմի վրա է ընկած իմպերիալիզմի դեմ, խաղաղության համար մղվող պայքարի գլխավոր ծանրությունը, նա է իր վրա վերցնում և ետ մղում միջազգային ռեակցիայի գլխավոր հարվածները։

Սոցիալիստական պետական կարգի էությունն ու ներքին կառուցվածքը սոցիալիզմի ամբողջ սիստեմը դարձնում են երկրագնդի բոլոր խաղաղասեր ուժերի բնական ձգողական կենտրոնը։ Նրա արտաքին քաղաքականության սկզբունքները ներդաշնակում են աշխատավոր մարդկության շահերի հետ, գտնում միջազգային ճանաչում և պաշտպանություն։ Սոցիալիզմի բնությանն օտար է մահաբեր զենքը։ Աշխարհի սոցիալիստական մասում չկան պատերազմի մեջ շահագրգռված դասակարգեր և հասարակական խմբեր։ Սոցիալիզմն իր իդեալները տարածելու բռնի ֆիզիկական միջոցների կարիք չի զգում։ «Հին կարգերի նկատմամբ ունեցած գերազանցությու-

նը հասարակության կազմակերպման, պետական կարգի, էկոնոմիկայի, կենսամակարդակի և հոգևոր կուլտուրայի վերելքի ասպարեզում—ահա նրա զենքը»[1]։

Սակայն այնպիսի պայմաններում, երբ պատերազմի կրողը՝ իմպերիալիզմը հենվում է բռնության վրա, հրով ու սրով տարածելով ու պահպանելով իր իշխանությունը, սոցիալիզմը հարկադրված է խաղաղության գործին տրամադրելու իր նյութական հզորությունը՝ իմպերիալիստների ռազմական ավանտյուրաներից ամբողջ մարդկությանը պաշտպանող վահան դառնալու։ Խաղաղասիրական կոչերով ու լոզունգներով հնարավոր չէ կանգնեցնել ագրեսորին, եթե չկա բավականաչափ հզոր նյութական բազա։ Իսկ քանի դեռ պահպանում է իր գոյությունն այն դասակարգը, որի գործողություններն ամենուրեք խարսխվում են բռնության վրա և որը անդադար կատարելագործում է փոխադարձ բնաջնջման միջոցները, նրան պետք է հակադրվի նյութական ուժ։ Մոնոպոլիստական բուրժուազիայից բխում է համաշխարհային պատերազմներ սանձազերծելու գործողություն, սոցիալիզմից, բանվոր դասակարգից՝ հակապատերազմական, խաղաղասիրական գործողություն։ Բայց նյութական ուժը ետ է շպրտվում նյութական ուժով։ «Իդեաներն ընդհանրապես ոչինչ չեն կարող իրականացնել: Իդեաներն իրականացնելու համար մարդիկ են պահանջվում, որոնք պետք է պրակտիկ ուժ գործադրեն»[2]։

Որպես պետությունների սիստեմ, որտեղ մեկընդմիշտ արմատախիլ են արված պատերազմի դասակարգային և ազգային պատճառները, սոցիալիզմը կոչված է սանձազերծելու մասնավոր սեփականատիրական շահերով ղեկավարվող դասակարգային ուժերի ռազմատենչ ձգտումները։

Ժամանակակից պայմաններում սոցիալիզմի նյութական հնարավորությունները համընդհանուր խաղաղության համար մղվող պայքարում էականորեն աճել են, և քանի որ սոցիալիզմն ապահովում է էկոնոմիկայի ու աշխատանքի արտադրողականության անընդհատ վերելքը՝ գիտատեխնիկական

---

[1] ՍՄԿԿ ծրագիրը, էջ 68։

[2] К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 2, стр. 132.

առաջնթացի հիման վրա, այդ հնարավորությունները անսահման են։

Սոցիալիզմի գերազանցությունը կապիտալիզմի նկատմամբ ունի և՛ քանակական, և՛ որակական ասպեկտներ։

Եթե նախապատերազմյան ժամանակաշրջանում Սովետական Միությանը բաժին էր ընկնում հողագնդի բնակչության 9, տերիտորիայի 18 և համաշխարհային արդյունաբերական արտադրանքի 10 տոկոսը, ապա ներկայումս համաշխարհային սոցիալիստական սիստեմի տեսակարար կշիռը կազմում է աշխարհի բնակչության 35,3, տերիտորիայի 26,1 տոկոսը։ Դեռ 1954 թվականին Ջոն Ֆոստեր Դալեսը գրում էր. «... Անհնարին է մեր պոտենցիալ հակառակորդին հակադրել համար ուժեր հնարավոր բոլոր ուղղություններով, ընելով մարդը մարդու, հրանոթը հրանոթի, տանկը տանկի հարաբերությունից։ Եթե մենք փորձենք իրագործել այդ, մենք կպարտենք լարվածությունից»[1]։

1966 թվականին ՍՍՀՄ-ի արդյունաբերական արտադրանքը, 1913 թվականի համեմատությամբ, աճեց ավելի քան 66, իսկ ԱՄՆ-ինը՝ 7,4 անգամ։ Նույն տարում ՍՍՀՄ-ի արդյունաբերական արտադրանքի ծավալը հասավ ԱՄՆ-ի մակարդակի մոտ երկուերրորդին։ 1918—1966 թվականներն ընկած ժամանակաշրջանում ՍՍՀՄ-ում արդյունաբերական զարգացման տարեկան միջին տեմպերը կազմեցին 10, իսկ ԱՄՆ-ինը՝ 3,4 տոկոս։ Արդեն 1966 թվականին սոցիալիզմի երկրների բաժինը համաշխարհային արդյունաբերական արտադրանքի մեջ կազմեց 38 տոկոս։ Միաժամանակ, սոցիալիստական երկրներին բաժին է ընկնում երկաթահանքի հետախուզված համաշխարհային պաշարների կեսից ավելին, ածխի և բոքսիտների 40 տոկոսը, մանգանի հանքի երեք քառորդը, փայտանյութի մոտավորապես 40 տոկոսը, քարածխի հետախուզված պաշարներով ՍՍՀՄ-ը ԱՄՆ-ին գերազանցում է 1,5, երկաթահանքով՝ 9, անտառանյութի ռեսուրսներով՝ 3, հիդրոէներգետիկ պոտենցիալով՝ համարյա 4 անգամ։

---

[1] Տե՛ս «Военная политика и национальная безопасность», М., 1958, էջ 20։

Սոցիալիզմի նյութական հնարավորություններն ակնբախորեն դրսևորվում են Տնտեսական փոխօգնության խորհրդի մեջ մտնող սոցիալիստական պետությունների և Եվրոպական տնտեսական համագործակցության («ընդհանուր շուկա») մեջ մտնող կապիտալիստական երկրների արտադրության աճման դինամիկան համեմատելիս։ Այսպես, 1951—1961 թվականների ընթացքում Տնտեսական փոխօգնության խորհրդի մեջ մտնող երկրներն արդյունաբերական արտադրության աճման տեմպերով 1,4 անգամ առաջ անցան «ընդհանուր շուկայի» մեջ մտնող երկրներից[1]։

Ամբողջովին վերցրած, համաշխարհային սոցիալիստական սիստեմն արդյունաբերական արտադրանքի տեսակետից 1,4 անգամ ետ է մնում իմպերիալիստական ճամբարից։ Սակայն ռազմա-տնտեսական հնարավորությունների չափանիշ չեն կարող ծառայել միայն քանակական ցուցանիշները։ Սոցիալիստական արտադրության եղանակի որակական տարբերությունը կապիտալիստականից, նրա պլանային բնույթը հնարավորություն են տալիս անհրաժեշտության դեպքում մոբիլիզացնելու բավականաչափ նյութական միջոցներ՝ ագրեսորին կործանիչ հակահարված հասցնելու համար։

Ուշադրության արժանի են հետևյալ փաստերը։ 1942—1944 թվականներին ՍՍՀՄ-ում տանկերի տարեկան միջին արտադրությունը 2,5 անգամ, հրետանունը՝ երեք անգամ, ականանետներինը՝ վեց անգամ, հրացաններինը՝ երկու անգամ բարձր էր քան ԱՄՆ-ում, իսկ գնդացիրներ ու փամփուշտներ հավասար քանակությամբ էր արտադրվում։ Միայն ինքնաթիռների արտադրության քանակով էր ԱՄՆ-ն առաջ անցել ՍՍՀՄ-ից։ Բնորոշ է, որ Սովետական Միությունում ռազմական արտադրանքի այդպիսի բարձր մակարդակ ապահովվեց այնպիսի պայմաններում, երբ արդյունաբերական արտադրանքի հիմնական տեսակների թողարկմամբ նա զգալիորեն ետ էր մնում ԱՄՆ-ից։ Պետք է ավելացնել նաև այն, որ 1942 թվականի կեսերին ֆաշիստական Գերմանիային հաջողվեց

---

[1] Տե՛ս Соревнование двух систем. (Справочник). М., 1964, էջ 3—14։

ժամանակավորապես օկուպացնել Սովետական Միության տերիտորիայի արևմտյան մասը, որտեղ նախապատերազմյան տարիներին արդյունահանվում էր երկրի քարածխի 63, չուգունի ձուլման 68, պողպատի ձուլման 58, ալյումինի՝ 60 տոկոսը։ Այստեղ արտադրվում էր երկրի արդյունաբերական արտադրանքի 33 տոկոսը։ 1941 թվականի հունիսից մինչև նոյեմբերն ընկած ժամանակամիջոցում ՍՍՀՄ-ի արդյունաբերության համախառն արտադրանքը նվազեց 2,1 անգամ։ Հենց էկոնոմիկայի սոցիալիստական բնույթը հնարավորություն տվեց երկրի ժողովրդական տնտեսությունն արագորեն ռազմական ռելսերի վրա դնել։ Արդեն 1942 թվականի սկզբներին երկրի արևելյան շրջաններում ռազմական արտադրանքի թողարկումը հասավ արտադրության այն մակարդակին, որ գոյություն ուներ պատերազմից առաջ Սովետական Միության ամբողջ տերիտորիայում[1]։

Այս փաստերը ցույց են տալիս, որ երկրի արտադրական հզորությունների մասին միայն չոր տվյալները չափանիշ չեն, որի օգնությամբ հնարավոր լիներ որոշել ռազմա-տնտեսական հզորությունը պատերազմի տարիներին։ Սոցիալիստական բազիսի վրա խարսխվող պետական կարգը, հասարակության անդամների բարոյա-քաղաքական միասնությունը, պատերազմի տարիներին նրանց հայրենասիրական անխոնջ աշխատանքը վկայում են տնտեսական, քաղաքական և ռազմական տեսակետներից սոցիալիզմի չգերազանցված կենսունակության մասին։ Բուրժուական մտածողները փորձում են հասկանալ այս օրինաչափությունը. «... եթե պետությունների ռազմա-տնտեսական պոտենցիալները վերլուծելու ժամանակ բավարարվել միայն էներգիա, պողպատ, ավտոմոբիլներ և այլն արտադրելու նրանց կարողությունների համեմատությամբ, ապա այդպիսի վերլուծությունը լռությամբ կհասկացվեր, որ ռեսուրսների օգտագործման եղանակն ու բնույթը պատերազմի ժամանակ միատեսակ են բոլոր պետությունների մոտ։ Իսկ դա բացահայտ սխալ կլիներ»[2]։

---

[1] *Տե՛ս* **Н. Вознесенский,** Военная экономика СССР в период Отечественной войны, М., 1948, *էջ* 42—43, 173:

[2] **К. Кнорр,** Военный потенциал государств, стр. 262.

Հետպատերազմյան ժամանակաշրջանում բոլոր սոցիալիստական երկրների աճման արագ և կայուն տեմպերը, անընդհատ տնտեսական վերելքը, գիտության ու տեխնիկայի բնագավառում նշանակալի նվաճումները որոշակիորեն ամրապնդեցին համաշխարհային սոցիալիզմի տնտեսական-քաղաքական դիրքերը, դրանով խաղաղասեր ուժերի տրամադրության տակ դնելով պատերազմի իմպերիալիստական հրձիգներին զսպելու հզոր նյութական միջոցներ։ Եթե երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին Սովետական Միությունը ցուցադրեց աննախադեպ մոբիլիզացիոն կարողություններ և առաջացած խիստ ծանր պայմաններում կարողացավ իր դասակարգային թշնամուն հակադրել ռազմական մեծ հզորություն, ապա սոցիալիստական պետությունների էկոնոմիկայի զարգացման ներկա մակարդակի պայմաններում սոցիալիզմը ներկայացնում է անխոցելի հակապատերազմական պատնեշ։

Իհարկե, ջերմամիջուկային զենքը երևան գալուց հետո փոխվել են իրավիճակն ու պատերազմելու եղանակը։ Սակայն զենքի տեսակները չեն կարող խախտել սոցիալիզմի մոբիլիզացիոն կարողություններն ու նյութական հնարավորությունները որոշող չափանիշները։

Անհրաժեշտ է ընդգծել, որ ջերմամիջուկային զենքի առկայությունը չի թեթևացնում իմպերիալիզմի վիճակը։ Ըստ էության այդ զենքն ուղղված է հենց իմպերիալիզմի դեմ։ Եթե նախկինում, սպառազինությունների սովորական տեսակների պայմաններում իմպերիալիստական ռազմամոլները քիչ թե շատ ազատ էին վարվում զենքի հետ, ապա արդի պայմաններում համընդհանուր հատուցման հեռանկարը նրանց պարտավորեցնում է զգաստորեն նայել իրադրությանը, վերագնահատել արժեքները։ Միջուկային հրդեհը մոխրի կվերածի և՛ բիզնեսմեններին և՛ բիզնեսը։ Այդ հնարավորությունը մոնոպոլիստական բուրժուազիան չի կարող անտեսել։ Այս տեսակետից հատկանշական են Սցիլարդի խոսքերը. «Միացյալ Նահանգները վերջին 30 տարիների ընթացքում աշխարհում առաջատար դիրք էին գրավում ծանր սպառազինության արտադրության ասպարեզում, ուրիշ ամեն մի երկրի

նկատմամբ ունեցած գերազանցության շնորհիվ։ Ատոմային ռումբը վերջ է դնում ԱՄՆ-ի այդպիսի դրությանը[1]»։

Պատահական չէ, որ ԱՄՆ-ում հաճախ են ձայներ լսվում զենքի սովորական տեսակներին վերադառնալու մասին։ Ջերմամիջուկային զենքը փակուղու առաջ է կանգնեցրել նրա ոգեշնչողներին և մունետիկներին։ Օգտագործելով այն միջազգային հարաբերություններում որպես շանտաժի և թելադրանքի միջոց, իմպերիալիստները չեն համարձակվում գործադրել այն։

Հայտնի է, որ առաջինը ԱՄՆ-ը ստեղծեց ատոմային ռումբ։ Սակայն դրա նկատմամբ ունեցած ժամանակավոր մենաշնորհի պայմաններում անգամ, իմպերիալիստների հույսերը չպսակվեցին։ Պատմությունը ցույց տվեց, որ ամենակատարյալ ու հզոր զենքն անգամ անկարող է փոխելու հասարակական զարգացման օրինաչափությունները։ Կործանարար կույր ուժերը չեն կարող իշխել սոցիալական կյանքի օրենքներին, չեն կարող խախտել ստեղծագործելու, առաջադիմելու և բարգավաճելու մարդկության բնական իրավունքը։ Իրադարձությունների տրամաբանությունն ու համայն քաղաքակիրթ մարդկության կենսական շահերը սոցիալիզմից պահանջում էին իմպերիալիստներին զրկելու ռազմական որևէ առավելությունից։ Սովետական Միությունում ատոմային զենքի ստեղծումը մեծագույն բարիք էր առաջադեմ մարդկության համար այն իմաստով, որ միջազգային իմպերիալիզմի ռազմատենչ շրջանների վրա զսպողական ներգործություն ունեցավ։ Գ. Կիսինգերը խոստովանում է.«...Միացյալ Նահանգներին ոչ պակաս ավերիչ հարվածներ հասցնելու Սովետական Միության ձեռք բերած կարողության շնորհիվ համընդհանուր պատերազմից խուսափելու մեր ձգտումն ավելի ու ավելի է ուժեղանում[2]»։ Նա գտնում է, որ ջերմամիջուկային պատերազմի հետևանքները կստիպեին տատանվել անգամ նույնիսկ այնպիսի մի ավանտյուրիստի, ինչպիսին Հիտլերն էր։

---

[1] Տե՛ս Р. Лепп, Атомы и люди, էջ 92:

[2] Г. Киссингер, Ядерное оружие и внешняя политика, стр. 59.

Փաստերը ցույց տվեցին, որ ատոմային զենքի նկատմամբ ունեցած ԱՄՆ-ի մենաշնորհի պայմաններում ժողովուրդների հակաիմպերիալիստական հեղափոխական շարժումների թափը բնավ չթուլացավ։ Միջազգային իմպերիալիզմի՝ ազատագրական շարժումները բռնությամբ կասեցնելու բոլոր ճիգերն ապարդյուն անցան։ Պատմության օբյեկտիվ օրենքներն անխուսափելիորեն հարթեցին և հարթում են իրենց ճանապարհը։ Ագրեսիվ իմպերիալիզմն իր արտոնությունները պահպանելու և տիրապետությունները փրկելու համար կարող էր օգտագործել ռազմական հզորությունը, եթե նրան չըկանգնեցներ խաղաղասեր սոցիալիզմը, որն ի դեմս Սովետական Միության, զրկեց ԱՄՆ-ին ամեն մի առավելությունից՝ պատերազմի նյութական միջոցների բնագավառում։

Մարքսիզմն ապացուցում, իսկ պատմությունը հաստատում է, որ համաշխարհային պատերազմներն անխուսափելի են դառնում այն դեպքում, երբ երկու կողմերն էլ ագրեսիվ են։ Տրամաբանական է, որ երկկողմանի միլիտարիստական տենդենցներն անկասելիորեն պատերազմի են հասցնում, նույնիսկ եթե երկու կողմերն էլ օժտված են գերհզոր կործանարար զենքի տեսակներով։ Կարելի է ենթադրել, որ եթե առաջին և երկրորդ համաշխարհային պատերազմներին նախորդած ժամանակաշրջաններում հակադիր իմպերիալիստական խմբավորումների մեջ մտնող տերություններն իրենց տրամադրության տակ ունենային միջուկային զենք, պատերազմի բռնկման հնարավորությունը չէր թուլանա և մարդկությունը կներքաշվեր համաշխարհային բնաջնջող գոտեմարտի հորձանուտը։ Մարդկային ցեղը կարող էր դառնալ միջիմպերիալիստական անտագոնիզմների, հարստանալու կույր մոլուցքով համակված կապիտալի սակավաթիվ արքաների չարանենգ դիտավորությունների զոհը։

Սոցիալիզմի նյութական կազմավորումն այնպիսի շրջադարձ էր միջազգային քաղաքականության մեջ, որի նշանակությունը գնալով աճում է։ «...Պատերազմի վտանգը շատ անգամ ավելի ուժեղ կլիներ, քան այսօր, և կարող է մարդկությունը ներքաշվեր արդեն ռազմական աղետի մեջ, եթե խաղաղությունը պաշտպանելու դիրքերում կանգնած չլիներ

Սովետական Միությունը, ամբողջ խաղաղասեր սոցիալիստական ճագերն իր հզորությամբ և անսպառ ռեսուրսներով»[1]։

Դա սոցիալիզմի պատմական ծառայությունն է առաջադեմ մարդկությանը։ Ջերմամիջուկային զենքն իմպերիալիզմի ձեռքում մեծագույն չարիք է։ Գիտա-տեխնիկական խոշորագույն նվաճումները նյութականացնելով սպառազինությունների մեջ, իմպերիալիզմը հանդես է գալիս որպես մի դահիճ, որ պատրաստ է գլխատելու հարյուր միլիոնավոր մարդկանց։

Սոցիալիզմի պայմաններում գիտա-տեխնիկական առաջընթացը ծառայում է մարդկանց, համընդհանուր խաղաղությանն ու բարեկեցությանը։ Ժամանակակից արտադրողական ուժերը չեն կարող ազատ կերպով զարգանալ կապիտալիստական արտադրական հարաբերությունների փտած կեղևի մեջ։ Կ. Մարքսը գրում էր, որ ձեռնաղացը տալիս է ֆեոդալի, իսկ շոգեաղացը՝ արդյունաբերական կապիտալիստի գլխավորությամբ հասարակություն։ Կարելի է ասել, որ ատոմային էներգիայի ու կիբեռնետիկայի դարը սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակի դարն է։

Իմպերիալիզմը սուբյեկտիվորեն գիտա-տեխնիկական նվաճումներն օգտագործում է ռեակցիոն, ագրեսիվ նպատակներով՝ իր գոյությունը պահպանելու համար։ Օբյեկտիվորեն այդ նվաճումները խարխլում են նրա հիմքերը, մարդկության առջև հրամայական խնդիր դնում՝ ազատել հզոր արտադրողական ուժերը կապիտալիստական արտադրական հարաբերությունների կեղևից, դրանք ծառայեցնելով ամբողջ հասարակության կենսական շահերին։

Այսպիսով, բնագիտության զարգացումը, արտադրողական ուժերի անկասելի առաջընթացը որոշակիորեն ներգործում են մարդկային հասարակության սոցիալ-քաղաքական զարգացման վրա, արագացնելով հասարակության կազմակերպման ավելի բարձր ձևերին անցնելու պրոցեսը։

---

[1] XXII съезд КПСС, Стенографический отчет, М., 1962, т. II, стр. 334.

Սոցիալիստական արտադրաեղանակն ապահովում է արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալի համակողմանի աճ և դրանով իսկ խաղաղության նյութական բազայի հետագա ամրապնդում։

Սովետական Միությունում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը մեծագույն թռիչք կհանդիսանա, որի հետևանքով ՍՍՀՄ-ն օժտված կլինի իր հզորությամբ աննախադեպ արտադրողական ուժերով։ Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ուղղությամբ կատարվող յուրաքանչյուր քայլ տանում է դեպի խաղաղության հիմքերի ամրապնդում։ Սոցիալիզմի նյութատեխնիկական հզորության աճըն ուղեկցվում է խաղաղության պահպանման հնարավորությունների ավելացմամբ և համապատասխանաբար՝ պատերազմի սանձազերծման հնարավորությունների նվազմամբ։ Սոցիալիստական երկրներն իրականացնում են արդյունավետ ռազմական համագործակցություն, կոորդինացնելով գործողությունները՝ իրենց պաշտպանունակությունն ամրապնդելու և իմպերիալիզմի միլիտարիստական ուժերի կրքերը զսպելու նպատակով։

1955 թվականի մայիսին ստորագրված Վարշավայի պաշտպանական դաշինքը կատարում է գործուն խաղաղասիրական ֆունկցիա։ Նրա գործունեության մեջ ազգային և ինտերնացիոնալ խնդիրները միահյուսվում են։ Վարշավայի պայմանագիրը համաշխարհային պատմության մեջ խաղաղասեր պետությունների միակ կոլեկտիվ ռազմական դաշինքն է, որի գործունեության անկյունաքարը համընդհանուր խաղաղության պաշտպանությունն է։ Օրինաչափ է, որ ագրեսորը սանձահարվում է ոչնչացման սարսափով։

Արդյունավետ հակապատերազմական գործոն է սոցիալիստական պետությունների ակտիվ և դինամիկ արտաքին քաղաքական գործունեությունը։ Սոցիալիզմն ամբողջ աշխարհով մեկ տարածում է խաղաղության և ժողովուրդների միջև բարեկամության գաղափարները, որոնց մեջ արտացոլվում է նրա հումանիստական էությունը։ Սոցիալիստական աշխար-

հում բանվոր դասակարգն իր իշխանությունն օգտագործում է որպես հակապատերազմական շարժման նյութական, քաղաքական և բարոյական գործոն։

* * *

«Ատոմային ատամներ» ունեցող իմպերիալիզմն անզոր է կասեցնելու ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարը։ Սոցիալիզմի լագերի բազմակողմանի հզորությունն ու ռազմա-տնտեսական պոտենցիալը ձախողում է իմպերիալիստների փորձերն արյան մեջ խեղդելու ժողովուրդների անդուլ պայքարն ազատ ու անկախ կյանքի համար։ Իր հերթին, ազգային-ազատագրական շարժումը սոցիալիզմի մեծ դաշնակիցն է համընդհանուր խաղաղության համար ծավալվող պայքարում։ Նախկինում գաղութային վիճակում ապրող ժողովուրդներն իմպերիալիզմի թիկունքից և ռեզերվից հզոր պոտենցիալ հակապատերազմական ուժի են վերածվում։ Բանն այն է, որ ժամանակակից պայմաններում ազգային-ազատագրական շարժման հարցերը կարող են դիտվել միայն համաշխարհային պատերազմը կանխելու համար մղվող պայքարի հետ շաղկապված։ Ժամանակակից աշխարհում սոցիալական պրոբլեմների լուծման հիմնական պայմանը խաղաղության պահպանումն է։ Համազգային խնդիրների, սեփական հիմնավոր պրոբլեմների լուծումն ազատագրված երկրներում ներդաշնակվում են խաղաղության ամրապնդման շահերի հետ։ Այդ երկրների ժողովուրդների պայքարի տրամաբանությունը, ազգային վերածննդի շահերը նրանց համաշխարհային քաղաքականության թատերաբեմ են դուրս բերում, որպես խաղաղության կարևորագույն գործոն։

Մեծ էր գաղութների նշանակությունը իմպերիալիստական տերությունների կյանքում։ Այն ուներ տնտեսական, քաղաքական և ստրատեգիական ասպեկտներ։ Երկու համաշխարհային պատերազմների ժամանակաշրջաններում գաղութները որպես թիկունք էին ծառայում իմպերիալիստական տերությունների համար։ Օգտագործվում էին ոչ միայն գաղութների նյութական ռեսուրսները, այլև կենդանի ուժը։ Այդ երկրներում

են գտնվում նավթի, երկաթահանքի, մանգանի և քրոմի հանքի, նիկելի, կոբալտի, վանադիումի, պղնձի, կապարի, ծարիրի, բոքսիտների, վոլֆրամի խոշոր պաշարներ։ Միայն Աֆրիկայում իմպերիալիստներն արդյունահանում էին կապիտալիստական աշխարհի ամբողջ մանգանի կեսը, քրոմի 40 տոկոսից ավելին, վանադիումի 30, պղնձի 24, կոբալտի 87, կապարի 11,3, ծարիրի 27 տոկոսը և կապիտալիստական աշխարհում արդյունահանվող ամբողջ ալմաստը։ Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին անգլիական բանակ կանչված 9.496.370 մարդուց 4.526.370-ը բաժին էր ընկնում գաղութներին։ Միայն Հնդկաստանը 1 միլիոն 700 հազար զինվոր տրամադրեց, որոնք արյուն էին թափում իրենց ճնշող անգլիական իմպերիալիզմի շահերի համար։ Մեկ ու կես միլիոն զինվոր բանակ կանչվեց ֆրանսիական գաղութներից[1]։ «Իմպերիալիստական պատերազմի մեջ ներ էին քաշվում ժողովուրդների վիթխարի մասսաներ։ Անգլիան զորագնդեր էր քաշում Հնդկաստանից՝ գերմանացիների դեմ կռվելու համար։ Ֆրանսիան զենքի տակ կանչեց միլիոնավոր նեգրերի՝ գերմանացիների դեմ կռվելու համար։ Նրանցից կազմվում էին հարվածային խմբեր, նրանց նետում էին ամենավտանգավոր տեղերը, որտեղ գնդացիրները նրանց հնձում էին խոտի նման… Անգլիական բուրժուազիան Հնդկաստանից բերված զինվորներին ներշնչում էր, թե հնդկական գյուղացիների գործն է պաշտպանել Մեծ Բրիտանիային Գերմանիայից, ֆրանսիական բուրժուազիան ֆրանսիական գաղութների զինվորներին ներշնչում էր, թե սևամորթների գործն է պաշտպանել Ֆրանսիան»[2]։

Պատերազմն սկսվելուց հետո իմպերիալիստական տերություններում բանվորական ուժի պակաս էր զգացվում, որը լրացնելու նպատակով, կապիտալիստները մետրոպոլիաների արտադրության մեջ էին ներգրավում գաղութներից բերված տասնյակ հազարավոր մարդկանց։

Այսպես, օրինակ, Ֆրանսիան հյուսիս-աֆրիկյան գա-

---

[1] Տե՛ս В. Л. Тягуненко, Войны и колонии, М., 1957, էջ 55, 107:
[2] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 30, էջ 496—497 և հատ. 31, էջ 280։

ղութներից երկրի արտադրության մեջ ընդգրկեց 200 հազար մարդ։

Երկրորդ համաշխարհային պատերազմից առաջ և նրա ընթացքում պատկերը չփոխվեց։ Պատերազմող իմպերիալիստական տերությունները անողոքաբար իրենց նպատակների համար օգտագործում էին գաղութային երկրների նյութական ռեսուրսներն ու մարդկային ռեզերվները։ Բրիտանական զինված ուժեր մոբիլիզացվեցին դոմինիոններից՝ 2 միլիոն, իսկ գաղութներից՝ 3,2 միլիոն մարդ։ Միլիոնավոր մարդիկ օգտագործվում էին ճանապարհներ հարթելու, ամրություններ կառուցելու և բեռներ տեղափոխելու համար։ Եգիպտոսում մոտավորապես մեկ միլիոն գյուղացիներ օգտագործվում էին որպես բեռնակիրներ և տարբեր շինարարական օժանդակ աշխատանքներում։

Հատկանշական է, որ ճնշված ժողովուրդները թալանչիական նպատակներով օգտագործվում էին նաև ֆաշիստական երկրների կողմից։ Իմպերիալիստական զավթիչները գաղութների ժողովուրդներին մեկը մյուսի դեմ էին ուղղում, նրանցից հարյուր հազարավորներին իրենց զինված ուժերի մեջ ներգրավելու միջոցով։ Այսպես, 1940 թվականի աշնանը Լիվիայում կռվող իտալական բանակում 50 հազար աֆրիկացի զինվոր կար։

Պետք է ասել, որ այս հարցում առանձնապես շատ ջանքեր էին գործադրում ճապոնական ռազմամոլները, որոնց որոշ ժամանակ հաջողվեց օգտագործել եվրոպական գաղութարարների նկատմամբ ունեցած ասիական երկրների ժողովուրդների զայրույթը և հնդկացիներից, բիրմացիներից, ֆիլիպինցիներից ու Հարավ-Արևելյան Ասիայի այլ ժողովուրդներից ստեղծել 500 հազարանոց մի բանակ[1]։ Սակայն հետագայում այդ բանակի ներսում հասունացան ազգային-ազատագրական տրամադրություններ, որոնք ճապոնական իմպերիալիստների դեմ պայքարի վերաճեցին։

Իմպերիալիզմը գաղութային և կախյալ երկրներն օգտագործում էր որպես ռազմական բազաներ ու պլացդարմներ։

---

[1] Տե՛ս **Л. Я. Тягуненко,** Войны и колонии, М., 1957, էջ 108—115։

Միաժամանակ դրանք այդ երկրների ժողովուրդներին ստրկացնելու և նրանց ազատագրական պայքարը ճնշելու միջոցներ էին։ Ազգային-ազատագրական բուռն հոսանքը ժամանակակից պայմաններում, որը խորտակում է իմպերիալիզմի գաղութային սիստեմը, վերջ է դնում այդ բազաներին ու պլացդարմներին։ Ճիշտ է, դեռևս իմպերիալիստներին որոշ տեղերում հաջողվում է պահպանել իրենց բազաները, սակայն այդ վիճակը ժամանակավոր երևույթ է։

Ազատության և անկախության համար մարտնչող ժողովուրդները, վերջին հաշվով, իմպերիալիստներին դուրս կմղեն նրանց վերջին հենակետերից՝ գաղութային երկրներում։ Պատմության օրինաչափություններն են հաղթանակում, այլ ոչ թե դարաշրջանի ոգուն և նոր պայմաններին հակասող տենդենցները։

Այսպիսով, իմպերիալիզմի գաղութային սիստեմի փլուզումը, նախկին գաղութային և կախյալ երկրների ժողովուրդների ինքնուրույն անկախ զարգացման ուղի դուրս գալը իմպերիալիստներին զրկեց նախապատրաստվող ու սանձազերծվող պատերազմներում այդ երկրների մարդկային և նյութական ռեսուրսներն օգտագործելու հնարավորությունից։ Հատկանշական է, որ համեմատաբար ուժեղ ռազմա-տնտեսական հզորությամբ օժտված էին այն իմպերիալիստական տերությունները, որոնք ընդարձակ գաղութային տիրույթներ ունեին։ Համապատասխանաբար աճում էր այդ տերությունների քաղաքական կշիռը միջազգային ասպարեզում։

Իմպերիալիզմի համար կենսականորեն կարևոր նշանակություն ուներ գաղութային երկրների ստրատեգիական դիրքը։ Այդ տերիտորիաները կորցնելուց հետո կտրվեց իմպերիալիզմի սիստեմի երակներից մեկը, ուժեղացնելով նրա օրգանիզմի սակավարյունությունը։

Ազատագրված երկրները, այսպիսով, դադարել են իմպերիալիզմին սնող հող լինելուց։ Ակտիվ հետևողական պայքարը խաղաղության համար թելադրվում է այդ երկրների ազգային վերածննդի շահերով, որոնց հակասում է պատերազմը։

Հակաիմպերիալիստական ազատագրական շարժման կա-

*ևորագույն գործոններից է սոցիալիստական երկրների կողմից դրա համակողմանի պաշտպանությունը։ Վճռականորեն դատապարտելով գաղութատիրության բոլոր ձևերը, ամեն կերպ օժանդակելով գաղութային կայսրության փլատակների վրա ծագած պետությունների սուվերենության ամրապնդմանը, սոցիալիստական լագերը հանդես է գալիս որպես իրենց ազատագրության համար մարտնչող ժողովուրդների մեծ ու հավատարիմ դաշնակից, սոցիալական առաջընթացի հզոր գործոն։ Ազատագրված ժողովուրդների՝ սոցիալիստական զարգացման ուղին ընտրելը կարևոր գործոն է խաղաղությունն ամրապնդելու և կապիտալիզմի վերջնական կրախի հեռանկարների տեսանկյունից։ Ազգային լրիվ անկախության, լայն դեմոկրատիայի, հակաիմպերիալիստական, հակաֆեոդալական դեմոկրատական հեղափոխությունը մինչև վերջ հասցնելու համար պայքարող բոլոր առաջադեմ հայրենասիրական ուժերի բլոկի ստեղծումն ազգային դեմոկրատիայի պետության գոյացման քաղաքական հիմքը կհանդիսանա։ Այդ նպատակին հասնելու անհրաժեշտ պայմանը ռեակցիոն ուժերի և դրանց հետ կապված գաղութատիրական շրջանների դիմադրության և ազգային բուրժուազիայի վարանումների հաղթահարումն է։ Ազգային դեմոկրատիայի պետություններն իրենց էությամբ կդառնան սոցիալիզմի բնական դաշնակիցները սոցիալական առաջընթացի և խաղաղության համար մղվող պայքարում։ Իրենց ռեսուրսները տրամադրելով համընդհանուր անվտանգության ապահովմանը, այդ պետությունները կդառնան խաղաղության որոշակի գործոններ։*

«Պատերազմի վտանգի դեմ մղվող պայքարում ազատագրված երկրների ժողովուրդների և սոցիալիստական պետությունների ժողովուրդների ջանքերի միավորումն համընդհանուր խաղաղության մեծագույն գործոնն է: *Մարդկության երկու երրորդի կամքը և ուժը արտահայտող այդ հզոր ճակատը կարող է նահանջի հարկադրել իմպերիալիստական ագրեսորներին*»[1]։

---

[1] *ՍՄԿԿ ծրագիրը, էջ 59։*

Ազատագրված ժողովուրդները կարող են դառնալ համաշխարհային քաղաքականության ակտիվ սուբյեկտ, եթե ազգային վերածննդի խնդիրները կատարելու հետ մեկտեղ գործուն պայքար ծավալեն իմպերիալիզմի դեմ, հանուն խաղաղության, միավորեն իրենց ջանքերը հակապատերազմական, հակաիմպերիալիստական ուժերի և առաջին հերթին խաղաղության էպիկենտրոն՝ սոցիալիստական աշխարհի ջանքերի հետ։ Քաղաքական անկախության ուղին ոտք դրած ազատագրված ժողովուրդները գնալով է՛լ ավելի խորըն են գիտակցում պատերազմի դեմ պայքարելու կենսական անհրաժեշտությունը։ Սոցիալական կենսապայմանների նույնությունը, որոնց մեջ երկար ժամանակ ապրում էին գաղութային ու կախյալ երկրների ժողովուրդները, ազատագրության միասնական ուղին, ազգային վերածննդի և վերընթաց զարգացման ընդհանուր շահերն առաջացնում են համատեղ գործողությունների անհրաժեշտություն։

Այդ ժողովուրդների՝ հանուն խաղաղության և համամարդկային առաջադիմության համերաշխության գաղափարը կենսագործվում է։ Դեռ 1955 թվականի ապրիլին Ասիայի և Աֆրիկայի 29 երկրներ Բանդունգում ընդունեցին դեկլարացիա «Համընդհանուր խաղաղությանն ու համագործակցությանն աջակցելու մասին», որտեղ շարադրեցին ժողովուրդների խաղաղ գոյակցության սկզբունքները։

Հետագա տարիներին, իմպերիալիզմի գաղութային սիստեմի հարաճուն փլուզմանն համեմատ, հակապատերազմական շարժման բազան ընդլայնվեց։ Անկախություն նվաճած երկրների քանակական աճն ուղեկցվում էր դրանց ժողովուրդների՝ միջազգային իրադարձությունների ընթացքի վրա է՛լ ավելի ակտիվ ներգործությամբ՝ խաղաղության և պատերազմի պրոբլեմը լուծելու գործում համապատասխանաբար նրանց դերի աճով։ Ընդլայնվում է իրենց ձևերով տարբեր կոնգրեսներին ու կոնֆերանսներին մասնակցողների կազմը, որտեղ քննարկման ու հաստատման են դրվում կարևորագույն սոցիալական պրոբլեմներ և ամենից առաջ ջերմամիջուկային համաշխարհային պատերազմի վտանգը վերացնելու ուղիների և միջոցների հարցը։

Այսպիսով, երկրագնդի վրա ստեղծվել է լայնածավալ խաղաղության գոտի, ուր սոցիալիստական երկրների հետ մեկտեղ մտնում են գաղութային ստրկական ռեժիմը խորտակած ժողովուրդները, որոնց համար խաղաղությունը ներտնտեսական և ներքաղաքական պրոբլեմների լուծման անհրաժեշտ պայմանն է։

Ինչպես նշվեց, ԱՄՆ-ը վարում է հակակոմունիստական, միլիտարիստական տարրերի առավելագույն միավորման քաղաքականություն։ Սակայն ԱՄՆ-ի արտաքին քաղաքական կուրսը վարողների սուբյեկտիվ կամքը չի կարող որոշել բոլոր կապիտալիստական երկրների կառավարությունների քաղաքական վարքագիծը։

Երկու համաշխարհային պատերազմների պատմությունը վերլուծելիս մի առանձնահատկություն է դրսևորվում։ Այդ պատերազմները ծագեցին գլխավոր կապիտալիստական տերությունների միջև եղած հակասություններից։ Այդ տերությունների մոնոպոլիստական միությունները ձըգտում էին անբաժան տիրապետություն հաստատել կապիտալիստական շուկայում։ Ինչ վերաբերում է կապիտալիստական փոքր երկրներին, ապա դրանց մոնոպոլիաները, իրենց սակավազորության պատճառով, չէին կարող լուրջ մրցակիցներ լինել իմպերիալիստական աշխարհի խոշոր տերությունների գերհզոր մոնոպոլիստական ընկերությունների համար։ Միանգամայն հասկանալի է, որ այդ երկրները քաղաքական տեսակետից նույնպես լուրջ գործոն չէին միջազգային կյանքում։ Պատերազմների նախապատրաստության ժամանակաշրջաններում իմպերիալիստական երկու կոալիցիաների ոգեշնչողները բազմապիսի միջոցների օգնությամբ իրենց ազդեցության տակ էին գցում այդ երկրները, նրանց ազգային շահերը զոհաբերելով իրենց ագրեսիվ, արկածախնդրական նպատակներին։ Անկախ իրենց կամքից ռազմական իրադարձությունների հորձանուտը ներքաշված այդ երկրները ետ էին շպրտվում, էլ ավելի էր նվազում նրանց առանց այն էլ ցածր քաղաքական կշիռը։ Շատ բան կորցնելով, նրանք ոչինչ չէին ձեռք բերում։ Ռազմական բլոկներին մասնակցությամբ, որտեղ նրանք փաստորեն

ենթարկվողի վիճակում էին, նրանց ստիպում էր երկրի էկոնոմիկան հարմարեցնել պատերազմական կարիքներին և այդպիսով նյութական մեծ կորուստներ կրել, դրան ավելացրած անմիջական ռազմական գործողություններում կրած մարդկային զոհերը։

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո հասարակական-քաղաքական ուժերի հարաբերակցության արմատական փոփոխությունը բարենպաստ իրավիճակ ստեղծեց այդ երկրների կողմից ինքնուրույն որոշումներ ընդունելու համար։ Դրանցից շատերն ագրեսիվ իմպերիալիստական խմբավորումների մեջ մտնելու վտանգից իրենց պաշտպանելու համար գերադասում են չեզոքության, բլոկներին չըմիանալու քաղաքականությունը։ Այդ հանգամանքը օբյեկտիվորեն նվազեցնում է իմպերիալիզմի ագրեսիվ շրջանների հնարավորություններն այնպիսի պայմաններում, երբ վիթխարի պայքար է ծավալվել սոցիալիզմի և կապիտալիզմի, խաղաղության և պատերազմի ուժերի միջև։ Սակայն, չի կարելի հաշվի չնստել այն փաստի հետ, որ կապիտալիստական տերությունների կառավարող ուժերին դեռևս հաջողվում է ագրեսիվ ռազմա-քաղաքական բլոկների հետ կապել ոչ մեծ շատ կապիտալիստական երկրներ։ Դրանց ժողովուրդներն ամեն օր զգում են տնտեսա-քաղաքական այն վնասը, որ կրում են այդ բլոկներն իրենց երկրների մասնակցելուց։ Նրանք հաճախ ճնշում են գործադրում իրենց երկրների կառավարությունների վրա, պահանջելով վարել անկախ և խաղաղասեր արտաքին քաղաքական կուրս։ Հավանաբար, խաղաղության համար մղվող պայքարում այդ երկրների աշխատավոր մասսաների քաղաքական ակտիվության աճմանը համեմատ կառաջանա և ինքնուրույն որոշումներ կայացնելու տենդենցը։

Նման հեռանկարը մեծ մասամբ կախված է մոնոպոլիաների ճնշման դեմ, սոցիալական վերափոխությունների և խաղաղության համար մղվող պայքարում այդ երկրների դեմոկրատական ուժերի հաջողություններից։ Համաշխարհային պատերազմի վտանգի անմիջական օբյեկտների՝ իմպերիալիստական խոշոր տերությունների, մեկուսացումը կապի-

տալիստական այն, համեմատաբար փոքր երկրներից, ո֊րոնց ազգային շահերը ոտնահարվում և զոհաբերվում են մոնոպոլիստական կապիտալի ռազմատենչ դիտավորություններին, հակապատերազմական շարժման խնդիրներից մեկն է։

Այս գործում որոշակի դեր է խաղում սոցիալիստական երկրների ճկուն արտաքին քաղաքական գործունեությունը, որը դրսևորվում է կապիտալիստական փոքր պետությունների հետ սուվերենությունն ու տերիտորիալ ամբողջականությունը փոխադարձաբար հարգելու հիման վրա բարիդրացիական անշահախնդիր հարաբերություններ պահպանելու և զարգացնելու մեջ։ Այդ կուրսը օբյեկտիվորեն կարող է իմպերիալիստական տերությունների ուխտադրուժ քաղաքականության երկընտրանքը դառնալ։

* * *

Ժամանակակից աշխարհում միջազգային պրոբլեմների լուծման գործում անօրինակ աճել են բոլոր երկրների բնակչության լայն զանգվածների հնարավորությունները։ Համաշխարհային ջերմամիջուկային պատերազմը կանխելու հարցում չեզոքներ չեն կարող լինել, քանի որ, եթե այն բռնկվի, հողագնդի ոչ մի շրջան հարվածի ոլորտից դուրս չի մնա։ Հրթիռա-միջուկային հարվածների հետևանքը կոլեկտիվ մահըն է։ Տրամաբանական է, որ այս մռայլ հեռանկարը մոբիլիզացնում է մասսաներին, պայմանավորելով նրանց ակտիվ մասնակցությունը պատերազմի և խաղաղության պրոբլեմը լուծելու գործում։

Ինչպես նշվեց, առաջին և երկրորդ համաշխարհային պատերազմների միջև ընկած ժամանակաշրջանում պատերազմի վտանգի դեմ ելույթներ եղան։ Այսպես 1929, 1932, 1933 և 1936 թվականներին համապատասխանաբար Բեռլինում, Ամստերդամում, Փարիզում և Բրյուսելում աշխարհի առաջադեմ կազմակերպությունների նախաձեռնությամբ տեղի ունեցան հակապատերազմական և հակաֆաշիստական կոնգրեսներ։ Խաղաղասիրական այդ համաժողով֊

ներում գործուն մասնակցություն ունեցան շատ երկրների առաջավոր հեղափոխական մտավորականության ներկայացուցիչներ (Ա. Բարբյուս, Մ. Գորկի, Թ. Դրայզեր, Ռ. Ռոլան)։ Սակայն այդ ելույթները ոչ մի համեմատության մեջ չեն կարող դրվել ժամանակակից պայմաններում ծավալված ժողովուրդների հակապատերազմական շարժման թափի ու մասշտաբների հետ։ Նոր համաշխարհային պատերազմի նախապատրաստության դեմ ուղղված բողոքները շատ կարճ ժամանակամիջոցում վերաճեցին համաշխարհային միասնական համաժողովրդական շարժման։ Ժողովուրդներն իրենց ձեռքն են վերցնում խաղաղության պահպանման գործը։

Խաղաղության պրոբլեմը, միջուկային պատերազմի կանխումն արդիականության ամենահրատապ հարցն է։ Պատերազմի և նրա ավերիչ բնույթի մասին ճշմարտությունը չի ահաբեկի ժողովուրդներին, չի վիժեցնի նրանց կամքը, չի ապակազմակերպի նրանց։ Ընդհակառակը, մարդիկ որքան ավելի լավ գիտակցեն միջուկային պատերազմի վտանգն ու աղետաբեր հետևանքները, այնքան ավելի ակտիվ և վճռականորեն իրենց կամքն ու եռանդը կհակադրեն միլիտարիզմի ուժերին ու նրանց կրող իմպերիալիզմին։

Ամեն մի երևույթ բովանդակում է ինքնաբացասման տարրեր։ Ինչպես Ֆ. Էնգելսն է գրում, միլիտարիզմն իր մեջ բովանդակում է սեփական բացասման սաղմը։ Այն կկործանվի իր զարգացման դիալեկտիկայի շնորհիվ։ Պատերազմի մահաբեր միջոցների կատարելագործումը, զենքի ամենակուլ տեսակների երևան գալն օբյեկտիվորեն ճնշում են գործադրում պետությունների քաղաքականության վրա։ Իհարկե, միջազգային լարվածության պատճառ չի կարող լինել գիտական և տեխնիկական առաջադիմության և բարոյական, քաղաքական ու սոցիալական հասունության մակարդակի միջև դրսևորվող անհամապատասխանությունը։ Պատերազմի վտանգի աղբյուրը իմպերիալիզմն է։ Ինչպիսի կատարելության էլ որ հասնի ռազմական տեխնիկան, այն ինքըն իր զարգացման ընթացքով չի կարող լարվածություն առաջացնել պետությունների հարաբերություններում։ Լար-

վաժուՁյունն ուժեղանում է այն դեպքում, երբ այդ տեխնիկան գտնվում է ագրեսորների տրամադրության տակ։ Սակայն, մյուս կողմից՝ հակառակորդի նյութատեխնիկական հնարավորությունները հարկադրում են ագրեսորին զգաստ գնահատել հեռանկարը։ «Միլիտարիզմ և հակամիլիտարիզմ» գրքում Վիլհեմ Լիբկնեխտը անցյալ դարի վերջերին գրում էր, որ բնության ամենազոր ուժերի նկատմամբ մարդու իշխանության ուժեղացումը մահաբեր տեխնիկայի գործածումն անհնարին կդարձնի։ Վ. Ի. Լենինը դեռևս 1918 թվականին ասում էր, որ իմպերիալիզմը տեխնիկայի ամենահզոր նվաճումները գործադրում է այնպիսի մասշտաբներով ու ավերիչ կերպով և այնպիսի եռանդով մասսայաբար միլիոնավոր մարդկային կյանքեր բնաջնջելու համար, որ այդ ամենը «...կարող է հասցնել և անխուսափելիորեն կհասցնի մարդկային հասարակության գոյության բուն պայմանների խախտմանը»[1]։

Այդպիսի հեռանկարը չի կարող սուբյեկտիվ տենդենց չառաջացնել՝ զգաստորեն ու ռեալիստորեն քննարկելու կատարվող քաղաքական որոշումների հնարավոր հետևանքները։ «Կլինի այնպիսի ժամանակ, երբ պատերազմն այնպես կործանարար կդառնա, որ այն առհասարակ անհնարին կդառնա[2]»,— ասում էր Վ. Ի. Լենինը։

Գիտական կոմունիզմի կլասիկների և պրոպագանդիստների այս մտքերը չպետք է գռեհկացնել։ Անտարակույս, նրանք չեն ենթադրում այնպիսի հնարավորություն, որ համաշխարհային պատերազմը բարձր զարգացած ռազմական տեխնիկայի պայմաններում բացառվում է ինքնաբերաբար, մեխանիկորեն։

Եթե նախորդ համաշխարհային պատերազմներում իմպերիալիստական մոնոպոլիաները հարստանում էին ռազմական մատակարարումների հաշվին, ապա ջերմամիջուկային պատերազմում նյութական շահ ստանալու հնարավորությունը

---

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 27, էջ 524—525։

[2] Н. Крупская, О Ленине, М., 1960, стр. 40—41.

բացառվում է։ Միջսիստեմային ռազմական գոտեմարտում հենց կապիտալիզմի գոյության հարցն է դրվում։ Իմպերիալիզմի ռազմական տեսաբանները բացահայտորեն ընդունում են այդ հնարավորությունը։ Կիսինջերը գրում է, որ միջուկային պատերազմը կհասցնի Արևմտյան Եվրոպայի սոցիալական սիստեմի կործանմանը, ուր «Ջերմամիջուկային զենքի պաշարների աճը ստեղծել է մի փակուղի, որը պատերազմը դարձնում է եթե ոչ ծայրաստիճան վտանգավոր, ապա, համենայն դեպս, անձեռնտու»[1]։ Պատահական չէ, որ իմպերիալիզմի ջատագովները հաճախ են կրկնում այն միտքը, որ ժամանակակից պայմաններում պատերազմը չի կարող ազգային քաղաքականության միջոց ծառայել։

Իհարկե, չի կարելի հույս դնել կապիտալիստական աշխարհի ներկայիս տիրակալների ողջամիտ որոշումներ ընդունելու վրա։ Իմպերիալիստական բուրժուազիայի պատմական դատապարտվածությունն ավանտյուրիստական գործողությունների դիմելու տենդենց է ծնում։ Սակայն բուրժուազիան չի կարող հաշվի չառնել, որ պատերազմի գերհզոր տեխնիկական միջոցների առկայության դեպքում քաղաքական կամ ռազմական բոլոր որոշումները գլոբալ նշանակություն են ձեռք բերում նաև հետևանքների տեսակետից։

Ջերմամիջուկային աղետի նախապատրաստության դեմ, հանուն կայուն խաղաղության ժողովուրդների անդուլ, հետևողական պայքարը կարող է միայն մարդկությանը փրկել համաշխարհային նոր պատերազմի վտանգից։ «Ժամանակակից ռազմական տեխնիկայի չտեսնված ավերիչ բնույթը հրամայաբար պահանջում է, որ հակապատերազմական, խաղաղասեր բոլոր ուժերի հիմնական գործողությունները կենտրոնացվեն պատերազմը կանխելու վրա»[2]։

Համընդհանուր համաշխարհային ռազմական կոնֆլիկտի սանձազերծման վտանգի պայմաններում որոշակիորեն աճում

---

[1] Г. Киссингер, Ядерное оружие и внешняя политика, стр. 46.

[2] Կոմունիստական և բանվորական կուսակցությունների ներկայացուցիչների խորհրդակցության հայտարարությունը, էջ 33։

է այնպիսի սուբյեկտիվ գործոնի նշանակությունը, ինչպես խաղաղության պաշտպանության օգտին մասսաների կազմակերպված և գիտակից ելույթներն են։ Հակապատերազմական ներկա շարժման մասսայական բնույթը, ռազմական վտանգի դեմ սկզբունքային պայքարը չի կարելի կտրել իմպերիալիստական տիրապետության հիմքերը խարխլող հեղափոխական շարժումներից։

Աշխարհի քաղաքական կյանքում մասսաների դերի աննախադեպ աճը մեր դարաշրջանի օրինաչափություններից մեկն է։ Այս կապակցությամբ հարց է ծագում, թե ջերմամիջուկային ռազմական տեխնիկայի առկայության պայմաններում ինչպիսի՞ ուղիով պետք է զարգանա խաղաղության համար մասսաների գործունեությունը։

Այդ հարցի լուծումը հնարավոր է միայն երևույթները փոխկապակցության մեջ դիալեկտիկորեն իմաստավորելու դեպքում։

Ժամանակակից պատերազմը որակապես նոր երևույթ է ոչ միայն տեխնիկայի, այլև քաղաքականության մեթոդների և ձևերի տեսակետից։ Խաղաղության համար մղվող պայքարի հեռանկարները գնահատելիս և քաղաքականությունը որոշելիս անհրաժեշտ է հաշվի առնել այնպիսի գործոն, ինչպես բնագիտության զարգացման մակարդակը և պատերազմի տեխնիկական միջոցների հարվածող հնարավորությունները։ Անվիճելի է, որ գիտատեխնիկական ամենացայտուն ու մեծանշանակ թռիչքի պայմաններում անգամ պատմության մեջ վճռական դերի ֆունկցիան դուրս չի գալիս ժողովրդական մասսաների իրավասությունից։ Առանց մարդու տեխնիկան մեռած է։ Այս իմաստով մասսաները տեխնիկայից ուժեղ են։ Սակայն այս հարցում անհրաժեշտ է ղեկավարվել ոչ թե քանակական չափանիշներով, այլ քանակի ու որակի դիալեկտիկայով։ Պատմության մեջ ժողովրդական մասսաների վճռական դերն ընդգծելը չի նշանակում, թե այն դրսևորվում է միայն մաքուր քանակական առավելության մեջ։ Առնվազն միամիտ կլիներ կարծել, թե տեխնիկայով չզինված մեծամասնությունը զինված փոքրամասնությունից ուժեղ է։ Մասսայական ոչնչացման տեխնիկական միջոցների առկայության

պայմաններում պատերազմի բախտը մասսաների քանակական մեծությամբ չի որոշվում։ Մասսաների դերը դառնում է վճռական, երբ նրանց գործողությունները չեն անտեսում արտադրության զարգացման մակարդակը, տեխնիկայի զարգացման առանձնահատկությունները։ Ջերմամիջուկային պատերազմում ոչ թե սովորական զենքի տեսակներով զինված միլիոնավոր մասսաները, այլ միջուկային լիցքով օժտված հրթիռները կարող են վճռական դեր խաղալ։ Ընդգծել ժամանակակից տեխնիկայի դերը, չի նշանակում նաև գերագնահատել այն։ Ժամանակակից միջուկային պատերազմում առաջատար դերը դարձյալ մարդունն է։ Մի քանի հազար ակտիվ մասնագիտացված մարտիկներ գործողության մեջ դնելով տեխնիկան, բնականաբար, կարող են ավելի մեծ ավերածություններ առաջացնել, քան սովորական զենքով զինված բազմամիլիոն բանակները։

Միջուկային զենքով զինված իմպերիալիզմին դիմակայում է նույն զենքով զինված սոցիալիզմը։ Եթե սոցիալիստական լագերը չունենար ժամանակակից զենքի բոլոր տեսակները, աշխատավոր մասսաների ամենավճռական կամքն անգամ չէր կարող զսպել ագրեսիվ իմպերիալիզմին։ Հենց սոցիալիզմի բազմակողմանի հզորությունն է բազմապատկում մասսաների վճռականությունը, ոգեշնչում նրանց, համարձակ պայքարի հանում իմպերիալիզմի և պատերազմի դեմ։

Կոմունիստական և բանվորական կուսակցությունների խորհրդակցությունների փաստաթղթերում ընդգծված է, որ համաշխարհային պատերազմը կանխելը խաղաղության համար ծավալված համաժողովրդական շարժման գլխավոր խնդիրն է։ «Նոր համաշխարհային պատերազմի վտանգի դեմ պայքար պետք է ծավալել, չսպասելով, որ սկսեն ընկնել ատոմային ու ջրածնային ռումբերը: Այդ պայքարը պետք է մղել այժմ, օրավուր ուժեղացնելով ջանքերը: Գլխավոր խնդիրն է ժամանակին սանձահարել ագրեսորներին, կանխել պատերազմը, թույլ չտալ, որ այն բռնկի»[1]:

[1] Կոմունիստական և բանվորական կուսակցությունների ներկայացուցիչների խորհրդակցության Հայտարարությունը, էջ 34։

Միայն այսպես պետք է հասկանալ ժողովրդական մասսաների վճռական դերը քաղաքականության մեջ, ջերմամիջուկային զենքի առկայության պայմաններում պատերազմի ու խաղաղության հարցերում։ Այստեղից բխում է, որ խաղաղության համար մղվող մասսաների գիտակցական գործնական պայքարն արդյունավետ է այն դեպքում, եթե դրա մեջ ադեկվատորեն արտացոլվում է օբյեկտիվ իրադրությունն իր ամբողջ բովանդակությամբ, որի տարրերից մեկը ռազմական տեխնիկայի հարվածող հնարավորություններն են։

* * *

Ժողովրդական լայն մասսաների գիտակցական մակարդակը որոշակիորեն կախված է պատմական իրադրության կոնկրետ պայմաններից և այդ մասսաների վրա հեղափոխական համադեմոկրատական գաղափարների ներգործության աստիճանից։ Հասարակության առաջավոր գաղափարները լուրջ դեր են խաղում մասսաներին կազմակերպելու և մոբիլիզացնելու գործում։ Եթե գաղափարների մեջ արտացոլվում են ժողովուրդների կենսական շահերը, հասարակական առաջադիմության հրատապ պահանջները, եթե դրանք հասկանալի են մասսաներին իրենց հանրամատչելիությամբ, պարզ իմաստով, նպատակասլացությամբ, ապա ձեռք են բերում գործունություն, դառնում նյութական ուժ։

Արդիականության առաջավոր և ամենամասսայական գաղափարը համընդհանուր խաղաղությունը պահպանելու, հասարակության կյանքից պատերազմները վերացնելու գաղափարն է։ Այն թափանցել է հողագնդի ամենահեռավոր անկյունները, աշխատավորների մեջ վճռականություն արթնացրել՝ պայքար ծավալելու համաշխարհային պատերազմի սպառնալիքի դեմ։ Այդ գաղափարը միավորել և իր շուրջն է համախմբել բարի կամքի տեր հարյուր միլիոնավոր մարդկանց։ Ծնվել և ծավալվում է խաղաղության կողմնակիցների համաժողովրդական շարժումը։ Ֆ. Էնգելսը գրում էր, որ, երբ խոսքը վերաբերում է այն շարժիչ ուժերի ուսումնասիրությանը, որոնք վերջին հաշվով կազմում են պատմու-

թյան իսկական շարժիչ ուժերը, ապա պետք է նկատի ունենալ ոչ այնքան անհատների, թեկուզ և շատ ականավոր անհատների շարժառիթները, որքան այն շարժառիթները, որոնք շարժման մեջ են դնում հոծ մասսաներ, ամբողջ ժողովուրդներ և ամեն մի ժողովրդի մեջ դասակարգեր։ Եվ այստեղ էլ կարևոր են ոչ թե վաղանցիկ բռնկումներն ու պոռթկումները, այլ տևական, պատմական մեծ փոփոխություններ առաջացնող գործողությունները։

Հայտնի է, որ ամեն մի մասսայական շարժման թափը, խորությունն ու արդյունքները կախված են այնպիսի գործոններից, ինչպիսիք են դրա բնույթը, մասնակիցների թիվը, կազմակերպվածությունն ու նպատակասլացությունը, գործողությունների վճռականությունն ու ակտիվությունը և օբյեկտիվ իրադրությունը։

Խաղաղ ապրելակերպը մարդու բնական վիճակն է։ Աշխատավոր մարդը կերտող է, ստեղծագործող։ Նրան խորթ է կործանելը, իր նմաններին բնաջնջելը։ Սակայն հազարամյակների ընթացքում նրա կամքը բավական չէր շահագործողների կողմից սանձազերծվող մարդկային արյունահեղությունները կանխելու համար։ Ավելին, պատերազմներում աշխատավորները շատ արյուն թափեցին, հաճախ հանուն շահագործող փոքրամասնության դասակարգային էգոիզմի ու շահերի։ Եվ, միայն որոշակի պատմական պայմաններում աշխատանքի մարդկանց խելացիորեն կազմակերպված կամքն է ընդունակ զսպել հարստանալու ձգտումով արբեցած շահագործողների անհագ ախորժակները։

Հետպատերազմյան աշխարհում քաղաքականության մեջ իրականացված հեղափոխական վերափոխությունները մասսաների ստեղծագործական դերի գործնական հաստատումն են։ Ֆ. Էնգելսը նշում էր, որ մասսաների նույնիսկ անկազմակերպ, տարերային շարժումները վճռական նշանակություն են ձեռք բերել պատմության մեջ։ Պատմական դինամիզմում արտադրողական ուժերի զարգացման ու կատարելագործման և դեպի սոցիալական կեցության նոր ավելի բարձր ձևերը կատարվող օրինաչափ, անկասելի շարժմանն համեմատ տեղի է ունենում մասսաների տարերային, անկազմակերպ ուժից

կազմակերպված, գիտակցական գործոնի վերաճման պրոցեսը։ Օբյեկտիվ իրադրությունն ու սուբյեկտիվ գործոնը անխզելիորեն կապված են։

Սոցիալիզմի վերածումը համաշխարհային սիստեմի, իմպերիալիզմի գաղութային կայսրության խորտակումը պայմանավորեցին կապիտալիստական աշխարհի բոլոր առաջադեմ սոցիալական շերտերի գիտակցականության և քաղաքական ակտիվության աճը։ Իմպերիալիզմը ջախջախիչ հարվածներ է ստացել, նրա դիրքերը նկատելիորեն ջլատվել են, բայց նա դեռ ուժեղ է, կարող է շատ չարիք բերել մարդկությանը։ Սակայն նա անկարող է հաշվեհարդար տեսնել հեղափոխական առաջադեմ ուժերի հետ, հաղթահարել դարաշրջանի տենդենցները։ Նա ի վիճակի չէ ճնշելու հեղափոխական, դեմոկրատական ուժերի գործողությունները կապիտալիստական երկրների ներսում։ Այդ երկրներում ծավալված խաղաղության կողմնակիցների շարժումը համաշխարհային հակապատերազմական շարժման գործոններից մեկն է։

Խաղաղությունը մեծագույն նպատակ է, որին ծառայում և ենթարկվում են ժամանակակից հասարակության տարբեր շերտերի կամքն ու ջանքերը։ Համընդհանուր խաղաղությունը պահպանելը մասնավոր, լոկալ, սահմանափակ խնդիր չէ, այլ գլոբալ, որի լուծումից է կախված համայն մարդկության ապագան։ Սոցիալական տարբեր շերտերին պատկանող, ոչ միատեսակ քաղաքական, փիլիսոփայական հայացքներ կամ կրոնական համոզմունքներ ունեցող մարդիկ, երկրագնդի ամբողջ առաջադեմ մտավորականությունը միացել են աշխարհավեր միջուկային պատերազմը կանխելու համար ծավալված շարժմանը։ «Մասսաների հակապատերազմական շարժումը, որը բազմազան ձևեր է ընդունում, խոշորագույն գործոն է խաղաղության պայքարում[1]»։

Պայքարել խաղաղության համար, նշանակում է մեծագույն զգոնություն պահպանել, հետևողականորեն մերկացնել իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականությունը, աչալուրջ հետևել պատերազմի հրձիգների մեքենայություններին ու ստոր-

---

[1] ՍՄԿԿ ծրագիրը, էջ 69։

ձգտումներին, ժողովուրդների սրբազան զայրույթը բարձրացնել նրանց դեմ, ովքեր վարում են պատերազմի կուրս, բարձրացնել բոլոր խաղաղասեր ուժերի կազմակերպվածությունը, անընդհատ ուժեղացնել միլիոնների ակտիվ գործողությունների ի պաշտպանություն խաղաղության։

Խաղաղության կողմնակիցների բազմաթիվ կոնգրեսները, որոնք գումարվում են սկսած 1948 թվականից, միջուկային զենքն արգելելու, միջազգային տարաձայնությունները խաղաղ բանակցությունների միջոցով լուծելու, աշխարհի տարբեր մասերում ծագած ռազմական կոնֆլիկտները դադարեցնելու մասին, դրանց ընդունած որոշումները, բազմամիլիոն ստորագրությունները այդ ուղերձների տակ՝ խաղաղության նկատմամբ ժողովուրդների անընկճելի կամքի վառ դրսևորումներն են։

* * *

Իմպերիալիստական պատերազմների ամենաանհաշտելի և հետևողական հակառակորդը միջազգային բանվոր դասակարգն է։ Որպես արդիականության ամենահեղափոխական սոցիալական ուժ, բանվոր դասակարգը խաղաղության համար մղվող համաժողովրդական պայքարի առաջամարտիկն է։ Կ. Մարքսը գրում էր, որ պրոլետարիատը պատմության ասպարեզ է դուրս գալիս արդեն ոչ թե որպես հնազանդ վարձկան, այլ որպես անկախ մի ուժ, որ գիտակցում է սեփական պատասխանատվությունը և ընդունակ է թելադրելու խաղաղություն այնտեղ, որտեղ այսպես կոչված, տերերը բղավում են պատերազմի մասին։

Հողագնդի համարյա բոլոր երկրներում գործում են կոմունիստական կուսակցություններ, որոնք նոր պատերազմի կանխումը դիտում են որպես կենսական սոցիալական պրոբլեմների լուծման հիմնական պայման։ Ժամանակակից էտապում պատերազմի վտանգի դեմ բանվոր դասակարգի պայքարի պայմանները համեմատաբար նպաստավոր և դրա հեռանկարներն ավելի ռեալ են դարձել։

Վերևում արդեն նշվեց, որ Կ. Մարքսը խաղաղության պահ-

պանումը կապում էր միջազգային բանվոր դասակարգի գործողությունների միասնության հետ։ Ներկայումս, երբ երկրագնդի մեկ քառորդ մասում պետական իշխանությունը պատկանում է բանվոր դասակարգին և համարյա բոլոր կապիտալիստական և ազատագրված երկրներում գոյություն ունեն կոմունիստական կուսակցություններ, խաղաղության և սոցիալիզմի համար մղվող պայքարում բանվոր դասակարգի գործողությունների միասնությունն ապահովելու համար շատ ավելի բարենպաստ իրադրություն է ստեղծվել։ Բանվոր դասակարգը հնարավորություն ունի իմպերիալիզմին և միլիտարիզմին հակադրելու ոչ միայն իր կամքը, այլև պետական ռազմական կազմակերպությունը։ Համաշխարհային սոցիալիստական սիստեմը հզոր նյութական և բարոյա-քաղաքական հենարան է կապիտալիստական ու ոչ սոցիալիստական երկրների բոլոր բանվորների համար։ Իսկ կապիտալիստական երկրների և ամենից առաջ խոշոր կապիտալիստական տերությունների բանվոր դասակարգի ակտիվ հակապատերազմական գործողություններից է մեծ մասամբ կախված կառավարող իմպերիալիստական շրջանների քաղաքական վարքագիծը։

Համընդհանուր խաղաղությունը պաշտպանելու հեռանկարների տեսակետից կապիտալիստական երկրների պրոլետարների հակապատերազմական պայքարը համաշխարհային քաղաքականության բաղադրիչ տարրերից մեկն է։ Այդ պայքարի նշանակությունը կախված է դրա խնդիրների հիմնավոր լինելուց, գործողությունների նպատակասլացությունից և համադասակարգային ու համադեմոկրատական շահերի ըմբռնումից։ Կապիտալիստական աշխարհի պրոլետարիատը հեղափոխական մեծ ուժ է, որ աճել է և՛ քանակապես, և՛ որակապես։ Այսպես, ներկայումս բանվորների ու ծառայողների ընդհանուր թիվը կապիտալիստական երկրներում կազմում է 370 միլիոն մարդ[1]։ Եվրոպական մայրցամաքի հիմնական կապիտալիստական երկրներում բարձր է կոմունիստական կուսակցությունների քաղաքական կշիռը, ո-

[1] Տե՛ս «Международный ежегодник» (политика и экономика), М., 1963, էջ 182:

րոնք խաղաղության համար պայքարը միահյուսում են դեմոկրատիայի, սոցիալական առաջադիմության և ազգային անկախության համար մղվող պայքարի խնդիրների հետ։ Այդ կուսակցությունների առաջնահերթ խնդիրը բանվոր դասակարգի գործողությունների միասնությունն է։ Բուրժուական պրոպագանդան, առանձին բանվորներին կաշառելու տակտիկան, աջ սոցիալիստական կուսակցությունների առաջնորդների սեպարատիստական պառակտիչ գործունեությունը նպաստում են իմպերիալիստների միլիտարիստական գործողություններին, օբյեկտիվորեն թուլացնում բանվորական մասսաների հեղափոխական լիցքերը և ներքին ռեակցիոն միլիտարիստական շրջանների վրա հակապատերազմական ուժերի ճնշման աստիճանը։ Ահա թե ինչու այդ երկրների կոմունիստական կուսակցությունները պետք է ճկուն ստրատեգիական և տակտիկական գիծ մշակեն, հաշվի առնելով իրադրությունը, դասակարգային ուժերի հարաբերակցությունը երկրի ներսում և միջազգային ասպարեզում, ինչպես նաև այնպիսի օբյեկտիվ գործոնը, ինչպիսին ռազմական տեխնիկայի զարգացման մակարդակն է։ Խաղաղությունը պահպանելու համար պայքարը կոմունիստական շարժման բոլոր ջոկատների և հակաիմպերիալիստական, հակապատերազմական բոլոր ուժերի գործողությունների միասնության հիմնական օղակն է։

Հակապատերազմական պայքարում աճում է ռազմա-քաղաքական բլոկների մեջ ներքաշված խոշոր կապիտալիստական երկրների կոմունիստական կուսակցությունների գործունեության նշանակությունը։ Հայտնի է, որ Ֆրանսիայի, Իտալիայի քաղաքական կյանքում լուրջ ազդեցություն ունեցող կոմունիստական կուսակցություններ կան։ Համապատասխանաբար բարձր է այդ երկրների բանվոր դասակարգի քաղաքական ակտիվությունը։ Բուրժուական պառլամենտներին մասնակցությունը կոմունիստներին հնարավորություն է տալիս հանդես գալու այդ երկրների կառավարությունների ռազմական միջոցառումների դեմ, մերկացնելու նրանց հակազգային քաղաքականությունը, արտահայտելու աշխատավորների խաղաղասեր կամքը։ Խաղաղության համար մղվող

պայքարում ներքին հակաիմպերիալիստական, հեղափոխական ուժերի գործունեությունն այդ երկրներում իմպերիալիստական մոնոպոլիաների շահերը ներկայացնող ռազմատենչ շրջաններին դիմակայող գործոն է, որի հետ իմպերիալիզմը չի կարող հաշվի չնստել։

Խաղաղության համար հանդես են գալիս արդիականության բոլոր հեղափոխական ուժերը։ Նախապատրաստելով պատերազմի, իմպերիալիզմը մարտահրավեր է նետում ամբողջ առաջադեմ մարդկությանը։ Բնական է, որ նրա դեմ հանդես են գալիս և՛ ներքին և՛ արտաքին հեղափոխական ուժերը, որոնց գործողությունների միասնությունն առաջնակարգ նշանակություն է ձեռք բերում։ «Միջազգային բանվոր դասակարգը պետք է համախմբի իր շարքերը, որպեսզի մարդկությանը փրկի նոր համաշխարհային պատերազմի աղետից։ Քաղաքական, կրոնական և այլ հարցերում ոչ մի տարբերություն չպետք է խոչընդոտի բանվոր դասակարգի բոլոր ուժերի համախմբմանն ընդդեմ պատերազմի վտանգի: Հասել է ժամը պատերազմի ուժերին հակադրելու միջազգային պրոլետարիատի բոլոր ջոկատների ու կազմակերպությունների հզոր կամքը և միասնական գործողությունները, նրա բոլոր ուժերը միավորելու հանուն պատերազմի կանխման և խաղաղության պահպանման»[1]:

Խաղաղության շարժման մասսայական և կազմակերպված բնույթի կոնկրետ դրսևորումն է այն, որ պատերազմի նախապատրաստության դեմ հանդես են գալիս Արհմիությունների համաշխարհային ֆեդերացիան (105 միլիոն անդամ), Կանանց միջազգային դեմոկրատական կազմակերպությունը (200 միլիոն անդամ), Դեմոկրատական երիտասարդության համաշխարհային ֆեդերացիան (85 միլիոն անդամ), Ուսանողների միջազգային միությունը (4 միլիոն անդամ)։

Հողագնդի աշխատավոր զանգվածների հակապատերազմական եռանդը անսպառ է։ Այն կարող է վիժեցնել միջազգային իմպերիալիզմի միլիտարիստական պլանները։ Համաշ-

[1] Կոմունիստական և բանվորական կուսակցությունների ներկայացուցիչների խորհրդակցության Հայտարարությունը, էջ 35։

խարհային բանվոր դասակարգի գործողությունների միասնությունը կախված է բոլոր կոմունիստական կուսակցությունների գործողությունների միասնությունից՝ պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների հիման վրա։ Վ. Ի. Լենինը գրում էր, որ կապիտալիզմը առաջացնում է մասսաների մասնատվածություն, անջատվածություն և բթացման պայմաններ, և այդ իսկ պատճառով, միասնության կարելի է հասնել միայն համառ աշխատանքով ու մեծագույն համբերությամբ. «...միջազգային մասշտաբով **միասնական գործողությունն** իրագործելու համար պահանջվում է ինչպես հիմնական գաղափարական հայացքների պարզություն, այնպես էլ գործողության այս կամ այն պրակտիկ եղանակների ճշգրիտ որոշակիություն»[1]։

Կոմունիստներն իրենց պատմական միսիան են համարում ոչ միայն այն, որ համաշխարհային մասշտաբով վերացնեն մարդու կողմից մարդու շահագործումն ու սոցիալական անհավասարությունը, ազգային խտրականությունն ու աղքատությունը, հասարակական կյանքից ընդմիշտ բացառեն ամեն մի պատերազմի հնարավորություն, այլև արդեն ներկա դարաշրջանում մարդկությանը փրկեն ջերմամիջուկային համընդհանուր պատերազմի վտանգից։ Այս խնդիրների պարզ ու նպատակասլաց բնույթը որոշում է գործնական միջոցառումների միասնությունը։ Այնպիսի պայմաններում, երբ իմպերալիստները միավորվում են հեղափոխական ուժերի դեմ և փորձում բռնության միջոցներով պահպանել իրենց իշխանությունը, խաղաղության համար մղվող պայքարում բոլոր կոմունիստական կուսակցությունների գործողությունների միասնությունը կարևորագույն գործոն է. «Միջազգային իրադրությունը հրամայաբար պահանջում է հակապատերազմական, հակաիմպերալիստական ուժերի, և առաջին հերթին սոցիալիզմի համաշխարհային սիստեմի երկրների ուժերի, միջազգային կոմունիստական, բանվորական և ազգային-ազատագրական շարժման բոլոր ջոկատների, խաղաղասեր ժողովուրդների և պետությունների, խաղաղության բոլոր կողմնա-

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 21, էջ 473։

կիցների՝ համախմբում անկախ նրանց քաղաքական հայացքներից և աշխարհայացքից»[1]։

Կոմունիստական գաղափարախոսությունը համամարդկային իդեալներ բովանդակող ուսմունք է, որի իրականացումն աշխատավորներին կազատի անմարդկային պայմաններից, որոնց մեջ ապրել են նրանք դարեր շարունակ։ Խաղաղության գաղափարը կոմունիստական աշխարհայացքի բաղկացուցիչ մասն է։ «Սոցիալիստները միշտ դատապարտել են պատերազմները ժողովուրդների միջև, որպես բարբարոսական և գազանային բան»[2]։

Դիալեկտիկորեն վերլուծելով և իմաստավորելով ժամանակակից պատմական իրադրությունն իր առանձնահատուկ կողմերով, կոմունիստները նախանշեցին նոր համաշխարհային պատերազմը կանխելու ուղիներն ու միջոցները՝ դրա բնույթի փոփոխության պայմաններում։ Նրանք իրենց ուժերն ու եռանդը նվիրում են մարդկությանը համաշխարհային սպանդի մղձավանջից փրկելու մեծագույն խնդրի իրագործմանը։

* * *

Մեր դարը բնութագրվում է բուռն քաղաքական իրադարձություններով և սոցիալական խոր վերափոխություններով։ Աննախընթաց աճել է բնակչության լայն շերտերի քաղաքական ակտիվությունը և հակաիմպերիալիստական շարժումների մեջ նրանց գործուն մասնակցության հասարակական հետևանքների նշանակությունը։ Այս պայմաններում, ինչպես երբեք, քաղաքական որոշակի գործոն է դարձել հասարակական կարծիքը։ Պետությունների միջև տեղի ունեցող ամեն մի միջադեպ, քաղաքական և ռազմական ամեն մի որոշում, որը ընդունվում է հողագնդի տարբեր կողմերում, համընդհանուր նշանակություն են ձեռք բերում։ Իմպերիալիզմի ձեռնարկած

---

1 ՍՄԿԿ XXIII համագումարի բանաձևը։ «Հայաստան» հրատ. 1966, էջ 10։

2 Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 21, էջ 378։

ամեն մի ռազմական գործողություն ուղեկցվում է գլոբալ հետևանքներով։ Ժամանակակից դարաշրջանում հակապատերազմական բոլոր խմբերին և կազմակերպություններին հատուկ է ոչ թե իրադարձությունների պասսիվ ընկալումը, այլ նպատակասլաց ու անզիջում, գործնական ակտիվ պայքարը՝ պատերազմի ուժերի դեմ։ Միջազգային իմպերիալիզմի կառավարող շրջանները չեն կարող անտեսել հասարակական կարծիքը։ Նրանք իրենց միլիտարիստական գործողությունները քողարկում են դեմագոգիկ դարձվածքներով, փորձելով ապակողմնորոշել հասարակական կարծիքը։ Այդ ուղղությամբ առանձնապես շատ են ճգնում ԱՄՆ-ի իշխող ուժերը։ Կապիտալիստական հասարակությունը սոցիալապես միատարր չէ և բզկտվում է դասակարգային հակամարտություններից։ Այսպիսի իրադրության մեջ իմպերիալիզմի քաղաքական գործիչները չեն կարող գործառնություններ կատարել այնպիսի լոզունգներով, որոնց մեջ արտացոլվեն տիրապետող բուրժուազիայի դասակարգային նպատակներն ու իսկական ձգտումները։ Մասսաների շրջանում դրանք դրական արձագանք չեն գտնի և՛ երկրի ներսում, և՛ նրա սահմաններից դուրս։ Եթե երկրորդ համաշխարհային պատերազմի նախապատրաստության ընթացքում ֆաշիստական Գերմանիայում մասսաների գաղափարական մշակման եղանակները համեմատենք ներկա էտապում ԱՄՆ-ում մասսաների գաղափարական մշակման եղանակների հետ, ապա կարելի է հայտնաբերել հետևյալ փոխակերպությունը։ Բորբոքելով ռասիզմի վակխանալիա, ֆաշիստներին հաջողվեց կուրացնել գերմանական ժողովրդի մեծամասնությանը և նրան նետել արյունահեղ պատերազմի մսաղացը։ Ռասիստական գաղափարախոսության թունավոր շոշափուկները, համաճարակի միկրոբների պես, թափանցեցին բանվորական միջավայր, օբյեկտիվորեն գերմանական պրոլետարիատի մեծ մասը վերածելով ֆաշիզմի գործիքի, որի հետևանքով գերմանական ժողովուրդն ազգային աղետ ապրեց։

Ի դեպ, Վ. Ի. Լենինը գրում էր, որ «Նույնիսկ ազատ Եվրոպական երկրներում ուտոպիական է համարվում այն

միտքը, թե կարելի էր կապիտալիզմի օրով բոլոր պրոլետարներին գիտակից սոցիալ-դեմոկրատներ դարձնել»[1]։

Իրադրությունը փոխվել է, խնդիրներն այլ են։ ԱՄՆ-ի մոնոպոլիստական բուրժուազիայի քաղաքական ղեկավարությունը չի կարող ժառանգել ռասիստական կոնցեպցիան, որի սնանկությունը գործնականորեն ապացուցված է և նրա ռգեշնչողներն ու տարածողները քաղաքականապես ջախջախված։ Բացի դրանից, ազգային կազմով ոչ միատարր այնպիսի մի երկրում, ինչպիսին ԱՄՆ-ն է, ռասիզմը հազիվ թե գործնական արդյունքի հասցնի։ Նոր ժամանակները և պայմանները պահանջում են մասսաներին գաղափարական մշակման ձևափոխված, համեմատաբար հղկված տարբերակներ։ Այսպես կոչված «ամերիկյան ապրելակերպի» վերաբերյալ ԱՄՆ-ի քաղաքական գործիչների պանիգիրիկ ելույթներում և ճառերում բացահայտորեն սկզբունքներ են հռչակվում «արևմտյան քաղաքակրթության պաշտպանության» և «ուրիշ երկրներին ինքնավարության ազատ իրավունք» տրամադրելու գործում ԱՄՆ-ի «հատուկ» միսիայի մասին։ Անփոփոխ է մնում գործնականորեն հերքված «կոմունիստական վտանգի» մասին լողունգը։ Արտաքուստ հրապուրիչ, բայց էությամբ կեղծ խաղաղասիրական հավաստիացումները, որպես կանոն, ուղեկցվում են բռնի միջոցների կիրառումով։ ԱՄՆ-ի տիրակալները խոսքով երդվում են խաղաղության գործին իրենց հավատարմության մասին, սակայն իրականում որպես միջազգային ժանդարմ, մահակն իրենց ձեռքից չեն գցում, որի օգնությամբ ջանում են ժողովուրդներին պարտադրել իրենց համար ցանկալի քաղաքական ռեժիմներ։

ԱՄՆ-ի մոնոպոլիստական բուրժուազիան բարձր շահույթներ է ձեռք բերել շահագործման, կապիտալի և ապրանքների արտահանման, ռազմական մատակարարումների հաշվին։ ԱՄՆ-ը պահպանում է իր առաջնությունը կապիտալիստական մյուս երկրների նկատմամբ՝ տնտեսական զարգացման տեսակետից։ Համաշխարհային պատերազմները նկատելի նյութական վնաս չեն բերել նրան։ Ամերիկ-

---

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 8, էջ 656։

յան մոնոպոլիաները պատերազմներից ավելի հարպակալած դուրս եկան։ ԱՄՆ-ի մոնոպոլիստական բուրժուազիան ավելի լայն մասշտաբներով սկսեց կաշառել բանվորներին։ Երկրի իշխող վերնախավը համեմատաբար բարձր կենսամակարդակը դարձրել է չարաշահելու առարկա, բնակչության լայն շրջաններում բորբոքելով ազգային սնապարծության զգացմունքներ։ Նա մանիպուլիացիա է անում մարդկության առջև ԱՄՆ-ի ինչ-որ միսիա կատարելու մեծախոս հավակնություններով։ Ամերիկյան ժողովրդի մի մասի շրջանում պրոպագանդիստական այս տրյուկները գտնում են իրենց հողը։

Զկրելով համաշխարհային պատերազմների ծանրությունն ու սարսափները, ամերիկյան ժողովուրդը դեռևս չի գիտակցել այն ուղղ վտանգավորությունը, որով նրան տանում են մոնոպոլիստական շրջանները։ «Այն ամերիկացիների թիվը, որոնք հետաքրքրվում են սպառազինությունների մրցավազքի կամ համաշխարհային պրոբլեմներով, պարզապես չնչին է»[1]։

ԱՄՆ-ի պրոլետարիատը քաղաքականապես հասուն չէ և գաղափարական հետամնացություն է ցուցաբերում։ Ճիշտ էր գնահատում իրավիճակը Ֆոստերը, ասելով. «ԱՄՆ-ի բանվոր դասակարգը կապիտալիստական աշխարհի միակ խոշոր բանվոր դասակարգն է, որ կազմակերպված չէ լայն, մասսայական քաղաքական կուսակցության մեջ։ Ամերիկյան բանվոր դասակարգը դեռևս գնում է կապիտալիստական կուսակցությունների ետևից, գտնվելով երկկուսակցական սիստեմի ծուղակի մեջ»[2]։

Ընդգծելով ներկա պատմական էտապում իմպերիալիզմի ագրեսիվության աննախադեպ աճը, չի կարելի շրջանցել հետևյալ հանգամանքը։ Ինչպես արդեն նշվեց, որքան ավելի հզոր ու կատարյալ է զենքը, այնքան ավելի է նվազում այնպիսի գործոնի դերը պատերազմում, ինչպես մարդկանց քանակական մեծությունն է։ Այդպիսի իրավիճակը որոշ իմաստով ձեռնտու է իմպերիալիստներին։

---

[1] Ռ. Լեպպ. *Սպանություն և գերսպանություն, «Հայաստան» հրատարակչություն, 1965, էջ 186։*

[2] У. Фостер, Закат мирового капитализма, М., 1951, стр. 86—87.

Հավատարմորեն ծառայող, բարոյապես կայուն զինվոր պատրաստելը իմպերիալիստական բուրժուազիայի համար միշտ էլ պրոբլեմ է եղել։ Իսկ որքան մեծ է զինվորների թիվը, այնքան շատ են միլիտարիստների հոգսերը։ Ժամանակակից ռազմական տեխնիկայի պայմաններում իմպերիալիստների կողմից բարձր վարձատրվող մասնագիտացված զինվորների սահմանափակ մի խումբ կարող է հնազանդորեն կատարել միլիտարիստական վերնախավի կամքը։ Այդ հանգամանքը հնարավոր է դարձնում կապիտալիստական վերնախավի քիչ պարտավորեցնող միակողմանի ռազմական որոշումներ կայացնելը։

Այստեղից բխում է, որ համընդհանուր խաղաղությունն ապահովելու հնարավորությունը մեծ մասամբ կախված է ամերիկյան իմպերիալիզմի ռազմատենչ պլաններին մարդկության խաղաղասեր ուժերի դիմակայելու աստիճանից։ Եթե խոսել ինչ-որ միսիայի մասին, ապա պատմությունն այդպիսի միսիա է դրել ամերիկյան բանվոր դասակարգի վրա, որը պոտենցիալ հակապատերազմական ուժ է։ Բայց քանի դեռ նա քաղաքականապես կազմակերպված չէ, չի գիտակցել իր համադասակարգային շահերը և համապատասխանաբար խաղաղության համար պայքարելու կենսական խնդիրը, երկրի քաղաքական կյանքում լուրջ հակաիմպերիալիստական գործոն լինել չի կարող։ «Մինչև որ ամերիկյան բանվոր դասակարգը չունենա իր անկախ քաղաքական կուսակցությունը, նա չի կարող հաջողությամբ պայքարել տրեստների ագրեսիայի դեմ, արդյունավետ կերպով պաշտպանել բանվորների շահերը և ղեկավար դերը գրավել ամերիկյան ժողովրդի մեջ, ինչին ավելի ու ավելի է նրան հարկադրում իրադրությունների ընթացքը»[1]։ Հետևաբար, այնպիսի սուբյեկտիվ գործոնի բացակայությունը, ինչպիսին մասսայական, կազմակերպված և հասարակության աշխատավոր շերտերի շրջանում մեծ հեղինակություն վայելող քաղաքական կուսակցությունն է, ազատում է ԱՄՆ-ի իմպերիալիստների ձեռքերը, նրանց համար համեմատաբար ազատ գործելու հնարավորություն

---

[1] **У. Фостер,** Закат мирового капитализма, стр. 88.

ստեղծում։ Անտարակույս, մոտ ժամանակներս այդ ասպարեզում չի կարելի շրջադարձ սպասել։ Ամերիկյան կոմունիստների նկատմամբ իրականացվող կատաղի հալածանքները մի շարք տարիների ընթացքում լուրջ դիմադրության չեն հանդիպում ԱՄՆ-ի բանվոր դասակարգի կողմից։ Նույնիսկ ԱՄՆ-ի միլիտարիստական շրջանների բացահայտ ագրեսիվ ձեռնարկումները քաղաքական իներտությունից դուրս չեն բերում երկրի բանվոր դասակարգին, որի առանձին շերտերի մոտ մի կտոր հացի փիլիսոփայությունը գերակշռում է մյուս բոլոր դատողությունների նկատմամբ։

Այս ֆոնի վրա ավելի ակնհայտորեն է դրսևորվում սոցիալիզմի տնտեսական հաջողությունների նշանակությունը։ Կապիտալիզմի նկատմամբ սոցիալիզմի վճռական առավելությունների գործնական հաստատումը, ՍՍՀՄ-ում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումն անխուսափելիորեն կբազմապատկեն հեղափոխական ուժերը կապիտալիստական երկրներում։ Երբ սովետական հասարակության յուրաքանչյուր քաղաքացի օգտվի կոմունիզմի բոլոր բարիքներից, սոցիալիզմը վճռական գերազանցության հասնի կապիտալիզմի նկատմամբ նյութական արտադրության ոլորտում և ապահովի ամենաբարձր կենսամակարդակն աշխարհում, իմպերիալիզմի ջատագովների «ամերիկյան ապրելակերպի» վերաբերյալ սոցիալական դեմագոգիան առարկայազուրկ կդառնա։ Կբազմապատկվի կապիտալիստական բոլոր երկրների, այդ թվում ԱՄՆ-ի բանվորների հեղափոխական եռանդը և դրանով իսկ կարագանա սոցիալական առաջընթացը։ «ՍՍՀՄ-ում կոմունիզմի կառուցումը կլինի մարդկության մեծագույն հաղթանակը նրա ամբողջ բազմադարյան պատմության ընթացքում։ Դեպի կոմունիզմի շողշողուն գագաթներն արվող յուրաքանչյուր նոր քայլ... արագացնում է մարքսիզմ-լենինիզմի գաղափարների հաղթանակը համաշխարհային մասշտաբով»[1]։

Կոնկրետ օրինակի ուժով, ամերիկյան պրոլետարիատի վրա սոցիալիզմի հեղափոխականացնող ազդեցության հետե-

---

[1] ՍՄԿԿ ծրագիրը, էջ 170։

ձանքով կաճի նրա քաղաքական ակտիվությունն ու գիտակցական մակարդակը։ ԱՄՆ-ի պրոլետարիատը մոնոպոլիաներին կհակադրի իր խաղաղասիրական, հեղափոխական կամքն ու եռանդը, աստիճանաբար վերածվելով երկրի քաղաքական կյանքի էական գործոնի։ Այստեղից հետևում է, որ ժամանակակից իրադրության մեջ հեղափոխական, հակապատերազմական ուժերի հակաիմպերիալիստական պայքարի հեռանկարների տեսակետից որոշակի դեր է խաղում արտաքին գործոնը, որը կապիտալիստական աշխարհի ներքին հակաիմպերիալիստական ուժերի վրա իր դինամիկ ներգործությամբ կարող է արագացնել միլիտարիստական շրջանների մեկուսացումը։ Այդ ներգործությունը օբյեկտիվ պրոցես է։ Այն բացառում է ամեն մի արտաքին միջամտություն։ Կոմունիստական շինարարության ծրագրի նյութական մարմնավորումն օբյեկտիվորեն հեղափոխականացնող ներգործություն է ունենում կապիտալիզմի լծի տակ ապրող աշխատավորների վրա։

Կապիտալիստական երկրներում գործող ներքին հակաիմպերիալիստական ուժերի և այնպիսի հզոր արտաքին հակապատերազմական հեղափոխական գործոնի, ինչպիսին համաշխարհային սոցիալիզմն է, գործողությունների միասնությունը և պատերազմի հրձիգների վրա համատեղ ճնշումը մեծագույն հակամիլիտարիստական գործոն է։

* * *

Կապիտալիստական աշխարհի ներսում, բացի առաջադեմ ուժերի գործունեությունից, այնպիսի բաժանարար տենդենցներ են դրսևորվում, որոնք ընդլայնում են խաղաղությունը պահպանելու հնարավորությունները։ Դրանց աղբյուրներն են ժամանակակից պատերազմի բնույթի արմատական փոփոխությունը և տնտեսական, քաղաքական և ռազմական բնագավառներում դրսևորվող միջիմպերիալիստական հակասությունները։

Միլիտարիստական տենդը համակել է զինվորականության վրա հենվող խոշոր մոնոպոլիստական բուրժուազիային։

Սակայն զարգացած կապիտալիստական երկրների բուրժուազիայի որոշ ներկայացուցիչներ զգաստորեն գնահատելով ուժերի հարաբերակցությունը և ջերմամիջուկային պատերազմի աղետաբեր բնույթը, հանդես են գալիս որպես քաղաքականության չափավոր կուրսի կողմնակից։ Արևմտյան երկրների բուրժուազիայի չափավոր շրջաններում ատոմային պատերազմից խուսափելու տենդենց է դրսևորվում։ Բուրժուազիայի ոչ միատարրությունն առաջ է բերում խաղաղության և պատերազմի պրոբլեմի նկատմամբ ոչ միատեսակ վերաբերմունք։ Այդ հիման վրա հակասություններ են ծագում այսպես կոչված «կատաղիների» և ջերմամիջուկային պատերազմի կործանարար հետևանքները գիտակցող, քաղաքականության չափավոր կուրսի կողմնակիցների միջև։

Ժամանակակից պայմաններում պատերազմի անհեթեթության գաղափարն իր արտացոլումն է գտնում Ռայտ Միլսի «Երրորդ համաշխարհային պատերազմի պատճառները» գրքում. «Համընդհանուր պատերազմի միջոցով քաղաքական նպատակներին հասնելն անհնարին է։ Այդպիսի պատերազմը չի կարող ծառայել ամեն մի ազգի իսկական ազգային շահերին»— հայտարարում է նա։

Անկասկած սահմանափակ է բուրժուական պացիֆիզմը։ Բայց եթե այն չի վերածվում երկերեսանի շաղակրատանքի, դրական որոշ տարրեր է բովանդակում։ «Մենք անտարբեր չենք, արդյոք գործ ունենք բուրժուական լագերի այն ներկայացուցիչների հետ, որոնք հարցի ռազմական լուծմանն են ձգտում, թե՝ բուրժուական լագերի այն ներկայացուցիչների հետ, որոնք պացիֆիզմի են ձգտում, թեկուզ այն լինի ամենավատ և կոմունիզմի տեսանկյունից անգամ քննադատության սովերին չդիմացող»[1]։

Կործանարար ջերմամիջուկային պատերազմի վտանգը ուժեղացնում է մարդկային հասարակության խաղաղասեր ուժերի կամքն ու ջանքերը՝ մոնոպոլիստական շրջանների մարտատենչ կրքերը զսպելու համար։ Մյուս կողմից՝ պատերազմի **բնույթը**, որպես դարաշրջանի օբյեկտիվ գործոն ճնշում

---

[1] **В. И. Ленин.** Полн. собр. соч., т. 45, стр. 70.

է գործադրում զարգացած կապիտալիստական տերությունների տիրապետող դասակարգի քաղաքականության վրա, նրա մեջ բորբոքելով ինքնապահպանման բնազդը։ Արդիականության հեղափոխական ուժերի դեմ մղվող մոնոպոլիստական բուրժուազիայի պայքարի այնպիսի ձևի ընտրությունը, ինչպիսին հրթիռա-միջուկային պատերազմն է, խելացնոր, ինքնասպանության համանշանակ քայլ է։ Ուստի, ժամանակակից պայմաններում համաշխարհային պատերազմի բնույթը լրացուցիչ գործոն է խաղաղության համար մղվող համաժողովրդական պայքարում։ Այդ հանգամանքը չի թուլացնում խաղաղասեր ուժերի զգոնությունն ու կամքը։ Վերջինների գործունեությունը ծավալվում է այդ գործոնի հաշվառումով, որը հարաճուն նշանակություն է ձեռք բերում։

Չպետք է անտեսել նաև այնպիսի օրինաչափություն, ինչպես կապիտալիստական աշխարհը ծվատող ներիմպերիալիստական հակասություններն են։ Ժամանակակից աշխարհի հիմնական հակասությունը՝ սոցիալիզմի և կապիտալիզմի հակասությունը, չի վերացնում իմպերիալիստական երկրների միջև գործող հակամարտությունը։ Միջկապիտալիստական հակասությունները դրսևորվում են միջազգային պետական մոնոպոլիստական միավորումների, ագրեսիվ ռազմա-քաղաքական խմբավորումների մեջ համաշխարհային քաղաքականության բազմապիսի հարցերում։ Չխորանալով այդ հակասությունների բոլոր երանգների և դրսևորումների մեջ, որոնք բախումների օջախներ են առաջացնում իմպերիալիստական աշխարհում, կոնկրետ կապի մեջ դիտենք դրանց նշանակությունը արդիականության արմատական պրոբլեմը լուծելու տեսանկյունից։

Հակակոմունիստական, ռեակցիոն ուժերի ինտեգրացումը գերիշխող տենդենց է իմպերիալիստական աշխարհում։ Եթե երկու համաշխարհային պատերազմների նախապատրաստական ժամանակաշրջաններին հատուկ էր իմպերիալիստական պետությունների թշնամական կոալիցիաների ստեղծումը, ապա ներկայումս համադասակարգային շահերով ղեկավարվող իմպերիալիստները համախմբվում են հակակոմունիս-

տական խմբավորումների մեջ։ Դա մի կողմից՝ իմպերիալիզմի աճած ագրեսիվության դրսևորումն է, մյուս կողմից՝ ուժեղացնում է նոր պատերազմի սպառնալիքը։ Սակայն իմպերիալիստական կապերի և փոխհարաբերությունների բնույթը համաշխարհային տնտեսության և քաղաքականության մեջ այնպիսին է, որ իմպերիալիստական տարբեր պետությունների ազգային մոնոպոլիաների շահերը պարբերաբար բախվում են, կապիտալիստական աշխարհում պառակտում առաջացնելով։

Ներկայումս ԱՄՆ-ը, որպես իմպերիալիստական սիստեմի առաջատար տերություն, գրավել է հումքի կարևորագույն աղբյուրները, վաճառահանման շուկաները և կապիտալի ներդրման ոլորտները, դառնալով ամենախոշոր համաշխարհային շահագործողը։ Ամերիկյան մոնոպոլիաները բացահայտորեն ներխուժում են իրենց արևմտաեվրոպական և ասիական դաշնակիցների տրադիցիոն ազդեցության ոլորտները։ ԱՄՆ-ը փորձում է իր պարտնյորներին պարտադրել ռազմա-քաղաքական որոշումներ, նրանց վերածել իր կամակատարների։ Քաղաքական այս կուրսը, որ էքսպանսիոնիստական բովանդակություն ունի, հակասում է կապիտալիստական մյուս երկրների շահերին և չի կարող հակաազդեցություն չառաջացնել։

Ժամանակակից պայմաններում միջիմպերիալիստական հակասությունները դրսևորվում են մի կողմից՝ որպես հակասություններ ԱՄՆ-ի և կապիտալիստական մյուս պետությունների և մյուս կողմից՝ տարբեր կապիտալիստական դաշինքների անդամների միջև։ Բնորոշ է, որ չափավոր արտաքին քաղաքական կուրս վարելու տենդենցն ամենից շատ դրսևորվում է արևմտաեվրոպական պետություններում, բացառությամբ Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետությունից, որտեղ ռևանշիստական շմուլքն ավելի ու ավելի է բթացնում դրա տիրակալներին։ Արևմտյան Գերմանիայի ռազմա-տնտեսական հզորության աճը տագնապ է առաջացնում կապիտալիստական Եվրոպայի մյուս պետությունների պաշտոնական շրջաններում։ Չպետք է մոռանալ, որ ներկայումս տնտեսական պոտենցիալով Արևմտյան Գերմանիան գերազանցում է իր եվրոպական դաշնակիցներին։ Արդյոք այս փաստն այն ճշմարտության

հաստատումը չէ, որ համաշխարհային պատերազմի հիմնական օջախները ներկայումս տնտեսապես ամենազարգացած կապիտալիստական երկրներն են՝ ԱՄՆ-ը և ԳՖՀ-ն։ Հետպատերազմյան տարիներին պարտված իմպերիալիստական պետությունների էկոնոմիկայի վերականգնումը հանգեցնում է իմպերիալիստական մրցակցության և կոնֆլիկտների հին հանգույցների վերածնմանն ու նորերի առաջացմանը։ «Իմպերիալիզմի լագերում անխուսափելիորեն կառաջանան ու կխորանան նոր հակասություններ»[1]։

Մի բան անվիճելի է, որ միջսիստեմային դասակարգային պայքարի անչափ սրման արդի պայմաններում միջիմպերիալիստական հակասությունները չեն կարող որոշել իրադարձությունների ընթացքը։ Սակայն, այդ հակասությունները իմպերիալիստներին խանգարում են միասնական գործողություններ ծավալել, օբյեկտիվորեն նպաստում են խաղաղության համար մղվող պայքարին, միջազգային ռեակցիայի ագրեսիվ դիտավորությունների խափանմանը։

Այսպիսով, երկրորդ համաշխարհային պատերազմից հետո միջազգային հարաբերություններում ստեղծվել է պատմական այնպիսի իրադրություն, որ պատերազմների ճակատագրական անխուսափելիություն չկա։ «Այժմ կան հասարակական և քաղաքական հզոր ուժեր, որոնք լուրջ միջոցներ ունեն, որպեսզի թույլ չտան իմպերիալիստների կողմից պատերազմի սանձազերծում, իսկ եթե վերջիններս փորձեն պատերազմ սկսել, խորտակիչ հակահարված տան ագրեսորներին, վիժեցնեն նրանց ավանտյուրիստական պլանները»[2]։

## 3. Խաղաղ գոյակցությունը որպես օրինաչափություն և պատմական անհրաժեշտություն

Աշխարհը երկու իրարամերժ սոցիալ-տնտեսական սիստեմների տրոհվելուց հետո միջազգային հարաբերություններում սկսեցին դրսևորվել նոր օրինաչափություններ։ Հասարա-

---

1 ՍՄԿԿ ծրագիրը, էջ 37։

2 ՍՄԿԿ XX համագումարի բանաձևը, Հայպետհրատ, 1956, էջ 12—13։

կական օրենքները կոնկրետ պատմական բնույթ ունեն։ Սոցիալական ձևերի դինամիկայում դրսևորվում է այդ օրենքների անհարատևությունը։ Գոյանալով հնի ընդերքում, նորը հասարակական կյանքում անկասելիորեն զարգանում է լայնությամբ և խորությամբ։ Այն փոխարինում է հնին ոչ թե անհիվանդագին և սահուն կերպով, այլ պայքարի մեջ, հակասությունների հաղթահարման ճանապարհով։ Այդ պայքարի ձևերը կախված են օբյեկտիվ պայմաններից և դրա մեջ մասնակցող սոցիալ-դասակարգային ուժերի հարաբերակցությունից։

Հասարակության զարգացման վերընթաց բնույթն ընդհանուր սոցիոլոգիական օրենք է։ Այն իր դրսևորումն է գտնում հասարակական տնտեսական ֆորմացիաների հերթափոխության մեջ։ Բայց այդ հերթափոխությունը միաժամանակյա պրոցես չէ։ Պատմական փորձը հաստատում է, որ արտադրողական ուժերի զարգացումը տարբեր երկրներում միատեսակ տեմպերով չի ընթանում, և հետևապես, նոր սոցիալական ստրուկտուրաների կազմավորման օբյեկտիվ պայմանները առաջանում են տարբեր ժամանակ։ Բոլոր ժողովուրդներն անցան տոհմային հասարակարգով։ Մինչդեռ նախնադարյան-համայնական հասարակության գոյապայմաններից անցումը ստրկատիրական դասակարգային հասարակությանը անհամաչափ էր կատարվում։ Սկզբում դասակարգային հասարակություն ծնվեց Եգիպտոսում և Միջագետքում՝ մեր թվարկությունից առաջ չորրորդ հազարամյակի վերջին և երրորդի սկզբին։ Իսկ հողագնդի շատ վայրերում, առանձնապես Հյուսիսի անտառամասերում և արևադարձային շրջաններում, ինչպես նաև ամբողջ ամերիկյան մայրցամաքում ու Ավստրալիայում պահպանվում էր տոհմային հասարակարգը։ Մեր թվարկությունից առաջ երկրորդ հազարամյակում նախնադարյան-համայնական հարաբերությունների քայքայման և ստրկատիրական հարաբերություններին անցման պրոցես էր կատարվում Հնդկաստանում, Չինաստանում, Էգեյան ծովի ավազանում և Փոքր Ասիայում։

Ոչ միաժամանակ ծագեցին և ձևավորվեցին նաև ֆեոդալական հարաբերությունները։ Միջին դարերում եվրոպական և

տարական մայրցամաքների մեծ մասում իշխում էին ֆեոդալական կարգերը, այն ժամանակ, երբ Աֆրիկայի, Ամերիկայի և Ավստրալիայի տերիտորիաներում պահպանվում էին ստրկատիրական, նույնիսկ տոհմային հարաբերությունները։ Կապիտալիստական արտադրական հարաբերությունների զարգացման տեմպերն ու մասշտաբները գերազանցում էին տոհմայինից ստրկատիրականին և վերջինից ֆեոդալական հասարակարգին անցնելու տեմպերը և մասշտաբները։ Կապիտալիզմի տիրապետության օրոք նույնպես շատ երկրներում պահպանվում էին ֆեոդալական և նախաֆեոդալական հարաբերությունները։ Այսպես, 16—18-րդ դարերում Հոլանդիայում, Անգլիայում ու Ֆրանսիայում հաղթանակեցին կապիտալիստական հարաբերությունները, իսկ Ռուսաստանը դեռևս ֆեոդալական, ճորտատիրական պետություն էր։

Այսպիսով, տարբեր երկրների ու ժողովուրդների անհամաչափ զարգացումը նախակոմունիստական սոցիալական հարաբերությունների պատմության առանձնահատկությունն է, որ որոշում է հասարակական-տնտեսական ֆորմացիաների գոյակցության անխուսափելիությունը պատմական որոշակի ժամանակաշրջաններում։

Հասարակական զարգացման պրոցեսում հնից նորին անցնելու օրինաչափությունը ժամանակակից պայմաններում դրսևորվում է կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու մեջ, որը նույնպես տարբեր ժամանակ է կատարվում։

Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը մինչմոնոպոլիստական կապիտալիզմի պայմաններում կոմունիզմի հաղթանակը դիտում էին որպես միաժամանակյա պրոցես։ «Կոմունիզմը գործնականում հնարավոր է միայն որպես տիրապետող ժողովուրդների կողմից «միանգամից», միաժամանակ իրականացվող գործողություն»[1], կոմունիստական հեղափոխությունը կիրագործվի միաժամանակ բոլոր քաղաքակրթված երկրներում։

Նման դիրքորոշումը ժամանակի պայմանների ադեկվատ արտացոլումն էր։ Մարքսը և Էնգելսը դիալեկտիկորեն վերլուծելով կոնկրետ իրավիճակը, իհարկե, հնարավոր էին համա-

---

[1] К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 3, стр. 34.

րում սոցիալիստական հեղափոխության հաղթանակն այս կամ այն երկրում, սակայն կասկածի տակ էին առնում դրա նվաճումների երկարատև պահպանումը, քանի որ անհամեմատ մեծ տարածությունում բուրժուական հասարակությունը վերընթաց շարժում էր կատարում։ Բնական է, որ այդ իսկ պատճառով սոցիալիզմի և կապիտալիզմի գոյակցության գաղափարն այդ ժամանակ չէր կարող ծագել։

Երբ կապիտալիզմը թևակոխեց իր զարգացման իմպերիալիստական փուլը, նոր պայմաններ առաջացան, որոնց մեջ դրսևորվեցին նոր օրինաչափություններ։ Կապիտալիզմի տնտեսական ու քաղաքական ուժերի անհամաչափության օրենքի գործողությունն ստացավ որակապես նոր բնույթ։ Տնտեսական տեսակետից դա նշանակում է իր էությամբ անհամամասնական զարգացում, որը կապիտալիստական տնտեսության մեջ առաջացնում է ուժերի հարաբերակցության մշտական և պարբերաբար խախտումներ։

Տնտեսական ուժերի զարգացման անհամաչափությունն իր արտացոլումն է գտնում քաղաքական ուժերի անհամաչափ հասունացման ու զարգացման մեջ։ Ամբողջովին վերցրած, պետական կյանքի երկու կողմերի անհամաչափ զարգացումն ուղեկցվում է, վերջին հաշվով, տնտեսական, քաղաքական ու ռազմական աղետներով։

Կապիտալիզմի անհամաչափ զարգացումն առաջացնում է սոցիալիստական հեղափոխության օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոնների ոչ միաժամանակ հասունացում։ Կապիտալիզմի շղթան պատռվում է այն օղակներում, որոնք իրադարձությունների տրամաբանությամբ թուլանում են։ Այստեղ կարևորը երկրի տնտեսական զարգացման աստիճանը չէ։ Ամեն ինչ կախված է ներքին և արտաքին պայմաններից, սոցիալական հակասությունների սրության աստիճանից և դասակարգային ուժերի հարաբերակցությունից։

Մոնոպոլիստական կապիտալիզմի պայմաններում սոցիալիստական հեղափոխության նյութական նախադրյալների տարբեր ժամանակ հասունացման հետևանքով, անհնարին է դառնում նրա միաժամանակյա հաղթանակը բոլոր կամ հիմնական կապիտալիստական երկրներում։ «Կապիտալիզմի զար-

գացումը տարբեր երկրներում վերին աստիճանի անհամաչափ է կատարվում։ Այլ կերպ չի էլ կարող լինել ապրանքային արտադրության պայմաններում։ Այստեղից բխում է այն անխախտ եզրակացությունը, որ սոցիալիզմը չի կարող հաղթել բոլոր երկրներում միաժամանակ։ Նա կհաղթի սկզբում մեկ կամ մի քանի երկրներում, իսկ մնացած երկրները մի որոշ ժամանակ կմնան բուրժուական կամ մինչբուրժուական»[1]։

Սոցիալիզմի և կապիտալիզմի գոյակցության անխուսափելիության գաղափարը Վ. Ի. Լենինը առաջ է քաշել դեռ մինչև սոցիալիստական հեղափոխության հաղթանակը մեր երկրում, այսինքն՝ համաշխարհային կապիտալիզմի համապարփակ տիրապետության պայմաններում։ Այն բխում է սոցիալիստական հեղափոխության լենինյան տեսությունից։

Կապիտալիզմից սոցիալիզմին անցնելն ընդգրկում է մի ամբողջ պատմական դարաշրջան, որի ընթացքում սոցիալիստական և կապիտալիստական պետությունների գոյակցությունն անխուսափելի է, քանի որ այն ադեկվատորեն արտացոլում է համաշխարհային ասպարեզում օբյեկտիվորեն առաջացած իրադրությունը։ Նշանակում է, որ տարբեր սոցիալական կարգ ունեցող պետությունների գոյակցությունը ոչ թե այս կամ այն քաղաքական գործչի և տեսաբանի բարեմիտ հնարանք է, այլ որոշակի պատմական պայմաններում դրսևորվող օբյեկտիվ օրինաչափություն։

Վերևում նշվեց, որ անցած հասարակական-տնտեսական ֆորմացիաների գոյակցությունը պատմական փաստ է։ Սակայն, բնորոշ է, որ սկսած ստրկատիրական հարաբերություններից, իրար հերթափոխող անտագոնիստական հասարակարգերը զարգանում էին միևնույն հիմքի՝ արտադրամիջոցների մասնավոր սեփականության և շահագործման վրա։ Այս իմաստով, միևնույն սոցիալական հիմքերի վրա խարսխվող սիստեմների գոյակցության դրսևորումներն այլ էին։ Ասենք, ֆեոդալիզմից կապիտալիզմին անցնելու դարաշրջանի պատմությունը լի է պատերազմներով, արյունահեղությամբ։ Կա-

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 23, էջ 94։

պիտալիզմի համաշխարհային սիստեմը ձևավորվում և զարգանում էր այն կազմավորող պետությունների միջև տեղի ունեցող կատաղի պայքարի պայմաններում։ Մինչդեռ իր խաղաղասեր հումանիստական բնույթի շնորհիվ, կապիտալիզմի խորտակման համար սոցիալիզմը չի ընդօրինակում այն մեթոդը, որի օգնությամբ բուրժուազիան նյութականացնում էր իր գաղափարները։ Նրա զենքը կապիտալիզմի նկատմամբ ունեցած գերազանցությունն է հասարակական կյանքի բոլոր ոլորտներում։

Աշխարհը մի միասնական կապակցված ամբողջություն է։ Հակադիր սկզբունքներով ապրող և զարգացող տարբեր սոցիալական կարգի քաղաքական կուրսի վրա ճնշում են գործադրում դարաշրջանի օբյեկտիվ տենդենցները։ Ոչ մի պետություն չի կարող զարգանալ մեկուսացված, համաշխարհային կապերից և հարաբերություններից դուրս, անկախ այն բանից, թե այն ո՞ր դասակարգի քաղաքական կազմակերպությունն է։ «Կա ավելի մեծ ուժ, քան թշնամի կառավարություններից կամ դասակարգերից ամեն մեկի ցանկությունը, կամքն ու վճիռը. այդ ուժը համաշխարհային ընդհանուր տնտեսական հարաբերություններն են, որոնք նրանց ստիպում են ոտք դնելու մեզ հետ հարաբերություններ պահպանելու այդ ուղին»[1]։

Համաշխարհային զարգացման տնտեսական տենդենցները ավելի ցայտուն կերպով և հստակորեն են դրսևորվում բարձր տեխնիկական բազայի վրա կառուցվող արտադրության հասարակական բնույթի պայմաններում։ Դա սոցիալիստական և կապիտալիստական սիստեմների գոյակցության օբյեկտիվ հիմքերից մեկն է։

Սոցիալիզմը հասարակության կազմակերպման այնպիսի ձև է, որը բացառում է միլիտարիզմն ու արտաքին քաղաքական անարդարացի գործողությունների որևէ տարր։ Այդ հանգամանքը պայմանավորում է նրա քաղաքականության ակտիվ խաղաղասիրական կուրսը։ Խաղաղության գործին նա տրամադրում է իր նյութական հնարավորություններն ու բարո-

---

[1] Վ. Ի. Լենին, *Երկեր, հատ. 33, էջ 172։*

յական ներգործության ուժը։ Դա սիստեմների գոյակցության մյուս օբյեկտիվ հիմքն է։

Պատմական փաստերը ցույց են տալիս, որ չնայած միևնույն սոցիալական բնույթին, կապիտալիստական պետությունների համագործակցությունն ու փոխհարաբերությունները կառուցվում են շահերի անտագոնիզմի վրա։ Այդ համագործակցությունը կայուն, հարատև վիճակ չէ։

Սոցիալիստական պետության ծագումից և՛ առաջ, և՛ հետո ներիմպերիալիստական հակասությունները զինված բախումներ էին առաջացնում կապիտալիստական տերությունների տարբեր խմբավորումների միջև։ Այդ տեսակետից գոյակցությունն ունի մեկ ուրիշ կողմ։ Եթե այն դիտենք միևնույն սոցիալական սիստեմի մեջ մտնող երկրների փոխհարաբերությունների տեսանկյունից, ապա կհայտնաբերվի այն օրինաչափությունը, որ մասնավոր սեփականատիրական հասարակական հարաբերությունները չեն կարող ապահովել հենց իրենց հիմքերի վրա զարգացող պետությունների խաղաղ գոյակցություն։ Գոյակցություն և խաղաղ գոյակցություն հասկացությունները նույնական չեն, միևնույն բովանդակությունը չունեն, միատեսակ վիճակ չեն արտացոլում միջազգային հարաբերություններում։ Անտագոնիստական ֆորմացիաների պատմությունը անառարկելիորեն հաստատում է այս դրույթը։ Նեղ էգոիստական շահերով ղեկավարվող շահագործող դասակարգերը խաղաղ գոյակցել ի վիճակի չեն։ Ե՛վ ստրկատիրական, և՛ ֆեոդալական, և՛ կապիտալիստական հասարակարգերի օրոք պետությունների գոյակցությունը պայմանական վիճակ է։

Խաղաղ գոյակցությունը միջազգային քաղաքականության այնպիսի սկզբունք է, որը ենթադրում է որոշակի նորմաների պահպանում միջպետական հարաբերություններում։ Խաղաղ գոյակցել, նշանակում է հրաժարվել պատերազմից, որպես միջպետական հակասությունների լուծման միջոցի և վիճելի հարցերը լուծել բանակցություններով, կողմերի իրավահավասարություն, փոխըմբռնում և վստահություն պետությունների միջև, հարգել և հաշվի առնել մեկը մյուսի շահերը և չմիջամտել միմյանց ներքին գործերին, ճանաչել ամեն մի ժողո-

վերդի իրավունքն՝ ինքնուրույն կերպով լուծելու իր ներքին կյանքի հարցերը, խիստ կերպով հարգել բոլոր երկրների սուվերենությունն ու տերիտորիալ ամբողջականությունը, զարգացնել տնտեսական և քաղաքական համագործակցությունը պետությունների միջև՝ լրիվ հավասարության և փոխադարձ շահավետության հիման վրա։

Այսպիսով, խաղաղ գոյակցությունը մշակված և կյանքում հաստատված միջազգային իրավական նորմաների և քաղաքական վարքագծի կանոնների պահպանում է։

Հայտնի է, որ անտագոնիստական հասարակություններում պետության երկու ֆունկցիաների (ներքին և արտաքին) մեջ դրսևորվում են շահագործող փոքրամասնության դասակարգային շահերը։ Շահագործողական պետության արտաքին ֆունկցիան իր տերիտորիան և շահերը ուրիշ պետություններից պաշտպանելն է կամ ի հաշիվ ուրիշ պետությունների և ժողովուրդների ընդարձակելը։ Այդպիսի գործունեությունը բխում է անտագոնիստական պետությունների երեք պատմական տիպերի տնտեսական հիմքից՝ արտադրության միջոցների մասնավոր սեփականությունից և դրանից բխող շահագործումից։ Հետևաբար, մասնավոր սեփականատիրական հասարակական հարաբերությունների պայմաններում բացակայում են պետությունների խաղաղ գոյակցության օբյեկտիվ հիմքերը, որի հետևանքով այս սկզբունքը օտար է անտագոնիստական պետություններին և գործնականորեն անիրագործելի։ Այդ ֆոնի վրա միանգամայն բացատրելի է, թե ինչու նախամարքսյան հումանիստ մտածողների՝ հավիտենական խաղաղության և խաղաղ գոյակցության մասին առաջադրած ծրագրերն ու նախագծերը պատրանքային, վերացական, ուտոպիստական գաղափարներ էին բովանդակում։

Պետությունների խաղաղ գոյակցության ռեալ հնարավորությունը ձևավորվում է այն ժամանակ, երբ պատմականորեն վերջին շահագործողական ֆորմացիային անխուսափելիորեն փոխարինելու է գալիս սոցիալիզմը՝ արտադրության միջոցների մասնավոր սեփականության հակոտնյան։

Քանի որ սոցիալիստական պետության էությունն ու դասակարգային կառուցվածքը բացառում են պատերազմի աըն-

տեսական ազդակներն ու դրա մեջ շահագրգռված հասարակական խմբերի գոյությունը, բնականաբար, խաղաղ գոյակցությունը սոցիալիստական երկրների արտաքին քաղաքական գործունեության ուղղություններից մեկն է։

Այսպիսով, ստրկատիրական հասարակարգից ֆեոդալականին և ֆեոդալականից կապիտալիստականին անցնելու ժամանակաշրջաններում փոխվում էին միայն արտադրական հարաբերությունների պատմական տիպերը, մինչդեռ դրանց ձևն ու բնույթը պահպանվում էին։ Մի շահագործող դասակարգին փոխարինում էր մեկ ուրիշը և պատերազմների տնտեսական խթաններն ու դասակարգային կրողները պահպանվում էին։ Այդպիսի պայմաններում խաղաղ գոյակցության սոցիալական հողը բացակայում էր։ Մասնավոր սեփականատիրական տարբեր սոցիալական սիստեմներին պատկանող, ծնվող և մեռնող շահագործողական պետությունները, ինչպես նաև միևնույն անտագոնիստական սիստեմին պատկանող երկրները մշտական հակամարտության մեջ են գտնվում։ Արտադրության միջոցների մասնավոր սեփականության տիրապետության պայմաններում հասարակական հարաբերությունների էական տարրը դասակարգային անտագոնիզմն է երկրի ներսում և միջպետական անտագոնիզմը՝ արտաքին ոլորտներում։

* * *

Խաղաղ գոյակցության գաղափարի տեսական հիմնավորումն ու գործնականորեն իրականանալի լինելը հնարավոր դարձավ կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու դարաշրջանում։ Սոցիալիզմը պետությունների խաղաղ գոյակցության նյութական կրողն է։

Կապիտալիզմի ընդերքից ծնված և նրա տնտեսական օրենքների գործողության, ներքին անտագոնիստական հակասությունների արգասիքը հանդիսացող սոցիալիստական հասարակարգը կապիտալիզմի բացասումն է։ Պարզ է, որ այդ երկու հասարակարգերի միջև չեն կարող չծագել այնպիսի սուր հակասություններ, որոնք բնութագրում են դրանց միջև խորացող պայքարի ամբողջ բովանդակությունը։ Անտեսել այդ հա-

կասության սկզբունքային բնույթը և հնարավոր քաղաքական հետևանքները, նշանակում է հրաժարվել հասարակական երևույթներն ու պրոցեսները ճիշտ հասկանալու և մեկնաբանելու գիտական մեթոդից։ Միևնույն մոլորակի վրա գոյություն ունեցող և զարգացող հասարակական տարբեր կառուցվածք ունեցող երկրները չեն կարող անտարբերությամբ անցնել իրենց շահերը շոշափող իրադարձությունների կողքով։ Այդ իրադարձություններին նրանք մոտենում են՝ ելնելով հակադիր տնտեսական շահերից, տեսական հիմքերից և քաղաքական աշխարհայացքներից։ Այդ հիման վրա համաշխարհային ասպարեզում պայքար է ծավալվում իրարամերժ գաղափարախոսություններից բխող հակադիր քաղաքական գծերի միջև։

Սակայն դա նշանակո՞ւմ է արդյոք, թե այդ հակասությունները բացառում են խաղաղ գոյակցությունը երկու որակապես տարբեր աշխարհների միջև։ Մշտական բախումները, փոխադարձ ատելությունն ու թշնամանքը, զինված կոնֆլիկտներն անխուսափելի կլինեն այն դեպքում, եթե երկու սիստեմներն էլ ագրեսիվ բնույթ ունենային։ Սոցիալիզմի խաղաղասիրական էությունը փոխում է իրավիճակը միջպետական հարաբերություններում՝ միլիտարիստական ուժերին հակազդող իր գործողությամբ։

Սոցիալիզմի և կապիտալիզմի խաղաղ գոյակցության հնարավորությունը ապացուցվում է ոչ միայն տեսականորեն, այլև գործնականորեն, պրակտիկայում։ Արդեն Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության հաղթանակից հետո երկու հակադիր սոցիալական սիստեմների գոյակցությունը փաստ դարձավ։ Սակայն հասարակական օրինաչափություններն իրենց ճանապարհը հարթում են հեղափոխական աշխատավոր զանգվածների ակտիվ պրակտիկ գործողությունների միջոցով, դասակարգային կատաղի պայքարի պայմաններում։ Սովետական պետության հռչակումը կապիտալիստական աշխարհի տիրակալներն օրինական երևույթ չէին համարում։ Իմպերիալիզմը փորձեց բռնի միջոցներով խեղդել հեղափոխական Ռուսաստանը։ Սովետական երիտասարդ հանրապե-

տուԹյանը ոչինչ չէր մնում, քան զենքը ձեռքին պաշտպանել իր գոյուԹյան իրավունքը։

Սովետական պետուԹյունն իր ծննդյան առաջին իսկ օրվանից միջոցառումներ ձեռնարկեց կապիտալիստական երկրների հետ կոնֆլիկտներից խուսափելու համար։ Վ. Ի. Լենինը մեծ խորաԹափանցուԹյամբ բացահայտելով դարաշրջանի տենդենցները, ընդգծում էր, որ սոցիալիստական երկիրը չի կարող համաշխարհային կապերից դուրս մնալ և օբյեկտիվորեն առաջացած պատմական պայմաններում անվերապահորեն պետք է փոխհարաբերուԹյունների մեջ մտնի կապիտալիստական երկրների հետ։ 1917 Թվականի նոյեմբերի 8-ին սովետական պետուԹյունը դիմեց պատերազմող բոլոր երկրներին, կոչ անելով դադարեցնել արյունահեղուԹյունը և անմիջապես խաղաղ բանակցուԹյուններ սկսել արդարացի հաշտուԹյուն կնքելու համար։ Խաղաղության դեկրետի մեջ ասված էր հետևյալը. «Հոկտեմբերի 24—25-ի հեղափոխուԹյան ստեղծած և բանվորների, զինվորների ու գյուղացիների դեպուտատների Սովետների վրա հենվող բանվորական և գյուղացիական կառավարուԹյունն առաջարկում է բոլոր պատերազմող ժողովուրդներին և նրանց կառավարուԹյուններին՝ անհապաղ բանակցուԹյուններ սկսել արդարացի դեմոկրատական հաշտուԹյան մասին»[1]։ Սովետական կառավարուԹյունը պատրաստակամուԹյուն էր հայտնում առանց նվազագույն ձգձգման իսկույն ևեԹ բոլոր վճռական քայլերն անելու, մինչև այդպիսի հաշտուԹյան բոլոր պայմանների վերջնական հաստատումը բոլոր երկրների և բոլոր ազգերի ժողովրդական ներկայացուցիչների լիազոր ժողովների կողմից։

Սակայն Սովետական կառավարուԹյան խաղաղասիրական, մարդասիրական նախաձեռնուԹյունը մնաց ձայն բարբառո հանապատի։ Ավելին, իմպերիալիստական տերուԹյունները պաշտոնապես չճանաչեցին նոր քաղաքական իշխանուԹյունը Ռուսաստանում և հենվելով երկրի հակահեղափոխական ուժերի վրա, ռազմական ինտերվենցիա ձեռնարկեցին նրա դեմ։ Վ. Ի. Լենինը գրում էր, որ հենց անգլո-ֆրանսիական և ամե-

---

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 26, էջ 295։

րիկյան բուրժուազիան հրաժարվեց մեզ հետ բանակցելուց համընդհանուր խաղաղության հարցի շուրջը և դավաճանաբար վերաբերվեց բոլոր ժողովուրդների կենսական շահերի նկատմամբ, ձգձգելով իմպերիալիստական սպանդանոցը։

Օտարերկրյա ինտերվենցիայի և քաղաքացիական պատերազմի ժամանակաշրջանում սովետական պետությունը չէր դադարեցնում իր համառ ջանքերը արյունահեղ պատերազմին վերջ տալու ուղղությամբ։ 1918 թվականի ընթացքում Սովետական Ռուսաստանի կառավարությունը բազմիցս դիմեց Անտանտայի երկրների կառավարություններին, առաջարկելով դադարեցնել պատերազմը։ Սովետների համառուսաստանյան 6-րդ արտակարգ համագումարը իր բանաձևում Անգլիայի, Ֆրանսիայի, ԱՄՆ-ի և Ճապոնիայի կառավարություններին առաջարկում էր դադարեցնել ինտերվենցիան և հաշտության բանակցություններ սկսել։

Վ. Ի. Լենինը 1918—1920 թվականների ընթացքում բազմիցս ընդգծում էր բոլոր կապիտալիստական երկրների հետ տնտեսական պայմանագրեր կնքելու և գործարար կապերի մեջ մտնելու սովետական Ռուսաստանի պատրաստակամությունը։ Նա գրում էր. «Խելացի պայմաններով տված կոնցեսիաները ցանկալի են նաև մեզ համար, որպես Ռուսաստանի համար տեխնիկական օգնություն ձեռք բերելու միջոցներից մեկը՝ այդ տեսակետից ավելի առաջավոր երկրներից, այն ժամանակաշրջանի ընթացքում, երբ կողք-կողքի գոյություն կունենան սոցիալիստական և կապիտալիստական պետությունները»[1]։

Ընդ որում, Վ. Ի. Լենինը նշում էր, որ «առանց որոշ փոխհարաբերությունների մեր և կապիտալիստական պետությունների միջև, ամուր տնտեսական հարաբերություններ հնարավոր չեն մեզ համար»[2]։

Վ. Ի. Լենինը գտնում էր, որ մենք առանձնապես շահագրգռված ենք ԱՄՆ-ի հետ տնտեսական համաձայնագրեր ստորագրելու մեջ, որովհետև նրանք ավելի մեծ տնտեսական

---

[1] Վ. Ի. Լենին, *Երկեր, հատ. 30, էջ 28*։

[2] Վ. Ի. Լենին, *հատ. 33, էջ 167*։

հնարավորություններով են օժտված։ Բայց այդ խնդրի կատարման անհրաժեշտ պայմանը սոցիալիստական պետության դեմ ուղղված թշնամական գործողություններից հրաժարվելն է։ «Թող ամերիկյան կապիտալիստները մեզ ձեռք չտան։ Մենք նրանց ձեռք չենք տա։ Մենք նույնիսկ պատրաստ ենք նրանց ոսկով վճարել տրանսպորտի և արտադրության համար, օգտակար մեքենաների, գործիքների և այլ բաների համար։ Եվ ոչ միայն ոսկով, այլև հումքով»[1]։

Այս ամենը վկայում է այն մասին, թե ինչպիսի լուրջ նշանակություն էր տալիս Վ. Ի. Լենինը տնտեսական համագործակցությանը, որը կարող է նպաստել մյուս ասպարեզներում կապերի ընդլայնմանը։

Սակայն խաղաղ գոյակցությունը միակողմանի գործողություն չէ։ Այն պետք է դրսևորվի երկկողմանի քայլերի մեջ։ Բնական է, որ խաղաղ գոյակցության մասին խոսք անգամ չի կարող լինել այնպիսի պայմաններում, երբ մեկը չի ցանկանում ճանաչել մյուսի գոյությունը՝ նոր սոցիալական կարգը։ Ավելին, փորձում է բռնի միջամտությամբ տապալել այն։ Օտարերկրյա ինտերվենցիայի ժամանակաշրջանը սոցիալ-տնտեսական երկու հակադիր սիստեմների զինված ընդհարման ժամանակաշրջանն էր։ Իմպերիալիզմն իրականացնում էր հակահեղափոխության արտահանում։ Տրամաբանական է, որ իմպերիալիստական տերությունների հակահեղափոխական, ագրեսիվ քաղաքականությունը, որը խարսխվում էր ռազմատնտեսական առավելությունների վրա, գործնականորեն աոարկայազուրկ էր դարձնում խաղաղ գոյակցությունն անընդվազն որոշակի ժամանակահատվածում։ Նոր պայմանների արտացոլումը հանդիսացող նոր սկզբունքներն իրենց ճանապարհը հարթում են այդ պայմանների ծնունդ հեղափոխական ուժերի դասակարգային անհաշտելի պայքարի միջոցով։

Երիտասարդ սովետական հանրապետությունը ծանր դրության մեջ ընկավ։ Անհավասար պայքարում նա պաշտպանում էր իր նվաճումները, առանց որի անհնարին էր միջազգային ճանաչում ստանալը և կապիտալիզմի կողքին իր գոյակցու-

---

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 30, էջ 465։

թյունն ապահովելը։ Ռեակցիոն սոցիալական ուժերը բռնություն գործադրելով, ձգտում էին վերականգնել հինը։ Բռնությանը հակադրելով բռնություն, հեղափոխական ուժերը մարտնչում էին նորի ճանաչմանը հասնելու համար։ Վ. Ի. Լենինը բնութագրելով նորաստեղծ սովետական պետության միջազգային ճանաչման և հեղինակության ամրապնդման ամբողջ բարդ ու հակասական պրոցեսը, նշում էր, որ քաղաքական, ռազմական և տնտեսական տեսակետից անմիտ էր թվում սոցիալիստական երկրի գոյությունը կապիտալիստական շրջապատման մեջ։ Բայց դա փաստ էր։ Չնայած իմպերիալիստական տերությունների բոլոր փորձերին՝ սովետական երկիրը շրջափակել փշալարով, խեղդել տնտեսական բլոկադայի օգնությամբ, նա աճում և ամրապնդվում էր։

Այսպիսով, իր գոյության սկզբնական էտապում սովետական պետությունը հարկադրված էր զինված պայքարով նվաճել կապիտալիստական երկրների հետ գոյակցելու անհրաժեշտ պայմանները։

Բազմաթիվ փորձությունների միջով անցած նոր աշխարհը մտավ իր զարգացման այն փուլը, երբ նրա միջազգային ճանաչումը նվաճված էր։ Ո՛չ տնտեսական բլոկադան, ո՛չ ռազմական ինտերվենցիան, ո՛չ էլ անվերջ դավադրությունները ռեալ արդյունք չտվեցին իմպերիալիստներին և հակահեղափոխական այն ուժերին, ովքեր կառչում էին հնից, մեռնողից, փորձելով դիմակայել պատմական անհրաժեշտությանը։ Կյանքը հաստատեց մարքսիստական այն դրույթը, որ սոցիալիզմի և կապիտալիզմի գոյակցությունն օբյեկտիվ օրինաչափություն է։ Նոր հասարակարգը տապալելու անհնարինությունը պայմանավորում է հին և նոր սոցիալական սիստեմների գոյակցության անխուսափելիությունը։

Քաղաքացիական պատերազմի և օտարերկրյա ինտերվենցիայի հետևանքով սովետական պետության տնտեսական վիճակն է՛լ ավելի էր վատացել։ Իմպերիալիզմի ուժերի հետ ունեցած կատաղի գոտեմարտերում իր նվաճումները պաշտպանած սովետական երկիրը նորից պատրաստակամություն հայտնեց գործարար կապերի մեջ մտնելու կապիտալիստական պետությունների հետ։

Փոփոխվող իրավիճակներում անփոփոխ էր մնում սովետական դիվանագիտության էությունը։ 1920 թվականի դեկտեմբերին Սովետների համառուսաստանյան 8-րդ համագումարում Վ. Ի. Լենինը ողջունում էր բարեկամական հարաբերությունների կարգավորումն ու ամրապնդումը Թուրքիայի, Պարսկաստանի և Աֆղանստանի հետ։ Այդ փոխհարաբերությունների հիմքում ընկած է արևելյան ազգերի ճնշման իմպերիալիստական քաղաքականության դատապարտումը սոցիալիստական պետության կողմից։ Մյուս կողմից՝ թույլ զարգացած երկրները շահագործելու և ստրկացնելու իմպերիալիստական քաղաքականությունն օբյեկտիվորեն այդ երկրների ժողովուրդների մերձեցման պայմաններ է ծնում։ Վ. Ի. Լենինը ասում էր, որ բոլոր ճնշված ժողովուրդների մերձեցումն ու դաշինքն իմպերիալիզմի համաշխարհային քաղաքականության արգասիքն է։ Հայտնի է, որ իմպերիալիզմն անողոքաբար շահագործում էր Թուրքիայի, Իրանի, Աֆղանստանի և ասիական շատ ժողովուրդների։ Այն ժամանակ, երբ Անգլիայի, Ֆրանսիայի, Ճապոնիայի, Իտալիայի և կապիտալիստական այլ երկրների իշխող շրջանները 1920 թվականի օգոստոսի 20-ին ստորագրելով Սևրի պայմանագիրը, Թուրքիային փաստորեն զրկեցին անկախությունից, 1921 թվականի մարտի 16-ին ստորագրված «Բարեկամության և եղբայրության մասին» սովետա-թուրքական պայմանագիրը երաշխավորում էր ազատության և անկախության Թուրքիայի իրավունքը։ Պայմանագիրը վերացրեց Թուրքիային ցարիզմի կողմից պարտադրված պայմանագրերը։ Սովետական կառավարությունը հրաժարվեց ցարական կառավարությանը Թուրքիայի կողմից վճարվող պարտքերից և կապիտուլյացիաների ռեժիմից։ Այսպիսով, Թուրքիայի համար այդ ծանր պահին, երբ իմպերիալիստները ձգտում էին մասնատել երկիրը և այն զրկել ազգային անկախությունից, միայն երիտասարդ սովետական հանրապետությունը բարեկամության ձեռք մեկնեց թուրք ժողովրդին։

1921 թվականի փետրվարի 26-ին և 28-ին ստորագրվեցին սովետա-պարսկական և սովետա-աֆղանական պայմանագրերը։ Մեր երկրի համար տնտեսական տեսակետից այդ ծանր ժամանակաշրջանում սովետական կառավարությունը հրա-

ժարվեց Պարսկաստանի հետ ցարիզմի կնքած բոլոր անիրավահավասար պայմանագրերից, վերացրեց ցարական կառավարության Պարսկաստանի կողմից վճարվող պարտքերը։ Անգլիական «Նասիոն» ամսագիրը մեկնաբանելով այդ պայմանագրերը, արձանագրում էր, որ Ռուսաստանը հրաժարվեց առանց փոխհատուցման Պարսկաստանում ունեցած իր բոլոր արտոնություններից։ Դրա հետևանքով տեղի ունեցավ ռուսական ազդեցության ուժեղացումը, որը հենվում է պարսկական բնակչության բարի կամքի վրա։ Այդ տեսակետից բնորոշ են սովետա-պարսկական պայմանագրի ստորագրման կապակցությամբ պարսկական «Ռեհնեմա» թերթի խոսքերը. «Մեր քաղաքական հորիզոնը պարուրող խավարի միջից հանկարծ հյուսիսի և Սովետական Ռուսաստանի կողմից փայլատակեցին շլացուցիչ կայծակներ։ Նրանք... մեզ հնարավորություն տվին ավելի լավ կողմնորոշվելու իրադրության մեջ, ընտրելու մեզ համար կայուն ու ավելի հուսալի կուրս»[1]։

Այս փաստերը ցույց են տալիս, որ սովետական պետությունն իր սկզբնավորման հենց առաջին օրերից վարում է խաղաղ գոյակցության, բարեկամության, բոլոր երկրների ազգային սուվերենությունը հարգելու անխախտ քաղաքականություն։ Դա օրինաչափորեն բխում է նրա սոցիալիստական հիմքերից։

Օտարերկրյա ռազմական ինտերվենցիայի ջախջախումը և իմպերիալիզմի ռեակցիոն դիտավորությունների ձախողումը ցույց տվեցին, որ ոչ մի ուժ ի վիճակի չէ շրջելու պատմության անիվը, տապալելու այն հասարակարգը, որն իր մեջ մարմնավորում է սոցիալական կյանքի օրինաչափությունները, լիովին համապատասխանելով դարաշրջանի ոգուն և նոր պայմաններին։ Կապիտալիստական աշխարհի հեռատես քաղաքական գործիչները փորձում էին հասկանալ օբյեկտիվ այն տենդենցները, որոնք անկասելիորեն վճռում էին իրադարձությունների ընթացքը։ Այլ կերպ չի էլ կարելի գնահատել Անգլիայի այն ժամանակվա պրեմիեր-մինիստր Լլոյդ Ջորջի խոսքերը. «Բոլշևիզմը ռազմական ուժով ճնշելու միտքը մաքուր խելա-

---

[1] «История дипломатии», М., 1965, т. III, стр. 221.

ցնորություն է»։ Նկատի ունենալով հակահեղափոխական դավադրությունները, Ջորջը գտնում էր, որ «հույս դնել դրանց վրա, նշանակում է կառուցել զուտ ավազի վրա»։

Կապիտալիստական աշխարհի զավթողական ուժերի ավանտյուրիստական պլանների ձախողմանը հաջորդեցին Սովետների երկրի պաշտոնական ճանաչումը և նրա հետ տարբեր կապիտալիստական երկրների կողմից մի շարք առևտրական և քաղաքական պայմանագրերի ստորագրումը։ Կապիտալիստական աշխարհը շահագրգռվածություն ցուցաբերեց սովետական պետության հետ տնտեսական գործարար կապեր զարգացնելու մեջ։ Սովետական պետության հետ առևտրական կապերի վիժեցումը իրականում նեղացնում էր կապիտալիստների արտաքին առևտրի շրջանառության ոլորտը. «Ինչ վերաբերում է բլոկադային, ապա փորձը ցույց տվեց, որ հայտնի չէ, թե ում համար է այն ավելի ծանր—նրա՞նց համար, ում բլոկադայի են ենթարկում, թե՞ բլոկադայի ենթարկողների համար»[1]։ Վ. Ի. Լենինը նշում էր, որ սովետական պետության հետ տնտեսական և դիվանագիտական հարաբերությունների կարգավորմանը հակազդող ամեն մի երկիր անբարենպաստ դրության մեջ կլինի։ Այդպես կատարվեց Ամերիկայի Միացյալ Նահանգների հետ, որը սովետական իշխանության հռչակումից 16 տարի անց միայն ճանաչեց նոր քաղաքական ռեժիմը։

Բնորոշ է, որ ԱՄՆ-ը ՍՍՀՄ-ը պաշտոնապես ճանաչեց 1929—1933 թվականների կապիտալիզմի համաշխարհային տնտեսական ճգնաժամից հետո, որը ինչպես հայտնի է, զգալի հարված հասցրեց ԱՄՆ-ի էկոնոմիկային։ Սովետական երկրի հետ տնտեսական հարաբերությունների մեջ մտնելու տենդենցներն ուժեղացան։ Տնտեսական խթանն իր դրսևորումը գտավ քաղաքականության մեջ։ Մյուս կողմից՝ Սովետական Միության նյութական հզորության և բարոյա-քաղաքական հեղինակության աճը բարձրացրեց նրա կշիռը միջազգային ասպարեզում։ Այդ փաստը շրջանցելը քաղաքական կուրություն կլիներ։ Եթե 1934 թվականի սեպտեմբերի 15-ին Ազգերի լիգայի անդամ 30 երկրներ դիմեցին Սովետական կա-

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 33, էջ 168։

ռավարության, նրան հրավիրելով մասնակցել այդ կազմակերպության աշխատանքներին, ապա դա այն ճշմարտությունը ճանաչելու դրսևորումն էր, որ միջազգային հարցերն այլևս չեն կարող քննարկվել և լուծում ստանալ առանց Սովետական Միության։

Մինչ այդ սովետական երկիրն առաջ էր քաշել կապիտալիստական երկրների հետ տնտեսական կապերի ամրապնդման մի ամբողջական ծրագիր, որի իրագործումը բխում էր սոցիալիստական շինարարության խնդիրներից և ձեռնտու էր նաև կապիտալիստներին։ Օբյեկտիվորեն փոխընդունելի պայմաններ էին ստեղծվում։ Ասենք, արդյունաբերական տեսակետից զարգացած կապիտալիստական երկրները հումքի աղբյուրների կարիքն էին զգում, իսկ սովետական երկիրն ուներ այդպիսի աղբյուրներ։ Դա հող էր ստեղծում փոխշահավետ համաձայնության համար։ Տնտեսական համագործակցության անհրաժեշտ նախադրյալներ էին արտահանումն ու ներմուծումը։ Փոխադարձ առևտուր անելու անհրաժեշտությունը պայմանավորվում է աշխատանքի հասարակական բաժանման բուն անհրաժեշտությամբ։ Բնական է, որ արտադրանքի ոչ բոլոր տեսակները հավասարապես ձեռնտու է արտադրել բոլոր երկրներում։ Մի երկրում ավելի հեշտ է արտադրել որոշ իրեր, մի այլ երկրում՝ ուրիշ արտադրանք։ Տարբեր է առանձին ճյուղերի զարգացման աստիճանը։ Այստեղ դեր են խաղում աշխատավորների ունակություններն ու արտադրական ավանդույթները։ Այդ իմաստով միջազգային առևտուրը հարաճուն չափերով ժողովուրդների միջև աշխատանքի ռացիոնալ բաժանման արտահայտությունն է։ Վ. Ի. Լենինն ասում էր, որ մենք Ջենովայի կոնֆերանս էինք գնում միջազգային առևտուրը ընդլայնելու, հաջողությամբ ու լայնորեն զարգացնելու գործնական նպատակով։

Տնտեսական համագործակցությունը նպաստավոր իրավիճակ է ստեղծում պետությունների միջև։ Բազմակողմանի համագործակցություն իրականացնելու համար Ջենովայի կոնֆերանսում, 1922 թվականի մայիսի 10-ին Գ. Վ. Չիչերինը, Վ. Ի. Լենինի հանձնարարությամբ, հայտարարեց հետևյալը. «Մնալով կոմունիզմի սկզբունքների տեսանկյան վրա, ռու-

ստատնյան պատվիրակությունը գտնում է, որ արդի պատմական դարաշրջանում, որ հնարավոր է դարձնում հին և նորածին սոցիալական կարգի զուգահեռ գոյությունը, (ընդգծումը—Ս. Ք.) սեփականության այդ երկու սիստեմները ներկայացնող պետությունների միջև տնտեսական համագործակցությունը հրամայական անհրաժեշտություն է... ռուսաստանյան պատվիրակությունն այստեղ է ներկայացել ոչ թե նրա համար, որպեսզի պրոպագանդի իր սեփական տեսական հայացքները, այլ հանուն այն բանի, որպեսզի գործարար հարաբերությունների մեջ մտնի բոլոր երկրների կառավարությունների և առևտրաարդյունաբերական շրջանների հետ՝ փոխադարձության, իրավահավասարության լրիվ ու անվերապահ ճանաչման հիման վրա»[1]։

Այսպիսով, պատմական փաստերը հաստատեցին այն դրույթը, որ տարբեր սոցիալական սիստեմների գոյակցությունը կախված չէ կոնյունկտուրային դատողություններից և քաղաքական գործիչների սուբյեկտիվ կամքից ու ցանկություններից։ Այն համարակության վերընթաց զարգացման օրինաչափությունների դրսևորում է։

Երկու համաշխարհային պատերազմների միջև ընկած ժամանակաշրջանում Սովետական Միությունը, փոխադարձ շահավետության հիման վրա, կապիտալիստական մի շարք պետությունների հետ կնքեց առևտրական պայմանագրեր։ Ստորագրվեցին քաղաքական համաձայնագրեր՝ չհարձակման պակտի, չեզոքության, բարեկամության և փոխադարձ օգնության պայմանագրերի ձևով։

Գոյակցությունն ու համագործակցությունն անվիճելի փաստ դարձան։

Սովետական պետության քաղաքական գործունեության մեջ արտացոլվում են պատմական զարգացման օբյեկտիվ օրինաչափությունները, կոնկրետ պայմաններում միջպետական հարաբերությունների առանձնահատկությունները։ Համաշխարհային սոցիալիստական սիստեմի կազմավորումը, սոցիալիզմի լրիվ ու վերջնական հաղթանակը ՍՍՀՄ-ում ընդ-

---

[1] **Г. В. Чичерин,** Статьи и речи, М., 1961, стр. 208—209.

լայնեցին խաղաղ գոյակցության օբյեկտիվ հնարավորությունները։ Որպես օրինաչափություն, խաղաղ գոյակցությունը անկասելիորեն ներխուժում է միջպետական հարաբերությունների ոլորտը, օբյեկտիվորեն զսպիչ ճնշում գործադրելով իմպերիալիստական շրջանների վրա։

Վերևում արդեն նշվեց, որ պետությունների խաղաղ գոյակցությունը հնարավոր է միայն այն դեպքում, եթե սոցիալական սիստեմներից մեկի տնտեսական հիմքերն ազատ են ռազմական կոնֆլիկտների նյութական գրգռիչներից։ Այս իմաստով սոցիալիզմը ոչ միայն խաղաղ գոյակցության կրողըն է, այլև նյութական հենարանը։

Ժամանակակից պայմաններում, ռազմա-տեխնիկական միջոցների զարգացման հետևանքով, պատերազմի բնույթի փոփոխությունը խաղաղ գոյակցությունը դարձնում է համաշխարհային քաղաքականության առաջընթացի անհրաժեշտ պայմանը։ Այն համապատասխանում է մարդկության բացարձակ մեծամասնության շահերին։ «Աշխարհը երկու սիստեմների բաժանվածության պայմաններում միջազգային հարաբերությունների միակ ճիշտ և խելացի սկզբունքը տարբեր սոցիալական կառուցվածք ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքն է, որը առաջ է քաշել Վ. Ի. Լենինը և իր հետագա զարգացումն է ստացել 1957 թվականի Մոսկվայի Դեկլարացիայում և Խաղաղության մանիֆեստում, ՍՄԿԿ XX և XXI համագումարների որոշումներում և մյուս կոմունիստական ու բանվորական կուսակցությունների փաստաթղթերում»[1]։

Այս տեսակետը մեկ անգամ ևս ընդգծվեց ՍՄԿԿ XXIII համագումարում, որի բանաձևում ասված է. «Սովետական պետության արտաքին քաղաքականությունը նպատակ ունի սոցիալիստական մյուս պետությունների հետ միջազգային նըպաստավոր պայմաններ ապահովել սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման համար, ամրապնդել սոցիալիստական երկրների միասնությունն ու համախմբվածությունը, նրանց

---

[1] Կոմունիստական և բանվորական կուսակցությունների ներկայացուցիչների խորհրդակցության Հայտարարությունը, էջ 37։

բարեկամությունն ու եղբայրությունը, պաշտպանել ազգային-ազատագրական շարժումները և բազմակողմանի համագործակցություն իրագործել երիտասարդ զարգացող պետություն-ների հետ, հետևողականորեն պաշտպանել սոցիալական տարբեր կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքը, վճռական հակահարված հասցնել իմպերիալիզմի ագրեսիվ ուժերին, մարդկությանը փրկել նոր համաշխարհային պատերազմից»[1]։

Խաղաղ գոյակցությունն աղետաբեր համաշխարհային պատերազմի ալտերնատիվն է արդի դարաշրջանում։ Այն խաղաղության պաշտպանության և ամրապնդման ստրատեգիան է։ Խաղաղ գոյակցության գիծը ժամանակակից հասարակության բոլոր հեղափոխական շերտերի մոբիլիզացման կուրսն է երրորդ համաշխարհային պատերազմի վտանգի դեմ մղվող պայքարում։ Խաղաղ գոյակցության սկզբունքների կենսագործման համար մղվող պայքարը նպաստում է բոլոր հակապատերազմական հակամիլիտարիստական ուժերի համախմբմանը։

* * *

Իմպերիալիզմի ճնշումից ազատագրվելու և քաղաքական ու տնտեսական անկախություն ձեռք բերելու տենդենցը, ինչպես նաև աշխատանքի համաշխարհային շուկայի միջազգային բաժանման հիման վրա երկրների տնտեսական մերձեցման տենդենցը ժամանակակից դարաշրջանի բնորոշ գծերն են։ Դրանք առաջադեմ տենդենցներ են, որոնք իրենց արտացոլումն ու լուծումն են գտնում խաղաղ գոյակցության սկզբունքի մեջ։

Սոցիալիստական երկրների տնտեսական հզորության անընդհատ աճը և բոլոր խաղաղասեր ուժերի կոնսոլիդացումը, ջերմամիջուկային պատերազմի կործանարար բնույթը, կապիտալիզմի ամենաջերմեռանդ պաշտպաններին անգամ ստիպում են ողջամիտ դատողություններ անել սոցիալիստական

[1] ՍՄԿԿ XXIII համագումարի բանաձևը, էջ 11։

սիստեմի հետ խաղաղ գոյակցելու անհրաժեշտության մասին։ Այդ տեսակետից հատկանշական են ԱՄՆ-ի հանգուցյալ պրեզիդենտ Ջոն Քենեդիի այն խոսքերը, թե գոյություն ունի ավելի լավ զենք, ավելի կատարյալ զենք, քան բալիստիկ հրթիռները կամ միջուկային սուզանավերը, և այդ լավագույն զենքը՝ խաղաղ համագործակցությունն է։

Կապիտալիզմի կառավարող շրջաններում համաշխարհային քաղաքականության սկզբունքների վերաբերյալ շատ հաճախ դրսևորվող հակասական կարծիքներն այն բանի անուղղակի արտահայտությունն են, որ բուրժուազիայի չափավոր մասում դարաշրջանի տենդենցներն ու պահանջները որոշ ըմբռնում են գտնում։

Իմպերիալիզմի առանձին գաղափարախոսներ պնդում են, թե իբր խաղաղ գոյակցության քաղաքականությունը կոնյունկտուրային, տակտիկական վարքագիծ է, քանի որ կոմունիստական շարժման գլխավոր նպատակը կապիտալիզմի տապալումն է։

Հասարակության զարգացման ընթացքը բնապատմական պրոցես է, որ դրսևորվում է սոցիալական կյանքի հին ձևերի մահացման և նորերի ծագման մեջ։ Ֆ. Էնգելսի խոսքերով ասած, մեռնող իրականի տեղը գրավում է մի նոր կենսունակ իրականություն՝ խաղաղ կերպով, եթե հինը բավականաչափ խելացի է առանց դիմադրության իր տեղը նորին զիջելու համար, բռնի կերպով, եթե այն դիմակայում է այդ անհրաժեշտությանը։ Սոցիալիստական արտադրեղանակի հաղթանակն համաշխարհային մասշտաբով անխուսափելի է։ Այն բխում է ժամանակակից արտադրողական ուժերի և կապիտալիստական մասնավոր սեփականատիրական հարաբերությունների միջև օբյեկտիվորեն գոյացած անհաշտելի հակասությունից։ Համարյա բոլոր կապիտալիստական երկրներում սոցիալիստական և կոմունիստական ուժերի առկայությունն ու հեղափոխական գործունեությունը հասարակական առաջընթացի կոնկրետ դրսևորում է։

Կոմունիզմը մրցահրավեր է սոցիալական և գաղափարական ոլորտներում։ Նոր հասարակարգի ծնունդը կապված է

ներքին պրոցեսների, օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոնների հետ։ Այս իմաստով, հեղափոխության արտահանման գաղափարը ոչ մի ընդհանուր բան չունի կոմունիստական աշխարհայացքի հետ։ Ամեն մի ժողովուրդ ինքն է որոշում իր ապրելակերպը։ Բռնության միջոցով հասարակական կյանքի ձևեր ուրիշ ժողովուրդներին պարտադրելը զավթողական, անարդարացի քաղաքականության երանգներից մեկն է։ Ֆ. Էնգելսը գրում էր, որ հաղթանակած պրոլետարիատը չի կարող ուրիշ որևէ ժողովրդի պարտադրել ոչ մի երջանկացում, դրանով իսկ չքայքայելով իր սեփական հաղթանակը։ Վ. Ի. Լենինը վճռականորեն դատապարտում էր հեղափոխության արտահանման գաղափարը։ «Իհարկե, կան մարդիկ,—նշել է նա,— որոնք կարծում են, թե հեղափոխությունը օտար երկրում կարող է ծնվել ըստ պատվերի, ըստ համաձայնության։ Այս մարդիկ կամ խելագարներ են, կամ պրովոկատորներ... Մենք գիտենք, որ այդ հեղափոխությունները ոչ պատվերով կարելի է անել, ոչ էլ համաձայնությամբ, որ նրանք աճում են այն ժամանակ, երբ տասնյակ միլիոնավոր մարդիկ գալիս են այն եզրակացության, որ այսպես ապրել այլևս անկարելի է»[1]։

Մարքսիզմը միաժամանակ սկզբունքորեն մերժում է հակահեղափոխության արտահանումը, որը հաճախ է կիրառվում իմպերիալիզմի պրակտիկայում։ Այդ մասին են վկայում 1956 թվականի նոյեմբերյան իրադարձություններն Հունգարիայում, հեղափոխական Կուբայի դեմ ուղղված ոտնձգությունները, վիետնամական ժողովրդի դեմ ուղղված ագրեսիան, Չեխոսլովակիայի դեպքերը։ Իմպերիալիզմը մեծ վտանգ է ներկայացնում խաղաղ գոյակցությանը։ Բայց միաժամանակ քաղաքական ձախողումներն սթափեցնում են իմպերիալիստներին, նրանց ստիպում խորհրդածել կողմերի հնարավորությունների մասին։ Որքան ավելի շատ են իմպերիալիզմի ձախողումները, այնքան ավելի ռեալ է դառնում խաղաղ գոյակցության հաղթանակի հնարավորությունը։

Այսպիսով, համաշխարհային մասշտաբով սոցիալիզմի

---

[1] Վ. Ի. ԼԵՆԻՆ, Երկեր, հատ. 27, էջ 601։

հաղթանակի անխուսափելիության մասին դրույթը չի բացառում պատմական որոշակի ժամանակաշրջանում սոցիալիստական և կապիտալիստական պետությունների խաղաղ գոյակցությունը։ Այս երկու դրույթները համատեղելի են։ Սոցիալիստական հեղափոխության մարքսիստական տեսության և խաղաղ գոյակցության սկզբունքի միջև հակասություն չկա։ Հենց սոցիալիստական հեղափոխության տեսությունից է տրամաբանորեն բխում խաղաղ գոյակցության սկզբունքը։

Ճշմարտության չափանիշը պրակտիկան է, իսկ պրակտիկան ամբողջովին ժխտել է «հեղափոխության արտահանման» տեսակետը։ Հոկտեմբերյան հեղափոխությունը ներքին պրոցեսների արդյունք էր։ Ժողովրդա-դեմոկրատական կարգերի հաստատումը Եվրոպայի ու Ասիայի մի շարք երկրներում կատարվեց ոչ պատվերով և ոչ էլ արտաքին ճնշմամբ, այլ այդ երկրների ժողովուրդների կամքով։

Խաղաղ գոյակցության սկզբունքի պրոպագանդան և քաղաքականությունը բարձրացնում են սոցիալիզմի հեղինակությունը, ժողովուրդներին գործնականորեն ցուցադրում նրա հումանիստական էությունը և խաղաղասիրական բնույթը։ Եթե իմպերիալիզմի առաջացումը ուղեկցվում էր զավթողական պատերազմներով, ապա սոցիալիզմը ծնվեց խաղաղ գոյակցության սկզբունքների հռչակումով։

Միջազգային ռեակցիան սոցիալիզմի դեմ ուղղված իր գաղափարական պայքարում ոչնչից չի խորշում։ Նրա ջերմեռանդ պաշտպանները գիտակցաբար աղավաղում են մարքսիստական ուսմունքի սկզբունքներն ու կոմունիստական երկրների արտաքին քաղաքականությունը, միտումնավոր կերպով գաղափարական հարցերը խառնում են միջպետական հարաբերություններին վերաբերող հարցերի հետ։ Նրանք պնդում են, թե իբր մարքսիստները հետևողականորեն քարոզել են ուժի և բռնության գործադրում։

Այս կարծիքը լիովին հակասում է գիտական կոմունիզմի տեսությանը և կոմունիստների գործնական քայլերին։

Հայտնի է, որ սոցիալական հեղափոխությունը հասարակական-տնտեսական ֆորմացիաների հերթափոխության օրինաչափությունն է, որի հետևանքով արմատապես փոխվում

է իշխանության դասակարգային բնույթը, հաստատվում է առաջադեմ դասակարգերի իշխանությունը։ Պատմությունը ցույց տվեց, որ բուրժուազիան քաղաքական իշխանություն նվաճեց բռնի միջոցների օգնությամբ։ Բուրժուական հարաբերությունների հաղթանակը միշտ և ամենուրեք կապված է եղել արյունահեղության հետ։

Սոցիալիստական հեղափոխությունն ամենախոր հեղաշրջումն է մարդկության պատմության մեջ իր հիմնավոր, արմատական խնդիրներով։

Այդ հեղափոխության մեջ մասնակցում են ամենալայն մասսաները։ Ոչ մի հեղափոխություն, այդ թվում և սոցիալիստական հեղափոխությունը, անհիվանդագին պրոցես չէ։ Իշխանության գլուխ անցած առաջադեմ դասակարգը հանդիպում է տապալված ռեակցիոն դասակարգերի դիմադրությանը և առանց այն ճնշելու չի կարող իրականացնել հաղթանակած հեղափոխության խնդիրները։ Պրոլետարական իշխանությունը չի կարող չունենալ իր բռնի կողմը, որովհետև սոցիալիզմի թշնամիները փորձում են խափանել պրոլետարական պետության հեղափոխական միջոցառումները, վերականգնել կապիտալիստական կարգերը։ Բայց պրոլետարիատի դիկտատուրան ուղղված է շահագործող փոքրամասնության դեմ, այն պաշտպանում է աշխատավոր մեծամասնության շահերը։ Այսպիսով, բռնությունը բխում է ոչ թե սոցիալիստական պետության էությունից, այլ հին աշխարհի ռեակցիոն ուժերի հակահեղափոխական ոտնձգությունները ճնշելու անհրաժեշտությունից։

Կոմունիստները օգտագործում են ամենանվազագույն հնարավորություններն անգամ արյունահեղությունից խուսափելու համար։ Կոմունիստները չեն թաքցնում իրենց նպատակները և դրա կարիքը չեն էլ զգում, քանզի դրանք համամարդկային իդեալներ են բովանդակում։ Բանվոր դասակարգը և նրա ավանգարդ կոմունիստական կուսակցությունները կգերադասեին սոցիալիստական հեղափոխությունն իրագործել խաղաղ եղանակով։ Այն կհամապատասխաներ աշխատավորների և երկրի համազգային շահերին։ Գիտական կոմունիզմի կլասիկները ընդգծել են այդ հնարավորությունը։ Դեռ 1847 թվակա-

նին, կոմունիստների միության ծրագիրը մշակելու ժամանակ Ֆ. Էնգելսը «Կոմունիզմի սկզբունքներում» այն հարցին, թե «Հնարավո՞ր է արդյոք մասնավոր սեփականության ոչնչացումը խաղաղ ճանապարհով», պատասխանում է. «Կարելի էր ցանկանալ, որ դա այդպես լինի և կոմունիստները, իհարկե, դրա դեմ առարկողներից վերջինները կլինեին։ Կոմունիստները լավ գիտեն, որ ամեն տեսակի դավադրությունները ոչ միայն անօգուտ են, այլև վնասաբեր։ Նրանք շատ լավ գիտեն, որ հեղափոխությունները չի կարելի միտումնավոր կերպով և կամայականորեն կատարել, և որ հեղափոխությունները միշտ և ամենուրեք հանգամանքների անհրաժեշտ հետևանք են եղել...»[1]։

Վ. Ի. Լենինը գրում էր, որ բանվոր դասակարգը գերադասում է իշխանությունն իր ձեռքը վերցնել խաղաղ եղանակով և նա միայն այն ժամանակ բռնության կդիմի, երբ բուրժուազիան վճռական պահին փորձի բռնի միջոցների օգնությամբ պաշտպանել իր արտոնությունները։

Խաղաղ ճանապարհով սոցիալիզմին անցնելու համար նպաստավոր պայմաններ են առաջացել ժամանակակից իրադրության մեջ։ Իհարկե, այս հարցում չի կարող միատեսակ մոտեցում լինել բոլոր կապիտալիստական երկրներին։ Ինչպես արձանագրված է ՍՄԿԿ ծրագրում, կապիտալիստական մի շարք երկրներում բանվոր դասակարգն իր առաջավոր ջոկատի գլխավորությամբ, հնարավորություն ունի բանվորական ու ժողովրդական ճակատի և զանազան կուսակցությունների ու հասարակական կազմակերպությունների համաձայնության ու քաղաքական համագործակցության, հնարավոր այլ ձևերի հիման վրա միավորել ժողովրդի մեծամասնությանը, նվաճել պետական իշխանությունն առանց քաղաքացիական պատերազմի և ապահովել արտադրության հիմնական միջոցների անցումը ժողովրդի ձեռքը։ Ծրագրում նշված է նաև, որ հենվելով ժողովրդի մեծամասնության վրա և վճռական հակահարված տալով օպորտունիստական տարրերին, բանվոր դասակարգը հնարավորություն ունի պարտության մատնելու ռեակցիոն, հակաժողովրդական ուժերին, կայուն

1 К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 4, стр. 331.

մեծամասնություն նվաճելու պառլամենտում, բուրժուազիայի դասակարգային շահերին ծառայելու գործիքից այն վերածելու աշխատավոր ժողովրդին ծառայող գործիքի, ծավալելու արտապառլամենտական մասսայական լայն պայքար, ընկճելու ռեակցիոն ուժերի դիմադրությունը և անհրաժեշտ պայմաններ ստեղծելու սոցիալիստական հեղափոխության խաղաղ իրականացման համար։ Այդ ամենը հնարավոր է միայն խոշոր մոնոպոլիստական կապիտալի ռեակցիայի դեմ, հանուն խոր սոցիալական ռեֆորմների, խաղաղության և սոցիալիզմի՝ բանվորական, գյուղացիական մասսաների և քաղաքային միջին խավերի դասակարգային պայքարի լայն, անընդհատ զարգացման միջոցով։

Դա օբյեկտիվ հնարավորություն է, որն, իհարկե, չպետք է գերագնահատել։ Բուրժուազիան իշխանությունը հոժարակամ չի զիջում։ Յուրաքանչյուր երկրում սոցիալիզմին անցնելու այս կամ այն եղանակի հնարավորությունը կախված է կոնկրետ պատմական պայմաններից։ Դասակարգային պայքարի սրության աստիճանը և ձևերը ոչ այնքան հեղափոխական ուժերից են կախված, որքան բուրժուազիայի դիմադրության աստիճանից և նրա կողմից բռնություն գործադրելուց։ Այսպես թե այնպես բռնության, քաղաքացիական պատերազմի, արյունահեղության սկզբնաղբյուրը մոնոպոլիստական բուրժուազիան է։

Խաղաղ գոյակցության քաղաքականությունը հեղափոխական բովանդակություն ունի։ Այն համաշխարհային հեղափոխական պրոցեսն արագացնող գործոն է։

Սոցիալիզմի և խաղաղության շահերը միահյուսվում են։ Դա մի օբյեկտիվ գործոն է, որ որոշում է պրոլետարական շարժման ստրատեգիական գիծը։ Ապահովել հին աշխարհի հեղափոխական վերափոխությունն առանց համընդհանուր արյունահեղության, ավելորդ զոհերի և ավերածությունների՝ համաշխարհային կոմունիստական շարժման գլխավոր խնդիրն է։ Ահա թե ինչու ժամանակակից դարաշրջանում հակաիմպերիալիստական ուժերի առջև կանգնած խնդիրների շարքում առաջնահերթ խնդիրը ջերմամիջուկային պատերազմը կանխելու համար մղվող պայքարն է։ Պայքարը խաղաղության,

սոցիալիզմի, դեմոկրատիայի և ազգային անկախության համար միջազգային կոմունիստական շարժման գլխավոր գիծն է։

Խաղաղ գոյակցության համար պայքարը կոմունիստները չեն դիտում որպես նեղ համադեմոկրատական պրոբլեմ։ Հայտնի է, որ արդի պայմաններում բոլոր պատերազմների ծագման սոցիալական և ազգային պատճառների վերացումը կապված է համաշխարհային մասշտաբով սոցիալիզմի հաղթանակի հետ։ Այս իմաստով սոցիալիզմի համար մղվող պայքարի խնդիրները միաձուլվում են խաղաղության համար մղվող պայքարի խնդիրների հետ։ Սոցիալիստական և դեմոկրատական խնդիրների միահյուսումը դասակարգային պայքարի մեջ ուժեղացնում է շարժման համադեմոկրատական, համամարդկային հոսանքը և քաղաքական պայքարում բարձրացնում կոմունիստական շարժման կշիռն ու հեղինակությունը, նրա խնդիրներն ավելի պարզ ու հասկանալի դարձնելով լայն մասսաներին։ Վ. Ի. Լենինը սովորեցնում էր, որ անհրաժեշտ է դուրս քաշել «քաղաքական հարցերը» ինտելիգենցիայի նեղ կաբինետներից «դեպի փողոց»՝ բանվոր և աշխատավոր դասակարգերի միջավայրը։

Մարքսիստները քաղաքական պայքարն ավելի լայն են հասկանում. նրանք իրենց գործունեությունը չեն սահմանափակում քաղաքական պայքարի մեկընդմիշտ նախանշված որևէ պլանով կամ եղանակով։ Պայքարի միջոցները պետք է համապատասխանեն առաջացած պայմաններին, առավելագույն արդյունքների հասնելու հնարավորություն տան։ Քաղաքական պայքարն ու նրա նպատակները պետք է դիալեկտիկորեն ըմբռնել, քանի որ քաղաքական կյանքը բազմաշարք օղակներից կազմված մի շղթա է։ Մարքսիստական գիտության մեջ իրականությունն արտացոլվում է դիալեկտիկորեն։ Մարքսիզմը դոգմատիզմի ու կոնսերվատիզմի ամենաանխնա թշնամին է։

Պայքարը խաղաղության համար միաժամանակ պայքար է սոցիալիզմի և կոմունիզմի համար։ Մի կողմից՝ պատմական այնպիսի իրադրության մեջ, երբ սոցիալիզմը համաշխարհա-

յին սխտեմ է, կոմունիստական շինարարության խնդիրները հնարավոր է իրագործել միայն խաղաղության պայմաններում։ Մյուս կողմից՝ այդ խնդիրների իրականացումն է՛լ ավելի կամրապնդի սոցիալիզմի և խաղաղության համար մաքառող հասարակական դասակարգային ուժերի դիրքերը։ Խաղաղության պաշտպանության համար ծավալված շարժումն ուղղված է իմպերիալիզմի միլիտարիստական ուժերի և գործողությունների դեմ։ Այն ուղեկցվում է պատերազմի աղբյուրների բացահայտմամբ և նրա դասակարգային կողմերի մերկացմամբ։ Իսկ դա նշանակում է, որ այդ շարժումը հակաիմպերիալիստական բովանդակություն ունի, քանի որ մասսաներին մոտեցնում է իմպերիալիզմի արատավորության և խորտակման անհրաժեշտության ըմբռնմանը։ Պայքարը համադեմոկրատական խնդիրների իրականացման համար պայքար է ընդդեմ իմպերիալիզմի։ Ակտիվ ու գործուն մասնակցություն ունենալով հակապատերազմական շարժմանը, հանդես գալով ավանգարդային դերում, կոմունիստները ամրապնդում են իրենց կապերը մասսաների հետ, կազմակերպում են նրանց, ընդլայնում հակաիմպերիալիստական ճակատը, իմպերիալիզմի ագրեսիվ շրջաններին մեկուսացնում են մասսաներից, դրանով իսկ նպաստելով պրոլետարիատի հեղափոխական պայքարին և ժողովուրդների ազգային-ազատագրական շարժմանը։

Պատմությունը ցույց է տալիս, որ անցյալում սոցիալական հեղափոխություններն իսկապես որոշակիորեն կապված էին պատերազմի հետ։ Այդպես եղավ 1871 թվականին ֆրանս-պրուսական պատերազմի ժամանակաշրջանում, երբ Փարիզի ապստամբած պրոլետարիատը նվաճեց իշխանությունը, այդպես եղավ առաջին համաշխարհային պատերազմի տարիներին, երբ կատարվեց Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունը։ Հեղափոխություններ տեղի ունեցան Գերմանիայում և Հունգարիայում, այդպես եղավ նաև երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, երբ մի շարք երկրներում հաղթեցին սոցիալիստական հեղափոխությունները և ժողովրդա-դեմոկրատական կարգ հաստատվեց։

Սակայն այդ կապը չպետք է մեխանիկորեն հասկանալ։

իրադարձությունների նման հաջորդականությունը ոչ թե պատճառա-հետևանքային հարաբերություն է արտահայտում, այլ լոկ այն պայմանները, որոնց մեջ ծավալվում էին այդ իրադարձությունները։ Պատմության մեջ պատերազմը ոչ մի հեղափոխության պատճառ չի եղել։ Համաշխարհային պատերազմները սոցիալիստական հեղափոխությունների պատճառներ չեն, թեպետև դրանք ուղեկցվել են հեղափոխական իրադարձություններով։

Հեղափոխությունը ծագում է կապիտալիզմի տնտեսա-քաղաքական հակասություններից, հանդիսանալով դասակարգային հակամարտությունների սրման գագաթնակետը։ Այն օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոնների, ներքին ու արտաքին պայմանների բարդ միահյուսման արդյունք է և իր կոնկրետ պատճառներն ունի։ Սոցիալիստական հեղափոխության անհրաժեշտ պայմաններ են՝ պրոլետարիատի աճը, դասակարգային հասունությունը և կազմակերպվածությունը, մարքսիստական կուսակցության ղեկավարությունը դասակարգային և սոցիալական հակասությունների սրության աստիճանը, հասարակական-քաղաքական ուժերի հարաբերակցությունը և հեղափոխական իրադրության առաջացումը։ Վ. Ի. Լենինի խոսքերով ասած, հեղափոխությունն անհնարին է առանց համազգային ճգնաժամի։ Հեղափոխության պայմանների մեջ մտնում են նաև միջազգային իրադրությունը և համաշխարհային հեղափոխական պրոցեսի ընթացքը։

Երկու համաշխարհային պատերազմները սրեցին հեղափոխական իրադրությունը պատերազմող կապիտալիստական շատ երկրներում, խորացրին դասակարգային հակասությունները։ Հեղափոխությունն օբյեկտիվորեն վերածվեց պասսիվ այն մարդկանց համար, որոնք սանձազերծեցին պատերազմը, այն մահվան դատավճիռ կայացրեց պատերազմներ ծնող հասարակարգին մի շարք երկրներում։

Երկու համաշխարհային պատերազմներն օբյեկտիվորեն նպաստեցին հեղափոխական իրադարձությունների զարգացմանը նաև այն տեսակետից, որ կապիտալիզմի՝ թշնամական խմբավորումների պառակտումը նրան զրկում էր հեղափոխական ուժերի դեմ միասնական ճակատ ստեղծելու հնարավորու-

*թյունից։ «Սոցիալիստները պետք է օգտվեն ավազակների պայքարից, որպեսզի տապալեն նրանց բոլորին»*[1]*։*

*Այդ իմաստով երկու համաշխարհային պատերազմներն օբյեկտիվորեն հեղափոխության «անուղղակի ռեզերվի» դեր խաղացին։ Այս դրույթն արտացոլում է կոնկրետ պատմական պայմաններ։ Սակայն իմացությունը վերջնական սպառում չի կարող գտնել ինչ-որ կատարյալ կացության մեջ։ Դիալեկտիկան մերժում է մարդկային մտածողության և գործողության բոլոր հետևանքներին վերագրվող հավերժականությունն ու անփոփոխականությունը։ Մարքսիզմը պատրաստի դոգմատիկ դրույթների ժողովածու չէ, որոնք մնում է յուրացնել և կյանքին պարտադրել։ Այն խոր ստեղծագործական և հեղափոխական ուսմունք է, որ արտացոլում է աշխարհն անընդհատ զարգացման ու փոփոխության մեջ։*

*Տեսական ամեն մի դիրքորոշում կարող է ճիշտ լինել մեկ պայմաններում, բայց անկայուն դառնալ և կորցնել իր արդարացումը մեկ այլ պայմաններում։ Դիալեկտիկական փիլիսոփայության համար իմացության զարգացման յուրաքանչյուր տվյալ աստիճանը արդարացում է գտնում իր ժամանակի և իր պայմանների համար։ Վ. Ի. Լենինը գրում էր, որ մարքսիզմը պահանջում է դասակարգերի հարաբերակցության և յուրաքանչյուր պատմական պահի առանձնահատկություններ ամենաճիշտ, օբյեկտիվորեն ստուգված հաշվառում քաղաքականության ամեն մի գիտական հիմնավորման տեսանկյունից։ Հիշեցնելով այն մասին, թե ինչպիսի վիթխարի ոլորապտույտներ է կատարում պատմությունը, նա նշում էր, որ այդ ոլորապտույտներում ու զիգզագներում անհրաժեշտ է ճիշտ կողմնորոշվել, չմոլորվել և պահպանել ընդհանուր հեռանկարը։*

*Պատմական զարգացման ժամանակակից էտապում համաշխարհային պատերազմը չի կարող արդարացվել կապիտալիզմը հեղափոխության միջոցով խորտակելու տեսանկյունից։*

*Հեղափոխության և համաշխարհային պատերազմի նկատմամբ մոտեցումը կոմունիստական շարժման ստրատեգիայի*

[1] Վ. Ի. Լենին, *Երկեր, հատ. 21, էջ 384—385։*

և տակտիկայի հարցն է, որոնք մշակվում են պատմական կոնկրետ էտապի առանձնահատկությունների, ինչպես տվյալ երկրի ներսում, այնպես էլ միջազգային ասպարեզում դասակարգային և հասարակական քաղաքական ուժերի հաշվառումով։ Ինչպես Մարքսն էր ասում, պետք է հեղափոխության գործը պաշտպանել այնպես, որ այն համապատասխանի փոփոխված հանգամանքներին։ Դա նշանակում է, որ կապիտալիզմի դեմ սոցիալիզմի կողմից մղվող պայքարի հաջողությունը որոշվում է ոչ միայն նրա վերջնական նպատակների նշմամբ, այլև ուղիների, միջոցների և եղանակների ճիշտ ընտրությամբ, որոնք կարող են առավելագույն արդյունք տալ կոնկրետ պայմաններում։

Վերևում ցույց տրվեց արդեն, որ իմպերիալիզմի դեմ մըղվող պայքարը ծավալվում է տարբեր կողմերից։ Հակաիմպերիալիստական, հեղափոխական հզոր հոսանքի մեջ միահյուսվում են հասարակական-քաղաքական ամենատարբեր ուժեր և շերտեր։ Միասնական համաշխարհային հեղափոխական պրոցեսի դրսևորումն են սոցիալիստական հեղափոխությունները, ազգային-ազատագրական շարժումները, ժողովրդադեմոկրատական հեղափոխությունները, գյուղացիական լայն շարժումները, ֆաշիստական և բռնապետական այլ ռեժիմները տապալելու համար ծավալվող շարժումը։ Մասնակիցների սոցիալական կազմով և քաղաքական նպատակներով այդ տարբեր շարժումներն օբյեկտիվորեն ուղղված են ընդհանուր թշնամու՝ իմպերիալիզմի դեմ և այդ իսկ պատճառով հանդիսանում են միասնական համաշխարհային հեղափոխական պրոցեսի բաղկացուցիչ մասերը։ Այստեղից հետևում է, որ սոցիալիստական հեղափոխության հեռանկարները քննարկելիս անհրաժեշտ է կապիտալիստական սիստեմի ներքին պրոցեսները վերլուծելու հետ մեկտեղ հաշվի առնել համաշխարհային սոցիալիստական սիստեմի, ինչպես նաև հակաիմպերիալիստական բոլոր շարժումների ներգործությունն ամբողջ միջազգային իրադրության վրա։ Սոցիալիստական, ազգային-ազատագրական և ժողովրդա-դեմոկրատական հեղափոխությունների հետագա մերձեցումն ու միաձուլումը՝ դարաշրջանի օբյեկտիվորեն գործող տենդենցն է։

*Հակաիմպերիալիստական հեղափոխական ուժերի դաշինքում վճռական դերը պատկանում է միջազգային բանվոր դասակարգին և նրա ծնունդ՝ համաշխարհային սոցիալիստական սիստեմին, որն իր գլխավոր ներգործությունն է ունենում համաշխարհային սոցիալիստական հեղափոխության զարգացման վրա օրինակի ուժով, իր տնտեսական շինարարությամբ։ Այս բոլորը վկայում է այն մասին, որ պատմական նոր իրադրություն է առաջացել, նոր պայմաններ են ծագել, որոնք պահանջում են նոր վերաբերմունք, վերջնական նպատակին նվազագույն զոհերով և կարճ ժամկետներում հասնելու ուղիների ստեղծագործական և ռեալիստական գնահատական։*

* * *

*Աշխարհն ընդգրկած հեղափոխական վերափոխությունները օբյեկտիվորեն համընկան գիտա-տեխնիկական հեղաշրջման հետ, որ պայմանավորված է միջուկային էներգիայի բացահայտման, տիեզերքի յուրացման և այլ մեծագույն նվաճումներով։ Առանց այդ գործոնը հաշվի առնելու չի կարելի գիտական քաղաքականություն վարել, չի կարելի կոմունիստական շարժման համար մշակել կոնկրետ, նպատակասլաց, ինկապես արդյունավետ գլխավոր գիծ։*

*Ի տարբերություն առաջին և երկրորդ համաշխարհային պատերազմների ժամանակաշրջանների, ժամանակակից պայմաններում հեղափոխության հզոր գործոն է դարձել խաղաղ գոյակցությունը։ «Կոմունիստները երբեք չեն գտել և չեն գտնում, թե հեղափոխության ուղին անպայման անցնում է պետությունների միջև մղվող պատերազմներով։ Պարտադիր չէ, որ սոցիալիստական հեղափոխությունը կապված լինի պատերազմի հետ... Հեղափոխությունները միանգամայն հնարավոր են առանց պատերազմների։ Բանվոր դասակարգի վսեմ նպատակները կարող են կենսագործվել առանց համաշխարհային պատերազմի»*[1]*։*

*Ջերմամիջուկային պատերազմը չի կարող արագացնել*

---

[1] *ՍՄԿԿ ծրագիրը, էջ 46։*

հեղափոխության հաղթանակը համաշխարհային մասշտաբով։ Այն կարող է միայն մեծագույն ողբերգություն բերել մարդկությանը։ Հարյուր միլիոնավոր մարդկանց կյանքի գնով կապիտալիզմի կործանումը խորթ է կոմունիստական գաղափարախոսությանը։ Վ. Ի. Լենինն ընդգծում էր. «Մենք գիտենք, մենք շատ լավ գիտենք, թե ինչպիսի չլսված չարիքներ է բերում բանվորներին ու գյուղացիներին պատերազմը։ Այդ իսկ պատճառով մենք պետք է ամենազգույշ և ամենաշրջահայաց կերպով վերաբերվենք այդ հարցին։ Մենք ամենամեծ զիջումների ենք գնում, միայն թե պահպանենք խաղաղությունը...»[1]։

Արդարացի նպատակը պայքարում բնավ չի կարող արդարացնել դրան հասնելու միջոցները։ Կոմունիստական ուսմունքը կտրականապես մերժում և դատապարտում է մաքիավելիզմը քաղաքականության մեջ։ Ոչ մի արդարացի նպատակ չի կարող արդարացնել հրթիռամիջուկային կործանիչ պատերազմի մոխրացնող բոցը։

Ջերմամիջուկային զենքը դասակարգային ընտրություն չի կատարում, չի որոնում, թե որտեղ են կապիտալիստները, որտեղ՝ աշխատավոր մասսաները։ Անառարկելի է, որ ատոմային զենքի երևան գալը ոչ մի կերպ չի կարող կանգնեցնել և չկանգնեցրեց պատմության ընթացքը, չի կարող փոխել և չփոխեց դասակարգային պայքարի օրենքները, չի կարող վերացնել և չվերացրեց կապիտալիստական հասարակության սոցիալ-դասակարգային հակասությունները, սակայն միաժամանակ այն չի արագացնի կապիտալիզմի կրախը և սոցիալիզմի հաղթանակը։ Պալմիրո Տոլյատին ճիշտ էր նկատում. «Կոնկրետ պատկերացնենք, որ մեր հայրենիքի վրա (այսինքն՝ Իտալիայի, ծանոթ. Ս. Ք.), կընկնեն այն 20 կամ 30 միջուկային լիցքերը, որոնք բավական են լրիվ ավերածություն առաջացնելու և ամեն ինչ անապատի վերածելու համար։ Մի՞թե հնարավոր է սոցիալիզմ կառուցել այդ պայմաններում։ Մենք կխաբեինք ժողովրդին, եթե ասեինք, որ այժմ պատերազմի օգնությամբ կարելի է մոտենալ սոցիալիզմին։ Մենք պետք է ճշմարտությունն ասենք, այսինքն,

---

[1] В. И. Ленин, Соч., т. 44, стр. 304—305.

որ եթե մենք ուզում ենք, որպեսզի իտալական ժողովրդի առջև բացվի դեպի սոցիալիզմ տանող ուղին, մենք պետք է անենք ամեն ինչ պատերազմից խուսափելու համար»։

Համաշխարհային ջերմամիջուկային պատերազմը մարդկության տասնամյակներ դեպի ետ կշպրտի, կհետաձգի սոցիալիզմի կառուցման ժամկետները։ Չի կարելի արդարացնել նոր աշխարհի կառուցումը միլիոնավոր դիակների վրա։ Կոմունիզմի գաղափարները կհաղթեն և առանց պատերազմի։ Մարքսիստները օպտիմիստներ են, սակայն նրանց օպտիմիզմը քաղաքականության մեջ բխում է հասարակական օրինաչափությունների իմացությունից։ Նրանք ուժեղ են հենց այն բանով, որ ռադիկալիզմը տեսության մեջ զուգորդում են ռեալիզմի հետ պրակտիկայում։ Մարքսիստական քաղաքականության մեջ արտացոլվում է օբյեկտիվ դիալեկտիկան, սկզբունքայնությունն ու տակտիկական ճկունությունը։ Իրավացի է Դոլորես Իբարուրին ասելով, որ մարքսիստները հակասության մեջ կմտնեին արդարության, խաղաղության և ազատության կոմունիստական սկզբունքների հետ, կհրաժարվեին կոմունիզմի հումանիստական բովանդակությունից, կզռեհկացնեին հեղափոխական մարքսիստական-լենինյան գաղափարների վեհությունը և իրականում կարգելակեին ժողովուրդների շարժումը դեպի սոցիալիզմ, եթե որպես դրան հասնելու միջոց ժողովուրդներին, բանվոր դասակարգին առաջարկեին կոլեկտիվ ինքնասպանություն՝ պատերազմի օգնությամբ։

Արդի դարաշրջանում ջերմամիջուկային պատերազմը համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացման ձև չի կարող լինել։ Ընդհակառակը, խաղաղության և խաղաղ գոյակցության իրադրությունն է նպաստում կապիտալիստական երկրներում հեղափոխական պրոցեսին, պրոլետարիատի դասակարգային պայքարին։ Համաշխարհային հակաիմպերիալիստական շարժումը ծավալվում է սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ամրապնդման, պրոլետարիատի դասակարգային պայքարի, ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումների, նրանց քաղաքական անկախության և տնտեսական ինքնուրույնության ամրապնդման, կապիտալիստա-

կան մոնոպոլիաների դեմ ուղղված աշխատավոր մասսաների շարժման և խաղաղության համար մղվող պայքարի միջոցով։

Սոցիալիստական հեղափոխության հաղթանակը Կուբայում այն բանի գործնական հաստատումն էր, որ հենց համաշխարհային պատերազմի բացակայության պայմաններում իմպերիալիզմի շղթայից նորանոր ժողովուրդների անջատում է կատարվում։ Բնորոշ է նաև այն, որ համաշխարհային կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի երրորդ էտապը ծավալվեց ոչ համաշխարհային պատերազմի կապակցությամբ։

Հենց խաղաղ գոյակցության պայմաններում է կատարվում սոցիալիստական երկրների հետագա զարգացումը, տընտեսական հզորության և պաշտպանունակության ամրապնդումը, արդիականության հեղափոխական ուժերի աճն ու համախմբումը, մոնոպոլիստական բուրժուազիայի մեկուսացումը՝ մասսաներին պատերազմի վտանգի դեմ մոբիլիզացնելու հիման վրա, հակահեղափոխության արտահանման կանխումը։ Մինչդեռ միջազգային լարվածության ուժեղացումը, պատերազմի վտանգի աճը, այսպես կոչված «սառը պատերազմի» իրադրությունը ձեռնտու է իմպերիալիստներին, որոնք շովինիստական կրքեր, ռազմական տենդ են բորբոքում, մղում անզուսպ հակակոմունիզմի պրոպագանդա։ Իշխանության գլուխ են անցնում ամենաթունդ ռեակցիոներները, որոնք օգտվելով լարված իրադրությունից, հաշվեհարդար են տեսնում առաջադեմ կուսակցությունների և մասսայական կազմակերպությունների հետ, ոտնահարում են դեմոկրատիան։

Այսպիսով, խաղաղության համար մղվող պայքարը հեղափոխական մեծ պոտենցիալ է բովանդակում։ Խաղաղ գոյակցության պայմաններում լայնորեն կծավալվեն սոցիալիզմի ստեղծագործական ուժերը, որի հետևանքով կստեղծվեն սոցիալիզմին անցնելու նպաստավոր պայմաններ։ Կապիտալիստական երկրներում, իմպերիալիզմի ռեակցիոն ուժերին էլ ավելի դժվար կլինի միջամտել ուրիշ երկրների ներքին գործերին։ «Միավորելով դեմոկրատական և խաղաղասիրական ուժերը, բանվոր դասակարգը կարող է կառավարող շրջաններին ստիպել դադարեցնելու համաշխարհային նոր պա-

տերազմի նախապատրաստությունը, հրաժարվելու լոկալ պատերազմներ սանձազերծելուց, էկոնոմիկան օգտագործելու խաղաղ նպատակներով։ Բանվոր դասակարգը միավորելով աշխատավորներին, ժողովրդական լայն զանգվածներին, կարող է կասեցնել ֆաշիստական ռեակցիայի հարձակումը, հասնել խաղաղության»[1]։

* * *

Խաղաղ գոյակցությունը չի տանում դեպի երկու սիստեմների միջև գործող հակասությունների մարում կամ երկու հակամարտ դասակարգերի միջև գոյություն ունեցող պայքարի դադարեցում։ Այն չի տարածվում նաև միջդասակարգային հարաբերությունների վրա կապիտալիստական երկրների ներսում։ Խաղաղ գոյակցությունն ընդգրկում է միջպետական հարաբերությունների ոլորտը և բնավ չի կարող տարածվել գաղափարական պայքարի վրա։ Գաղափարական բնագավառում ոչ մի հաշտեցում չի կարող լինել։ Տարբեր երկրներում դասակարգային պայքարի հարցերը չպետք է խառնել միջպետական հարաբերությունների առանձնահատկությունների հետ... «Խաղաղ գոյակցության սկզբունքը անընդունելի է ճնշողների և ճնշվածների, գաղութատերերի և գաղութային ճնշման զոհերի հարաբերություններում»[2]։

Պետությունների խաղաղ գոյակցությունը ծառայում է որպես սոցիալիզմի և կապիտալիզմի խաղաղ մրցության հիմք միջազգային մասշտաբով, դրանով իսկ, նրանց միջև մղվող դասակարգային պայքարի մի յուրահատուկ ձև է։

Խաղաղ գոյակցությունը դասակարգային պայքար է, քանի որ նշանակում է երկու կողմերի համակողմանի հնարավորությունների դրսևորում խաղաղության պայմաններում։ Դասակարգային պայքարը չի ենթադրում մշտական զինված բախումներ։ Միայն այն, որ սոցիալիզմը մրցահրավեր է նե-

---

[1] ՍՄԿԿ ծրագիրը, էջ 43։

[2] ՍՄԿԿ XXIII համագումարի բանաձևը, էջ 11—12։

տում կապիտալիզմին ու թե սպառազինությունների մրցավազքի, այլ խաղաղ շինարարության բնագավառում, նրա խաղաղասեր ստեղծագործական բնույթի և կենսունակության դրսևորումն է։ Միջազգային հարաբերությունների պատմության մեջ դա աննախադեպ երևույթ է։

Ժամանակակից պայմաններում չի կարելի հեղափոխական լինել առանց պայքարելու խաղաղության համար։ Կոմունիզմի ամենահետևողական թշնամիներն անգամ ակամա ընդունում են այն նորը, որ սոցիալիզմն է իր հետ բերում։ Ջոն Ֆոստեր Դալեսն ասում էր, որ միջազգային հարաբերություններում, ինչպես նաև մարդկային գործունեության բոլոր ոլորտներում, դինամիկան գերակշռում է տարերքին։ Կոմունիզմը ակտիվ, դինամիկ հիմք է, իսկ արևմտյան աշխարհը՝ ստատիկ։ Կոմունիզմն իր հաղթանակների համար պարտական է իր սոցիալական գաղափարներին։

Հիրավի, երբ համեմատում ենք սոցիալիստական և կապիտալիստական երկրների զարգացման ցուցանիշները, ապա մի օրինաչափություն էլ է դրսևորվում։ Դա սոցիալիզմի շինարարական վերընթաց շարժումն է, նրա համակողմանի առաջընթացը։ Ասենք, արդյունաբերական արտադրության ծավալը 30 անգամ ավելացնելու համար ԱՄՆ-ին, Գերմանիային և Անգլիային 80-ից 150 տարի էր պետք։ Սովետական Միությունում այդ խնդիրը լուծվեց 20—22 տարվա ընթացքում։

Խաղաղ գոյակցությունը, որպես արդի դարաշրջանին ներհատուկ գործոն, ադեկվատորեն դրսևորվում է սոցիալիստական պետությունների քաղաքականության մեջ, հանդիսանալով դասակարգային պայքարի ակտիվ և գործուն ձև։

Հանդես գալ խաղաղ գոյակցության դեմ, նշանակում է հակադրվել առաջադեմ մարդկությանը և գործել պատմության օբյեկտիվ օրենքներին հակառակ։ Իսկ այդ օրենքները գործում են մասսաների գիտակցական պրակտիկ գործունեության միջոցով։ Իմպերիալիզմը որպես մի սիստեմ, որ զրկվել է և՛ իրական, և՛ բանական լինելու իրավունքից, սոցիալական նոր պայմաններում դիմակայում է պատմության օրենքներին։ Ուստի արդիականության խաղաղասեր հեղափոխական

ուժերը չպետք է իմպերիալիստական բուրժուազիայից խելամիտ որոշումներ սպասեն։ Նրանք պետք է իմպերիալիստներին պարտադրեն խաղաղ գոյակցությունը։ Այս միտքը լավ է արտահայտել Ժոլիո Կյուրին։ «Մենք չենք սահմանափակվի չարագործներին սոսկ դատապարտելով, որ նրանց դրնում է իրենց զոհերի հետ միասին միևնույն տախտակի վրա։ Մենք հավաքվել ենք այստեղ ոչ թե նրա համար, որպեսզի խաղաղություն խնդրենք պատերազմի կողմնակիցներից, այլ նրա համար, որ ստիպենք նրանց ընդունելու այն»[1]։

Իմպերիալիզմի ջատագովները կապիտալիստական սիստեմի համար չտեսնելով որևէ հուսադրող հեռանկարներ խաղաղ գոյակցության պայմաններում, մի կողմից՝ խեղաթյուրում են խաղաղ գոյակցության էությունը, սուբյեկտիվորեն, ուղղագծորեն մեկնաբանելով այն, մյուս կողմից՝ փորձում են ինչ որ հակադրույթներ առաջադրել։ Այսպես, Կիսինգերը գրում է. «Սովետական Միության կողմից առաջ քաշված «խաղաղ գոյակցության» լոզունգը չի կարող թաքցնել մեզանից այն փաստը, որ մենք ապրում ենք հեղափոխական վերափոխությունների ժամանակաշրջանում։ Սովետական ղեկավարները «խաղաղ գոյակցությունը» դիտում են որպես իրենց համար ձեռնտու հարձակողական տակտիկա, որպես լավագույն միջոց, բացի համաշխարհային պատերազմից, բոլոր միջոցներով գոյություն ունեցող միջազգային կապերը քայքայելու համար»։[2]

Այս տողերի հեղինակը ակամա խոստովանում է հեղափոխական վերափոխությունների փաստը, որոնք անխուսափելի են նաև խաղաղության պայմաններում։ Բնորոշ է, որ և՛ համաշխարհային պատերազմը և՛ խաղաղությունը ոչ մի լավ բան չեն խոստանում իմպերիալիզմին։ Հիրավի, խաղաղ գոյակցությունը հարձակողական քաղաքականություն է այն իմաստով, որ մրցահրավեր է կապիտալիզմին ստեղծագործության, այլ ոչ թե կործանման ոլորտում։ Իմպերիալիզմը վա-

---

[1] **Фредерик Жолио-Кюри,** Пять лет борьбы за мир, М., 1955, стр. 1.

[2] **Г. Киссингер,** Ядерное оружие и внешняя политика, стр. 211.

խենում է և՛ խաղաղությունից, և՛ պատերազմ սկսելու որոշումից։ Իսկ ի՞նչ է հակադրում նա խաղաղ գոյակցությանը։ Այդ ալտերնատիվը «սառը պատերազմի», «պատերազմի եզրին» աշխարհը պահելու դոկտրինան է։ Պատերազմի նախապատրաստության ժամանակաշրջանն անվանելով «զսպողական» էտապ, իմպերիալիզմի տեսական սպասարկուները գտնում են, որ այն կարող է հարատև լինել, պահպանվել մի քանի սերնդի կյանքի ընթացքում։ Ծագում է սարսափի հավասարակշռությունը, որը ծառայում է որպես փոխադարձ զսպողական միջոց։ Սերունդները պետք է ապրեն և աշխատեն վառոդի տակառի վրա, որը կարող է պայթել ցանկացած րոպեին։ Իմպերիալիզմի սադիստական էությունն այստեղ դրսևորվում է հստակորեն։

Ոչ թե խաղաղ գոյակցությունը, այլ «սառը պատերազմն» է քայքայում միջազգային կապերը, մշտական լարվածություն առաջացնում պետությունների միջև, դեպի համաշխարհային ջերմամիջուկային աղետ տանում։

Մարդկությունը մոտեցել է իր զարգացման այնպիսի բնագծերի, որ սոցիալ-դասակարգային բոլոր հակասությունների լուծումը հրամայական անհրաժեշտություն է դարձել։ Սակայն ժամանակակից պայմաններում համաշխարհային պատերազմը չի կարող լինել դասակարգային հակամարտությունների լուծման եղանակ։ «Խաղաղ գոյակցություն կամ կատաստրոֆիկ պատերազմ, միայն այսպես է դրել հարցը պատմությունը»[1]։

* * *

Այսպիսով, կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու դարաշրջանում անհրաժեշտ օբյեկտիվ, նյութական նախադրյալներ են առաջանում խաղաղ գոյակցության համար։ Այն համաշխարհային քաղաքականության ռադիկալ սկզբունքներից մեկն է։ Սոցիալիստական հեղափոխության տարբեր ժամկետներում հաղթանակը պայմանավորում է սոցիալիզմի և

[1] ՍՄԿԿ ծրագիրը, էջ 74։

կապիտալիզմի միաժամանակյա գոյակցությունը։ Խաղաղ գոյակցության սկզբունքը լիովին ներդաշնակվում է սոցիալիզմի էության հետ։

Խաղաղ գոյակցության ռեալ հնարավորությունը պայմանավորված է այնպիսի օբյեկտիվ տենդենցով, ինչպիսին համաշխարհային տնտեսական հարաբերություններն են, որոնցից դուրս չի կարող հաջողությամբ զարգանալ ոչ մի պետություն, անկախ իր սոցիալական բնույթից։ Այն պայմանավորված է սոցիալիզմի նվաճումներով, նրա անդուլ և ըսկզբունքային պայքարով՝ ընդդեմ անարդարացի պատերազմների, ինչպես նաև բոլոր ժողովուրդների հակաիմպերիալիստական, հակապատերազմական պայքարով։

Խաղաղ գոյակցությունը որպես արդիականության արմատական պրոբլեմ և համաշխարհային քաղաքականության առաջընթացի պայման, օժտված է հեղափոխական բովանդակությամբ։ «Տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցությունը չի նշանակում սոցիալիստական և բուրժուական գաղափարախոսությունների հաշտեցում։ Ընդհակառակը, այն ենթադրում է հանուն սոցիալիստական գաղափարների հաղթանակի բանվոր դասակարգի, բոլոր կոմունիստական կուսակցությունների պայքարի ուժեղացում։ Սակայն պետությունների գաղափարախոսական և քաղաքական վեճերը չպետք է պատերազմով լուծվեն»[1]։

Օբյեկտիվորեն բարենպաստ միջազգային իրադրություն ստեղծելով հեղափոխական ուժերի ակտիվ գործողությունների համար՝ հանուն սոցիալիզմի և դեմոկրատիայի հաղթանակի, խաղաղ գոյակցությունը դրանով իսկ արագացնում է համաշխարհային պատմության վերընթաց զարգացումը։

Խաղաղ գոյակցությունը դասակարգային հաշտության կոչ չէ, այլ դասակարգային պայքարի յուրահատուկ ձև պետականորեն ձևակերպված սոցիալական խմբերի միջև։ Այն միջտրնջենական պրոցես չէ, այլ ընդգրկում է պատմության այն

---

[1] Կոմունիստական և բանվորական կուսակցությունների ներկայացուցիչների խորհրդակցության Հայտարարությունը, էջ 39։

ժամանակահատվածը, որի ընթացքում վերջնականապես կավարտվի իմպերիալիզմի խորտակումը։ Այսպիսով, խաղաղ գոյակցությունը կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու պատմական պրոցեսի օրինաչափ արտացոլումն է միջպետական հարաբերություններում։

Սոցիալիզմի և կապիտալիզմի խաղաղ գոյակցությունը բնավ չի բացառում իմպերիալիզմի դեմ ուղղված հեղափոխական պատերազմների անխուսափելիությունը՝ կապիտալիստական սիստեմի շրջանակներում։

Խաղաղ գոյակցությունը լիովին համապատասխանում է բոլոր ժողովուրդների կենսական շահերին։ Մի կողմից՝ այն նպաստում է սոցիալիզմի դիրքերի ամրապնդմանը, սոցիալիստական երկրների միջազգային հեղինակության և ազդեցության մեծացմանը, կապիտալիստական երկրների կոմունիստական կուսակցությունների, ինչպես նաև հակաիմպերիալիստական բոլոր ուժերի դերի աճմանը։ Մյուս կողմից՝ խաղաղ գոյակցության գիծը ժողովրդական լայն զանգվածներին մոբիլիզացնելու գիծ է՝ ընդդեմ պատերազմի սպառնալիքի։ Հասարակության կյանքից պատերազմները վերացնելու ռեալ և հուսալի ուղին սոցիալիզմի և կապիտալիզմի խաղաղ գոյակցությունն է, որ ամրացվում է համընդհանուր և լիակատար զինաթափումով։

Քանի դեռ պահպանվում է պետությունների ռազմական մեքենան, պատերազմի վտանգը չի վերանում։ Զինաթափման բաղադրիչ մասերն են միջուկային զենքի չտարածումը, արգելումը և ապա ոչնչացումը, օտարերկրյա բազաների վերացումն ու ուրիշ պետությունների տերիտորիաներից զորքերի դուրս բերումը, ռազմական բլոկների ցրումն ու կոլեկտիվ անվտանգության սիստեմի ստեղծումը աշխարհի տարբեր մասերում։ Զինաթափումը կխթանի համաշխարհային տնտեսական ու սոցիալական զարգացումը։ Այս իմաստով էլ այն մարդկային հասարակության հետագա առաջընթացի կարևորագույն գործոնն է։ Բավական է ասել, որ համընդհանուր և լիակատար զինաթափման դեպքում թույլ զարգացած երկրները կկարողանան տարեկան 40 մլդ. դոլար ստանալ տնտեսական և կուլտուրական զարգացման կարիքների հա-

մար։ Այս կապակցությամբ առաջնակարգ նշանակություն է ձեռք բերում գիտականորեն մշակված զինաթափման ծրագիրը։ ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի 14-րդ սեսիային 1959 թ. սեպտեմբերի 18-ին ներկայացված զինաթափման սովետական կոնցեպցիան պատերազմի նյութական միջոցների ոչնչացման ռեալ ու արդյունավետ ծրագիրն է։ Այն իր հետագա զարգացումը գտավ համընդհանուր և լիակատար զինաթափման մասին պայմանագրի նախագծում (1962), զինաթափման տնտեսական ծրագրում, (1962 թ.), միջազգային լարվածության հետագա մեղմացման և սպառազինությունների մրցավազքի սահմանափակման միջոցների մասին հուշագրում (1964 թ.), միջուկային զենքի չտարածման, (1965—1966 թթ.), «Միջազգային անվտանգությունն ամրապնդելու մասին» (1969 թ.) առաջարկություններում։

Սովետական Միության այս գործուն քայլերը մեկ անգամ ևս հաստատում են սոցիալիզմի հումանիստական էությունը և մոբիլիզացնում մասսաներին պատերազմի իմպերիալիստական հրձիգների դեմ մղվող պայքարում։ «Կոմունիստական գաղափարախոսությունը ամենամարդասիրական գաղափարախոսությունն է։ Նրա իդեալներն են՝ իսկական մարդկային փոխհարաբերություններ հաստատել մարդկանց, ժողովուրդների միջև, մարդկությանը ազատել բնաջնջող պատերազմի սպառնալիքից, երկրագնդի վրա հաստատել ընդհանուր խաղաղություն և ազատ, ուրախ կյանք բոլոր մարդկանց համար»[1]։

---

[1] ՍՄԿԿ-ի ծրագիրը, էջ 147։

# ՎԵՐՋԱԲԱՆ

*Պատմական փորձը հաստատում է, որ համընդհանուր խաղաղություն հաստատելու ռեալ հնարավորությունը գոյանում է սոցիալ-քաղաքական խոր արմատական վերափոխությունների հետևանքով։ Բնորոշ է, որ հենց կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու դարաշրջանում ծագեցին անհրաժեշտ սոցիալական ուժեր, որոնք ընդունակ են սանձահարելու պատերազմի հրահրողներին։ Բայց ներկայումս գոյություն ունեցող հակաիմպերիալիստական ուժերը համարժեք, հավասարազոր չեն։ Հակապատերազմական գործոնների սիստեմում վճռականը սոցիալիզմի լագերն է։ Սոցիալիզմը ոչ միայն ազատում է ժողովուրդներին շահագործման բոլոր ձևերից և հասարակական հակամարտություններից, այլև համաշխարհային արյունահեղությունների սարսափներից։*

*Արդի դարաշրջանի օբյեկտիվ գործոններից մեկը պատերազմի բնույթի որակական փոփոխությունն է։ Խաղաղությունը համամարդկային խնդիր է դարձել։ Նրա համար մըղվող պայքարն այն հանգույցն է, որտեղ միահյուսվում են համայն մարդկության կենսական շահերը։ Խոսքը վերաբերում է խաղաղության և համընդհանուր ոչնչացման միջև եղած ընտրությանը։*

*Ոչ թե երկու կողմերի ռազմական հզորության հավասարակշռությունը կամ այսպես կոչված «սարսափի հավասարակշռությունն» է անմիտ դարձնում նոր համաշխարհային պատերազմը, այլ սոցիալիզմի հարաճուն նյութական հնարավորություններն են զսպող ներգործություն ունենում ագրեսիվ իմպերիալիզմի վրա։*

*Որպես հասարակական երևույթ, պատերազմը ծնվում է որոշակի նյութական հիմքերից և սկսվում կոնկրետ դասա-*

կարգերի կողմից։ Երկու համաշխարհային պատերազմներն իմպերիալիզմի տնտեսական հիմքերի և քաղաքական դրդապատճառների ծնունդ էին։ Հասարակական իրադարձությունները ճիշտ ըմբռնելու համար պահանջվում է օբյեկտիվ ու սուբյեկտիվ գործոնների փոխկապակցության և փոխգործողության բացահայտում։ Երկու համաշխարհային պատերազմները ծագեցին անխուսափելիորեն, որովհետև խաղաղության ուժերը թույլ էին, սակավազոր և անկազմակերպ։ Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, օբյեկտիվ իրադրության արմատական փոփոխության հետևանքով, էապես աճեց սուբյեկտիվ գործոնի դերը համաշխարհային քաղաքականության մեջ։

Մարդկանց գործունեության բնույթն ու արդյունքները պայմանավորված են հասարակական-տնտեսական հարաբերություններով, օբյեկտիվ իրադրությամբ։ Մարդիկ պատմական անհրաժեշտության ստրուկները չեն, նրանք սեփական գործողությունների հեղինակներն են։ Այդ գործողությունները նպատակասլաց, արդյունավետ բնույթ են ձեռք բերում, եթե համապատասխանում են սոցիալական կյանքի օբյեկտիվ տենդենցներին։ Ժամանակակից կապիտալիզմի խոր հիմքերը խարխլող արմատական վերափոխությունները հեղափոխական մասսաների, դասակարգերի և կուսակցությունների գիտակցական գործունեության, կազմակերպված ելույթների դրսևորումն են, որոնց մեջ արտացոլվում են սոցիալական զարգացման օբյեկտիվ պրոցեսները։

Անկասկած, քանի դեռ հողագնդի վրա պահպանվում է իմպերիալիզմը, պահպանվում են նաև պատերազմի օբյեկտիվ հիմքերը։ Խոշոր կապիտալիստական մոնոպոլիաների շահերը ներկայացնող ռեակցիոն քաղաքական ուժերը կարող են փորձել պատերազմ սանձազերծել։ Այդպիսի հնարավորությունը բացառված չէ իմպերիալիզմի համար նույնիսկ ամենաանբարենպաստ պայմաններում։ Կապիտալիստների դասակարգի դատապարտվածությունը, նրա երկյուղը մասնավոր սեփականության հիմքերը կործանող հեղափոխական ուժերից բռնությամբ իր իշխանությունը պահպանելու բացահայտ տենդենց են առաջացնում։

Սակայն, ներկայումս կան հասարակական-քաղաքական այնպիսի ուժեր, որոնք ընդունակ են զսպելու իմպերիալիզմի ռազմատենչ կրքերը։ «Այժմ միջազգային հեղափոխության վրա, —ասում էր Վ. Ի. Լենինը,—մենք մեր գլխավոր ներգործությունն անում ենք մեր տնտեսական քաղաքականությամբ... Այս ասպարեզն է փոխադրվել պայքարը համաշխարհային մասշտաբով»[1]։ Իսկ իմպերիալիզմի հնարավորությունների նվազումը հակադարձ համեմատական է խաղաղության հիմքերի ամրապնդմանը։ Պայքարը սոցիալական առաջընթացի համար միաձուլվում է համընդհանուր խաղաղության համար մղվող պայքարի հետ։ Վ. Ի. Լենինը նշում էր, որ քաղաքական հարցը ընդհուպ մոտենում է ռազմական հարցին։ Այստեղ հստակորեն դրսևորվում է այնպիսի գործոնի դերը սոցիալիստական պետությունների ներքին գործունեության մեջ, ինչպես տնտեսությունը ճիշտ կազմակերպելը, սոցիալիզմի էության մեջ թաքնված անսահման նյութական հնարավորությունները հմուտ և արդյունավետ օգտագործելը, արտադրողական ուժերի զարգացումն ապահովող գիտականորեն հիմնավորված ու փորձված եղանակներն ու մեթոդները դիալեկտիկորեն կիրառելը՝ ժամանակի պահանջների հաշվառումով, կառավարման և տնտեսավարման հնացած, ոչ պիտանի ձևերից հրաժարվելը, կոլեկտիվ ղեկավարության նորմաների խստապահանջ պահպանումը։ Արտադրության զարգացման մեջ ռացիոնալ տնտեսական խթաններ հայտնաբերելը պայմանավորված է հասարակության նյութական ոլորտի օբյեկտիվ տենդենցների և պրոցեսների խորաթափանց իմաստավորմամբ։ Հետևաբար, տնտեսավարությամբ պետք է զբաղվեն համապատասխան գիտելիքներով և փորձով զինված շրջահայաց ու գործիմաց մարդիկ։ Սոցիալիստական երկրների տնտեսական պլանների կենսագործման ուղղությամբ կատարվող ամեն մի քայլ գնահատվում է համաշխարհային հասարակության կողմից։ Հետևաբար, մեր ներքին գործերը միջազգային նշանակություն են ձեռք բերում։ Կոմունիզմի նյութատեխնիկական բա-

[1] Վ. Ի. ԼԵՆԻՆ, *Երկեր, հատ. 32, էջ 562։*

ցան համընդհանուր խաղաղության պահպանման անխորտակելի գործոնն է։ Այդ բազան ստեղծելով, սոցիալիստական հասարակության քաղաքացիներն, ամբողջության մեջ, ազգային և ինտերնացիոնալ խնդիրներ են լուծում։ Այստեղից հետևում է, որ «ներքին գործոն» հասկացությունը հարաբերական է, այն իր բովանդակությամբ դուրս է գալիս ներքին ոլորտի շրջանակներից, մեկ այլ կապի մեջ դառնալով արտաքին գործոն։

Համաշխարհային քաղաքականության վրա սոցիալիզմի ներգործության վճռական ոլորտը նյութական արտադրությունն է։ «Երբ սովետական ժողովուրդը կօգտվի կոմունիզմի բարիքներից, աշխարհի նոր հարյուր միլիոնավոր մարդիկ կասեն. «Մենք կողմնակից ենք կոմունիզմին»[1]։

Մյուս կողմից՝ սոցիալիստական երկրների ժողովուրդների կողմից մեծագույն տնտեսական խնդիրների իրագործմանը զուգընթաց, կապիտալիստական երկրների դասակարգային ուժերի քաղաքական հասունության աճը կթեթևացնի այդ խնդիրների արագ ու հաջող կատարման արտաքին պայմանները։

Աշխատավոր մասսաները պատմական առաջընթացի շարժիչ ուժն են։ Այս դրույթն անփոփոխ է նույնիսկ ռազմական տեխնիկայի ասպարեզում կատարված հեղափոխիչ թռիչքի պայմաններում։ Սակայն արդի դարաշրջանում ժողովրդական մասսաների վճռական դերը համաշխարհային քաղաքականության մեջ դրսևորվում է պատերազմի սանձազերծումը թույլ չտալու, ագրեսորներին իր ժամանակին զսպելու մեջ։

Ներկայում սոցիալական ոչ մի պրոբլեմ չի կարելի լուծել խաղաղության համար մղվող պայքարի շրջանակներից դուրս։ Համընդհանուր խաղաղությունը համամարդկային առաջընթացի պայմանն է։ Մարդկության անկասելի շարժումը դեպի սոցիալիզմ, որպես ժամանակակից դարաշրջանի օրինաչափություն, միաժամանակ կապիտալիզմի օրոք գոր-

---

[1] ՍՄԿԿ ծրագիրը, էջ 172։

ծող կույր, տարերային ուժերի իշխանությունից մարդկանց դուրս գալու պրոցես է։ «Մինչև հիմա պատմության վրա իշխող օբյեկտիվ, օտար ուժերը, հենց իրենց՝ մարդկանց վերահսկողության տակ են անցնում։ Եվ միայն այդ պահից մարդիկ կսկսեն միանգամայն գիտակցորեն իրենք կերտել իրենց պատմությունը, միայն այն ժամանակ իրենց կողմից շարժման մեջ դրվող հասարակական պատճառները գերակշռող և հարաճուն չափով կունենան և այն հետևանքները, որոնք իրենց ցանկալի են։ Դա մարդկության թռիչքն է անհրաժեշտության թագավորությունից դեպի ազատության թագավորությունը»[1]։

Իր դասակարգային տիրապետությունը պահպանելու նպատակով բռնության դիմելը, հրթիռամիջուկային պատերազմ նախապատրաստելը իմպերիալիստական բուրժուազիայի քաղաքական, բարոյական և ինտելեկտուալ սնանկության ցայտուն դրսևորումն է։

Հետպատերազմյան ժամանակաշրջանում օբյեկտիվ իրադրության փոփոխությունն ու համաշխարհային քաղաքականության մեջ սուբյեկտիվ գործոնի դերի որոշակի աճը պայմանավորեցին հասարակության կյանքից համաշխարհային պատերազմը բացառելու հնարավորությունը։ Սակայն ամենառեալ հնարավորությունն անգամ իրականություն չէ։ Ինչպես Վ. Ի. Լենինն էր ասում, «Ամենավտանգավոր բանը պատերազմում... թշնամուն թերագնահատելն է և հանգստանալն է այն մտքով, թե մենք ավելի ուժեղ ենք»[2]։

Աշխարհը ջերմամիջուկային կործանարար մահաբեր պատերազմի վտանգից ազատելու համար անհրաժեշտ է միջազգային իմպերիալիզմի ռազմամոլ ուժերի դեմ համախմբել պրոլետարիատի բոլոր ջոկատների և կազմակերպությունների, մարդկային հասարակության բոլոր խաղաղասեր շերտերի անընկճելի կամքն ու միասնական գործողությունները։ Պատմության մեջ աննախադեպ ժողովուրդների հակապատե-

---

[1] **К. Маркс и Ф. Энгельс,** Соч., т. 20, стр. 295.

[2] **Վ. Ի. Լենին,** *Երկեր, հատ. 31, էջ 202։*

*բազմական հզոր կոալիցիան, որի մեջ մտնում են սոցիալիզմի նյութական բազայի վրա հենվող բազմապիսի հեղափոխական ուժեր, նոր համաշխարհային պատերազմը կանխելու և այն առհասարակ հասարակության կյանքից բացառելու երաշխիքն է։ «Սոցիալիզմի երկրների, միջազգային բանվոր դասակարգի, ազգային-ազատագրական շարժման, խաղաղասեր բոլոր պետությունների, հասարակական կազմակերպությունների և մասսայական շարժումների միացյալ ջանքերով համաշխարհային պատերազմը կարելի է կանխել»*[1]։

---

[1] *Կոմունիստական ու բանվորական կուսակցությունների Մոսկվայի միջազգային խորհրդակցության 1969 թվականի հունիսի 17-ին ընդունած Հիմնական փաստաթուղթը, «Հայաստան» հրատ., 1969, էջ 45։*

## ՕԳՏԱԳՈՐԾՎԱԾ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

(Հիմնական)


Կ. Մարքս, *Կապիտալ, հատ. 1, Հայպետհրատ, 1954։*

Կ. Մարքս, և Ֆ. Էնգելս, *Սուրբ ընտանիք կամ քննադատական քննադատության քննադատություն, «Հայաստան» հրատարակչություն, 1967։*

Կ. Մարքս, *Լուի Բոնապարտի բրյումերի տասնութը։ Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հատ. 1, Հայպետհրատ, 1950։*

Կ. Մարքս, *Բրիտանական տիրապետությունը Հնդկաստանում, Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հատ. 1, Հայպետհրատ, 1950։*

Կ. Մարքս, *Բրիտանական տիրապետության ապագա արդյունքները Հնդկաստանում։ Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հատ. 1, Հայպետհրատ, 1950։*

Կ. Մարքս, *Հիմնադիր մանիֆեստ բանվորների միջազգային ընկերության։ Կ. Մարքս, և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հատ. 1, Հայպետհրատ, 1950։*

Կ. Մարքս, *Քաղաքացիական պատերազմը Ֆրանսիայում։ Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հատ. 1, Հայպետհրատ, 1950։*

Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, *Կոմունիստական կուսակցության մանիֆեստը, Հայպետհրատ, 1960։*

Ֆ Էնգելս, *Անտի-Դյուրինգ, Հայպետհրատ, 1952։*

Ֆ. Էնգելս, *Լյուդվիգ Ֆոյերբախը և գերմանական կլասիկ փիլիսոփայության վախճանը, Հայպետհրատ, 1961։*

Ֆ. Էնգելս, *Սոցիալիզմի զարգացումը ուտոպիայից դեպի գիտություն։ Կ. Մարքս, և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հատ. 1, Հայպետհրատ, 1950։*

Ֆ. Էնգելս, *Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը, «Հայաստան» հրատարակչություն, 1967։*

Ֆ. Էնգելս, *Կոմունիզմի սկզբունքները, Հայպետհրատ, 1964։*

К. Маркс и **Ф. Энгельс.** Немецкая идеология. Соч., т. 3.

К. **Маркс.** Запись речи о политическом действии рабочего класса 21 сентября 1871 г. **К. Маркс** и **Ф. Энгельс.** Соч., т. 17.

К. **Маркс.** Учредительный манифест международного товарищества рабочих. **К. Маркс** и **Ф. Энгельс.** Соч., т. 16.

К. **Маркс.** Первое воззвание Генерального совета международного товарищества рабочих о Франко-прусской войне. **К. Маркс** и **Ф. Энгельс.** Соч., т. 17.

**Ф. Энгельс.** Празднество нации в Лондоне. **К. Маркс** и **Ф. Энгельс.** Соч., т. 2.

Переписка между К. Марксом и Ф. Энгельсом. Письма К. Маркса и

Ф. Энгельса к разным лицам. **К. Маркс** и **Ф. Энгельс.** Соч., тт. 27—39.

**Վ. Ի. Լենին**, *Պորտ-Արթուրի անկումը*, Երկեր, հատ. 8։

**Վ. Ի. Լենին**, *Հեղափոխական օրեր*, Երկեր, հատ. 8։

**Վ. Ի. Լենին**, *Եվրոպական կապիտալը և ինքնակալությունը*, Երկեր, հատ. 8։

**Վ. Ի. Լենին**, *Ջախջախում*, Երկեր, հատ. 8։

**Վ. Ի. Լենին**, *Նոր հեղափոխական բանվորական միություն*, Երկեր, հատ. 8։

**Վ. Ի. Լենին**, *Հեղափոխական բանակը և հեղափոխական կառավարությունը*, Երկեր, հատ. 8։

**Վ. Ի. Լենին**, *Նոր վերելք*, Երկեր, հատ. 10։

**Վ. Ի. Լենին**, *Պարտիզանական պատերազմը*, Երկեր, հատ. 11։

**Վ. Ի. Լենին**, *Շտուտգարտի միջազգային սոցիալիստական կոնգրեսը*, Երկեր, հատ. 13։

**Վ. Ի. Լենին**, *Մարտնչող միլիտարիզմը և սոցիալ-դեմոկրատիայի հակամիլիտարիստական տակտիկան*, Երկեր, հատ. 15։

**Վ. Ի. Լենին**, *«Ցավակցություն» և «Ամոթանք»*, Երկեր, հատ. 17։

**Վ. Ի. Լենին**, *Բուրժուազիան և խաղաղությունը*, Երկեր, հատ. 19։

**Վ. Ի. Լենին**, *Հեղափոխական սոցիալ-դեմոկրատիայի խնդիրները եվրոպական պատերազմում*, Երկեր, հատ. 21։

**Վ. Ի. Լենին**, *Պատերազմը և Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատիան*, Երկեր, հատ. 21։

**Վ. Ի. Լենին**, *Սոցիալիստական ինտերնացիոնալի դրությունը և խնդիրները*, Երկեր, հատ. 21։

**Վ. Ի. Լենին**, *Մեռյալ շովինիզմը և կենդանի սոցիալիզմը*, Երկեր, հատ. 21։

**Վ. Ի. Լենին**, *Իսկ հետո՞ ինչ*, Երկեր, հատ. 21։

**Վ. Ի. Լենին**, *ՌՍԴԲԿ արտասահմանյան սեկցիաների կոնֆերանսը*, Երկեր, հատ. 21։

**Վ. Ի. Լենին**, *Սոցիալ-շովինիստների սոփեստությունները*, Երկեր, հատ. 21։

**Վ. Ի. Լենին**, *Բուրժուական մարդասերները և հեղափոխական սոցիալ-դեմոկրատիան*, Երկեր, հատ. 21։

**Վ. Ի. Լենին**, *2-րդ ինտերնացիոնալի կրախը*, Երկեր, հատ. 21։

**Վ. Ի. Լենին**, *Իր կառավարության պարտության մասին իմպերիալիստական պատերազմում*, Երկեր, հատ. 21։

**Վ. Ի. Լենին**, *Հաշտության հարցը*, Երկեր, հատ. 21։

**Վ. Ի. Լենին**, *Սոցիալիզմը և պատերազմը*, Երկեր, հատ. 21։

**Վ. Ի. Լենին**, *Եվրոպայի Միացյալ Նահանգների լոզունգի մասին*, Երկեր, հատ. 21։

**Վ. Ի. Լենին**, *Ցիմմերվալդյան ձախի բանաձևի նախագիծը*, Երկեր, հատ. 21։

**Վ. Ի. Լենին**, *Ֆրանսիական սոցիալիստի ազնիվ ձայնը*, Երկեր, հատ. 21։

**Վ. Ի. Լենին**, *Կոչ պատերազմի մասին*, Երկեր, հատ. 21։

**Վ. Ի. Լենին**, *Ինտերնացիոնալի սոցիալիստական հանձնաժողովին*, Երկեր, հատ. 21։

**Վ. Ի. Լենին**, *Օպորտունիզմը և 2-րդ ինտերնացիոնալի կրախը*, Երկեր, հատ. 21։

Վ. Ի. Լենին, Առաջաբան Ն. Բուխարինի «Համաշխարհային տնտեսություն» և իմպերիալիզմ» բրոշյուրի առթիվ, Երկեր, հատ. 22։
Վ. Ի. Լենին, Օպորտունիզմը և 2-րդ ինտերնացիոնալի կրախը, Երկեր, հատ. 22։
Վ. Ի. Լենին, Ճառ Բեռնի ինտերնացիոնալ միտինգում, 1916 թ. փետրվարի 8-ին, Երկեր, հատ. 22։
Վ. Ի. Լենին, «Հաշտության ծրագրի» մասին, Երկեր, հատ. 22։
Վ. Ի. Լենին, ՌՍԴԲԿ Կենտրոնական կոմիտեի առաջարկությունը 2-րդ սոցիալիստական կոնֆերանսին, Երկեր, հատ. 22։
Վ. Ի. Լենին, Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա, Երկեր, հատ. 22։
Վ. Ի. Լենին, Յունիուսի բրոշյուրի մասին, Երկեր, հատ. 22։
Վ. Ի. Լենին, Մարքսիզմի ծաղրանկարի և «Իմպերիալիստական էկոնոմիզմի» մասին, Երկեր, հատ. 23։
Վ. Ի. Լենին, Պրոլետարական հեղափոխության ռազմական ծրագիրը, Երկեր, հատ. 23։
Վ. Ի. Լենին, «Զինաթափման» լոզունգի մասին, Երկեր, հատ. 23։
Վ. Ի. Լենին, Իմպերիալիզմը և սոցիալիզմի պառակտումը, Երկեր, հատ. 23։
Վ. Ի. Լենին, Թեզիսներ պատերազմի նկատմամբ շվեյցարական սոցիալ-դեմոկրատական կուսակցության վերաբերմունքի մասին, Երկեր, հատ. 23։
Վ. Ի. Լենին, Սկզբունքային դրույթներ պատերազմի հարցի մասին, Երկեր, հատ. 23։
Վ. Ի. Լենին, Պացիֆիզմ բուրժուական և պացիֆիզմ սոցիալիստական, Երկեր, հատ. 23։
Վ. Ի. Լենին, Բաց նամակ Բորիս Սուվարինին, Երկեր, հատ. 23։
Վ. Ի. Լենին, Նամակներ հեռվից, Երկեր, հատ. 23։
Վ. Ի. Լենին, Հեղափոխությունը Ռուսաստանում և բոլոր երկրների բանվորների խնդիրները, Երկեր, հատ. 23։
Վ. Ի. Լենին, Հրաժեշտի նամակ շվեյցարական բանվորներին, Երկեր, հատ. 23։
Վ. Ի. Լենին, Կոչ բոլոր պատերազմող երկրների զինվորներին, Երկեր, հատ. 24։
Վ. Ի. Լենին, ՌՍԴԲԿ(բ) Յոթերորդ (ապրիլյան) համառուսաստանյան կոնֆերանսը 24—29 ապրիլի (17—21 մայիսի) 1917 թ., Երկեր, հատ. 24։
Վ. Ի. Լենին, Պատերազմը և հեղափոխությունը, Երկեր, հատ. 24։
Վ. Ի. Լենին, Բանվորների և զինվորների դեպուտատների սովետների համառուսաստանյան 1-ին համագումարը 1917 թ. հունիսի 3—24 (հունիսի 16—հուլիսի 7), Երկեր, հատ. 25։
Վ. Ի. Լենին, Սպառնացող աղետը և ինչպես պայքարել նրա դեմ, Երկեր, հատ. 25։
Վ. Ի. Լենին, Պետություն և հեղափոխություն, Երկեր, հատ. 25։

Վ. Ի. Լենին, *Բանվորների և զինվորների դեպուտատների համառուսաստանյան երկրորդ համագումարը 25—26 հոկտեմբերի (7—8 նոյեմբերի) 1917 թ., Երկեր, հատ. 26։*

Վ. Ի. Լենին, *Դժբախտ հաշտության հարցի պատմության շուրջը, Երկեր, հատ. 26։*

Վ. Ի. Լենին, *ՌԿ(բ)Կ յոթերորդ համագումարը 1918 թ. մարտի 6—8-ը, Երկեր, հատ. 27։*

Վ. Ի. Լենին, *Սովետների համառուսաստանյան 4-րդ արտակարգ համագումարը 14—16 մարտի 1918 թ., Երկեր, հատ. 27։*

Վ. Ի. Լենին, *Զեկուցում արտաքին քաղաքականության մասին համառուսաստանյան կենտգործկոմի և Մոսկվայի սովետի միացյալ նիստում 1918 թ. մայիսի 14-ին, Երկեր, հատ. 27։*

Վ. Ի. Լենին, *Մարգարեական խոսքեր, Երկեր, հատ. 27։*

Վ. Ի. Լենին, *Նամակ ամերիկյան բանվորներին, Երկեր, հատ. 28։*

Վ. Ի. Լենին, *Ճառ Վարշավայի հեղափոխական գնդի միտինգում 1918 թ. օգոստոսի 2-ին, Երկեր, հատ. 28։*

Վ. Ի. Լենին, *ՌԿ(բ)Կ 8-րդ համագումարը 18—23 մարտի 1919 թ., Երկեր, հատ. 29։*

Վ. Ի. Լենին, *Ամերիկյան բանվորներին, Երկեր, հատ. 30։*

Վ. Ի. Լենին, *Էկոնոմիկան և քաղաքականությունը պրոլետարիատի դիկտատուրայի դարաշրջանում, Երկեր, հատ. 30։*

Վ. Ի. Լենին, *Զեկուցում Արևելքի ժողովուրդների կոմունիստական կազմակերպությունների համառուսաստանյան 2-րդ համագումարում, 22 նոյեմբերի 1919 թ., Երկեր, հատ. 30։*

Վ. Ի. Լենին, *ՌԿ(բ)Կ Համառուսաստանյան 8-րդ կոնֆերանսը, 2—4 դեկտեմբերի 1919 թ., Երկեր, հատ. 30։*

Վ. Ի. Լենին, *Սովետների համառուսաստանյան 7-րդ համագումարը, 5—9 դեկտեմբերի 1919 թ., Երկեր, հատ. 30։*

Վ. Ի. Լենին, *Պատասխան ամերիկյան* «New vork evening journal» *թերթի թղթակցի հարցերին, Երկեր, հատ. 30։*

Վ. Ի. Լենին, *Ճառ Ռոգոժսկ-Սիմոնովսկի շրջանի բանվորա-կարմիրբանակային լայն կոնֆերանսում, 13 մայիսի 1920 թ., Երկեր, հատ. 31։*

Վ. Ի. Լենին, *Ճառ գյուղում կատարվող աշխատանքի պատասխանատու կազմակերպիչների համառուսաստանյան 2-րդ խորհրդակցությունում, 12 հունիսի 1920 թ., Երկեր, հատ. 31։*

Վ. Ի. Լենին, *Մեր արտաքին և ներքին դրությունը և կուսակցության խնդիրները (ճառ ՌԿ(բ)Կ Մոսկվայի նահանգական կոնֆերանսում, 21 նոյեմբերի 1920 թ.), Երկեր, հատ. 31։*

Վ. Ի. Լենին, *Սովետների համառուսաստանյան 8-րդ համագումարը, 22—29 դեկտեմբերի 1920 թ., Երկեր, հատ. 31։*

Վ. Ի. Լենին, *Կոմունիստական ինտերնացիոնալի 3-րդ կոնգրեսը, 1921 թ. հունիսի 22, հուլիսի 12, Երկեր, հատ. 32։*

Վ. Ի. Լենին, *Սովետական հանրապետության միջազգային և ներքին դրու-*

*թյան մասին (Ճառ մետաղագործների համառուսաստանյան համագումարի կոմունիստական ֆրակցիայի նիստում, 6 մարտի 1922 թ.), Երկեր, հատ. 33։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ, *Նոթեր Հաագայի մեր պատվիրակության խնդիրների մասին, Երկեր, հատ. 33։*

**В. И. Ленин.** К русскому пролетариату. Полн. собр. соч., т. 8.

**В. И. Ленин.** Ко всем гражданам России. Полн. собр. соч., т. 22.

**В. И. Ленин.** Примечания к резолюции Штутгартского конгресса «О милитаризме и международных конфликтах». Полн. собр. соч., т. 16.

**В. И. Ленин.** Антимилитаристская пропаганда и союзы социалистической рабочей молодежи. Полн. собр. соч., т. 26.

**В. И. Ленин.** О лозунге превращения империалистической войны в войну гражданскую. Полн. собр. соч., т. 26.

**В. И. Ленин.** О декларации польских социал-демократов на Циммервальдской конференции. Полн. собр. соч., т. 30.

**В. И. Ленин.** Замечания по поводу статьи о максимализме. Полн. собр. соч., т. 30.

**В. И. Ленин.** Возражения на замечания Г. Е. Зиновьева к статьям «О брошюре Юниуса» и «Итоги дискуссии о самоопределении». Полн. собр. соч., т. 54.

* * *

**Н. Вознесенский.** Военная экономика СССР в период Отечественной войны. М., 1948.

**Г. Димитров.** Избранные произведения, т. 1, М., 1957.

**Н. Крупская.** О Ленине. М., 1960.

**В. Либкнехт.** Милитаризм и антимилитаризм. М., 1960.

**Ф. Меринг.** Очерки по истории войн и военного искусства. М., 1940.

**Г. В. Плеханов.** В защиту экономического материализма. Избр. филос. произв., т. 2, М. 1956.

**Г. В. Плеханов.** К вопросу о роли личности в истории. Избр. филос. произв. т. 2, М., 1956.

**У. Фостер.** Закат мирового капитализма. М., 1951.

**У. Фостер.** История трех интернационалов. М., 1959.

**Г. В. Чичерин.** Статьи и речи. М., 1961.

* * *

КПСС в резолюциях и решениях съездов, конференций и пленумов ЦК. ч. I—IV. М., 1954, 1960.

*ՍՄԿԿ ծրագիրը, Հայպետհրատ, 1961։*
*ՍՄԿԿ 22-րդ համագումարի նյութերը, Հայպետհրատ, 1962։*
*ՍՄԿԿ 23-րդ համագումարի բանաձևը, Հայպետհրատ, 1966։*
*Սոցիալիստական երկրների կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ներկայացուցիչների խորհրդակցության դեկլարացիան։ Խաղաղության մանիֆեստ, Հայպետհրատ, 1957։*
*Կոմունիստական և բանվորական կուսակցությունների ներկայացուցիչների խորհրդակցության հայտարարությունը, Հայպետհրատ, 1960։*
*Կոմունիստական ու բանվորական կուսակցությունների Մոսկվայի միջազգային խորհրդակցության 1969 թվականի հունիսի 17-ին ընդունած Հիմնական փաստաթուղթը։ «Հայաստան» հրատարակչություն, 1969։*
*«Պատմության կեղծարարները» (պատմական տեղեկանք), Հայպետհրատ, 1948։*

Германский империализм и милитаризм. М., 1965.
Военные доктрины стран НАТО. М., 1966.
Военная стратегия. М., 1963.
История военного искусства. М., 1966.
Исторический материализм и социальная философия современной буржуазии. М., 1960.
Милитаризм. Разоружение (справочник). М., 1963.
Мир капитализма (справочник), М., 1965.
Критика современной буржуазной философии и социологии. М., 1963.
Проблемы войны и мира. Критика современных буржуазных социально-философских концепций. М., 1967.
Проблемы революции в военном деле (сборник). М., 1965.
Современная империалистическая военная идеология (сборник статей). М., 1958.
Колониализм: история и современность. М., 1968.
Проблемы современного капитализма (сборник статей). М., 1959.
Страны социализма и капитализма в цифрах. М., 1966.

* * *

**Ф. Бернгарди.** Наша будущность. 1914 г.
**Ф. Буонаротти.** Заговор во имя равенства. М., 1963.
**Т. Гоббс.** Левиафан. Избр. произв. т. 2, М., 1964.
**И. Кант.** К вечному миру. Соч., т. 6, М., 1966.
**К. Клаузевиц.** О войне. М., 1941.
**Т. Мор.** Утопия. М., 1953.
**Г. Николаи.** Биология войны. Л., 1926.
**Ф. Ницше.** Собрание сочинений. 1903 г.
**О. Шпенглер.** Пруссачество и социализм. Изд. Academia, 1922.
**Р. Оуэн.** Избранные сочинения. М., 1950.

**Дж. Пристли.** Избранные сочинения. М., 1934.

**Сен-Симон.** Избранные сочинения. М., 1948.

**А. Н. Радищев.** Избранные философские и общественно-политические произведения. М., 1952.

Избранные произведения русских мыслителей II половины XVIII в. М., 1952.

Русские просветители. Собрание произведений в двух томах. М., 1966.

Трактаты о вечном мире. М., 1963.

**Л. А. Безыменский.** Германские генералы с Гитлером и без него. М., 1961.

**П. А. Белов.** Вопросы экономики в современной войне. М., 1951.

**Л. О. Броцкий.** Мирное сосуществование и борьба за всеобщий мир. Л., 1965 г.

**Е. Варга.** Основные вопросы экономики и политики империализма. М., 1953.

**Е. Варга.** Капитализм двадцатого века. М., 1961.

**В. П. Васин.** Империалистический милитаризм—угроза миру. Минск, 1964

**П. П. Вершигора.** Военное творчество народных масс. М., 1961.

**Г. А. Деборин.** Мирное сосуществование и борьба за всеобщий мир. Изд. Моск. ун-та, 1965.

**М. Драгилев, Г. Руденко.** Монополистический капитализм. М., 1961.

**И. М. Иванова.** Мирное сосуществование и кризис внешнеполитической идеологии империализма США. М., 1965.

**Н. Н. Иноземцев.** Внешняя политика США в эпоху империализма. М., 1960.

**В. Л. Исраелян, Л. Н. Кутаков.** Дипломатия агрессоров. М., 1967.

**С. И. Крупнов.** Диалектика и военная наука. М., 1963.

**А. Н. Лаговский.** Стратегия и экономика. М., 1961.

**Н. М. Минасян.** Право мирного сосуществования. Р/Д. 1966.

**М. В. Попов.** Сущность законов вооруженной борьбы. М., 1964.

**Н. В. Пуховский.** О мире и войне. М., 1965.

**И. А. Селезнев.** Война и идеологическая борьба. М., 1964.

**Б. Я. Смулевич.** Критика буржуазных теорий и политики народонаселения. М., 1959.

**А. А. Строков.** История военного искусства. М., 1967.

**П. И. Трифонов.** Об основных законах хода и исхода современной войны. М., 1962.

**С. А. Тюшкевич.** Необходимость и случайность в войне. М., 1961.

**В. Л. Тягуненко.** Войны и колонии. М., 1957.

**И. Файнберг.** 1914-й М., 1934.

**Ю. М. Шейнин.** Наука и милитаризм в США, М., 1963.
**М. С. Шифман.** Война и экономика. М., 1963.
**В. Ц. Урланис.** Войны и народонаселение Европы. М., 1960.
**А. Н. Яковлев.** Идеология американской империи. М., 1967.

* * *

**А. Ангелопулос.** Объединит ли атом мир? М., 1957.
**Г. Аптекер.** Внешняя политика США и «холодная война». М., 1963.
**Дж. Аллен.** Атомный империализм. М., 1952.
**Дж. Батлер, Д. Гуайер.** Большая стратегия. М., 1967 г.
**Дж. Броди.** Стратегия в век ядерного оружия. М., 1961.
**Ф. Бонт.** Разоружение или война. М., 1963.
**Дж. Бернал.** Мир без войны. М., 1961.
**Дж. Бернал.** Разоружение. М., 1962.
**Б. Данэм.** Гигант в цепях. М., 1958.
**Б. Данэм.** Человек против мифов. М., 1961.
**А. Берт.** Россия в войне 1941—1945 гг. М., 1967.
**М. Э. Виленский.** Ваш враг Теллер. М., 1964.
**Л. Гарт.** Устрашение или оборона? М., 1962.
**А. Кан.** Измена родине. М., 1951.
**Э. Дж. Кингстон-Макклори.** Глобальная стратегия. М., 1959.
**К. Кнорр.** Военный потенциал государств. М., 1960.
Ժոզուե դը Կաստրո, *Սովի աշխարհագրություն։ Հայպետհրատ,* **1957։**
**Р. Кларк.** Рождение бомбы. М., 1962.
**Фрэд Кук.** Государство войны. М., 1962 г.
**Ф. Ж. Кюри.** Пять лет борьбы за мир. М., 1955.
Ռ. Լեպպ, *Սպանություն և գերսպանություն։ «Հայաստան» հրատ.* **1965։**
**Р. Лепп.** Атомы и люди. М., 1959.
**Х. Люмер.** Военная экономика и кризис. М., 1955.
**Ю. Лидер.** НАТО. М., 1964.
**Дж. Лоу.** Век устрашения. М., 1966.
**Д. Льюис.** Человек и эволюция. М., 1964.
**Т. Мартин, Д. Лэтем.** Стратегия выживания. М., 1964.
**Р. Маккин.** Военная экономика в ядерный век. М., 1964.
**А. Норден.** Уроки германской истории. М., 1948.
**А. Норден.** Так делаются войны. М., 1951.
**Дж. Озер.** Должны ли люди голодать? М., 1959.
**Р. Осгуд.** Ограниченная война. М., 1960.
**М. Тейлор.** Ненадежная стратегия. М., 1961.
**К. Типпельскирх.** История второй мировой войны. М., 1956.

**Т. К. Финлеттер.** Сила и политика. М., 1956.
**Дж. Фуллер.** Вторая мировая война. М., 1956.
**Г. Экклз.** Роль тыла в войне. М., 1963
Итоги второй мировой войны (сборник статей). М., 1957.
Военная политика и национальная безопасность. М., 1958.

* * *

**Bernard, Henri** La guerre et son évolution à travers les siècles. Atlas des croquis et tableaux. Bruxelles, Ecole royalle militaire. 1956.
**Berteil, Louis.** De Clausevitz à la guerre froide. Paris, 1958.
**P. Roger.** Les organisations europèennes. Paris, 1963.
**P. Reboux.** Trop d'enfants. Paris, 1951.
**C. Delmas.** La strategie nucleaire. Paris, 1963.
**R. Aron.** Paix et guerre entre les nations. Paris, 1960.
**G. Bouthoul.** La surpopulation dans le monde. Paris, 1958.

* * *

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

ԳԼՈՒԽ ՀԻՆԳԵՐՈՐԴ

## Օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոնների հարաբերակցությունը խաղաղության համար մղվող պայքարում

Ստեփան Աշոտի Քոչարյան

# Պատերազմի ու խաղաղության դիալեկտիկան և արդիականությունը

Խմբագիր՝ Ս. Ն. Գևորգյան
Նկարիչ՝ Գ. Ս. Գասպարյան
Գեղ. խմբագիր՝ Դ. Դ. Սարգսյան
Տեխ. խմբագիր՝ Գ. Ա. Բանդուրյան
Վերստուգող սրբագրիչ՝ Հ. Լ. Թումաղյան

Հանձնված է արտադրության 17/III 1969 թ.։
Ստորագրված է տպագրության 27/XI 1969 թ.։
Թուղթ՝ տպագր. № 1, $84 \times 108^1/_{32}$, տպագր. 25,75 մամ.=
21,63 պայմ. մամ., հրատ. 18,8 մամ.։ Պատվեր 807։ ՎՖ 07695։
Տիրաժ 3000, գինը 1 ռ. 38 կ.։

«Հայաստան» հրատարակչություն, Երևան—9, Տերյան 91։
ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հակոբ Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91։

## ՆԿԱՏՎԱԾ ՎՐԻՊԱԿՆԵՐ

| Էջ | Տող | Տպված է | Պետք է լինի |
|---|---|---|---|
| 68 | 7 ն. | 3 | 2 |
| 70 | 10 ն. | քաղաքականության | քաղաքակրթության |
| 180 | 7 ն. | բանակի և վճռական | բանակի վճռական |
| 223 | 12 վ. | բանակի | բանկի |
| 331 | 7 ն. | ընկճել | ընկնել |
| 224 | 13 վ. | իմպերիաները»[1] | իմպերիալիստները»[1] |
| 259 | 4 ն. | թեվը | թեզը |
| 309 | 8 ն. | սանձազերծելու | սանձահարելու |

Պ. 807

